«МАТЕНАДАРАН»
ИНСТИТУТ ДРЕВНИХ РУКОПИСЕЙ
ИМ. МАШТОЦА ПРИ СОВЕТЕ МИНИСТРОВ АРМЯНСКОЙ ССР

# ИСТОРИЯ И ПОУЧЕНИЯ ХИКАРА ПРЕМУДРОГО

(АРМЯНСКАЯ РЕДАКЦИЯ)

КНИГА I

*Критический текст и предисловие*
А. А. МАРТИРОСЯНА

ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1969

«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ
ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ԽՐԱՏՔ ԽԻԿԱՐԱՅ ԻՄԱՍՏՆՈՅ

(ՀԱՅԿԱԿԱՆ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ)

ԳԻՐՔ Ա.

Աշխատասիրությամբ՝
Ս. Ա. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԻ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1969

*Այս հուշարձանն ստեղծվել է մեր թվագրությունից առաջ VII դարում, ասորա-բաբելական միջավայրում։*

*Ներկայացվում է զրույցի հայկական խմբագրությունն իր տարբերակներով, որոնցից երկուսը XIV դարի են, շատ ավելի հին, քան մինչ այժմ հայտնի բոլոր խմբագրությունները (ասորական, արաբական, հունական, սլավոնական, եթովպական)։*

*Տարբերակներից չորսը հրատարակվում են առաջին անգամ։ Դրանց օգնությամբ կարելի է պարզել և ճշտել Խիկարի նախնականին վերաբերող կարևոր հարցեր։*

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*Խիկարի զրույցը և նրա աղբյուրները* . . . . . . . . . 7
Повесть о Хикаре и ее источники . . . . . . . . 53
La legende de Khikar et ses sources . . . . . . . . 62

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ԽՕՍՔ ԽԻԿԱՐԱՅ ԻՄԱՍՏԱՍԻՐԻ

(տարբերակ AB)

*Պատմութիւն և խօսք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ և ի միտ առնուլ ամենայն մարդոյ, վասն շահի և օգտութեան* . . . . 75
*Խրատք Խիկարայ իմաստնոյ, զոր պարտ է զի ամենայն հարք այսպէս խրատեն զորդիս և վարդապետք զաշակերտեալսն* . . . . . 77
*Այլ խրատք Նադանայ քուեր որդոյն իւրոյ, զոր ետ Խիկար* . . . . 119
*Պատառիկներ* . . . . . . . . . . . 125

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ԽՐԱՏ ԽԻԿԱՐԱՅ ԻՄԱՍՏՆՈՅ

(տարբերակ C)

*Պատմութիւն և խրատ Խիկարայ իմաստնոյ* . . . . . . 137
*Խօսք և խրատ և իմաստութիւն Խիկարայ. խրատն այս է Խիկարայ, զոր ուսոյց Նադանայ* . . . . . . . . . . 140
*Հարցումն թագաւորաց որդւոց և պատասխանիք Խիկարայ* . . . . 152

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ԽՐԱՏՔ ԻՄԱՍՏՆՈՅՆ ԽԻԿԱՐԱՅ

(տարբերակ D)

*Պատմութիւն և խրատք իմաստնոյն Խիկարայ* . . . . . . 177

ԽՐԱՏՔ ՊԻՏԱՆԻՔ ԵՒ ՕԳՏԱԿԱՐՔ, ԶՈՐ ԱՍԱՑԵԱԼ Է ԽԻԿԱՐԱՅ ԻՄԱՍՏՆՈՅ

(տարբերակ EF)

*Խրատք պիտանիք և օգտակարք, զոր ասացեալ է Խիկարայ իմաստնոյ* . 221

ԽԱՒՍՔ ԽԻԿԱՐԻ՝ ԴՊՐԱՅՊԵՏԻ ԵՒ ԻՄԱՍՏՆԱՅՍԻՐԻ ՍԵՆԵՔԱՐԻՄԱՅ ԱՐՔԱՅԻ ԱՍՈՐԵՍՏԱՆԻ ԵՒ ՆԻՆՈՒԷԻ

(տարբերակ G)

*Խաւսք Խիկարի՝ դպրայպետի և իմաստնայսիրի Սենեքարիմայ արքայի Ասորեստանի և Նինուէի* . . . . . . . . 247

## ԽՕՍՔ ԻՄԱՍՏԱՍԻՐԱՑ ԵՒ ԽՐԱՏՔ ՀԱՄԱՐԱԿԱՑ

(տարբերակ Լ)

*Խօսք իմաստասիրաց և խրատք համարակաց* . . . . . . . 271

## ԱԼԻՄ ԽԻԿԱՐՆ ՍՈՅԼԱՏԻԿԻ ՆԱՍԱՀԱԹ

(Հայ թուրքերեն խմբագրություն)

*Ալիմ խիկարն սոյլատիկի նասահաթ* . . . . . . . . . 303

## ՈՒՍԼՈՒ ԽԻԿԱՐՆԻՆԿ ՍՈԶՈՒ ԷՍԻ ԱԽԸԼԸ

(Հայ ղփչաղերեն խմբագրություն)

*Ուսլու խիկարնինկ սոզու էսի ախըլը։ Այդքանըյ տայ օկուդու քի օկուդլան-կայլար ատամ օղլանլարը։ Տայ ադայ օղունայ օկուդ պէրկայ տայ էսի-նայ ալկայլար* . . . . . . . . . . . 325

## ԱՂՅՈՒՍԱԿՆԵՐ, ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

*Աղյուսակներ* . . . . . . . . . . . 337
*Աղբյուրներ* . . . . . . . . . . . 352

## ԽԻԿԱՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԵՎ ՆՐԱ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

*Խիկարի զրույցը, ինչպես Գիլգամեշի վեպը, Արևելքի հնագույն երկերից է, որ պահպանվել ու հասել է մեզ, կտրելով գրեթե երկու և կես հազարամյակի մեծ ուղի։ Բայց եթե Գիլգամեշի վեպը այդ ամբողջ ճամփան անցավ իր հերոսի նման անսովոր մեկ թռիչքով[1], ապա Խիկարի զրույցը՝ անվերջ դեգերումներից հետո, մինչև որ հանգրվաներ ժամանակակից տպագիր գրքերում։*

*Ճամփորդելով գրավոր և բանավոր ուղիներով, այն ենթարկվել է բազմաթիվ փոխակերպումների և մթագնել իր նախնական պարզ նկարագիրը։*

*Որքան բարդ ու հարուստ է զրույցի անցած ուղին, այնքան բարդ ու հարուստ է նրա մասին եղած բանասիրությունը, որ շուրջ երեքհարյուրամյակ ջանադրաբար հայտարարներ է փնտրում։*

*Զրույցը հրապուրում է բանասիրությանը, որովհետև արևելյան բնորոշ և հազվագյուտ երկ է, ունի հետաքրքիր թեմա և օժտված է վաղեմիության հմայքով։*

*Այն հասել է մեզ բազմաթիվ խմբագրություններով. արամեերեն, ասորերեն, հունարեն, հայերեն, եթովպերեն, արաբերեն, սլավոներեն, ռումիներեն, ղփչաղերեն և այլն։*

*Զրույցն արտահայտվում է գեղարվեստական ճկուն ձևերի մեջ։ Պատմություն է ապերախտ քեռորդու մասին, ընդմիջարկված խրատներով, առակներով և հանելուկներով։ Ոչինչ չի տուժի, եթե*

---

*[1] 1872 թվականին Գիլգամեշի վեպը պնակիտներից ընթերցեց Ջորջ Սմիթը։ Պնակիտների ոչ լրիվ մի շարք Օ. Ռասամը Լոնդոն էր ուղարկել Քույունջիկի բլուրը պեղելիս բացված արքայական գրադարանից։ Այդպես, հազարամյակներ այն անհայտ էր և թաղված բլրի տակ և միանգամից հրապարակ եկավ այն տեսքով, ինչ, թերևս, գիտեր Աշուրբանիպալը։*

դրանք ավելացվեն կամ կրճատվեն։ Ուստի տարբեր ժամանակներում հասարակական առանձին շերտերի կողմից փոխվել են կամ լրացվել, համաձայն իրենց ըմբռնումների։

Այդպիսով այն անվերջ նորացվել է, պահպանելով իր հարատև հմայքը։

Զրույցը կարող է հեշտությամբ մերվել ազգային գրականությունների հետ։ Հենց այդպես էլ եղել է դեռ շատ վաղուց։ Մի տեղ ասված է, որ Խիկարը ծագումով հրեա էր, հին կտակարանում նա Տովբիտի եղբորորդին է՝ Աքիաքարոս (Ἀχιάχαρος)։ Հույները նրան սեփականել են՝ կապելով Եզովպոսի հետ, արաբները համարել «Հազար ու մեկ գիշերների» հերոսներից մեկը, Խիկարի ռուսական խըմբագիրը չի մոռացել շեշտելու, որ նա իր որդուն ռուսերեն էր սովորեցնում, իսկ մեր մատենագրության մեջ Խիկարը հայացվել է։ Մի ճառընտիրում ասված է, որ նա ոչ թե Խիկար է, այլ Խոկայր, «զի խոհիվ իմաստութեամբ հանապազ խոկմամբ ամենեցուն տայր խրատս և առակօք կրթէր»։

Այնուհետև, դարերի ընթացքում Խիկարի շուրջը կուտակվում է այնքան մեծ գրականություն, որ մթագնվում է նրա ինքնությունը և, նույնիսկ, բուն երկը՝ զրույցը, դիտվում անհարազատ։

Խիկարը հայ գրականության, հատկապես անգիր դպրության համար կատարում է նույն դերը, ինչ Վարդանը առակագրության մեջ։ Նա հանդես է գալիս իբրև հավաքական հեղինակ։ Այստեղ արդեն զուտ ազգային բնույթ ունի և կապը ասորա-բաբելական Ախիկարի հետ պայմանական է։

Զրույցի բանասիրական քննությունն անցել է երկու շրջան։

Նախապես հրատարակվելով «Հազար ու մեկ գիշերների» շարքի մեջ, այն ճանաչվում է իբրև արաբական հեքիաթ։ Ասեմանին առաջինը նկատեց, որ զրույցը չափազանց նման է Եզովպոսի կենսագրության երկրորդ մասին, Պլանուդեսի կողմից կազմված[2], իսկ Գ. Հոֆմանը 1880 թվականին իր «Auszüge aus syrischen Akten persicher Märtyrer»[3] գրքում անցողակի շատ հետաքրքիր դիտողություն արեց, տեսնելով Տովբիտի և Խիկարի մեջ ինչ-որ ազգակցություն։

---

[2] Bibliotheca orientalis Clementino-Vaticana, 3m Pars 1, № 21, Roma 1724, էջ 286։

[3] Auszüge aus syrischen Akten persischer Märtyrer, übersetzt und durch Untersuchungen zur historischen Topographie, erläutert von Georg Hoffmann, Leipzig, 1880, էջ 182—183։

Այսպիսով, այդ թեման կապվեց երեք նշանավոր արժեքների՝ Սուրբ գրքի, Եզովպոսի և «Հազար ու մեկ գիշերների» հետ։

Հենց այդ առնչությունները էլ դարձան առաջին շրջանի բանասիրության հիմնական առանցքը։

1907 թվականին Էլեֆանտինում հայտնաբերվեցին հրեական համայնքի պապիրուսներ, որոնց մեջ նաև Խիկարի զրույցից մի քանի թերթ։ Պապիրուսները հասնում են մինչև մեր թվագրությունից առաջ V դար։

Սկսվում է Խիկարի ուսումնասիրության նոր շրջանը։

Շատ խնդիրներ, որոնք այնքան իրարամերժ վարկածներ են ծնել, դարձան պարզ և հեշտալույծ։

Եթե V դարում արդեն գոյություն է ունեցել Խիկարի արամեական բնագիր, ապա հասկանալի է, որ այն չի կարող փոխառված լինել Տովբիտի գրքից, կամ վերաձևված նրա ակնարկների հիման վրա, որովհետև Տովբիտի գիրքը կազմվել է II դարում մեր թվագրությունից առաջ։ Խիկարը անվերապահ Սուրբ գրքի աղբյուրներից մեկն է։ Այդպես, նրանից է փոխառված նաև Եզովպոսի կենսագրության երկրորդ ընդարձակ բաժինը և այլն։

Պապիրուսներն իրենց հետ բերին նոր հետաքրքրություն։ Արամեական ծվենված բնագիրը իր ընթերցումներով շատ է տարբերվում մինչ այդ հայտնի բոլոր խմբագրություններից։

Ե՞րբ է կազմվել այն և ի՞նչ ծագում ունի։

Երբ անհայտ էին էլեֆանտինյան պապիրուսները, հենվելով Տովբիտի գրքի հետ Խիկարի առնչության վրա, անվստահ դիտվում էր բնագրի հրեական ծագում։ Այժմ ավելի համարձակ վերարծարծվեց եբրայական նախնականի խնդիրը։

Սակայն դա բերեց լուրջ ընդդիմություն[4], որը հենց սկզբից հղի էր իր բացասմամբ[5]։

---

[4] Տե՛ս Թ. Նոլդեքեի գրախոսականը E. Sachau-ի գրքի առթիվ (Literarisches Zentralblatt, 1911, № 47, սյուն 1503—1507), ինչպես նաև՝ առանձին ընդարձակ հոդվածը՝ Untersuchungen zum Achigar-Roman von Th. Nöldeke (Abhandlungen der Königlichen Gesellschaft der Wissenschaften zu Göttingen. Philologisch-historische Klasse, neue Folge, Band XIV), Լիդզբարսկու գրախոսականը՝ Deutsche Literaturzeitung, 1911, № 47, Ռուդոլֆ Սմենդի հոդվածը (Theologische Literaturzeitung, 1912, № 13). Ed. Meyer, Der Papyrusfund von Elephantine. Documente einer jüdischen Gemeinde aus der Perserzeit und das älteste erhaltene Buch der Weltliteratur. Leipzig, 1912, էջ 102—128։

[5] **Николай Дурново,** Материалы и исследования по старинной литературе. К истории повести об Акире, М., 1915, էջ 57—88։

*Եվ այդպես խնդիրը մնաց առկախ։*

*Այս է երկրորդ շրջանի բովանդակությունը։*

*Բանասիրությունը, չնայած իր մեծ ջանքերին, որոշակի արդյունքի չկարողացավ հասնել։ Բազմաթիվ հարցեր դեռ մնում են անլույծ։ Իսկ այժմ մեծ հետաքրքրությունից հետո տիրում է մի տեսակ ընդարմություն, երբ քննախույզ միտքը հոգնում է տեվական լարումից։*

* * *

*Աղբյուրագիտական տեսակետից ևս գրույցի շուրջը բավական աշխատանք է կատարվել, ձգտելով բավարարել բանասիրության պահանջները։*

*Շատ ավելի վաղ, քան եթե գրույցը հայտնի կդառնար խիկարի անունով, այն ծանոթ էր եվրոպական ընթերցողին Եզովպոսի կենսագրությունից, որ ավանդել է Պլանուդեսը, և երկրորդ մասը նույնն է գրույցի բովանդակության հետ, ներկայացնելով, իհարկե, առանձին խմբագրություն։ Առաջին անգամ հրատարակված է Միլանում* (Vita Esopi Fabulatoris), *1476 թվականին* Rynucius-*ի լատինական թարգմանության ուղեկցությամբ։ Այնուհետև հաջորդում են բազմաթիվ հրատարակություններ.* Esopi Fabulae et Vita graece cum Aldi Manucii interpretatione, *Լուվեն, 1503 թիվ,* Vita et Fabulae Esopi... *Վենետիկ, 1505 թիվ*[6], *Բազել, 1518, 1524, 1530, Լիոն, 1535, Փարիզ, 1546, Անտվերպեն, 1565, 1567, 1574, Լայպցիգ, 1741, Վենետիկ, 1747։ Առավել կարևոր են Ա. Էբերհարդի և Ա. Վեստերմանի*[7] *հրատարակությունները։*

*Վեստերմանի բնագիրը իրենից ներկայացնում է մի նոր խմբագրություն։ Ռ. Հարրիսը օգտվել է Էբերհարդից։*

*Եզովպոսի գրույցը բազմաթիվ անգամ թարգմանվել է եվրո-*

---

[6] *Այս հրատարակությունը Ա. Գրիգորիսը համարում է առաջինը, որ կատարվել է* Aldus-*ի կողմից, բայց հենց նրա անունը կապվում է Եզովպոսի գրքի հետ ավելի վաղ՝ Լուվենում, 1503 թվականին։ Գրիգորիսը հենվում է կրումբախերի վրա, որի մոտ ցանկը սկսվում է վենետիկյան հրատարակությամբ։ Տե՛ս* Geschichte der byzantinischen Literatur von Justinian bis zum Ende des oströmischen Reiches (527—1453) von Karl Krumbacher, München, 1897, § 395, *էջ 897։*

[7] **A. Eberhard,** Fabulae Romanenses graece conscriptae, Leipzig, 1872 A. Westermann, Vita Esopi, ex Vratislaviensi ac partim Monacensi et Vindobonensi codicibus nunc primum edidit, Brunswig et Londres, 1845.

պական լեզուներով Լաֆոնտենի հրատարակությունների հետ և առանձին[8]։

Հայերեն լույս է տեսել 1818 թվականին, ֆրանսերենից Մինաս վարդապետ Բժշկյանի թարգմանությամբ. «Առակք Եզոպոսի, յորում բովանդակին առակք, որ յածին յանուն Եզոպոսի առակախօսի և վարք նորին...»[9]։ Այնուհետև մինչև ութսունական թվականները հրատարակվել է չորս անգամ՝ 1827, 1849, 1860 և 1886 թվականներին։

Եզովպոսի բնագրից անկախ, «Հազար ու մեկ գիշերների» շարքի մեջ, 1788 թվականին հրատարակվում է Խիկարի ֆրանսերեն թարգմանությունը արաբերենից, որ կրում է Շավի-Կոզոտի անունը[10]։ Դա Գալանի «Հազար ու մեկ գիշերների» թարգմանության շարունակությունն է։ Թարգմանիչը չափազանց ազատ է վարվել բնագրի հետ, շատ տեղերում ուղղակի մի կողմ թողնելով աղբյուրը։

1806 թվականին Գալանի և Կոզոտի թարգմանությունը իր ծանոթագրություններով և ուղղումներով հրատարակում է Caussin de Perceval-ը[11]։ Իհարկե բնագիրն այստեղ ավելի հարազատ է ներկայացված, բայց իր նախօրինակից չէր կարող շատ հեռանալ։

Անհրաժեշտ է հիշել Ագուրին ևս։ Նա բնագրին միջամտում է, ոչինչ չավելացնելով սակայն, խմբագրում և դուրս է նետում այն տեղերը, որ իր կարծիքով ավելորդ են և չեն հրապուրի ֆրանսիական ընթերցողին[12]։

---

[8] Եզովպոսի ընդարձակ մատենագիտությունը տե՛ս Կ. Կրումբախեր, § 297, Ignatios, էջ 716—717, § 395 Leben des Aesop, էջ 897—898. Francois Nau, Histoire et sagesse d'Ahikar l'Assyrien, Paris, 1909, էջ 138։

[9] Լրիվ խորագիրն է. Առակք Եզոպոսի, յորում բովանդակին առակք, որ յածին յանուն Եզոպոսի առակախօսի և վարք նորին թարգմանեալ գաղղիական լեզուէ յաշխարհաբառ լեզու յաւելմամբ զանազան ծանոթութեանց, ոտանաւոր իմաստից և բարոյական խրատուց... ի Հ. Մինաս վարդ. Բժշկեան, Վենետիկ, ի Վանս Ս. Ղազարու, 1818 (ՌՄԿԷ)։ Այս հրատարակությունից մի օրինակ պահվում է Երևանի Մյասնիկյանի անվ. պետական գրադարանի անձեռնմխելի ֆոնդում, 874 համարի տակ։

[10] Nouveaux contes arabes ou supplément aux Mille et une nuits, etc. par l'abbè C... Paris, 1788, հտ. 4։ Մ. Գալանի թարգմանած «Հազար ու մեկ գիշերների» այս լրացումը կատարել է Կոզոտը, նրան օգնել է Շավին, ծագումով արաբ։

[11] Les Mille et une nuits. Contes arabes, traduits en français par M. Galland, continués par M. Caussin de Perceval, Paris, 1806, հտ. 8, էջ 167—220։

[12] «Հազար ու մեկ գիշերների» ընդարձակ մատենագիտությունը տե՛ս «Юбилейный сборник в честь Всеволода Феодоровича Миллера», изданный его учениками и почитателями, М., 1900, էջ 231—240։

Հրատարակվում են նաև ոչ մեծ թվով բնագրեր։

1875 թվականին C. H. Cornill-ը եթովպական խմբագրության հետ տալիս է արաբական մի օրինակ, Գոթայի 2652 ձեռագրից[13]։ 1890 թվականին Սալհանին Բեյրութում առանձին գրքով և որպես «Հազար ու մեկ գիշերների» 5-րդ հատորի լրացում, հրատարակում է մի նոր բնագիր, երկու աղբյուրների հիման վրա[14]։ Այն հարուստ է Բիբլիայից արված շատ նորմուծություններով, որոնք գրչական ծագում ունեն։ Սալհանիի օգտագործած ձեռագրերը XVIII դարից այն կողմ չեն անցնում։ 1894 թվականին Մարկ Լիցբարսկին հրատարակում է նոր սիրիական և արաբական բնագրերը զուգահեռ, Զախաուի № 339 ձեռագրից և հաջորդ տարին թարգմանում գերմաներեն, նույն ամսագրում[15]։ Եվ վերջապես Ագնես Սմիթը Խիկարի նշանավոր ժողովածուի մեջ (1898 թ.) իր բաժինն է բերում։ Նա արաբական խմբագրությունը ներկայացնում է Քեմբրիջի 2886 (k1) և Բրիտանական թանգարանի 7209 (k2) ձեռագրերով, անգլերեն թարգմանության ուղեկցությամբ[16]։ Սմիթը օգտվում է նաև Սալհանիի բնագրից։ Այս վերջին հրատարակությունից բնագիրն ռուսերեն է թարգմանում Ի. Կուզմինը 1920 թվականին և զետեղում «Мудрость Хикара и басни Лукмана» ժողովածուի մեջ, Ի. Կրաչկովսկու խմբագրությամբ և առաջաբանով[17]։

Ասորական բնագիրը հրատարակվել է որոշակի թվով ձեռագիր օրինակներից։

Գիտնականների ուշադրությունը գրավել են հիմնականում երեք աղբյուր. Բրիտանական թանգարանի № 7200 ձեռագիրը (XII—XIII դար), որտեղ կա Խիկարի մի փոքրիկ հատված։ Այս հատվածի հիման վրա Հոֆմանը կապ տեսավ Խիկարի և Տովբիտի գրքի միջև,

---

[13] **C. H. Cornill**, Das Buch der weisen Philosophen nach dem Aethiopischen untersucht und zur Erlangung des Doctorgrades bei der Phil. Fac. zu Leipzig eingereicht, Leipzig, 1875.

[14] **Salhani**, Contes arabes, Beyrouth, 1890.

[15] **M. Lidzbarski**, Die neu-aramäischen Handschriften der Königlichen Bibliothek zu Berlin, I *մաս, 1894,* II *մաս, 1895, էջ 1—41։*

[16] The Story of Ahikar, From the Syriac, Arabic, Armenian, Ethiopic, Greek and Slavonic Versions, by F. C. Conybeare, Rendel Harris and Agnes Smith Lewis, London, 1898, *էջ 87—118, բնագիրը՝ էջ 1—32։*

[17] Мудрость Хикара и басни Лукмана, переводы Ив. Плат. Кузьмина и М. А. Салы, под редакцией и с предисловием И. Ю. Крачковского, Петербург, 1920, *էջ 15—60* (Всемирная литература, Арабы, выпуск № 54, Петербург, MCMXX)։

Քեմբրիջի № 2020 և Բեռլինի Զախաուի 336 ձեռագրերը։ 1898 թվականին Հարրիսը հրատարակում է № 7200 բնագրի հատվածը և № 2020 ամբողջական բնագիրը անգլերեն թարգմանության հետ միասին[18]։ Նույն № 2020 ձեռագրից է կատարել իր թարգմանությունը Դիլլոնը 1898 թվականին և լրացումների համար հաճախ դիմել է արաբական և նոր արամեական ձեռագրերի, որով ընկնում է բնագրի գիտական ճշգրտությունը[19]։ Գիտնականներն իրենց ուսումնասիրությունների մեջ ձեռագիր վիճակում օգտվել են Զախաուի բնագրից, բայց այն առաջին անգամ թարգմանաբար հրատարակում է F. Nau-ն 1909 թվականին իր «Histoire et sagesse d'Ahikar l'Assyrien» գրքում Քեմբրիջի № 7200 ձեռագրի համեմատությամբ և այլ խմբագրությունների զուգորդումով[20]։ Հարրիսի անգլերեն օրինակից օգտվում է Ա. Գրիգորևը ռուսերեն թարգմանության համար, որը ներկայացնում է երեք խմբագրությունների հետ, նախ՝ 1908—1909 թվականներին Մոսկվայի համալսարանին առընթեր Ռուսաստանի Պատմական և Հնագիտական ընկերության Ընթերցումներում և ապա՝ 1913 թվականին[21]։ Ասորական խմբագրությունը 1958 թվականին դարձյալ թարգմանվում է ռուսերեն, այս անգամ բնագրից[22]։ Թարգմանիչներն հավանաբար նկատի են ունեցել Հարրիսի օրինակը (Քեմբրիջի № 2020 ձեռագիրը)։

Nau-ն 1920 թվականին «Revue de l'Orient Chrétien»-ում հրատարակում է երեք տարբերակ, ֆրանսերեն թարգմանության հետ միասին[23]. Բեռլինի Զախաուի № 162 ձեռագիրը, Գրաֆենի և Բոնիանի օրինակները։ Առաջին բնագիրը թերի է և, ինչպես Զախաուն է գտնում, այն կարելի է անկասկած համարել XV դարի գրչ-

18 The Story . . . էջ 56—84, բնագիրը՝ էջ 33—72։

19 The Contemporary Review, London, 1898, էջ 369—386։

20 Histoire et sagesse d'Ahikar l'Assyrien (fils d' Anael, neveu de Tobie). Traduction des versions syriaques avec les principales différences des versions arabes, arménienne grecque, neo-syriaque, slave et roumaine par François Nau, Paris, 1909, էջ 145—280։

21 Чтения в Императорском обществе Истории и Древностей Российских при Московском университете, 1908 год, кн. III, отд. II, Материалы историко-литературные, էջ 2—128 и 1909 год, кн. III, отд. II, էջ 129—235, **Ал. Дм. Григорьев,** Повесть об Акире премудром. Исследование и тексты, Москва, 1913, Приложения, էջ 2—235։

22 «От Ахикара до Джано», перевод с сирийского А. Белова и Л. Вильскера, М.—Л., 1960, էջ 11—36։

23 Documents relatifs a Ahikar, textes syriaques édités et traduits par F. Nau (Extrait de la Revue de l'Orient Chrétien, t. XXI), Paris, 1920.

չություն։ Գրաֆենի բնագիրը ընդօրինակված է 1908 թվականին, հետաքրքիր մի աղբյուր, որ չի նկատավել բանասերների կողմից, իսկ Բոնիոնի ձեռագիրը «թերևս գրված է XVI—XVII դարերում և լրացված ժամանակակցի ձեռքով»։ Առաջին մասը Գրաֆենի հետ նույնն է, իսկ լրացումը իրենից ներկայացնում է անկախ տարբերակ։

Nau-ն այս հրատարակության սկզբում գրում է. «1910 թվականի շրջանում մենք կազմել էինք ասորական ծանոթ բոլոր բնագրերն ընդգրկող Ախիկարի մի ժողովածու։ Ներկա աշխատությունը առանձնացնում ենք դրանից»[24]։ Այդ անշուշտ կարևոր երկի ճակատագիրը մեզ անհայտ է։

Սլավոնական խմբագրության մասին առաջին անգամ հպանցիկ հիշատակվում է 1800 թվականին «Ироическая песнь о походе на половцов...» գրքում, մի ծանոթագրության մեջ[25]։

1816 թվականին Կարամզինը իր «Պատմության» 3-րդ հատորում բերում է այդ բնագրից մի փոքր հատված[26]։ 1842 թվականին Պոլևոյը հրատարակում է հետագա խմբագրության լրիվ մի օրինակ[27]։ 1855 թվականին Պիպինը իր ուսումնասիրության մեջ բերում է Խիկարի զրույցը XVII դարի Ռումյանցևյան թանգարանի ձեռագրից, որը կրում է 363 համարը և նույն թանգարանի № 27 ձեռագրից մի հատված[28]։

---

[24] Documents ... էջ 14։

[25] Ироическая песнь о походе на половцов удельного князя Новаг рода-Северского Игоря Святославича, писанная старинным русским языком в исходе XII столетия с перележанием на употребляемое ныне наречие. Москва, 1800 г., էջ VII: Այդ էջի տողատակում նշված է, որ գրաֆ Ալեքսեյ Իվանովիչ Մուսին-Պուշկինի գրադարանում պահվում է մի ձեռագիր, 323 էջից, որի մեջ կա նաև Խիկարի բնագիրը, որը թվարկվում է «Ասք Իգորի գնդից» առաջ ... 4 Синогрип царь Адоров Иналивския страны. 5. Слово о плъку Игореве, Игоря Святъславля, внука Ольгова. Դա ասքը պարունակող այն ձեռագիրն է, որը այրվել է։

[26] Մենք օգտվել ենք 5-րդ հրատարակությունից։ **Н. М. Карамзин**, История государства Российского, СПб, 1842, примечания к III тому Истории государства Российского, սյունակ 106, ծանոթագրություն № 272։

[27] Московский телеграф № 11, 1825, էջ 227—235։

[28] **Пыпин А.**, Очерки старинной русской литературы (статья первая): (Отечественные записки. Журнал учено-литературный, издаваемый Андреем Кравским, том XCVIII, вторая книжка, СПб, 1955 էջ 141—142։

1860 թվականին Գրիգորի Կուշներևի կողմից նորից հրատարակվում է Ռումյանցևյան № 363 ձեռագրի բնագիրը և մի տարբերակ Պոգոդինյան № 1772 ձեռագրից[29]։

1861 թվականին Ռուս պատմության և հնագիտության Մոսկվայի ընկերության գրադարանի № 189 ձեռագրից Ֆ. Բուսլաևը կրճատումներով հրատարակում է սլավոնական հնագույն խմբագրության բնագիրը (XV դար)[30], նույնը լրիվ և հնագրական ամենաբծախնդիր ճշգրտությամբ ներկայացնում է Գրիգորևը[31]։

1868 թվականին Վ. Յագիչը հրատարակում է Կուկուլևիչի հավաքածուի 1468 և 1520 թվականների ձեռագրերից սերբական բնագրեր Arkiv za povjestnicu Jugoslavensku-ի 9-րդ գրքում և առանձին[32]։ Եվ ապա այդ երկու տարբերակներից կազմած համահավաք բնագիրը 1892 թվականին հրատարակում է Byzantinische Zeitschrift-ում գերմաներեն[33], որով սլավոնական խմբագրությունը մատչելի է դառնում եվրոպական ընթերցողին։ Այդ միջամտված օրինակը 1898 թվականին թարգմանվում է անգլերեն[34]։

1886 թվականին Ե. Բարսովը ներկայացնում է XVI դարի սերբական մի աղբյուր Չերտկովյան քաղաքային գրադարանից, այն անվանելով «Թանկագին հուշարձան»[35]։ Բնագիրը վերահրատարակում է Գրիգորևը իր գրքի լրացումներում[36]։

Այնուհետև 1915 թվականին Նիկոլայ Դուրնովոն Խիկարի մասին իր արժեքավոր աշխատության մեջ հրատարակում է սլավոնա-

---

[29] Памятники старинной русской литературы, издаваемые гр. Григорием Кушеревым-Безбородко, под ред. Н. Костомарова, СПб., 1860, выпуск второй, էջ 359—364 և 364—370։

[30] Историческая хрестоматия. . . Составлено на основании наставления для образования воспитанников военно-учебных заведений. . . Ф. Буслаевым, из сборника, находящегося в библиотеке Московского общества Истории и Древностей Российских (отд. 1, № 189), М., 1861, էջ 644—656։

[31] Чтения . . . 1908, кн. III, отд. II, էջ 2—128, 1909 г., кн. III, отд. II, стр. 129—235, „Повесть об Акире премудром". 1913, էջ 2—235։

[32] Arkiv za povjestnicu Jugoslavensku, IX, Zagreb, 1868, էջ 137—150 (Jagic V. Prilozi k historiji knjizevnosti naroda hrvatskoga i srbskoga):

[33] Byzantinische Zeitschrift, I Band, I Heft, Leipzig, 1892, էջ 107—126։

[34] The Story . . . էջ 1—23։

[35] **Барсов Е. В.**, Акир премудрый во вновь открытом сербском списке XVI в. Издание Императорского общества Истории и Древностей Российских при Московском Университете. Чтения в Императорском обществе Истории и Древностей Российских при Московском Университете, кн. III, 1886, էջ 1—11։

[36] Повесть об Акире премудром, էջ 236—264։

*կան երկու բնագիր Սոլովեցկյան վանքի № 46 (XVI դար) և Բելգրադի ժողովրդական գրադարանի № 828 ձեռագրերից*[37]*։ 1916 թվականին Պերետցը Լոնգվինովի հավաքածուի XVIII դարի ձեռագրից հրատարակում է հետագա խմբագրության մի տարբերակ, փոքրիկ բայց հետաքրքիր առաջաբանով*[38]*, վերջապես Մ. Ռեշետարի ժողովածուում 1926 թվականին տպագրվում է XVI դարի մի բնագիր*[39] *(1520 թվականի գրչություն), որը առիթ տվեց Ն. Դուրնովոյին հանգելու սլավոնական թարգմանության ուղիների մասին կարևոր հետևությունների։*

*Հայկական խմբագրությունն առաջին անգամ տպագրվել է 1708 թվականին Սարգիս դպրի կողմից*[40]*։ Դա Խիկարի անունով զրույցի ամենահին հրատարակությունն է։*

*Ինչպես որ արաբական խմբագրությունը ներկայացվում է «Հազար ու մեկ գիշերների» հեքիաթաշարով, այնպես էլ հայկականն ուղեկցում է «Պղնձե քաղաքի պատմությանը», բայց և երկու դեպքում զրույցը նրանց հետ ոչ մի առնչություն չունի։*

*Այնուհետև զրույցը հրատարակվել է բազմաթիվ անգամ, միշտ ուղեկցելով «Պղնձե քաղաքի պատմությանը»*[41]*։*

*1894 թվականին Կովկասյան ցեղերի և տեղանքի նկարագրության նյութերի ժողովածուում տպագրվում է Խիկարի բանավոր*

---

[37] **Дурново Н.**, Материалы и исследования по старинной литературе, I. К истории повести об Акире (отдельный оттиск из 2 выпуска IV тома Трудов Славянской Комиссии Императорского московского археологического общества), М., 1915, *էջ 20—36, 37—44։*

[38] **Перетц В. К.**, К истории текста повести об Акире премудром (отдельный оттиск из «Известий» Отделения русского языка и словесности Императорской Академии наук; т. XXI, кн. I, *էջ 268—278)* Петроград. 1916, *էջ 7—17։*

[39] Зборник за истору езык и кньижевност српског народа, I, кн. XV, 1926.

[40] *«Գիրք պատմութեան վասն Պղնձէ քաղաքին եւ հարցմունք աղջկանն եւ մանկանն եւ Պատմութիւն Խիկարայ և Փահլուլ թագաւորին», 1708, էջ 83—123։ Մի օրինակ պահվում է գրականության թանգարանի Սունդուկյանի ֆոնդում։*

[41] *1731, 1749, 1757, 1792, 1807, 1814, 1820, 1834, 1850, 1857, 1861, 1862, 1908, 1911 թվականներին։ Այս շարքից մեզ անծանոթ է 1862 թվականի տպագրությունը, որի մասին նշում կա Զարբհանալյանի մոտ։ Տե՛ս «Հայկական մատենագիտություն», Վենետիկ, 1883, էջ 383։ «Պղնձե քաղաքի» հրատարակությունների ցանկը Հ. Անասյանի «Հայկական մատենագիտության» մեջ լրացման կարիք ունի (տե՛ս էջ 623)։*

գրույցի մի գրառում, որ կատարել է Բայանդուրի ուսումնարանի տեսուչ Բունիաթյանը[42]։

1898 թվականին Ա. Ա. ստորագրությամբ հոդված է տպագրվում «Բազմավեպի» մեջ, որտեղ գրույցը բերվում է քաղվածաբար մի ձեռագրից, լրիվ բնագիրը թողնելով «Հարմար առիթի»[43]։ Վերջապես, նույն թվականին երեք բանասերների նշանավոր գրքում հրատարակվում է Ֆ. Կոնիբերի կազմած համեմատական բնագիրն անգլերեն թարգմանության հետ միասին[44]։

Կոնիբերի այս աշխատանքը ընդհանուր ճանաչում է գտնում բանասիրության կողմից։ Nau-ն նրանից է օգտվում իր սարական բնագրի համադրությունների համար, իսկ Ֆեթթերը թարգմանում է գերմաներեն[45]։

Սրանով մենք սպառում ենք Խիկարի հայկական խմբագրության հրատարակությունները։

Զրույցը հրապարակ է եկել և այլ լեզուներով. 1850 թվականին՝ ռումիներեն, Անտոն Պանի կողմից, որը այնուհետև վերահրատարակվել է 1854, 1872 և 1880 թվականներին, ինչպես նաև Մ. Գաստերի երկու հրատարակությունները[46], վրացական օրինակը տպագրվել է 1900 թվականին[47]։

1902 թվականին խախանովը Մոսկվայի հնագիտական ընկերության Սլավոնական հանձնաժողովի նիստում հայտնում է Խիկարի մի այլ վրացական բնագրի մասին, որը ավելի ամբողջական է և հստակ[48]։

---

[42] «Сборник материалов для описания местностей и племен Кавказа». Издание Управления Кавказского учебного округа, вып. 19, Тифлис, 1894, էջ 206—219։

[43] «Բազմավէպ», Հոկտեմբեր, 1898, էջ 488—492։

[44] The Story ... էջ 125—162, անգլերեն թարգմանությունը՝ էջ 24—55։

[45] Theologische Quartalschrift. In Verbindung mit mehreren Gelehrten hrsg. von D. v. Funk, D. v, Schanz, D. Velser, D. Vetter, D. Koch, D. Sägmüller, Professoren der Kath. Theologie an der K. Universität Tübingen, 1904, էջ 330—364։

[46] Pann Anton: Inţeleptul Archir si nepotul său Anadam. Bucureşti 1850. Gaster M., Archir si Anadam: Literatura populară română, Bucureşti 1883, էջ 106—109։ Gaster M., Contributions to the History of Ahikar and Nadan: Journal of the Royal Asiatis Society, 1900, էջ 301—309։

[47] «Очерки по истории грузинской словестности», вып. 3, М., 1901, էջ 169—180 և 423—427։

[48] Протокол 59-го заседания Славянской комиссии Императорского московского археологического общества -18 января 1902, Древности. Труды Славянской Комиссии Императорского московского археологического общества, том. III, издан под редакцией М. И. Соколова, М., 1902, էջ 51։

1935 թվականին պրոֆ. Յորդան Իվանովը բուլղարական խմբագրությունը հրատարակում է կրճատումներով, XVI դարի Լովչանական ժողովածուից (Ловчанский сборник)[49]։

Այդ խմբագրության մասին դեռևս 1878 թվականին տեղեկացնում է բուլղար նշանավոր պատմաբան Իրեչեկը, բայց, որովհետև երկար ժամանակ մնում էր անհայտ, ռուս բանասիրության մեջ չի համարվել հավաստի։

1964 թվականին Ժ. Դնին և Է. Տրիյարսկին հրատարակում են զրույցի հայատառ ղփչաղերեն բնագիրը, լուսանկարները և լատինական տառադարձությունը, ուղեկցելով ֆրանսերեն թարգմանությամբ, Վիեննայի Մխիթարյանների № 468 ձեռագրից[50]։

Եթովպական և նոր-արամեական բնագրերի մասին մենք արդեն հիշեցինք, մնում են Էլեֆանտինի արամեական պապիրուսները, որ ներկայացրեց հիանալի հրատարակությամբ Էդվարդ Զախաուն և ապա՝ Արթուր Ունգնադը[51]։

Պապիրուսները ռուսերեն լեզվով Զախաուի գերմաներեն թարգմանությունից, նկատի առնելով Զախաուի և Ունգնադի բնագրերը և Նոլդեքեի դիտողությունները, հրատարակում է Դուրնովոն իր «К истории повести об Акире» գրքում[52]։

Այս ոչ լրիվ թվարկումից պարզ է, թե որքան շատ աղբյուրներ են ներկայացված տարբեր խմբագրություններով։ Սակայն նրանք չեն տալիս զրույցի բնագրային ճիշտ պատկերը։

Զրույցը մեծ մասամբ ներկայացվել է մեկ կամ երկու ձեռագրերի հիման վրա, ստեղծելով ոչ թե համեմատական, այլ հավաքական բնագրեր։

---

49 **Иордань Ивановь,** Старобългарски разкази. Текстове, новобългарски преводъ и бележки, София, 1935, էջ 95—102, նոր բուլղարերեն թարգմանությունը՝ էջ 237—245։

50 **Jean Deny, Edward Tryjarski,** Histoire du sage Hikar dans la version arméno-kiptchak, Rocznik Orientalistyczny, t. XXVII, zeszyt 2, Warszawa, 1964.

51 Aramäische Papyrus und Ostraka aus einer judischen Militärkolonie zu Elephantine, bearbeitet von Eduard Sachau, Leipzig, 1911, էջ XX—XXIII, աղյուսակ՝ 40—50։ Ներկայացված է բնագիրը գերմաներեն թարգմանության հետ միասին։ **Arthur Ungnad,** Aramäische Papyri aus Elephantine, Kleine Ausgabe unter Zugrundelegung von E. Sachaus Erstausgabe, Leipzig, 1911· Միայն բնագիրը։

52 **Дурново Н.,** էջ 3—19։

*Հրատարակությունները չեն ընդգրկում տարբեր ենթախմբերի բոլոր, կամ որոշակի քանակի աղբյուրներ, այլ կատարվել են առանձին, երբեմն պատահական միավորներից։*

*Դարերի ընթացքում գրիչներն իրենց սեփական հետքն են թողել բնագրերի վրա, նույնը շարունակել են հրատարակիչները, ծածկելով զրույցը նոր, օտարամուտ շերտերով։*

*Նրանք քմածին ազատությամբ միջամտում են բնագրին, փոխում կամ դուրս նետում իրենց կողմից անկարևոր համարված տեղերը և հաճախ կապակցություններ ստեղծում սեփական երևակայությամբ։*

*Դա մեծ բարդություն է առաջացրել բանասիրության համար, դժվարացնելով աղբյուրներից օգտվելու խնդիրը։ Յուրաքանչյուր դեպքում անհրաժեշտ կլիներ ստուգել տարընթերցվածը. հեղինակային է այն, գրչի, թե հրատարակչական, բայց դրա համար պետք է նայել բոլոր հրատարակությունները և ձեռագրային աղբյուրները, որ թերևս անկարելի է։*

*Հենց այդ պատճառով հետազոտողների մոտ բազմաթիվ դիտողություններ և վարկածներ կորցնում են իրենց արժեքը, որովհետև հենվել են ոչ թե հարազատ, այլ ոչ ճիշտ և հետսամուտ ընթերցվածի վրա։*

*Երկու շրջաններում գիտնականներին հետաքրքրում էր միևնույն հարցը. որտեղից է գալիս զրույցը և ինչպիսին է եղել նրա նախնականը։*

*Դա ինքնին աղբյուրագիտական բնույթ ունի, և գիտական միտքը պետք է գնար այդ ուղղությամբ, մի պահանջ, որ առաջացավ բավական ուշ, երբ արդեն պարզ էր, որ բանասիրությունը անընկատ սահում է միևնույն շրջագծով։*

Nau-*ն գրում է. «Ախիկարի պատմությունը շատ է տառապել թարգմանիչների և գրիչների ձեռքին։ Նրա վերակազմումը կպահանջեր հարազատության համար ամենից առաջ ձեռագրերի հնարավոր չափով մեծ քանակի վրա հենված յուրաքանչյուր խմբագրության խնամքոտ հրատարակություն և ապա՝ այդ խմբագրությունների համեմատություն»*[53]*։*

*Այս պահանջը լիովին վերաբերում է և հայ խմբագրությանը, որը ասորական, արաբական և սլավոնական խմբագրությունների հետ առանձնակի արժեք է ներկայացնում։*

---

[53] „Histoire et sagesse . . .", *էջ 77։*

* * *

*Ինչպես տեսանք, Հայկական խիկարն ունի բավական շատ հրատարակություններ, որոնք, սակայն, երեք բնույթի են. տպագիր, բանավոր և ձեռագիր։*

*Տպագիրը ուղեկցում է «Պղնձէ քաղաքի պատմությանը», որը ձգվում է 1708 թվականից մինչև 1920 թվականը։ Այդ երկար շարքը գալիս է մի մայր ձեռագրից, ուշ շրջանի, խիստ աղավաղ և բարբառային շերտերով ծածկված։ Այն հիմք է ծառայել 1708 թվականի հրատարակությանը։*

*Տպագրերը բաժանվում են երկու խմբի (*Fa *և* Fb*), որոնք անխառն տարբերակվում են։ Մի տեղ* Fa *մայր հրատարակությունից շեղվելով խմբագրական փոփոխություններ են մտել և ստացվել է ենթամայր տպագիր (*Fb*)։* Fa*-ից և* Fb*-ից սերողները լիակատար համապատասխանում են և եթե փոփոխություն կա, ապա միայն վրիպակային, իսկ* Fab*-ն կապվում են իրար ամենամերձ ազգակցական իրավունքով։*

Fb*-ն փորձում է խուսափել խիստ արտահայտված բարբառային ձևերից և բաց է թողնում որոշ խրատներ։ Իբրև օրինակ բերենք մի երկու ընթերցում.*

| Fa | Fb |
|---|---|
| *Կապած և մօհրածն։* | *Կապած և կնքածն։* |
| *Ուտել և խմելն։* | *Ուտել և ըմպելն։* |
| *Որդեակ, մի՛ այնպէս անէր, որ երթաս ի տեղ մի ւ ի քեզանէ մեծ մարդոյն ի վեր նստիս, որ չասեն թէ եկու ի վայր, որ յամօթ լինիս։ Ի վայր նիստ, որ ասեն թէ եկու ի վեր։* | *Որդեակ եթէ գնաս ի հրաւիրեալ տեղիս, յորում գտանի քան զքեզ մեծ և յարգի, մի՛ նստիր ի վերին կողմն, զի յետոյ սակաւ առ սակաւ իջանես ամօթով ի ստորին կողմն։* |
| *Մի լինիր լեղի։* | *Մի լինիր դառն։* |
| *Լցւի գանձով մինչև լցւի հողով։* | *Շատանայ գանձով մինչև մտանէ ի հող։* |
| *Ընդ մարդոյ կնոջ մի խնամախօսիր։* | *Մի պատճառ լիներ հարսնացուցանելոյ զդուստրն ուրուք ընդ առն օտարի։* |

*և այլն։*

Fb*-ն բաց է թողնում մի քանի խրատ, չխախտելով սակայն* Fa*-ին հատուկ հերթակարգը*[54]*։*

*Թերևս կարելի է գայթակղվել, որ* Fb*-ն սերում է այլ աղբյուրից, նկատի ունենալով որոշ ընթերցումներ, որոնք բավական ուժեղ*

[54] Fb *-ն չունի №№ 14, 28, 40, 43, 46, 48, 49, 50, 52, 53, 83, 84, 87,106 խրատները։*

են տարբերակվում, բայց ակնհայտ է, որ այդ փոփոխությունները չեն թելադրում առանձին բնագիր և ոչ, նույնիսկ, ունեն գրչական բնույթ, այլ պարզապես խմբագրված են որևէ հրատարակչի կողմից։

Փոփոխությունների մեջ բացահայտ զգացվում է լեզվի բռնազբոսիկ արհեստականություն. «Մի պատճառ լինէր հարսնացուցանելոյ զդուստրն ուրուք ընդ առն օտարի» և այլն։

Սակավ տարբերություններից մենք բերեցինք մի երկու օրինակ, իսկ գերիշխողը, ավելի ճիշտ՝ ընդհանուրը նույնությունն է։

Fb-ի մեջ մտնում են 1857, 1908, 1911 թվականների հրատարակությունները, այսինքն 1857 թվականից հետո։ Այդ նշանակում է, որ Fa-ն և Fb-ն տարբերվում են ոչ թե զուգահեռաբար, այլ մեկը հաջորդում է մյուսին։ Հավանորեն Fb-ի հիմքը 1857 թվականի հրատարակությունն է։

Երկրորդը՝ բանավորն է, բնագիր, որ պատմել է էջմիածնեցի 65-ամյա մի գեղջկուհի և գրի առել Բայանդուրի ուսումնարանի տեսուչ Բունիաթյանը։

Ինչպես Կոնիբերի հրատարակությունը Եվրոպայում, այնպես էլ այս բնագիրը ռուս բանասիրության համար առիթ դարձավ առաջին ծանոթության։ Այդտեղ էլ վերջանում է նրա դերը։

Բոգոյավլենսկին, նկատի ունենալով այս հրատարակությունը, գրում է. «Խիկար իմաստունի պատմությունը մեր նախնիներին լավ հայտնի Ակիր իմաստունի մասին հեքիաթի հայկական խմբագրությունն է ներկայացնում»[55]։

Սակայն այն չունի բնագրական որևէ արժեք և չի կարող հայ խմբագրության մասին ճիշտ պատկերացում տալ։

Միլլերը դուրս գալով գրույցի բնույթից արդեն կռահում էր. «Հեքիաթի անսովոր պահպանվածությունը էջմիածնի պառավի շրթներին մեր կարծիքով ուղղակի նշում է նրանից գրառված պատմվածքի գրքային ծագումը»[56]։

Նա հորդորում է բանասերներին գտնելու աղբյուրը. «Ցանկալի կլիներ, որպեսզի ժողովածուում հայ Խիկարի հանդես գալը հայագետներին ևս մղեր հայկական մատենադարաններում այդ հեքիաթի ձեռագրի որոնումներին»[57]։

---

[55] «Сборник материалов для описания местностей и племен Кавказа», вып. XIX, Тифлис, 1894, էջ XVII։

[56] Журнал Министерства Народного просвещения, седьмое десятилетие, часть CCC, июль, 1895, СПб, էջ 209—210։

[57] Տե՛ս նույնը՝ էջ 209—210։

Որոնումների հարկ չկա։ Ջրուցի օրինակը մեզ հայտնի տպագիրն է, որ ուղեկցում է «Պղնձե քաղաքի» բազմաթիվ հրատարակություններին։ Դա պարզորոշ ցույց է տալիս պատումների նույնությունը և խրատների բնույթը, նույնիսկ հերթակարգը։

Բերենք մի երկու զուգահեռ.

1. Որդեակ, եթէ լսես խօսք ի դուռն թագաւորաց և իշխանաց և մեծամեծաց, պահեա և մեռո զնա ի սրտի քում և մի՛ ասեր (Fb յայտներ) մարդոյ մինչև այլքն ասեն ի քեզ։

1. Если услышишь что-нибудь в доме царя или приближенных его, то никому о том не говори, пока того-же самого не услышишь от других.

2. Որդեակ, զմարդոյ կապած և մոհրածն (Fb կնքածն) մի՛ արձակեր և զարձակեալն մի՛ կապեր։

2. Завязанного и запечатанного другими не развязывай, а развязанного не запечатывай.

3. Որդեակ, լաւ է իմաստուն մարդուն հետ (Fb մարդոյն զհետ) քար կրելն, քան զանգետին հետ ուտել և խմելն (Fb ըմպելն)։

3. Лучше с умным человеком камни таскать, нежели с глупым есть и веселиться.

4. Որդեակ մի՛ լիցի զի առաքեսցեն զքեզ ի բան, և դու ոչ իմանաս զբանն և երթաս։ Յետոյ այլ ոք ուղարկեն, որ երթայ ի բանն, և դու ծաղր լինիս։

(Որդեակ, եթէ առաքեսցեն զքեզ ի տեղի ինչ վասն բանի, լաւ ի միտ առ զբանն, զոր ասելոց ես և ապա գնա, զի մի գուցէ յետոյ լինիցիս ծաղր առաջի այլոց)։

4. Если тебя посылают куда-нибудь, хорошенько разузнай, за чем идешь, и что тебе нужно сказать, чтобы впоследствии не стать посмешищем для других.

5. Որդեակ մի՛ այնպէս աներ, որ երթաս ի տեղ մի ւ՛ ի քեզանէ մեծ մարդուն ի վեր նստիս, որ չասեն թէ եկու ի վայր, որ յամօթ լինիս, ի վայր նիստ, որ ասեն թէ եկու ի վեր։

(Fb Որդեակ եթէ գնաս ի հրաւիրեալ տեղիս յորում գտանի քան զքեզ մեծ և յարգի, մի՛ նստիր ի վերին կողմն, զի յետոյ սակաւ առ սակաւ իջանես ամօթով ի ստորին կողմն)։

5. Если тебя пригласят куда-нибудь в гости или на свадьбу, не садись на первом месте, а то, когда придут постарше тебя, придется тебе пересаживаться на низшее место; лучше садись ниже всех; тогда тебе будут предлагать место все выше и выше, и, таким образом, ты займешь почетное место.

6. Որդեակ, թէ ընկերն քո հիւանդ է մի ասեր ի միտքդ (Fb մտի քում) թէ տանձ կամ խնձոր գտնում (Fb գտանեմ) և ապա երթամ տես. երթ (Fb այլ երթ) ոտիւք

6. Когда друг твой болен, то не откладывай посещения до тех пор, пока достанешь яблоко или грушу; больной, видя тебя, обрадуется, а

*և տես աչօք, զի զհիւանդն դատարկ տեսանել շատ լաւ է քան զբազում կամակս ունելոյ* (Fb *միրգս տանել* փխ *կամակս ունելոյ)։*

. . . . . . .

это лучше на него подействует, нежели принесенные тобою яблоки и груши, из-за которых пришлось-бы тебе, пожалуй, отложить свидание.

. . . . . . . . . . . . . . . . . . .

*13. Որդեակ լաւ է աղջիկ որ ծնանի և շուտ մեռանի, քան թէ ապրի և ազգին իւրոյ սևերեսանք բերէ* (Fb *լինի նախատինք)*[58]*։*

13. Лучше ребенку умереть во младенчестве, чем жить, служа позором своего рода[59].

*Իսկապես «անսովոր պահպանվածություն»։ Միայն տպագիրը և նույն բնույթը կրող ձեռագրերի խումբը ունեն խրատների նման հերթակարգ։ Ժողովրդական զրույցի և գրավոր աղբյուրի մեջ այդպիսի համաձայնություն կարող է լինել բացառապես ուղղակի աղերսության դեպքում։ Եթե ճիշտ է, որ Բունիաթյանը գրի է առել էջմիածնեցի մի ծեր կնոջից, ապա կինն է տպագրի անմիջական փոխանցողը։*

*Զրույցը ժողովրդի մեջ երկարատև բանավոր ուղի չի անցել, ուստի իբրև ժողովրդական անգիր պատում ևս իրենից չի ներկայացնում որևէ հետաքրքրություն*[60]*։*

*Երրորդը Կոնիբերի հրատարակությունն է։ Այն անվանում ենք ձեռագրական, որովհետև հենվում է ուղղակի ձեռագիր աղբյուրների վրա։ Բնագիրը կազմելիս Կոնիբերը նկատի է ունեցել ութ ձեռագիր, որոնց առանձին ընթերցումներն իջեցրել է տողատակ։*

*Այս հրատարակության մասին* Nau-*ն գրում է. «Միակն է, որ ունի բավարար քննական ապարատ և նոր հրատարակություն չի պահանջում»*[61]*։*

---

[58] *«Պատմութիւն Պղնձէ քաղաքին»... Տփխիս, 1857, էջ 80—81։*

[59] «Сборник материалов для описания местностей и племен Кавказа», вып. XIX, *էջ 207—208։*

[60] *Զրույցի մեջ տպագրից կան և որոշ շեղումներ, բայց այդ բոլորը դուրս չեն գալիս նյութի սահմաններից, այլ հետևանք են բնագրի համառոտման։ Զրույցը պատմվում է երրորդ դեմքով, որը նույնպես իր հետ որոշ փոփոխություն է բերում։ Մի տեղ միայն փոքր չափով հեռանում է իր աղբյուրից։ Խիկարը Եգիպտոս է գնում կնոջ հետ* («Хикар взял свою жену, двух мальчиков и орла и пошел к египетскому царю»), *որտեղ ինքն է թռցնում արծիվ (և ոչ արծիվներ)։ Այդ փոփոխությունը տրամաբանական հետևությունն է այն բանի, որ մինչև Եգիպտոս գնալը նա է սովորեցնում երեխաներին և կառավարում արծվի թռիչքը։ Դժվար չէր նույն դերի համար նրան տանել Եգիպտոս։*

*Զրույցի մեջ չկա մի շեղում, որը անհնար լինի արտածել տպագիր աղբյուրից, կամ որը դիտվեր իբրև ժողովրդական հավելում։*

[61] „Histoire et sagesse ...“, *էջ 92—93։*

Բայց դա ճիշտ չէ։

Կոնիբերի բնագիրը Տաշյանին առիթ տվեց գրելու զրույցի մասին մի հետաքրքիր աշխատանք, որին նա առաջ մտադիր էր, բայց չէր ձեռնարկում, լավագույն և նախընտրելի բնագիր չունենալու պատճառով։ Նա իր ուսումնասիրության մեջ բանասիրական բազմաթիվ հարցեր է շոշափում. զրույցի, Եզովպոսի և Տովբիտի գրքի աղերսները, հայկական խմբագրության բնույթը, նրա թարգմանական աղբյուրները, ժամանակի խնդիրը և այլն, բայց որովհետև Կոնիբերի բնագիրը ևս, չնայած իր առավելությանը, բավական աղավաղ է և նորաբանություններով լեցուն, Տաշյանին շատ հիմքեր չի տալիս հաստատուն եզրակացությունների համար։

«Ներկա հայ բնագիրը,—գրում է նա,—խճողված է ռամկաբանություններով, որոնք չեն միաբանիր թարգմանության առհասարակ ընտիր և հին գրական լեզվին հետ... Բնագիրն առհասարակ լի է ծայրեծայր աղավաղություններով, սխալ ընթերցումներով և այլն»[62]։

«Այս կետը զմեզ կստիպե ընդհատել մեր ուսումնասիրությունքն ալ,—կարդում ենք մի ուրիշ պարբերության մեջ,—մինչև հնագույն և ընտրելագույն բնագրի մը հայտնվիլն։ Առանց ասոր շատ մը խրնդիրներ, որ լուծման կսպասեն, չեն կրնար նաև ձեռնարկվիլ, առանց ապարդյուն աշխատության և ո՛չ հանված եզրակացությունք հաստատուն հիմ կրնան ունենալ»[63]։

Տաշյանը մտադիր էր ներկայացնել հայկական և մյուս խմբագրությունների համեմատական մի հրատարակություն, որը շատ օգտակար աշխատանք կլիներ։ Բայց նա հրաժարվում է այդ մտքից ևս։

«Բնագրին այս վիճակն և այն պարագան, որ մեր մատենադարանը չունինք օրինակ մը Խիկարա, ստիպեց զմեզ հետ կենալու մեր դիտավորութենեն, զոր ունեինք հրատարակել հայ բնագիրն համեմատությամբ մյուս բնագիրներուն, վասնզի ստիպված էինք բնագիրը ծայրեծայր սրբագրել, որ քիչ շատ միշտ կամայական կմնա, քանի որ վստահելի աղբյուր մը կպակսի։ Եվ այսպես կսպասենք ընտրելագույն օրինակի մը»[64]։

---

62 Հ. Տաշյան, *Մատենագիտական մանր ուսումնասիրությունք, մասն երկրորդ, է—ժ, Վիեննա, 1901, էջ 140—141։*

63 *Տե՛ս նույնը, էջ 136։*

64 *Տե՛ս նույնը, էջ 143։*

«Հայ բանասիրաց առաջին գործքն ըլլալու է այսպիսի բնագիր մը գտնել»[65],—եզրակացնում է Տաշյանը։

* * *

Խիկարի զրույցը հայ մատենագրության մեջ հնագույն կամ առաջին թարգմանությունից հետո դարերի իր երթի մեջ մթագնել է հարազատ նկարագիրը։

Եթե Սիրաքի և Սողոմոնի խրատները գրչությաններով անցել են անփոփոխ, որովհետև ընդօրինակվել են Աստվածաշնչից և Սուրբ գրքի հեղինակությունը թույլ չի տվել բնագրի հետ ազատ վարվելու, ապա Խիկարի համար այդպիսի սահմանափակում չկա[66]։ Ընդօրինակող գրիչները կատարել են բազմաթիվ հավելագրումներ և նորամուծություններ։ Ահա թե ինչու անօգուտ է որոնել մի բնագիր, որը հարազատորեն պահպաներ հայ սկզբնագրի թարգմանական օրինակը, եթե այն չի գալիս բուն թարգմանության շրջանից, ամենակարճ փոխանցումով։ Սակայն հայ մատենագրության մեջ Խիկարի մուտքը խորհրդավոր հնություն ունի, իսկ մեզ հասած հնագույն բնագիրը XIV դարից է գալիս։

Մնում է հետագա շրջանի բազմաթիվ ձեռագրերի համեմատությամբ փորձ անել վերականգնելու հայ նախնականը։ Դա բարդ է, բայց հնարավոր։

Մատենադարանում և այլ ձեռագրատներում կան Խիկարի հարյուրից ավելի օրինակ։

Սակայն որևէ ձեռագիր հիմք ընդունելով մյուս ձեռագրերի համեմատությունը և քննական բնագրի ստեղծումը այս պայմաններում անկարելի է, որովհետև ձեռագրական միավորները չեն ծածկում իրար։ Նրանք կազմում են վեց առանձին խումբ, ինչպես և պետք է ներկայացնել։

Ահա մեր օգտագործած բնագրերն ըստ խմբերի։

---

[65] Տե՛ս նույնը, էջ 140։

[66] Սուրբ գրքի մասին մեր խոսքը պայմանական է, քանի որ, այնուամենայնիվ, Սիրաքի և Սողոմոնի խրատները նույնպես փոփոխություններ են կրել։ IX դարի հեղինակ Համամ Արևելցու Սողոմոնի առակաց մեկնության մեջ բերված բառացի քաղվածքները Աստվածաշնչի հրատարակությունների հետ բավական ուժեղ տարբերություններ են տալիս։ (Տե՛ս Կ. Կոստանյանց, Համամ Արևելցի, Վաղարշապատ, 1896, էջ 22)։

## A

A1 **Խրատք Խիկարայ իմաստնոյ, զոր պարտ է զի ամենայն ճարք այսպէս խրատէն զորդիս և վարդապետք զաշակերտեալսն**

*Բնագիրը պարունակում է միայն խրատականքը։ Առաջին և երկրորդ (առակավոր) խրատների մեջ կապ ստեղծելու համար պատմողական մասի փոխարեն կարմիր թանաքով գրված է.* Որդ որ լսէ զխրատս և առնէ, սիրելի առնէ զանձն աստուծոյ և մարդկան և երանեմ կենաց նոցա։ Եւ որ լսէ և ոչ առնէ մանաւանդ թէ ճակատակ ես լինի և փոխանակ բարո չար ես խորհի, եթէ որդի է, թէ եղբայր, թէ աշկերտ, թէ սիրելի կամ օտար, նա զառաջիկա գրեալդ ընդունի և թէ ոչ՝ յազար եղուկ է նոցա *(էջ 50բ)։*

*Սա մեզ հասած խիկարի զրույցի ամենահին օրինակն է։*

*Ձեռագիրը պարունակում է նաև Սիրաքի խրատները։*

*Ձեռագիր № 2961, ժողովածու, գրիչ՝ Մխիթար Անեցի, 1321 թ., էջ 48բ—60բ։*

A2 **Պատմութիւն և խօսք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ և ի միտ առնուլ ամենայն մարդոյ, վասն շահի և օգտութեան**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 1495, ժողովածու, գրիչ՝ Եփրեմ վարդապետ, 1674—1684 թ., էջ 13ա—17բ։*

A3 **Խաւսք և խրատք և իմաստութիւն Խիկարայ իմաստասիրի**

*Մուտքը համառոտված է, չունի այն բաժինը, ուր թագավորն իր մտահոգությունն է արտահայտում։ Առաջին խրատներին հաջորդում է խիստ համառոտված պատմություն.* Զայս ամենայն ուսուցանէի Նաթանայ fեռորդոյ իմոյ ես՝ Խիկար դպիր այսպէս կարծելով, թէ զուսումս զայս, զոր ուսուցի Նաթանայ պահեսցէ ի սրտի և կացցէ ի դրան արfունի։ Ոչ գիտացի թէ զբանս իմ անտես առնէ։ Եւ նա հոսեաց որպէս փոշի ընդ հողմոյ։

Զայս եղեալ ի մտի թէ հայրն իմ Խիկար ծերացեալ է և հասեալ է յափն գերեզմանին, զառածել են միտf իւր և դողացեալ ամենայն մարմինն։

Եւ սկսաւ Նաթան վատնել զինչս իմ և կորուսանել։ Ոչ խնայէր ի ծառայս և յաղախնեայս իմ և կապել չարչարէր զնոսա։ Ի հարուածս սաստիկս կոտորեալ սատակէր զերիվարս իմ, զձիս և զջորիս։

Յայնժամ ես՝ Խիկար, յորժամ տեսի զայս ամենայն թէ Նաթան զգործս իմ այլայլեաց, խնայեցի զինչս իմ, զի մի կորայց։

Եւ սկսա խաւսել Նաթանա և ասեմ. Ինչս իմ մի մերձենար: Ասացեալ է իմաստնոց. Ձեռքն որ ոչ են վաստակել, ակն մի խնայեսցէ:

Եւ երթեալ պատմեցի ի Սենեքարիմայ արքայի: Եւ հրամայեաց Նաթանա և ասէ. Որչափ հայր քո Խիկար կենդանի է, ինչս նորա մի մերձենար:

Եւ նա ոխացեալ մահու սպասեր ինձ:

Եւ իմ գիտացեր զչարիս նորա՝ զեկեւցի արքայի, և նա եա զնաթան ի ձեռս իմ, եթէ արա որպէս և կամիս:

Խաւսել սկսա և ասեմ:

*Հաջորդում են առակավոր խրատները, և, բավական անսպասելի, ընդմիջարկվում նորից պատմությամբ, որը համեմատելի է E խմբի հետ։*

***Ձեռագրին ծանոթ է եղել Գալուստ Տեր-Մկրտչյանը, որը 1893 թվականին հղել է Մառին օգտվելու համար, առակաց գրքի վրա աշխատելիս։***

***Ձեռագիր № 3119, ժողովածու, Կաֆա, գրիչ՝ Դավիթ Ղրիմեցի, 1694 թ., էջ 179ա—191ա։***

### A₄ Խրատք իմաստնոյն Խիկարէ

*Բնագիրը մուտք չունի, սկսվում է խրատներից։ Պատմությունը համառոտված է և համընկնում է A₃-ին։*

*Ունի չափածո հիշատակագրություն.*

Եթէ բանիս լինիս խնդիր,
Ոչ առնուս ի թիկունքտ բիր.
Աստէնս լինիս դու բարձր և քնտիր,
Անդէնն պարգևք առնուս դու զամէնն ձիր:

Ջանայ հիմուտ լինել ուսման,
Որ քան զոսկին է պատուական.
Ով որ ցանկայ իմաստութեան,
Արժան լինի շատ բարութեան:

Վարդ անթառամ է գիտութիւն.
Ով փափաքէ յիմաստութիւն,
Այլ որ չունի հնազանդութիւն,
Նորա անշահ է գիտութիւն:

*Շարունակվում են խրատներ, որոնք հավելված են գրչի կողմից և Խիկարի հետ ոչ մի կապ չունեն։ Սկիզբը՝* Լաւ է յիստակ խորհրդով

ննջել քան պղտոր խորհրդով աղաւթս մատուցանել և վարձս ոչ առնել *(210ա)*։ *Վերջ*՝ Վասն մեղաց հաւրն զորդին մի տանջեր.—աւաց տէր զՄովսէս։ Եւ թէ հանդիպիս եզին կամ իշոյ մոլորելոյ դարձոյ առ տէրն իւր *(211ա)*։

*Ձեռագիր № 2147, ժողովածու, գրիչ՝ Մինաս, 1627 թ., էջ 194ա—209բ։*

A5 **Պատմութիւն Խիկարայ իմաստասիրի**

*Պատմության մասը համընկնում է* A3-*ին։*

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 2004, ժողովածու, գրիչ՝ Մկրտիչ Սարկավագ, 1623 թ., 60ա—75բ։*

A6 **Անխորագիր**

*Միայն մի քանի էջ հատված է, բայց ներկայացնում է Խիկարի բնագրի հնագույն օրինակը։ Այն հեշտությամբ կարելի է համարել XI դարի ընդօրինակություն, սակայն անվերապահ ճշգրիտ լինելու համար ընդունում ենք XII դարը։*

*Նկատելի է, որ պատկանում է* A *խմբին։ Հրատարակում ենք լուսապատկերով։*

*Ձեռագիր № 5465, Բանք Սողոմոնի, XII դար, էջ 101ա—103բ։*

*Այս խմբին է հարում և մի այլ բնագիր.* Խրատ Խիկարայ, զոր յուսաւ Նաղան *(Ձեռագիր № 2264, էջ 173ա—180)։ Բնագիրն ունի միայն առաջին խրատները։ Սկզբում ինչ որ չափով զուգահեռ է գնում* C *խմբին։*

*Խրատները խառն են, բարբառայնացված և տալիս են անկարևոր ընթերցումներ։ Համեմատել ենք, բայց ընթերցումները նկատի չենք առել։*

B

B1 **Պատմութիւն և խօսք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ և ի միտ առնուլ ամենայն մարդոյ, վասն շահի և աւգտութեան**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 45, ժողովածու, Լիմ, գրիչ՝ Սարգիս Եղեսացի, 1642 թ., էջ 297բ—312ա։*

B2 **Պատմութիւն և խրատք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ և ի միտ առնուլ ամենայն մարդոյ, վասն շահի և աւգտութեան**

*Պատմությունը և առակավոր խրատները բացակայում են։ Հապավվել է բնագիրը։*

*Ձեռագիր № 1865, ժողովածու, Երուսաղեմ, գրիչ՝ Թորոս Եպիսկոպոս, 1656 թ., էջ 93բ—99ա։*

B3 **Պատմութիւն և խօսք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ ամենայն մարդիք և ի միտ առնուլ, վասն շահի և օգտութեան, խիստ լաւ և պիտանի խրատ**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 679, ժողովածու, գրիչ՝ Գրիգոր Երևանցի և այլք, 1660 թ., էջ 174ա—208բ։*

B4 **Պատմութիւն և խօսք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ ի միտ առնուլ ամենայն մարդոյ, վասն շահի և օգտութեան**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 3526, ժողովածու, գրիչ՝ Միքայել, 1660 թ., էջ 202ա—223բ։*

B5 **Պատմութիւն և խօսք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ ամենայն մարդոյ վասն շահի և օգտութեան**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 3413, ժողովածու, գրիչ՝ Հակոբ Թոխաթեցի, 1709—1710 թ., էջ 13ա—45բ։*

B6 **Պատմութիւն և խրատ իմաստասիրին Խիկարայ, պարտ է ամենեցուն ի միտ առնուլ, պարտ է և արժան ուշիմ ի միտ դնել**

*Ամբողջական է։*

*Կցված է մի փոքրիկ հիշատակագրություն.* Գրեցաւ բանքս խրատական իմաստասիրին Խիկարայ ի թվականիս հայոց ՌՃԼԶ-ին, փետրվարի է, օր երկուշաբթի, որ էր բակլայ խորան, ընդ հովանեաւ սրբոյն Գէորգայ զօրավարին, ի մայրաքաղաքն Կոստանդնուպօլսի ատարտ սորին

*Ձեռագիր № 2448, ժողովածու, Պոլիս, գրիչ՝ Վարդան Գրասլեցի, 1687 թ., էջ 193բ—227։*

B7 **Պատմութիւն Խիկարայ դպրապետի և իմաստասիրի, զոր պարտ է ուսումնասիրաց ի միտ առնուլ, վասն շահի և ազտութեան ամենայն մարդոյ**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 4290, ժողովածու, գրիչ՝ Մկրտում Ագուլեցի, 1571 թ., էջ 26ա—59բ։*

B8 **Պատմութիւն և խօսք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ և ի միտ առնուլ մարդոյ, վասն շահի և օգտութեան**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 8076, ժողովածու, գրիչ՝ Թովմա վարդապետ, XVII դար, էջ 98ա—112ա։*

B9 **Խրատք պիտանի և օգտակար Խիկարայ իմաստասիրի ասացեալ**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 2732, Աստվածաշունչ, գրիչ՝ Աստվածատուր երեց, XVII դար, էջ 317ա—322ա։*

B10 **Խօսք և խրատք Խիկարայ, զոր ասաց Նաթանայ քուեր որդոյ իւրոյ**

*Ունի միայն խրատականքը։*

*Ձեռագիր № 6643, ժողովածու, գրիչ՝ Ղուկաս, XVII դար, էջ 171բ—181ա։*

B11 **Յարմարեալ պատմութիւն իմաստնոյն Խիկարայ, արարեալ խրատ վասն Նաթանայ քուեր որդոյ իւրոյ և ամենայն լսողաց և ի միտ պահողաց, զի դուռ է իմաստութեան և շահ է ամենայնի, լաւ ի միտ առնուլ**

*Բնագիրը պակասավոր է, վերջից թերթեր են ընկած, բայց Համարակալումից չի զգացվում։ Ավարտվում է այս խրատով՝* Որդեակ, կեռա դառնին և արբի լեղի և չէր դառն քան զաղքատութիւն:

*Ձեռագիր № 7032, ժողովածու, գրիչ՝ Ղազար, XVII դար, էջ 107բ—112բ։*

B12 **Անխորագիր**

*Թուղթ է պակասում 12—13, 22—23, 25—26, 26—27 թերթերի մեջ։ Համարակալումը նոր է։*

*Ձեռագիր № 6961, ժողովածու, XVII դար, էջ 1ա—30ա։*

B13 **Խրատք և խօսք Խիկարայ իմաստասիրի զոր պարտ է իմանալ և ի միտ առնուլ ամենայն մարդկան, վասն շահի և օգտութեան**

*Պատմությունը չունի, սղված է գրչի կողմից, վերջից մի քանի տող թերի է, վերջանում է.* Ասէ տէր ծառոյն, դու ի fn ժամանակդ.... *Նախադասությամբ։*

*Ձեռագիր № 3687, XVII դար, էջ 1ա—16բ*[67]*։*

B14 **Պատմութիւն և խօսք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է ի միտ առնուլ և իմանալ ամենայն մարդոյ, վասն շահի և օգտութեան**

*82բ և 83ա էջերի մեջ թերթեր են պակասում և ոչ քիչ։ Այդ պատճառով սղվել են 20-ից 173 խրատները։*

*Ձեռագիր № 697, ժողովածու, Սուչավա, գրիչ՝ Վարդան Աբեղա, 1631 թ., էջ 78ա—102ա։*

B15 **Պատմութիւն և խօսք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ և ի միտ առնուլ ամենայն մարդոյ, վասն շահի և օգտութեան**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 723, ժողովածու, Երուսաղեմ, գրիչ՝ Հովասափ վարդապետ, 1734 թ., էջ 205ա—241ա։*

B16 **Անխորագիր**

*Բնագիրն սկզբից շատ է պակասավոր ձեռագրից թուղթ ընկած լինելու պատճառով։ Սկսվում է պատմությունից՝ և* ասէ հայր իմ Խիկար յոյժ պատուական և հանոյ թուեցար: *Թերթ 8—9-ի մեջ նույնպես թղթեր են ընկած։ Սղվել են պատմությունից մի փոքր հատված և առակավոր խրատներից մի քանիսը։ Առակավոր խրատներն սկըսվում են՝* է կանգուն, զտեղի ձիուն ոչ կարէ լնուլ:

*Ձեռագիր № 8387, ժողովածու, XVII դար, էջ 1ա—10բ։*

---

[67] *Սա 3454 ձեռագրի մի մասն է, որ առանձնացվել և կազմվել է իբրև ձեռագրական նոր միավոր 3687 համարի տակ։ Մատենադարանի ձեռագրացուցակում նրանց չափսերը տարբեր են ներկայացված (3454՝ 15,5×10,9, 3687՝ 16×10), որով ազգակցության հետքերը ջնջվել են։*

B17 **Պատմութիւն և խօսք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ և ի միտ առնուլ ամենայն մարդոյ, վասն շահի և օգտութեան**

*Ամբողջական է:*

*Ձեռագիր № 8443, ժողովածու, Նոր Ջուղա, գրիչ՝ Կոստանդին դպրապետ Ջուղայեցի, 1687 թ., էջ 1ա—23ա:*

B18 **Խրատ Խիկարայ, զոր ասաց քեռորդոյն իւրոյ Նատանայ, որ է այսպէս**

*Ունի միայն խրատականքը:*

*Ձեռագիր № 2116, ժողովածու, Թավուզ, գրիչ՝ Եսայի, 1637 թ., էջ 167ա—176բ:*

B19 **Անխորագիր**

*Պատմությունը 115 էջում ընդհատվում է շատ տարօրինակ ձևով՝* Եւ ասէ փարաւոն. Մանեայ ինձ պարան յաւազէ: Եւ ես երթեալ ծակեցի զորմն պատի ի դէմ արեգականն առեալ յաւազ և փոշի չփէի զքո գէշ երեսրդ աղտեղի: Որդեակ եղեր ինձ որպէս որոգայթ, որ թաղեալ.... *Խրատը ընդհատվում է, որտեղ և ընդմիջարկված է մի վիճակահանության աղյուսակ իր բացատրագրով, ապա՝ 113ա էջից նորից շարունակվում է խրատը և վերջանում նույն տեղում:*

*Ձեռագիր № 2492, ժողովածու, 1661 թ., էջ 95ա—109ա:*

B20 **Անխորագիր**

*Պակասավոր է: Սկիզբը՝* ...զօակ, բայց թէ գնաքան քուեր որդին քո ացես, *վերջ՝* ...թէ ինչ տարայց նմա, այլ երթ և տես, զի գնալն քո լո է նմա, քան զոսկի և զարծաթ:

*Ձեռագիր № 3206, ժողովածու, XVI դար, էջ 11ա—13բ:*

B21 **Անխորագիր**

*Սկզբից թուղթ է ընկած: Սկիզբը՝* ...(իմ)աստութեամբ: Եւ ասէ արքայն. Ած զնա առ իս զի տեսից, թէ կարող իցէ:

*Ձեռագիր № 5935, ժողովածու, XVII դար, էջ 1ա—26բ:*

B22 **Անխորագիր**

*Սկզբից թուղթ է ընկած։ Սկիզբը՝* ....սասցին թէ դեղ է նմայ, աղֆատի որդին կերաւ, սասցին թէ ֆաղցեալ է *(համընկնում է* B1-*ի 10-րդ խրատին)։*

*Ամբողջ բնագիրն ընդմիջարկված է, ներկայացնում է ձեռագրից տարբեր ընդօրինակություն։*

*Ձեռագիր № 6110, ժողովածու, XV դար, էջ 21ա—42բ։*

B23 **Պատմութիւն և խօսք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ և ի միտ առնուլ ամենայն մարդոյ, վասն շահի և օգտութեան:**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 8482, ժողովածու, 1664 թ., էջ 111ա—148բ։*

B24 **Պատմութիւն և խօսք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ և ի միտ առնու ամենայն մարդոյ, վասն շահի և աւգտութեան**

*Թափասավոր է։ Գրիչն ուղղակի չի շարունակել։ Վերջ՝* Որդեակ, զգաղտնիս fn մի յայտնեբր զկնոջ fn, fանզի ոչ կարէ պահել բան ի սրտի իւրում, զի կարճամիտ է և փոfrոգի և ոչ կարէ համբերել: *(Համընկնում է* B1-*ի 61-րդ խրատին)։ Բնագրի 114բ էջում այլ նյութ է (ժամանակագրության հատված)։ Էջի վերևում գրիչը այսպիսի նշում է թողել՝* Այս Երեսս գրուած էր յառաջմանէ, կիսակատար մնաց, այն կողմն գրեցաf:

*Ձեռագիր № 519, ժողովածու, XVII դար, էջ 112բ—115ա։*

B21—24 *օրինակները համեմատված են խմբի հետ, բայց ընթերցումները հարկ չենք համարել արտահայտելու տողատակերում, որովհետև բնագրերը մեզ հայտնի են դարձել ավելի ուշ և չեն տալիս ոչ մի կարևոր ընթերցում։*



3—904

## C

C1 **Այս է իմաստութիւնք Խիկարայ դպրապետի և Սենեքարիմա արքային ասորոց և քեռորդւոյն իմոյ Ադանա և սպանումն Խիկարայ և Փարաւոնի արքային եգիպտացւոց և պատասխանիք Խիկարայ։ Ով զայս գիրս կարդայ և ի միտ առնու ամք կենացեր յաւելուն և ի մեծ հասանին։**
**Խրատք Խիկարայ, զոր ասաց և ուսոյց զՆաթան**
*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 1978, ժողովածու, Իլով, 1606 թ., էջ 23բ—33ա։*

C2 **Խրատք և իմաստութիւն ասացեալ Խիկարի իմաստնասիրի, զոր խրատեն որդիք մարդկան և ի միտ առնուն**

*Բնագիրն ընդօրինակված է Աստվածաշնչի վերջում, միևնույն գրչի կողմից։ Ունի հիշատակագրություն՝* Մինչև ցայս կատարեցաւ Խիկարս։ Գրեցաւ և խրատքս և պատմութիւնս Խիկարայ իմաստութիւն ի թվին հայոց ՋԾԿէ, յուլիս ամսոյն ի ԺԲ։ *Ծ տառը ջնջված է (=1518), բայց ոչ թե այս ձեռագրի ընդօրինակության տարին է, այլ նախագաղափար օրինակի։ Բուն հիշատակագրությունը թվագրում է 1641 թիվ.* Արդ, եղև սկիզբն գրոյս և աւարտումն ի Կոստանդինուպոլիս, ձեռամբ Աստուածատուր դպրի ի թուականութեանս հայոց ՌՂ ամի *(=1641)։*

*Ձեռագիր № 2669, Աստվածաշունչ, 1641 թ., էջ 656բ—661ա։*

C3 **Պատմութիւն և խրատ Խիկարայ իմաստնոյ**
*Ամբողջական է։*

*Ունի փոքրիկ հիշատակագրություն* ...Եւ կորեաւ չարն և բարձաւ ի միջոյ շնորհօքն աստուծոյ, նոյնպէս և ամենայն չարախօսք պատարին ի դիմաց ծառայիս աստուծոյ պարոն Մելիք Հախնազարին, զինքն անձնարարի զՔրիստոս, որ պահէ անփորձ ի թշնամեաց ամէն, եղիցի, եղիցի։

*Ձեռագիր № 713, Շատախ գյուղ, գրիչ՝ Հովհաննես երեց, 1636 թ., էջ 94ա—112ա։*

C4 **Խրատք և իմաստութիւն Խիկարայ, զոր ուսանին որդիք մարդկան**

*Համեմատական բնագիր, որ հրատարակել է Կոնիբերը, հետևյալ ձեռագրերի հիման վրա.*

*1.* Arm₁=Bod. *Բոդլեյան գրադարանի հայկական մի ձեռագիր, որը չի նկարագրված և համարակալված։ Առաջին էջը չունի։*

*2.* Arm₂=Ven. *Վենետիկի Մխիթարյան մատենադարանի № 482 ձեռագիրը, XV—XVI դարերի գրչություն։*

*3.* Apm₃=Paris 92. *Փարիզի Ազգային գրադարանի հայկական ֆոնդի № 92 ձեռագիրը։ Այս բնագիրը ինչ-որ ազգակցություն ունի մեր Մատենադարանի № 2669 (*C₂*) բնագրի հետ։ Վերարտագրված է միևնույն հիշատակագրությունը.* Գրեցաւ խիկարս և խրատք և պատմութիւնս խիկարայ իմաստութիւն ի թվ ՋՃԿԷ յուլիս ամսոյ ԺԲ: *Կոնիբերը ոչինչ չի ասում տարեթվի մասին, արդյոք այստեղ նույնպես Ճ-ն գծով ջնջված է, թե՞ ոչ, ուստի չենք կարող ասել որ թվականն է ճիշտ՝ ՋՃԿԷ=1618, թե ՋԿԷ=1518։ Թերևս Փարիզի ձեռագիրն այն նախագաղափարն է, որ ձեռքի տակ է ունեցել* C₂*-ի գրիչը, կամ երկուսի համար էլ եղել է մի ընդհանուր աղբյուր։ Այդ բնագրերը տարընթերցվածներով ևս իրար չափազանց մոտ են։*

*4.* Apm₄=Paris supp 58. *Փարիզի ազգային գրադարանի հայկական ֆոնդի լրացուցիչ № 58 ձեռագիրը, XVII դար, բնագիրը լրիվ չի պահպանված։*

*5.* Apm₅=Paris 131. *Փարիզի ազգային գրադարանի հայկական ֆոնդի № 131 ձեռագիրը, հավանաբար XVII դար, էջ 213—228։*

*6.* Apm₆=Paris 69. *Փարիզի ազգային գրադարանի № 69 ձեռագիրը, XVII դար, մուտքը չունի, բնագիրն սկսվում է խրատներից։*

*7.* Arm₇=Bod. Canon. *Բոդլեյան գրադարանի արևելյան № 131 ձեռագիրը, կանոնգիրք, գրված է Նոր Ջուղայում, գրիչը՝ Հազրապետ, 1637 թ., 1—36 էջ։ Բնագրին հաջորդում են յոթ իմաստասիրաց և Բարեղամի ու Հովասափի պատմությունները։*

*8.* Apm₈=Edjm 2048. *Էջմիածնի մատենադարանի № 2048 ձեռագիրը. այժմ նոր ցուցակով կրում է 2018 համարը։ 1891 թվականին Կոնիբերը օգտվել է այս բնագրի միայն մուտքից և առաջին 18 խրատներից։*

*Բնագիրը պատկանում է* D *խմբին և կնկարագրվի իր տեղում։*

*Կոնիբերին հայտնի են Էջմիածնի №№ 1633, 1995, 1986, 51 (նոր ցուցակով համապատասխանաբար №№ 1865, 1978, 2004, 45) ինչպես նաև՝ Բրիտանական թանգարանի մի ձեռագիր (XVIII դար) և Բեռլինի գրադարանի № 83 ձեռագիրը (1698 թիվ), բայց դրանցից նա չի օգտվել։*

*Նա նշում է նաև Խիկարի երեք հրատարակություն, 1708, 1731 և 1862 թվերի, որոնցից նույնպես չի օգտվել*[68]*։*

$C_5$ **Խօսք և իմաստութիւն ասացեալ Խիկարի իմաստասիրի, զոր խրատեն որդիք մարդկան և ի միտ առնուն**

*Ամբողջական է։*

*Բնագիրն ունի փոքրիկ հիշատակագրություն՝* Կատարեցաւ Խիկարս: Գրեցաւ և խրատքս և պատմութիւնս Խիկարայ իմաստասիրի ի թվին ՌՂ մարտի ամսոյ ԺԱ և Քրիստոսի փառք յաւիտեանս ամէն *(119ա)։*

*Ձեռագիր № 6712, ժողովածու, 1641 թ., էջ 112բ—119ա։*

## D

$D_1$ **Պատմութիւն և խրատք իմաստնոյն Խիկարայ**

*Ամբողջական է։*

*Կոնիբերին ծանոթ է եղել այս բնագիրը*[69]*։*

*Ձեռագիր № 2018, ժողովածու, Ստամբուլ, գրիչ՝ Սահակ, 1621 թ., էջ 265ա—286բ։*

$D_2$ **Պատմութիւն և խրատք իմաստուն Խիկարայ**

*43 և 44 թերթերի մեջ թուղթ է պակասում, որ ընդգրկում է 57-ից մինչև 107 խրատները։*

*Բնագիրը չափազանց նման է* $D_1$*-ին։ Կարելի է ենթադրել, որ* $D_1$*-ից է գաղափարված։ Երկու բնագրերի խրատականքը վերջանում է միակերպ հավելումով՝* Իսկ որ առնէ զխրատքս զայսոսիկ գովի յաստուծոյ և ի մարդկանէ և եղիցի փառաւոր և պատուական աստ և ի հանդերձելումն:

*Ձեռագիր № 464, ժողովածու, գրիչ՝ Սուքիաս Ջուղայեցի, XVII դար, էջ 40ա—56ա։*

$D_3$ **Պատմութիւն և խրատք իմաստնոյն Խիկարայ**

*Ամբողջական է։*

*Շատ նման է* $D_{1,2}$ *բնագրին։ Խրատականքն ունի նույն հավելումը։*

*Ձեռագիր № 7993, ժողովածու, գրիչ՝ Ալեքսան, 1672 թ., էջ 273ա—287բ։*

---

68 „The Story ...", էջ XXIV—XXVI։

69 *Կոնիբերը ենթադրում է, որ այն գրված է մոտավորապես 1600 թվականի շրջաններում* (about A. D. 1600)։

D₄ **Պատմութիւն և խրատ Խիկարայ իմաստնոյ**

*Ամբողջական է։ D խմբի մյուս միավորների նկատմամբ ավելի շատ ընթերցումներ է տալիս։*

*Վրաստանի ձեռագրերի ինստիտուտի հայերեն ձեռագրերի ֆոնդ, ձեռագիր № 172, XVII դար, էջ 134ա—188ա։*

D₅ **Բանք Խիկարայ խրատական վասն ուսման իմաստասիրաց**

*Պատմությունը և առակավոր խրատները չունի, գրչի կողմից չի արտագրված։*

*Ձեռագիր № 8699, Ժողովածու, 1671 թ., էջ 47բ—64բ։*

D₆ **Խրատ իմաստնոյ Խիկարայ**

*Մուտք չունի։ Վերջից թերի է, ձեռագրից թուղթ ընկած լինելու պատճառով։ Վերջ՝* Որդեակ, եղեր դու որպէս զոչիլ նացի, որ եկեր զշտէ.... *(ընդհատվում է)։ Համընկնում է D խմբի առակավոր 12-րդ խրատին։*

*Պատմության մասը խիստ համառոտված է։ D-ի հետ զուգահեռ է գնում մինչև* և ոխացաւ Նաղան ընդ իս և մահու սպառնար անձին իմոյ *տողերը, այնուհետև՝* Եւ իմ զեկուցեալ արքային և ետ զնայ ի ձեռս իմ: Եւ տարեալ ի տուն իմ կապեցի շղթաիւք ի սիւն մի քարեա ի դրան սրահի իմոյ և եդի պահապան զմի ի ծառայից իմոց, զի ի մտանել և յելանելն իմ զոր ինչ ասիցեմ, գրիցէ: Եւ առեալ բիր հարկանէի ի կողս նորա: Եւ ասէ. Զի՞ ոխացար ի վերա իմ այսպէս, ով հայր իմ Խիկար: Եւ ես ասեմ ցնայ:

***Բնագրի №№ 19, 27, 67, 84, 94, 105, 118, 147, 161 և 204-րդ խրատները խմբում զուգահեռ չունեն, բայց տեղադրել ենք, դիտելով որ աղբյուրին հարազատ են և ոչ՝ հետամուտ։***

*Ձեռագիր № 7974, Ժողովածու, XVIII դար, էջ 17ա—22բ։*

*Այս խմբին է հարում և մի բնագիր (ձեռագիր № 9322, էջ 2 աբ)։ Սկզբից և վերջից թերի, ձեռագրից թուղթ ընկած լինելու պատճառով։ Պահպանվել են միայն մի քանի առակավոր խրատներ։ Սկիզբ՝* ...չար է որ վարէ զիս: Որդեակ, տեսի մաքին որ ի սպանդանոցն ածին... *վերջ՝* Որդեակ, նմանեցար օձին, որ պառեցօ ի մասրենին և անկօ ի գետն և տեսեալ գայլուն և ասէ. Անայ չար ի չար են նեծեալ ... *(ընդհատվում է)։*

խառը դասավորություն ունի և հավանաբար սխալաշատ, որովհետև վերջին խրատը նույնն է սկզբի խրատի հետ, որից միայն հինգ բառ է մնացել։

*Աննշան հատված է, և բնագիրը կազմելիս նկատի չենք առել։*

## E

$E_1$ **Խաւսք և խրատք Խիկարայ իմաստնոյ, զոր ետ քրոջ որդոյն իւրոյ Նաթանայ**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 3081, ժողովածու, գրիչ՝ Զաքարիա աբեղա Երզնկացի, 1617 թ., էջ 196ա—209բ։*

$E_2$ **Խաւսք իմաստասիրացն, խրատք ճարանց իմաստնով առաքող**

*Մուտքը չունի, սկսվում է խրատներից։*

*Ձեռագիր № 527, ժողովածու, գրիչ՝ Տրդատ, 1663 թ., էջ 53բ—63ա։*

$E_3$ **Խաւսք իմաստասիրացն, խրատք ճարանց իմաստնով առաքող**

*Մուտք չունի, սկսվում է խրատներից։*

*Բնագիրը բառացիորեն համապատասխանում է* $E_2$*-ին։ Անպատճառ արտագրված է նրանից։*

*Ձեռագիր № 613, ժողովածու, գրիչ՝ Զաքարիա քահանա, 1664 թ., էջ 44ա—52ա։*

$E_4$ **Պատմութիւն և խօսք Խիկարայ և իմաստասիրի, զոր պարտ է ի միտ առնուլ և իմանալ ամենայն մարդոյ, վասն շահի և օգտութեան հոգւոյ և մարմնոյ**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 1403, ժողովածու, XVII դար, էջ 239ա—246ա։*

$E_5$ **Պատմութիւն և խօսք Խիկարայ իմաստասիրին, զոր պարտ է ի միտ առնուլ և իմանալ ամենայն մարդոյ վասն շահի և ագտութեան հոգւոյ և մարմնոյ**

*Ամբողջական է։ Ունի փոքրիկ հիշատակագրություն՝* Արդ. գրեցաւ խիկարայ պատմութիւնս ձեռամբ Համթեցի Ղազար վարդապետին, որ է մականուամբ Շահին, ի դուռն սուրբ էջմիածնի, թվին ՌՃԽԵ։

*Ձեռագիր № 5495, ժողովածու, էջմիածին, գրիչ՝ Ղազար Համթեցի, 1696 թ., էջ 79ա—91ա։*

E6 **Խաւսք և խրատք Խիկարայ իմաստնոյ, զոր ետ քրոջ որդոյ իւրոյ**

*Մուտք չունի, սկսվում է խրատներից, լիովին համապատասխանում է* E1*-ին։*

*Բնագրին նախորդում է՝* Խաւսf իմաստնայսիրական առ աւտարս և մերձաւորս թագաւորաց, զի յուսանին սովաւ և իմաստնասցին (L11)։

*Ձեռագիր № 6708, ժողովածու, 1635 թ., էջ 206ա—219ա։*

*Այս խմբի մեջ են մտնում նաև տպագրերը։ Համեմատության համար դիմում ենք երկու հրատարակությունների։*

Fa **Գիրք պատմութեան, որ կոչի Պղնձէ քաղաք և բանք խրատականք և օգտակարք Խիկարայ իմաստնոյ և այլ բանք պիտանիք, տպագրեցեալ... ի թուին հայոց ՌՄԽԱ=1792, յունվար Ը, ի տպարանի Յոհաննեսի և Պօղոսի։**

Fb **Պատմութիւն Պղնձէ քաղաքին, յորում են բանք խրատականք եւ օգտակարք Խիկարայ իմաստնոյ եւ այլ բանք պիտանիք, տպագրեալ ի Տփխիս, ի տպարանի Ներսիսեան դպրոցի հայոց ընծայեցելոյ յազնուական Աղայ Գէորգայ Արծրունոյ, 1857։**

Fab*-ն լիովին արտահայտում է իրարից որոշ չափով հեռացող բոլոր տպագրերը։*

Fab*-ի մեջ մտնում են նաև XIX դարի վեց ձեռագիր, որոնք անսլայման գաղափարված են* Պղնձե fաղաfի *ժողովածուներից և ընդգրկում են տպագրի մյուս նյութերը ևս։*

*1.* Խրատf պիտանիf և օգտակարf, զոր ասացեալ է Խիկարայ իմաստնոյ (Fa)

*Ամբողջական է։ Վերջում գրված է՝* Յիշատակարան տպողիս Ոսկերիչ Վարդան ամենաետենեալս ոգի ողորմի աստուած յուրեան ողորմեսցի, ամէն *(114ա)։*

*Ձեռագիր № 8963, ժողովածու, XIX դար, էջ 45բ—70ա։*

*2.* Խրատf պիտանիf և օգտակարf, զոր ասացեալ է Խիկարայ իմաստնոյ (Fa)

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 10166, ժողովածու, Շուշի, գրիչ՝ Մովսես Մահտեսի, 1840 թ., էջ 40ա—55բ։*

3. Պատմութիւն Խիկարայ իմաստնոյ (Fa)

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 9428, ժողովածու, 1846 թ., էջ 39ա—63ա։*

4 ხრატქ პიტანიქ იევ ოგტაკარქ ზორ ასაცეალ ე ხიკარა იმას-ტნუ (Fa)

*(Խրատք պիտանիք և օգտակարք, զոր ասացեալ է Խիկարա իմաստնու)։*

*Ամբողջական է, վրացատառ հայերեն։*

*Պահպանակի վրա ունի մի փոքրիկ հիշատակագրություն՝* Переписал из армянской книги 1869 г. *Ձեռագրի վերջում ևս մի այլ հիշատակագրություն՝* Արտագրեցի յայրենից այս պատմութիւն 19... *Թերևս ընդօրինակության տարեթիվն է, որ չի լրացվել, բայց առաջին հիշատակագրության 1869-ը չի վերաբերում նախօրինակին, որովհետև այդ թվականին* Պոնձե քաղաքի *հրատարակություն մեզ հայտնի չէ։ Պետք է ընդունել, որ դա է ընդօրինակության տարեթիվը։*

*Ձեռագիր № 9265, ժողովածու, 1869 թ., էջ 44ա—66ա։*

5. Խրատք պիտանիք և օգտակարք, զոր ասացեալ է Խիկարայ իմաստնոյ (Fb)

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 8724, ժողովածու, XIX դար, էջ 43բ—64բ։*

6. Խրատք պիտանիք և օգտակարք, զոր ասացեալ է Խիկարայ իմաստնոյ (Fb)

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 10107, ժողովածու, Շուշի, գրիչ՝ Անդրեաս Մուսայելեան Շուշեցի, 1868 թ., էջ 35ա—49բ։*

G

**Խօսք Խիկարի դպրապետի և իմաստնասիրի, Սենեքերիմայ արքայի Ասորեստանի և Նինուէի**

*Ինքնատիպ բնագիր է։ Ձեռագիրը քայքայված է և շատ տեղեր*

*մնում են անընթեռնելի։ Բնագիրը № 2961-ից հետո (A₁) ամենահինն է և միակ օրինակով կազմում է խումբ։*

*Ձեռագիր № 5599, Ուրել (Կիլիկիա), գրիչ՝ Ստեփաննոս, 1347 թ., էջ 222ա—232բ։*

*Այս խմբերով կազմված բնագրերը մենք կդիտենք իբրև տարբերակ։*

*Խիկարի հայկական խմբագրությունը վեց տարբերակ ունի՝* ABCDEG*։* A*-ի մեջ մտնում է մի բնագիր, որը գալիս է XIV դարից (ձեռագիր № 2961, 1321 թվականի գրչություն),* G*-ն, որ ներկայանում է մի ձեռագրով, նույնպես XIV դարի է (ձեռագիր № 5599, 1347 թվականի գրչություն), քառորդ դար միայն ավելի ուշ քան առաջինը։*

*Այդ երկու բնագրերը, սակայն, արդեն բավական ուժեղ տարամիտվում են։*

*Դժբախտաբար* A₁ *ձեռագիրը մուտք և պատմություն չունի, որպեսզի կարողանայինք համեմատել, բայց կդիմենք նույն տարբերակի մի այլ ձեռագրի՝* A₂*-ին, որն ուղղակի առնչվում է* A₁*-ի հետ։*

*Բերենք մուտքից մի երկու հատված։*

A

*Յամի Սենեքարիմայ՝ արքայի Ասորեստանեաց և Նինուէի, ես՝ Խիկար, դպիր Սենեքարիմ արքայի, ստացայ ինձ ծառայս և աղախնեայս և ստացուածս բազումս, շինեցի ինձ ապարանս Կ և ոչ էի կարօտ ընչից, բայց զաւակ ոչ ունէի, որ ժառանգէր զինչս իմ։ Եւ յիշեցի զօր մահուան իմոյ, զի ամենեքեան ծաղր արասցեն զիս, թէ Խիկար դպիր և իմաստուն մեռաւ և ոչ կայր որդի, որ թաղեր և ոչ դուստր, որ լայր զնա։*

G

*Յամս Սենեքարիմայ՝ արքայի Ասորեստանի, ես՝ Խիկար դպրայպետ էի նմայ։ Մինչ դեռևս տղայ էի, հրաման եղև ինձ թէ որդի քեզ չէ հրամայած յաստուծոյ լինելոյ։*

*Եւ մեծութիւն յոյժ ստացեալ էր իմ։ Կ կին առի և Կ ապարան շինեցի և Կ ամաց եղէ և ոչ եղև ինձ որդի ի նոցանէ։*

*Տարբերությունը միայն բոլորովին անկախ շարահյուսության մեջ չէ։* G *բնագրում Խիկարին տղա ժամանակ հայտնում են, որ ինքը ժառանգ չի ունենալու («Մինչդեռ ես տղա էի հրաման եղև ինձ, թէ որդի քեզ չէ հրամայած յաստուծոյ լինելոյ»), որ նա 60 կին է առել, իսկ* A *տարբերակը՝ չունի։*

*Շարունակենք։*

| A | G |
| --- | --- |
| *Եւ զմտաւ ածեալ մտի առաջի չաստուածոցն և արկի խունկս և մատուցի զոհս և ընծայս բազումս և աղաչեցի այսպէս ասելով. Ով տեարք իմ չաստուածք, տուք ինձ զաւակ արու, զի մի անժառանգ մնացից։* | *Յայնժամ ես՝ Խիկար, շինեցի բագինս մեծ, վառեցի հուր և արկի ի վերայ խունկս անուշահոտս և նուերս, զոհեցի զոհս և մատուցի ընծայս և այսպէս ասէի յաղաչելն իմում. Ով տեարք իմ և աստուածք, Բելշիմ և Միրշահմին, Էշարիշէ և Իշեմիշահ եթէ հրամայեցեք ինձ արու որդի, զի մի անժառանգ մնացից։* |

*Ինչպես տեսնում ենք բնագրերը ուղղակիորեն հեռու են իրարից և դա, նույնիսկ, շատ ավելի ուժեղ է արտահայտված, քան երկու առանձին խմբագրությունների մոտ (ասորական և արաբական)։ Այսպես.*

| *Ասորական խմբ.* | *Արաբական խմբ.* |
| --- | --- |
| *Նինվեի թագավոր Սենեքերիմի ժամանակ, երբ ես Ախիկարս գանձապահ և դպիր էի։* | *Սարհադոմի որդի Սենեքերիմի՝ Նինվեի ու Ասորեստանի թագավորի, ժամանակ ես՝ Խիկարս, նրա նախարարն էի ու դպիրը։* |
| *Եւ երբ երիտասարդ էի, գուշակները, մոգերը և իմաստունները ինձ ասացին, թե դու երեխա չես ունենալու։* | *Եվ երբ երիտասարդ էի, կախարդները, աստղագետներն ու գուշակները ինձ ասացին թե դու զավակ չես ունենալու։* |
| *Ես մեծ հարստություն էի ձեռք բերել և լիացած էի առատությամբ։ 60 կին ունեցա և նրանց համար կառուցեցի 60 պալատ՝ մեծ, շքեղ և հոյակապ, ինչպես նաև՝ բազմաթիվ տներ, և 60 տարեկան էի, դեռևս որդի չունեի։* | *Եվ ես մեծ հարստություն ունեի։ Ձեռք էի բերել մեծ բարիք, 60 կին էի առել։ Եվ հրամայեցի կառուցել ինձ 60 ապարանք՝ ճարտարապետորեն գեղեցիկ տներ, և ես 60 տարեկան էի և դեռևս որդի չունեի։* |

*Բնագրերի խրատականքը նույնպես չի զուգամիտվում։ Նրանք ունեն ուղղակի տարբեր շարք և անհավասար թվով խրատներ։ G բնագրում բացակայում է խրատների 57 և առակավոր խրատների 22 միավոր, A բնագրում խրատների 37 և առակավոր խրատների 2 միավոր։*

*Սակայն տարբերությունը դրանով չի սպառվում։ Միևնույն խրատները տալիս են բավական ուժեղ ընթերցումներ։ Բերենք մի երկու օրինակ.*

| A | G |
|---|---|
| *1. Որդեակ, մի՛ առնուր կշռով մեծաւ և տալ փոքրով և ասել թէ շահեցայ, զի անօրէնութիւնք և չարութիւնք են առաջի աստուծոյ։ Գուցէ բարկասցի աստուած ի վերայ քո և զոր ունիցիս՝ տացէ ի ձեռս օտարաց։* | *Որդեակ, մի՛ առնուր կշռով մեծաւ և տալ փոքրով և [ասաս]ցես ի սրտի քում եթէ շահեցայց և ինչք յաւելուն ի տուն իմոյ, [զի] անօրէնութիւն և չարիք են։ Գուցէ հայեսցի աստուած յերկնից և տեսանիցէ [զ]քեզ և դարձուցանիցէ զերեսս իւր ի քէն և իբրև յանօրինէ և յամբար[տաւանէ] երկինք և երկիր չեն բաւական տանել դատաստանի քո։* |
| *2. Որդեակ, եթէ կամիցիս յաստուծոյ խնդրել ինչ, ի կամաց նորա մի՛ խոտորիր։ Պահեա զպատուիրանս նորա, երկիր ի նմանէ և սրբութեամբ կաց առաջի նորա, և յաւելցէ ի ժամանակս քո։* | *Որդեակ, եթէ խնդ[րեսց]ես ինչ յաստուծոյ, զբանիւք նորայ մի՛ յանցանիցես։*<br>*Որդեակ, պահեա զպատ[ուիր]անս աստուծոյ և զօրենս և մի՛ մոռանար և մի՛ մեղանչէր և բարի լինիցի քեզ։* |
| *3. Որդեակ, սիրեա զկին քո, զի մարմին քո է և զհետ կնոջ օտարի մի՛ երթար, զի գործդ մահաբեր է և չար է առաջի աստուծոյ և մարդկան։* | *Որդեակ, սիրեա զկին քո, զի մարմին քո է և կցորդ կենաց քոց և մայր որդոց քոց և յոյժ աշխատի սնուցանել զորդիս քո։* |
| *4. Որդեակ, թէ կամիս իմաստուն լինել, պահեա զլեզու քո ի շատախօսութենէ և նայեա առաջի աչաց քոց և լիցիս իմաստուն առաջի ընկերաց։* | *Որդեակ, եթե կամեսցիս իմաստուն լինել, յորժամ ի մէջ ընկերաց ըմբես գինի մի՛ շատախօս լինիր, ունկն դիր, զի ի բազում խօսից կռիւ լինի և կռուեն ապանութիւնք։* |

Ինչպես տեսնում ենք բնագրերը որոշակիորեն հեռու են իրարից և տալիս են այնպիսի ընթերցումներ, որ դժվար կլիներ միևնույն աղբյուրից արտածել։

Մենք կարող ենք շարունակել, բայց այսքանն էլ բավական է դրանք համարելու առանձին խմբագրություն և ոչ տարբերակ։

Մյուս խմբերը կազմված են ուշ շրջանի բնագրերից, բայց դա քիչ բան է ասում, քանի որ հնարավոր է ժամանակով անհամեմատ նոր ձեռագիր, ընդօրինակված հին ու լավագույն գրչությունից, որն ավելի է արժեք ներկայացնում, քան մի հին, անկանոն բնագիր։

Տեսնենք, թե այդ տարբերակները ինչ առնչություն ունեն A և G խմբագրությունների հետ։

B-ն մեծ չափով համերաշխում է A խմբագրությանը։ Խրատների շարքը փոքրիկ բացթողումներով ծածկում է A-ին, իսկ ամբողջ բնագիրը համեմատելի է, բայց առայժմ չենք պնդում, որ B-ն ծագում է A-ից։ Միջնադարյան բնագրերը հաճախ կարող են ունենալ

տարբեր աղբյուրներ, ներկայացնել տարբեր թարգմանություններ, բայց, նույնիսկ, համեմատելիության սատիճանի համերաշխել իբար, օրինակ, ասենք, Դիոնիսիոս Արիոպագացու երկու թարգմանությունները.

Ձեռ. № 110, էջ 5ա.

Ամենայն տուրք բարի և ամենայն պարգև կատարեալ ի վերուստ են իջեալ առ ի Հօրէն լուսոյ։ Այլ և ամենայն Հայրաշարժ լուսեղինութեան յառաջ ճանապարհ ի մեզ բարետրապէս ընթացեալ։ Դարձեալ որպէս միացուցիչ զօրութիւն ի վերին կոյս ձգտեցուցանել զմեզ պարզէ և դարձուցանէ առ ժողովրդին Հօր միաւորութիւն, աստուածաբար պարզութիւն։ Քանզի ի նմանէ են ամենեքեան և ի նա որպէս սրբազանն ասաց բան։

էջ 6ա.

Եւ զիշխանականն և զերիշխանականն աստուածապետութեան Հօր լուսաւորութիւն, որ զհրեշտակաց տպաւորական նշանակօք երևէցուցանէ մեզ զերանական քահանայապետութիւնս աննիւթ և անդողդոջ աչօք մտացս ի ներքս ընկալեալ դարձեալ ի նմանէ ի պարզն նորա ճառագայթ ձգեսցուք։

Ձեռ. № 49, էջ 4ա.

Ամենայն տուրք բարի և ամենայն պարգևք կատարեալ ի վերուստ են իջեալ առ ի հաւրէն լուսոյ։ Այլ և ամենայն Հայրաշարժ լուսերեւութեան յառաջ ճանապարհ ի մեզ բարետրապէս ընթացեալ։ Դարձեալ որպէս միացուցիչ զաւրութիւն ձգտեցուցանէլով զմեզ պարզէ և դարձուցանէ առ ժողովողին հաւր միաւորութիւն և աստուածաբար պարզութիւն։ Քանզի ի նմանէ են ամենայնք և ի նա որպէս սրբազանն ասաց բան։

էջ 5ա.

Եւ զերիշխանական աստուածապետութեան հաւր լուսաւորութիւն կամ զհրեշտակաց տպաւորականաւք նշանակաւք երևեցուցանէ մեզ երանական քահանայպետութիւնս։ Աննիւթաւք և անդողդողաւք աչաւք ի ներքս ընկալեալք, դարձեալ ի նմանէ ի պարզն կոյս նորա ձգտեսցուք ճառագայթ։

Առաջին թարգմանությունը կատարվել է VIII դարում Ստեփանոս Սյունեցու, իսկ երկրորդը՝ XVII դարում Ստեփանոս Լեհացու կողմից[70]։

---

[70] Ստեփանոս Լեհացին իր թարգմանության մասին «Յառաջաբանութեան» մեջ գրում է. «Նախ քան զձեռն արկել յիրողութիւնս, արժան վարկանիմ պատճառ արտադրել, թէ վասն էր համարձակեցայ վերստին թարգմանութիւն առնել։ Մի գուցէ թուեսցի ումեք աւելորդ զոլ աշխատութիւնս մեր։

Արդ վասն զի թարգմանութիւն սրբոյն Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսի էր դժուարիմաց և բնաբանն ի բազում տեղիս փոփոխեալ և մեկնութիւն առ ի սրբոյն Մաքսիմոսէ արարեալ կիսակատար թարգմանեալ, քանզի ոչ եթէ ինքն սուրբն Ստեփաննոս մեկնեաց, որպէս ոմանք կարծեն, այլ ի յունաց բարբառոյ ի մերս թարգմանեաց, վասն որոյ ես Ստեփաննոս Իլովացի յետին ի բանասիրացն ի խնդրոյ եղբարցն ուսումնասիրաց ի գուսն սրբոյ աթոռոյ էջմիածնի համարձակեցայ միւս անգամ թարգմանել ի լատինացւոց բարբառոյ ի հայոց լեզու» (ձեռագիր № 49, էջ 2ա)։

Միջնադարին այնքան էլ չի հետաքրքրում հեղինակային ինքնության հարցը։ Նրանց ավելի շատ նյութը ներկայացնելու գաղափարն է մղում, իսկ հեղինակը պահում է իրեն ստվերի տակ։ Այդ մտայնության հետևանքն է, որ հաճախ նրանք ավելորդ են համարում, նույնիսկ, անուններ դնել երկի վրա և մյուս կողմից՝ իրենց թույլ են տալիս ազատորեն քաղելու անհրաժեշտը, պակասը միայն լրացնելով։ Այդպես է վարվել Ստեփանոս Լեհացին։

Դա հնարավոր է նաև մեր բնագրի նկատմամբ։ Այն ունի ինքնահատուկ, սեփական ընթերցումներ և խրատների մի ամբողջ շարք (77 խրատ), որ բացակայում է A խմբագրությունում։ B-ն ընդգրկում է ավելի շատ թվով ձեռագրեր, քան մյուս բոլորը։ Այդպիսով այն ամենատարածված տարբերակն է։

Մյուս տարբերակները ևս չեն զուգամիտվում A կամ G խմբագրություններին։ C-ն ավելի համառոտ է, բաց է թողնում առանձին դրվագներ, ունի տարբեր շարք և խրատների այլ բնույթ չորս բանքով, որը հատուկ է միայն այդ տարբերակին։ D-ն ամենաընդարձակն է, ունի շուրջ 210 պատմողական և 40 առակավոր խրատներ, մանրամասված է նաև պատմության մեջ։ E-ն ձգտում է G խմբագրությանը, բայց ոչ բացահայտ։ C և D տարբերակները գրաբարյան են, բարբառային և ժողովրդական ձևերով միահյուս, իսկ E տարբերակը ավելի բարբառային։ Այդ չորս բնագրերն էլ թույլ են տալիս փոխադարձ ներխուժումներ, որոնք հաճախ ծածկում են իրար։

Բնագրերից յուրաքանչյուրն ունի այնպիսի ինքնահատուկ բնույթ, որ դժվար է որևէ նախապատվություն տալ։

Այդպես։ Այնքան փոփոխություններ կրած այս զրույցը, որն իր մեջ արդեն խմբագրություններ ունի, անկարելի է ներկայացնել մեկ բնագրով։ Նման փորձ արեց Կոնիբերը, բայց անհաջող։ Նրա ձեռքի տակ եղել են տարբեր խմբերի ձեռագրեր, որոնց բնույթը չի արտահայտվել։ Էջմիածնի № 2048 ձեռագիրը մեր $D_1$-ն է, որի միայն սկզբի 18 խրատներից է օգտվել Կոնիբերը, իսկ Canon-ը հավանաբար պատկանում է A խմբին։ Նրանց տարբերությունները ստացել են սովորական ընթերցումների բնույթ։

Համահավաք բնագիր նույնպես չի կարելի։ Առհասարակ այն չի ելնում գիտականության սկզբունքներից։ Ստեղծել մի երրորդը, հենվելով բոլոր ձեռագրերի կամ ձեռագրախմբերի նախնական դիտվող ընթերցումների վրա, բոլոր դեպքերում պայմանական է, քանի որ անկարելի է հավաստել։ Համահավաք—դեռևս չի նշանակում

աղբյուրների և բանասիրական տվյալների օգնությամբ վերակազմել բնագիր։ Դա այլ խնդիր է և մտնում է հետազոտության բնագավառը։

Միակ ուղին բնագրերը համադրությամբ ներկայացնելն է։ Դա նույն համեմատական բնագիրն է՝ ամբողջական և զուգահեռ ընթերցումներով։ Բայց այս դեպքում անհնար է տեխնիկապես, ուստի մենք հաջորդաբար կտանք բոլոր խմբերը, իսկ յուրաքանչյուր խումբ իր համար կկազմի մի համեմատական բնագիր։ Խմբերը ներկայացվում են լրիվ, նրանց կազմի մեջ մտնող ձեռագրական օրինակները՝ անհրաժեշտ դիտվող ընթերցումներով։ Այսպիսով լիովին արտահայտվում են զրույցի ձեռագրական աղբյուրները, իրենց ամբողջ բազմազանությամբ։

Բնագիրը կազմելիս նկատի ենք ունեցել ոչ թե միայն նախնական դիտվող ընթերցումները, այլ ինչ հատուկ է և բնորոշ տվյալ խմբին-տարբերակին, երբեմն եթե, նույնիսկ, նախընտրելի չէ։

Դա թերևս շեղում է ընդհանուր սկզբունքից, քանի որ գիտական բնագրի նպատակն է հնարավոր չափով հստակել աղբյուրը, կամ ձգտել հասնելու ճշգրտումների, բայց այս դեպքում անհրաժեշտաբար ընտրել ենք այլ ուղի։

Երբ հայտնի չէ թարգմանական և ոչ մի տվյալ, ինչպես և ինչ աղբյուրից է գալիս այն և երբ զրույցը հասել է մեզ մեկից ավելի տարբերակներով, հետագա գրչությամբ որևէ բնագրի մեջ նախնականը վերականգնելու խնդիրը դառնում է անիմաստ։

Ուղղումներ արվել են միայն նույն տարբերակի շրջանակներում, չդիմելով և ոչ մի փոխառության, այլապես կարող էին խախտվել տարբերակի մեջ եղած սահմանները։

Բանասիրության պահանջն է զրույցի յուրաքանչյուր խմբագրություն, բնագիր կամ տարբերակ անաղարտ ներկայացնել, որը հնարավորություն կտա պատասխանելու շատ հարցերի։

ա) Ինչ առնչություն ունեն տարբերակները միմյանց հետ և ինչպես են առաջացել։

բ) Նրանցից որն է ավելի նախնական և մոտ առաջին թարգմանությանը։

գ) Օտար որ խմբագրությունից է կատարվել թարգմանությունը։

դ) Եղել են մեկ, թե զուգահեռ թարգմանություններ։

ե) Ի՞նչ զարգացում և փոփոխություններ են ապրել տարբերակները։

զ) Որն է հայ մատենագրության մեջ հաճախ պատահող Խիկարյան առակների աղբյուրը։

*Միայն տարբերակների չաղարտված պատկերը ունենալուց հետո և զուգորդաբար քննելով օտար բոլոր խմբագրությունները կարելի է խոսել զրույցի նախնական ընթերցումների մասին հայ մատենագրության սահմաններում, ինչպես և, առհասարակ, իբրև միջազգային գրական հուշարձան*[71]*։*

*Սակայն երբ մի տարբերակը համեմատելի է մյուսին, մենք առանձին չենք ներկայացրել, ինչպես A-ն և B-ն, և, որպեսզի ընդգրծվի, B-ի ընթերցումները տալիս ենք A խմբից հետո։*

*B-ի այն խոսքերը, որոնք A-ի մոտ զուգահեռներ չունեն և լիովին համեմատելի են Խոսք իմաստասիրացին (L) արտահայտել ենք նրա տողատակում։*

*Այդ քայլը ճիշտ կարելի է համարել միայն այն դեպքում, եթե ընդունվի, որ B-ի հավելյալ խոսքաշարը օտարամուտ է։ Մենք այդպես էլ կարծում ենք։*

*Այն խոսքերը, որոնք խմբի մեջ չունեն զուգահեռներ և դուրս են մնում հիմքի խոսքաշարից, իբրև հավելված, տալիս ենք տարբերակների խոսքականքից հետո։*

*Համեմատական բնագիրը կազմելիս առաջնորդվել ենք հետևյալ սկզբունքներով.*

*Սակավ դեպքում է միայն, որ միջամտում ենք հիմքի բնագրին, վրիպակներ, բացթողումներ և այլն, ինչպես նաև՝ ուղղագրական որոշ շտկումներ։*

*Երկգրությունների դեպքում պահպանել ենք մի ձևը, որը համարվում է ավելի ճիշտ, կամ ավելի ընդհանրական։*

*Աւ երկբարբառը տալիս ենք 0 նիշով և հակառակը, եթե չարաշահված է 0-ն, ինչպես 5599 ձեռագրում։*

*Տողատակերում չենք արտահայտել.*

*ա) գրչական բացահայտ վրիպակները, բայց եթե դրանք որոշ բան են հուշում, ասենք՝ ձեռագրերի մեջ ազգակցություն, պահպանել ենք։*

*բ) դրափոխված կամ շրջուն շարադասությամբ նախադասությունները։*

*գ) աւ և 0 ուղղագրական տարբերությունները։*

---

71 *Այդ հարցերին կնվիրվի մեր հաջորդ աշխատանքը, որտեղ զուգահեռաբար կքննվեն նաև բանասիրական և գրականագիտական շատ խնդիրներ, որոնք արծարծվել են, բայց դեռ լուծում չեն գտել բանասիրության մեջ։*

*դ) անտեղի գործածված բառաձևերջի յ կիսաձայնը և ըմեադրու-թյունը։*

*ե) բաղբառային կրկնվող ձևերը և այլ մանր ընթերցումներ, ո-րոնք ոչ մի բանով չեն կարող օգտակար լինել և ավելորդ կծանրա-բեռնեն տողատակերը։*

A *խմբի առակավոր խրատների համեմատական բնագիրը կազ-մելիս տարընթերցվածները ավելի քիչ են հաշվի առնված, որովհետև* A₁*-ի ընթերցումները գրեթե միշտ նախընտրելի են։*

*Խրատները համարակալել ենք նկատի ունենալով դիմումի հա-տուկ ձևը՝ որդեակ։ Եթե խրատը այդպես չի սկսվում, բայց ունի ան-կախ իմաստ, դիտել ենք իբրև նախորդ խրատի մի մասը և անջա-տել լատինական տառանիշերով* (a, b, c, d *և այլն)։*

*Կարելի է թերևս համարակալել տարբեր իմաստ արտահայտող բոլոր խրատները, բայց այդ դեպքում խմբերի մեջ նրանց համեմա-տությունը կդժվարացվեր, որովհետև մի տեղ խրատը ձուլված է նա-խորդին մի այլ տեղ արդեն ստացել է ինքնուրույն արժեք։*

*Տարբերակներից բացի, հրատարակում ենք գրույցի հայկական խմբագրության հետ առնչվող* **Խօսք իմաստասիրաց և խրատք հա-սարակաց** *բնագիրը, որն ուղղակի կապ ունի գրույցի հետ։*

*Աղբյուրը ներկայացնում ենք հետևյալ օրինակների համա-ձայն.*

L

L₁ **Խաւսք իմաստասիրաց և խրատ հասարակաց**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 4724, ճառընտիր, Վան, գրիչ՝ [illegible] 1611 թ., էջ 214բ—219ա։*

L₂ **Խօսք իմաստասիրաց և խրատք հասարակաց**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 4726, ճառընտիր, XVII դար, էջ 228ա—231ա։*

L₃ **Խրատք իմաստասիրաց և խրատք հասարակաց**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 2890, ժողովածու, Վան, գրիչ Թովմա Մոկացի, 1718 թ., էջ 229ա—333ա։*

L4 **Խօսք իմաստասիրական առ ծառայս և մերձաւորս թագաւորաց զի ուսցին սովաւ և իմաստնասցին**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 9992, ժողովածու, գրիչ՝ Պետրոս, Վենետիկ, 1709 թ., էջ 128ա—133բ։*

L5 **Խաւսք իմաստասիրաց և խրատ հասարակաց**

*Բնագրից բացակայում են որոշ խրատներ։ Մի թերթ այլ բովանդակություն ունի (323) և պատահաբար ընդմիջարկվել է կազմողի կողմից։*

*Ձեռագիր № 45, ժողովածու, Լիմ, գրիչ՝ Սարգիս Եդեսիացի, 1642 թ., էջ 321ա—322բ և 324բ։*

L6 **Անխորագիր**

*Թերի է, սկզբից թերթ ընկած լինելու պատճառով։ Սկսվում է՝* Որդեակ. յորժամ արհամարհիցես առաջի թագաւորաց ամենայն սիրելիք քո ատելութիւն դառնան քեզ և բարեկամքն քո հեռանան ի քէն։ *Որ համընկնում է* L1*-ի 24 խրատին։*

*Ձեռագիր № 6724, ժողովածու, գրիչ՝ Պաղտասար, XVII դար, էջ 139ա—143ա։*

L7 **Ի յայսուստ խրատ հոգևոր**

*Անկանոն բնագիր է, ունի ընդամենը 19 խրատ, խառն դասակարգությամբ։ Սկիզբն՝* Որդեակ, ընդ անգէտ մարդոյ ամենևին մի խաւսիր, զի մի ծաղր լինիս։ *Վերջ՝* Սիրեա զհնազանդութիւն և ստացիր զխոնարհութիւն հեզութեան, զի արժանի լիցիս ժառանգել զերկիրն կենդանեաց ի Քրիստոսէ աստուծոյ մերմէ, որում և զմեզ արժանիս արասցէ, մանաւանդ զստացող գրոյս տէր Զաքարէն և զկողակիցն զխանխաթուն և զորդին զտէր Յովանէս և կողակիցն Վարդիխաթուն կարդացողաց և լսողաց։

*Ձեռագիր № 3239, ժողովածու, Ս. Գևորգ, գրիչ՝ Զաքարիա երէց, 1671—1675 թթ., էջ 176բ—178։*

L8 **Խաւսք իմաստասիրաց, խրատք հասարակաց**

*Ամբողջական է, նման է* L1*-ին։*

*Ձեռագրի 45ա էջում,* որդեակ, ոչ եթէ ամենայն ժառանգէ զանուն մարդոյ *խրատից հետո գրիչը ընդհատում է և բերում իր հիշատակագրությունը՝* Շնորհաւք և մարդասիրութեամբ տեառն մերոյ.... *և այլն։*



4—904

*Այնուհետև նույն էջի վրա շարունակում է բնագիրը, կարմիր թանաքով նորից վերնագրելով՝* **Խաւսք իմաստասիրաց, խրատ ճաշակաց:** *Թվում է թե նոր բնագիր է։*

*Ձեռագիր № 5349, ճառընտիր, Ավառիս գյուղ, գրիչ՝ Հովհաննես, 1567 թ., էջ 42ա—48ա։*

$L_{9}$ **Խօսք իմաստասիրականն առ ծառայս և մերձաւորս թագաւորաց, զի ուսցին սովաւ և իմաստնասցին**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 6047, ժողովածու, XVII դար, էջ 166ա—173ա։*

$L_{10}$ **Խրատք իմաստասիրականք և խրատք ճաշարակ մարդկանց**

*Պակասավոր է, ունի միայն սկզբի 15 խրատները։ Վերջ՝* **Որդեակ, ճաւաստր է զինի կենդանութեան** *(ընդհատվում է)։ Հաջորդ էջից սկսվում է այլ բնագիր։*

*Ձեռագիր № 6726, գրիչ՝ Գրիգոր Դերայերցի, 1693 թ., էջ 17բ—18ա։*

$L_{11}$ **Խաւսք իմաստնայսիրականն առ աւտարս և մերձաւորս թագաւորաց, զի յուսանին սովաւ և իմաստնասցին**

*Ամբողջական է։*

*Ձեռագիր № 6708, ժողովածու, 1635 թ., էջ 198բ—206ա։*

$L_{12}$ **Խաւսք իմաստասիրականք և խրատք ճաշարակաց որդւոց մարդկան**

*Ամբողջական է, մոտ է* $L_{1}$*-ին։*

*Ձեռագիր № 2783, ժողովածու, գրիչ՝ Գրիգոր Խլաթեցի, 1410 թ., էջ 32ա—37ա։*

$L_{13}$ **Խօսք իմաստասիրականն և խրատ**

*Ամբողջական է, շատ մոտ է* $L_{1}$*-ին։*

*Ձեռագիր № 3467, ժողովածու, XVII դար, էջ 143ա—150բ։*

$L_{14}$ **Այլ խրատ**

*Բնագիրը խրատների քանակով և դասակարգմամբ շատ է տարբերվում* L*-ից, բայց պատկանում է այդ խմբին։ Բազմաթիվ խրատներ (42—75)* L *խմբում չունեն իրենց զուգահեռները, ներկայացնում ենք վերջում։*

$L_{14}$*-ը Մաշտոցյան մատենադարանում* **Խօսք իմաստասիրաց և խրատք հասարակաց**-*ի ամենահին բնագիրն է, ունի փոքրիկ հիշատակագրություն՝* **Որք սիրեք զխրատս յիշեցեք զտառապեալ գրիչս և խրատն խաղաղութեան եղիցի ընդ ձեզ, որ եկն յերկնից ի գուժ արկանել երկրաւոր խաղաղութեանս, որ լի էր մեղաւք:**

*Ձեռագիր № 5229, ժողովածու, գրիչ՝ Վասիլ, XIV դար, էջ 139բ—148ա։*

*Այս խմբի մեջ ընդգրկված է նաև մի փոքրիկ բնագիր՝* **Խրատ օգուտ**, *ընդամենը 26 խրատ և* **չորս իրք***-ի մի հատված։ Ինչ-որ առնչվում է* C *խմբի հետ։ Խրատներից երեքը իրենց զուգահեռներն ունեն* L *տարբերակում և որոշ ընթերցումներ են տալիս։*

*Բնագիրն առհասարակ խրատականքի անկանոն հատված է։ Նշանակել ենք* K *տառանիշով։ (Ձեռագիր № 2272, 1697—1706 թ., էջ 113 աբ)։*

**Խօսք իմաստասիրաց և խրատք հասարակաց**-*ի քննական բնագիրը կազմելիս համեմատել և ընթերցումներում արտահայտել ենք նաև Խիկարի* ABDE *տարբերակների մեջ եղած զուգահեռները։*

*Հրատարակում ենք նաև՝*

*1. Խիկարի հայատառ թուրքերեն բնագիրը՝* **Ալիմ Խիկարն սօյլատիկի նասիհաթ:** *Ձեռագիրը պահվում է Զմմառի վանքում, 413 համարի տակ, էջ 43ա—66ա։ Այն անծանոթ է գիտական աշխարհին։ Բնագրի լուսապատճենը մեզ է հղել վանքի տնօրինությունը, որի համար մեր շնորհակալությունն ենք հայտնում։*

*2. Խիկարի հայատառ ղփչաղերեն բնագիրը։ Բնագրի մասին առաջին անգամ խոսում է Տաշյանն իր հետաքրքիր աշխատության մեջ։ Պահվում է Վիեննայի Մխիթարյանների ձեռագրատանը 468 համարի տակ, էջ 53բ—62ա։ Ձեռագիրը պարունակում է նաև Մխիթար Գոշի Դատաստանագիրքը, նույնպես հայատառ ղփչաղերեն։*

*Տպագրվել է երկու անգամ. 1913 թվականին* «The story of Ahikar...» *գրքի երկրորդ հրատարակության մեջ և 1964 թվականին* «Rocznik Orientalityczny»*-ի XXVII հատորում։*

Այսպիսով սպառում ենք զրույցի հայկական խմբագրության մատենագրությունը։ Այն ինչ չի առնչվում զրույցի հետ, բայց հյուսվել է Խիկարի անվան շուրջը (հեքիաթ, զրույց, առակ և այլն) չի ընդգրկված։

Այս նյութերը, որոնք մեծ մասամբ անծանոթ են գիտական հասարակայնությանը, կարող ենք հուսալ, որ կարթնացնեն նոր հետաքրքրություն և կօգնեն լուծելու Խիկարի զրույցի՝ հին աշխարհի նշանավոր և հազվագյուտ հուշարձաններից մեկի շուրջը միջազգային բանասիրության մեջ արծարծված շատ հարցեր։

## ПОВЕСТЬ О ХИКАРЕ И ЕЕ ИСТОЧНИКИ

Подобно эпосу о Гильгамеше, повесть о Хикаре относится к древнейшим творениям Востока, которые сохранились и дошли до нас, пройдя длинный путь почти в две с половиной тысячи лет. Однако, если эпос о Гильгамеше прошел этот путь как и его герой одним необычным прыжком, то повесть о Хикаре нашла себе пристанище в современных печатных книгах после бесконечных блужданий.

Путешествуя письменными и устными путями, она претерпела многочисленные метаморфозы и утратила свой первоначальный ясный образ.

Чем сложнее и богаче путь, пройденный повестью, тем сложнее и богаче существующая о ней филологическая литература, которая около трех столетий тщетно ищет общих знаменателей.

Повесть привлекает к себе внимание филологов, так как она является характерным и редкостным восточным произведением, имеет интересную тему и обладает очарованием древности.

Она дошла до нас в многочисленных версиях—арамейской, сирийской, греческой, армянской, эфиопской, арабской, славянской, румынской, кипчакской и др.

Повесть выражена в гибких художественных формах. Это история о неблагодарном сыне, которая интерполирована поучениями, притчами и загадками. Ничто не пострадает, если число их будет увеличено или сокращено. Поэтому в разные

времена отдельные общественные слои изменяли или дополняли их соответственно своим понятиям.

Таким образом, она постоянно обновлялась, сохраняя обаяние своей долговечности.

Повесть легко сливается с национальными литературами. Так оно и было издавна. В одном месте сказано, что Хикар по происхождению еврей, в Ветхом завете он племянник Товита. Греки связывали его с Эзопом, арабы считали его одним из героев «Тысячи и одной ночи». Русский редактор Хикара не забыл подчеркнуть, что он «учит сына своего грамоте русской алевитской», а в армянской литературе Хикар арменизировался. В одном из Чарынтыров (Гомилиарий) сказано, что он не Хикар, а Хокайр (т. е. размышляющий, думающий), «ибо в своей премудрости, размышляя постоянно, он давал всем советы и воспитывал притчами».

В дальнейшем, на протяжении веков вокруг Хикара слагается такая большая литература, что даже сама повесть рассматривается как чуждая ему.

В армянской литературе, в особенности в устной, Хикар играет ту же роль, что Вардан в баснописании. Он выступает как писатель собирательный. Здесь он имеет уже сугубо национальный характер и связь его с ассиро-вавилонским Ахикаром условна.

Филологическое исследование повести прошло два периода.

Будучи сперва опубликованной в числе сказок «Тысячи и одной ночи», она становится известной как арабская сказка. Асемани первый заметил, что повесть чрезвычайно похожа на вторую часть биографии Эзопа, составленную М. Планудом, а Г. Гофман в 1880 г. в своей книге Auszüge aus syrischen Akten persischer Märtyrer сделал мимоходом очень интересные замечания, заметив какую-то родственность между Товитом и Ахикаром.

Таким образом, эта тема оказалась связанной с тремя замечательными ценностями—Священным писанием, Эзопом и «Тысячей и одной ночью».

Именно эти связи и явились основным стержнем первого периода филологических изысканий.

В 1907 году в Элефантине были обнаружены папирусы еврейской общины и в их числе несколько листов из повести о Хикаре. Древность папирусов восходит к V веку до н. э.

Начинается новый период исследования Хикара.

Многие вопросы, которые породили столько взаимоисключающих мнений, стали ясными и легко разрешимыми.

Если уже в V веке существовал арамейский текст Хикара, то понятно, что он не мог быть заимствован из книги Товита или перекроен на ее основе, потому что книга Товита была составлена во II веке до н. э. Повесть о Хикаре является также источником второго раздела биографии Эзопа.

Папирусы вновь вызвали интерес к Хикару. Разрозненный арамейский текст в своих чтениях очень отличается от всех до того известных версий. Когда он сформировался и каково его происхождение?

Когда элефантинские папирусы были еще неизвестны, ученые, опираясь на связь Хикара с книгой Товита, неуверенно говорили о еврейском происхождении текста. Ныне, уже смелее, был вновь поднят вопрос о еврейском оригинале.

Однако это вызвало серьезные возражения, которые с самого начала были чреваты отрицанием.

Итак вопрос остался открытым.

Таково содержание второго периода.

Несмотря на все усилия, филология не достигла определенных результатов. Многочисленные вопросы все еще остаются неразрешенными.

Чтобы удовлетворить филологические требования в связи с повестью, была проделана значительная работа и с точки зрения источниковедческой.

Было опубликовано большое число источников разных версий—арамейской, сирийской, арабской, греческой, славянской, румынской и других[1]. Однако они не дают верного представления о тексте повести.

Большей частью повесть представляли на основе одной или двух рукописей, создавая не сравнительный, а собирательный текст.

[1] Критический обзор источников мы дали в армянском предисловии к настоящей книге, стр. 8—16.

Публикации не охватывают все или хотя бы какое-то определенное число источников различных версий, они были напечатаны с отдельных, иногда случайных экземпляров.

На протяжении веков писцы вносили в текст различные изменения, то же продолжали делать издатели, благодаря чему в повести появились привнесенные извне наслоения.

Они весьма свободно обращались с текстом, изменяли или выбрасывали отдельные части, не имеющие, с их точки зрения, особого значения, и нередко устанавливали связи соответственно своему воображению.

Это создало большие трудности для филологов, усложнив задачу пользования источником. В каждом отдельном случае требовалось проверить разночтения, выяснить, принадлежат ли они автору, писцу или издателю, но для этого необходимо было ознакомиться со всеми изданиями и рукописными источниками, что почти невозможно. Именно по этой причине многочисленные замечания и гипотезы исследователей теряют свою ценность, так как они часто опираются на элементы, привнесенные в текст позднее.

В обоих периодах ученых интересовал один и тот же вопрос: откуда идет повесть и каков был первоначальный текст?

Сам по себе этот вопрос имеет источниковедческий характер и научная мысль должна была пойти в этом направлении—требование, возникшее довольно поздно, когда уже стало ясно, что филология незаметно оказалась в порочном кругу.

F. Nau пишет: «История Хикара очень пострадала от рук переводчиков и писцов. Ее воссоздание потребует заботливой публикации каждой отдельной версии, которая в первую очередь основывалась бы, по возможности, на большем числе рукописей и, затем, сравнении этих рукописей»[1].

Это требование полностью относится и к армянской версии, которая, наряду с сирийской, арабской и славянской версиями, представляет особую ценность.

Армянский Хикар имеет довольно много публикаций, их три рода—печатные, устные и рукописные.

---

[1] Histoire et sagesse d' Ahikar l' Assyrien..., par F. Nau, Paris, 1909, էջ 77։

Печатная публикация сопровождает «Историю о Медном городе», издание которой растянулось с 1708 по 1920 гг. Этот длинный ряд происходит от одной общей рукописи позднего периода, очень искаженной и с большим числом диалектных наслоений. Она послужила основой для публикации 1708 г.

Второй вид—устный: это текст, который был рассказан 65-летней крестьянкой Эчмиадзина и записан смотрителем Байяндурского училища Бунятовым.

Как публикация Конибера в Европе, так и этот текст послужили поводом для первого ознакомления русской филологии с армянской версией повести о Хикаре. В этом лишь и заключается роль устного текста.

Он не имеет какой-либо текстологической ценности и не может дать верного представления об армянской версии.

Источником для повести послужил известный нам печатный текст, который сопровождает многочисленные издания «Медного города». Это ясно показывают тождество сказов и характер поучений, даже их последовательность.

Если Бунятов действительно записал сказ со слов старой женщины в Эчмиадзине, то непосредственным передатчиком печатного текста была эта женщина.

Сказ в народе прошел недолгий устный путь, поэтому как произведение устного народного творчества не представляет собой какого-либо интереса.

Третье—это публикация Ф. Конибера. Мы именуем ее рукописной, так как она опирается непосредственно на рукописные источники. Составляя текст, Конибер имел в виду восемь рукописей, отдельные разночтения которых он спустил в подстрочные примечания.

Текст Конибера дал повод А. Ташяну написать о повести интересную работу, за которую он не брался раньше из-за отсутствия лучшего текста, хотя и задумал ее. В своем исследовании он рассматривает многочисленные филологические вопросы: связи между повестью Эзопа и книгой Товита, характер армянской редакции, ее переводные источники, вопрос времени и т. д., но так как и текст Конибера, несмотря на свои преимущества, довольно искажен и полон неологизмов,

то он и не дает Ташяну достаточных оснований для окончательных и правильных выводов.

«Этот момент,—читаем мы,—заставляет прервать наши исследования до появления древнейшего и наилучшего текста. Без него ряд вопросов, нуждающихся в разрешении, не может быть поднят, не породив бесплодной работы, равно как и выводы не могут иметь твердой основы»[1].

«Первое дело армянских филологов—найти такой текст»[2],— заключает Ташян.

* * *

Если притчи Сираха и Соломона прошли через списки неизменными, ибо были скопированы из Библии, а авторитет Священного писания не допускал свободного обращения с текстом, то для Хикара таких ограничений не было. Переписчики повести внесли много добавлений и нововведений. Вот почему бесполезно искать текст, который доподлинно верно сохранил бы переводный экземпляр армянского оригинала. Однако вступление Хикара в армянскую литературу имеет таинственную давность, а дошедший до нас древнейший текст восходит к XIV веку.

Остается путем сравнения многочисленных рукописей позднейшего периода восстановить армянский первоначальный текст. Это трудно, но возможно.

В Матенадаране и в других хранилищах рукописей имеется свыше 100 экземпляров Хикара. Однако невозможно создать критический текст, приняв за основу одну рукопись и сравнивая ее с другими, так как рукописные единицы не совпадают. Они составляют шесть отдельных групп, так мы и представляем их.

Тексты, составленные по этим группам, мы будем рассматривать как варианты.

Таким образом, армянская редакция Хикара имеет шесть вариантов. $A_{1-5}$ (имеет пять рукописей и один фрагмент

---

[1] Հ. Տաշյան, *Մատենագրական մանր ուսումնասիրություններ, Վիեննա, 1901, էջ 136:*

[2] Там же, стр. 140.

XII в.), $B_{1-24}$ (охватывает 24 рукописи), $C_{1-5}$ (охватывает пять текстов и издание Конибера, основанное на сравнении восьми рукописей), $Д_{1-6}$ (охватывает шесть рукописей), $E_{1-6}$ (охватывает шесть рукописей и все печатные издания), G, (представлен одной рукописью)[1].

В вариант **G** входит текст XIV в. (рук. № 5559, год 1347), на четверть века позднее, чем рукопись № 2961, 1321 года, представляющая вариант **А**.

Эти два текста настолько различны как в повествовательной части, так и в поучениях, что их можно рассматривать как две различные редакции.

А какие связи имеют другие варианты с редакциями **А** и **G**?

Вариант **В** в значительной степени соотносится с редакцией **А**. Ряд поучений с небольшими пропусками, а также почти весь текст совпадает с **А**, но пока что мы не настаиваем на том, что **В** возник из **А**. Средневековые тексты часто могут иметь различные источники, представлять различные переводы, но при сравнении могут совпадать.

Вопрос авторства не очень интересовал средневековых писателей, их побудительным мотивом была больше идея представления материала, а сам автор оставался в тени. Именно вследствие этого они нередко считали излишним даже ставить имя автора на рукописи, и в то же время позволяли себе свободно брать необходимое из других произведений, восполняя недостающее.

Это возможно и в отношении нашего текста, он имеет свойственные лишь ему собственные чтения и целый ряд поучений (числом 77), которые отсутствуют в редакции **А**. **В** охватывает большее число рукописей, чем все остальные. Таким образом, это наиболее распространенный вариант.

Другие варианты также отличаются от редакций **А** и G. С более сокращенный вариант, в нем пропущены отдельные места, он имеет отличный ряд и иной характер поучений,

---

[1] Описание текста дано в армянском предисловии, список условных обозначений см. в конце книги.

которые начинаются со слов «четыре вещи», что характерно только для него.

Самый пространный вариант—**D**, имеет больше 210 поучений и 40 притч, он более подробен и в повествовательной части. **E** ближе к редакции **G**, но не определенно. Варианты **C** и **D** написаны на грабаре (древнеармянском языке) в сочетании с диалектными и народными формами. Вариант **E** отличается еще большей диалектностью. Эти четыре текста допускают взаимопроникновения, которые нередко совпадают.

Каждый из текстов имеет такой ему лишь свойственный характер, что трудно какому-нибудь из них дать предпочтение.

Составляя текст, мы имели в виду не только чтения, рассматриваемые как первоначальные, но и все то, что свойственно данной группе, варианту.

Исправления мы производили лишь в пределах одного варианта, не прибегая ни к каким заимствованиям, ибо иначе могли нарушиться границы, существующие в самом варианте.

Филология требует, чтобы каждая версия, текст, вариант были представлены в чистом не искаженном виде.

Лишь получив верную картину всех вариантов и анализируя параллельно все иноязычные версии, можно будет говорить о первоначальных чтениях повести в пределах армянской литературы, а также вообще о повести, как памятнике мировой литературы[1].

Помимо вариантов, мы публикуем также и другие источники, связанные с армянской версией, повести.

1. «Речения мудрецов»—полный текст поучений. Он имеет непосредственную связь с повестью. Публикуется на основе 14 рукописей и параллелей, заключенных в вариантах **A, B, D, E.**

2. Турецкий текст Хикара, написанный армянскими буквами—Алым Хикарым сэойлэтики насият. Рукопись хранится в монастыре Змарры под № 413, стр. 43а—66а. Она неизвестна ученому миру. Публикуется по фотокопии оригинала, которую прислала нам конгрегация, за что выражаем благодарность.

---

[1] Этим вопросам мы намерены посвятить нашу следующую работу, где параллельно будут рассмотрены также многие филологические и литературоведческие вопросы.

3. Кипчакский текст Хикара, написанный армянскими буквами. Впервые об этом тексте говорит в своем интересном труде Ташян. Хранится в хранилище рукописей Мхитаристов в Вене, под № 468, стр. 53б—62а. Рукопись содержит также «Судебник» Мхитара Гоша на кипчакском языке, написанный армянскими буквами. Фотокопия ее и латинская транскрипция текста, сопровождаемая французским переводом, были опубликованы в 1964 г. в Варшаве Жаном Дени и Эдвардом Трииарским. Мы воспользовались этой публикацией.

4. Сложенная о Хикаре армянская народная сказка.

Таким образом, мы исчерпываем литературу армянской версии повести. То, что не имеет связи с повестью, но сложилось вокруг имени Хикара (сказы, притчи и пр.) не охвачено нами.

Надеемся, что эти по большей части неизвестные научной общественности материалы возбудят новый интерес и помогут разрешить многие вопросы, которые возникли в мировой филологии по поводу одного из известных и замечательных памятников древнего мира—повести о Хикаре.

## LA LÉGENDE DE KHIKAR ET SES SOURCES

L'histoire de Khikar, tout comme l'épopée de Gilgamesh constitue l'une des œuvres les plus anciennes de l'Orient. A cours des 2500 années environ qui nous en séparent, elle n'a cessé de voyager et son périple fut très long. Si l'épopée de Gilgamesh nous est parvenue en une seule étape, la légende de Khikar, par contre, en a connu plusieurs, dont elle s'est fortement ressentie, avant de trouver refuge dans les livres imprimés de nos jours.

Elle a fait son chemin dans la tradition orale, d'une part, d'écrit en écrit, d'autre part, subissant par là même de nombreuses modifications qui en altérèrent sensiblement le contenu primitif.

Les études philologiques qui lui sont régulièrement consacrées depuis près de 300 ans, sont aussi riches et multiples que son existence entière.

Œuvre orientale originale et unique, au thème intéressant, offrant le charme de l'ancienneté, cette légende captiva toujours les philologues.

Les versions en sont nombreuses: araméenne, assyrienne, grecque, arménienne, éthiopienne, arabe, slave, roumaine, kiptchak, etc... et les formes artistiques très souples. L'histoire du fils prodigue, interpolée de sentences, de paraboles et de devinettes qu'on peut retrancher ou augmenter à son aise sans que la légende en souffre. C'est ainsi qu'à diverses époques on a pu assister à des transformations correspondant à l'idéologie de telle ou telle couche sociale.

Եւ ես ընդ առաւօտն գրեցի Դ թուղթ առ Արփեստան կինն իմ և ասեմ. Յորժամ թուղթս ի քեզ հասանի, որսալ տուր Բ ձագս արծըւու և տուր մանել լարս Բ իբրև գիրկս Ռ և հրաման տուր հիւսանցն, զի շինեսցեն աղկեա մի փայտեայ և Բ մանկանց ուսոյ զայս խօսս, որ ասեն թէ կաւ և աղիւս բերէք, ճարտարքս պարապ են և զձագս արծուոցն ուսոյ, զի թռչին դէպ յերկինս և մանկունքն ի վերայ նոցա և տան իւրեանց կերակուր Բ օրն զառն մի։

Եւ Արփեստան կինն իմ էր յոյժ իմաստուն և զամենայն, զոր ինչ ասացի, արար և ուսոյց զմանկունսն և զձագերն։

Եւ ի նոյն աւուրս դարձան ամենայն ասորեստանեայքն ի տեղիս իւրեանց։

Եւ ապա ասեմ ցարքայն. Հրաման տուր ինձ երթալ յԵգիպտոս առ փարաւոն։ Եւ հրամայեաց երթալ։ Եւ առի զզօրս իմ և գնացի և տարայ ի հետ իմ զմանկունսն և զձագերն։

Եւ իբրև հասաք յԵգիպտոս, ծանուցին յարքունիսն, թէ զոր ինչ և խնդրեցեր, եկեալ են։

Եւ տարեալ իջուցին զիս և զզօրսն իմ և արարին ընդունելութիւն, և եկեալ վաղվաղակի տարան զիս առաջի փարաւոնի, և ես երկիրպագի նմա։

Եւ ասէ ընդ իս. Զի՞նչ է անուն քո։ Եւ ես ասեմ. Արկամ է անուն իմ։ Եւ յոյժ տրտմեցաւ փարաւոն և ասէ. Անա՞րգ եմ ես յաչս տեառն քո, զի դու իշխեցեր գալ առ իս և տալ ինձ պատասխանի։ Եւ ասէ ընդ իս. Երթ յօթևանս քո և ընդ առաւօտն եկեսջիր առաջի իմ։

Եւ հրամայեաց զօրաց իւրոց, զի զգեցցին հանդերձս քըրքումս կարմիր և ինքն ագաւ բեհեզս ծիրանիս և հրամայեաց

---

Եւ ես առեալ ընթերցայ և ասեմ ցարքայն. Յուղարկեա զդեսպանսդ երթալ ի տեղիս իւրեանց և ես յետոյ գնացեալ կատարեցից զհրամանս փարաւոնի։

Եւ իբրև գնացին նոքա, ես Խիկար դպիր յուղարկեալ բերի Բ ձագս անգղ հաւու ($B_{12,16}$ հաւու և ասի կնոջն իմ Աֆեստանայ սնուցանել զնոսա) և բերի Բ փոքր ճարտար տղայ և ուսուցի նոցա ($B_4$ նորա փխ նոցա) սնուցանել զձագսն հում մսով։ Եւ իբրև հաստատեցան և զօրացան թևքն, և թռուցեալ երթային և գային։

Յայնժամ սահմանեցի սնդուկ մի փայտեայ, զվերևն ի բաց ունելով և զնէի զմանկունս անդ և լծէի զանկղսն, որ առեալ ($B_{12,16}$ առեալ զմանկունս սնդկովն ի վերա թևոց) վերանային։ Եւ ուսուցանէի այսպէս զաւուրս բազումս։ Եւ կայր ի ձեռս մանկանցն իւրաքանչիւրոցն շամփուր մի միս ($B_{12,16}$ ձեռս Բ տղայոցն շամբուր մսով)։ Եւ թէ բարձրացուցանէին զմիսն, հաւքն զհետ

կոչել զիս և ասէ. Ո՞ւմ նման եմ ես և զօրքդ իմ։ Եւ ասեմ. Նման ես դու դիցն, և զօրքդ քո նման են քրմանց նոցա։

Դարձեալ ասէ. Երթ յիջևանս քո և ի վաղիւն եկ առ իս։

Եւ ի վաղիւն հրամայեաց զօրաց իւրոց զգենուլ սպիտակ և ինքն զգեցաւ կարմիր յորդան և կոչեալ զիս ասաց. Ո՞ւմ նման եմ ես և կամ զօրքդ իմ։ Եւ ասեմ. Նման ես դու արեգականն, և զօրք քո՝ ճառագայթից նորա։

Եւ ասէ ընդ իս. Երթ յիջևանս քո և ի վաղիւն եկեսցես։

Եւ հրամայեաց զօրաց իւրոց զգենուլ թուխ, և ինքն զգեցաւ շիկագոյն։ Եւ ածին զիս առաջի իւր։ Եւ ասէ. Ո՞ւմ նման եմ ես և զօրքդ իմ. Եւ ասեմ. Նման ես դու Սինայի, և զօրք քո՝ մորենոյ նորա։

Եւ ասէ ցիս. Երթ յիջևանս քո և վաղիւն եկեսցես։

Եւ հրամայեաց զօրաց իւրոց զգենուլ ներկուածս, և ինքն զգեցաւ փետրաւս։ Եւ ածին զիս առաջի իւր։ Եւ ասէ. Ո՞ւմ նման եմ ես և զօրքդ իմ։ Եւ ասեմ. Նման ես դու դալար դաշտոյ, և զօրք քո՝ ծաղկանց նորա։

Իբրև լուաւ զայս փարաւոն, ուրախ եղև յոյժ և ասէ ընդ իս. Տէրն քո Սեննեքարիմ ո՞ւմ նման է։ Եւ ասեմ. Քաւ լիցի քեզ յիշել զարքայն իմ զՍեննեքարիմ։ Արի յոտն կաց դու և ամենայն նախարարքդ քո և ես ասիցեմ զարքայէն իմմէ, թէ որպէ՞ս իցէ։

Տրտմեցաւ և ասէ ընդ իս. Զի՞նչ է անուն քո։ Եւ ասեմ. Խիկար, ծառայ քո։ Եւ ասէ ընդ իս. Թշուառական, դեռ կենդանի՞ ես։

Եւ իբրև ելի յերեսաց նորա, հրամայեաց զօրաց իւրոց, թէ զինչ որ խօսի Խիկար, ասասջիք թէ մեք գիտեմք զայդ։

Եւ նստայ և գրեցի հրովարտակ մի. «Ի Սեննեքարիմայ առ փարաւոն ողջոյն։ Կարօտ են եղբարքն յեղբարս և թագաւորք

---

ելանէին և թէ ցածունէին զհետ գային ($B_7$ թեք ածէին և ի հետն գային և ասացի մանկանցն որ աղաղեկէին և ասէին բերեք քար և կիր ճարտարքս անխափան կայ, $B_{12'16}$ գային և զայս ամենայն ուսոյց Ափեստան կին իմ զի էր իմաստուն յոյժ)։

Եւ առեալ զնոսա, գնացի յԵգիպտոս ($B_7$ յԵգիպտոս առ փարաւոն արքայն) և կացեալ առաջի փարաւոնի, երկիր պագի նմա։

Եւ մեծարեաց զիս փարաւոն և նստոյց առ ինքն և ասէ. Ո՞ր են արուեստաւորքն, որ շինելոց են զտաճարն։ Եւ ասեմ. Ի ճանապարհէ աշխատեալ են և արդ՝ ննջեն։

Եւ ի վաղիւն ելեալ փարաւոն, կոչեաց զիս և ասէ. Աստ, ի վերայ քաղաքիս կամիմ շինել ($B_6$ շինել ապարանս, $B_7$ շինել տաճար), զի նայելով ի վերայ քաղաքիս՝ զուարճացայց։

ի Թագաւորս։ Արդ, արձակեա ի ձեռն հրովարտակիդ զքանքարն մեր»։

Եւ ծալեալ զհրովարտակն, մտի առաջի փարաւոնի և ասեմ. Զոր ինչ գրեալ է ի հրովարտակիս, երբեք ոչ է լուեալ քո և զօրաց քոց և ո՛չ ի քաղաքիս եգիպտացւոց։ Եւ ասեն. Լուեալ է մեր և գիտեմք զքանդ զայդ։ Եւ ասեմ. Բացէք և տեսէք և տուք զինչ գրեալ է ի հրովարտակիդ։

Եւ իբրև ընթերցան, զարմացան։

Եւ ասէ արքայն ընդ իս. Շինէ ինձ ապարանս ընդ երկինս և ընդ երկիր ի մէջ, ի վեր քաղաքիս, զի նստելով անդ՝ զուարճացայց։

Յայնժամ նստուցի զմանկունսն ի կառսն և լծեալ զարծիւսն ի նմա՝ Թռուցի։ Եւ կապեալ էի զլարսն յոտսն, և Թռեան ղէպ յերկինքն, և մանկունքն ի վերայ, և աղաղակէին մանկունքն մեծաձայն. Կաւ և աղիւս բերէք, ճարտարքս պարապ են։ Եւ զայն տեսեալ զարմացան ամենեքեան։

Եւ հրամայեաց նոցա իջանել։

Եւ յոյժ պատուեաց զիս փարաւոն և ետ ինձ զգեստս պայծառս և զարդարեաց զիս, նոյնպէս և զճարտարսն։

Եւ ասէ. Տար զարուեստաւորսդ յօթևանս քո և դու եկ առ իս, զի հարցից զքեզ բանս ինչ։

Եւ գնացի յօթևանս իմ, կերա և արբի և ուրախ եղէ։ Ապա գնացի առ փարաւոն։ Եւ ասէ ցիս. Զի՞ է, երիվարք ձեր խրխնջացին յԱսորիս, լուան կուռք մեր և վրիժեցան։

Եւ ես՝ Խիկար, ելի ի նմանէ և հրամայեցի բերել ինձ աքիս մի և կապեալ տանջէի զնա, մինչև գիտացին ամենայն քաղաքացիքն և երԹեալ ծանուցին փարաւոնի, եԹէ անարգեաց Խիկար զդիս մեր, քանզի կալեալ աքիս մի և տանջէ յանդիման մեր։

---

Եւ ես ասացի (B$_{16}$ ասեմ). Արքայ, յաւիտեան կաց, տուր զվարձս ճարտարացն, զի եկեալ շինեսցեն։ Ասէ փարաւոն. Երդնում ի գլուխ իմ, զի յորժամ տեսից զարուեստաւորսն քո, զի ելանիցեն յօդս ի շինել զապարանսն, բազում ոսկի և արծաԹ տաց քեզ։

Եւ ես գնացեալ պատրաստեցի և Թռուցի զհաւերն։ Եւ առեալ բարձրացան և ելին յօդն և որպէս ուսեալք էին յինէն, ձայնէին ի վայր. Քար բերեք, քարփին (A$_2$ B$_{8,14,15}$ քար և խիճ, B$_6$ կիր քար խիճ, B$_7$ քար և խիճ և կիր, B$_{12,16}$ կիր և խիճ և աղիւս, B$_{17}$ քար և կիր) բերեք, ճարտարքս պարապ են։ Եւ յոյժ զարմացաւ փարաւոն և ամենայն եգիպտացիքն։

Եւ հրամայեցի (A$_2$B$_7$ հրամայեաց) նոցա իջանել փխ և մարմին իմ ապականեալ էր (էջ 113 տող 4)—և հրամայեաց նոցա իջանել (էջ 116, տող 17)։

28 B$_9$ յանդիման չաստուածոցն։

Եւ կոչեաց զիս արքայն և ասէ. Վասն է՞ր անարգես զդիս մեր։ Եւ ասեմ. Շատ վնաս արարեալ է աքիսդ ինձ։ Աքաղաղ մի էր տուեալ ինձ թագաւորն Սենեքարիմ, և ի ժամու զարթուցանէր զիս գնալ յարքունիսն, և աքիսդ յայսմ գիշերի չոգաւ յԱսորիս և խեղդեաց զաքաղաղն և եկ այսր։ Ասէ փարաւոն. Ինձ այնպէս թուի, թէ որչափ ծերացար, իմաստութիւն քո անհամացաւ։ ՅԵգիպտոսէ մինչև յԱսորիս Յ և Կ խրախս է, զի՞արդ գնաց աքիսդ յայսմ գիշերի և խեղդեալ զաքաղաղն՝ եկ այսր։ Եւ ասեմ ցփարաւոն. Եթե գիտես, որ յԵգիպտոսէ յԱսորիս այսչափ ճանապարհ է, ապա զի՞արդ լուան կուռք ձեր զխրխնջիւն երիվարաց մերոց և վրիժեցան։

Իբրև լուաւ արքայն, տրտմեցաւ յոյժ և ասէ. Եկ և մեկնեա զոր հարցանեմ քեզ։ Սիւն մի էր, և ի վերայ սեանն՝ մարք Բժ-ն, և ի վերայ միոյ միոյ մարքի՝ անիւք Լ, և ի վերայ միոյ միոյ անուի՝ Բ սուրհանդակ. մինն՝ թուխ և մինն՝ սպիտակ։ Եւ ասեմ. Զայդ ասորոց որթարածերն լաւ գիտեն։ Սիւնն, զոր ասացեր, տարին է, և մարքն Բժ-ան՝ ամիսք տարոյն է, և անիւքն Լ՝ աւուրք ամսոյն է, և Բ սուրհանդակն՝ տիւ և գիշերն է։

Եւ ասէ փարաւոն. Մանեա ինձ պարան աւազէ. երկայնութիւն նորա կանգունս Թ և ստուարութիւն նորա ըղունկ մի։ Եւ ասեմ. Տէր արքայ, հրամայեա, զի ի գանձարանէ քումմէ հանցեն օրինակ, զի տեսից և ըստ օրինակին արարից, զի մի ստուար լիցի կամ նուրբ։ Եւ ասէ փարաւոն թէ. Ի գանձարան իմ ոչ գոյ, բայց թէ դու ոչ մանես, զարծաթն ոչ տանիս, զոր իմաստութեամբ խնդրեցեր, և ես խոստացայ տալ։

Յայնժամ մտախորհ եղէ և ի թիկանց կոյս տանն ծակեցի զորմն, ուստի արևն ծագէր, և յորժամ ծագեաց արևն, խառնեցի փոշի ընդ աւազի և արկի ի լուսամուտն։ Եւ երևեցաւ շողն որպէս մանոցք, և ասեմ. Տէր իմ արքայ, հրամայեա, զի ժողովեսցեն զայդ, զի այլ մանեցից։

---

1 $B_{16}$ ընդ փխ վասն։

7 $A_2$ $B_{4,5,8,14,15,17}$ ԳծԿ փխ Յ և Կ։

8 $B_{4,5}$ եհան զգլուխդ աքագողին։

9 $B_{4,5}$ Գծ և Կ խրախս է փխ այսչափ ճանապարհ է։

15 $A_2$ սպիտակ և ասէ պատմեա ինձ։

20 $B_7$ Կ փխ Թ։

28 $B_7$ եղև փխ երևեցաւ։

Իբրև ետես արքայն, ծիծաղեցաւ և ասէ. Օրս այս յաւուրս օրհնեալ եղիցի, զի տեսի զխիկար կենդանի առաջի դից իմոց և զիմաստութիւն մտաց սորա տեսի և փառաւորեցայ։

Դարձեալ պատուեաց զիս և ի գլուխ բազմականին կացոյց զիս և պարգևս մեծամեծս երետ ինձ և զքանքարն, զոր խնդրեցի, ետ ցիս և խաղաղութեամբ յուղարկեաց։

Եւ ես եկեալ հասի առ տէրն իմ Սենեքարիմ արքայն։ Եւ նա ել ընդ առաջ իմ և մեծաւ ուրախութեամբ ընկալաւ զիս։ Եւ ասէ ցիս. Խնդրեա յինէն զոր ինչ և կամիս և տաց քեզ։ Եւ ես անկեալ, երկիր պագի արքային և ասեմ. Զոր ինչ կամիս տալ ինձ, պարգևեա Աբուսմաքայ ընկերի իմոյ և կենսատուի, բայց ինձ տացես զՆադան, զքուեր որդին իմ, զի այլ ուսումն ուսուցից նմա, զի առաջին ուսումն մոռացեալ է։

Եւ հրամայեաց արքայն տալ զՆադան ի ձեռս իմ և ասէ ցիս. Երթ և արա զոր ինչ և կամիս, զի արժան է մշակն վարձոյն։

Յայնժամ առի զՆադան, զքուեր որդին իմ և տարայ ի տուն իմ և կապեցի ընդ սիւն մի երկաթի, որ էր կշիռ նորա էճ լիտր և եդի առասան ի պարանոց նորա և հարի Ռ փայտ զլանջս նորա և Ռ՝ զթիկունսն։ Եւ կայր ի դրան սրահի իմոյ, և տայի նմա հաց կշռով և ջուր չափով և յանձն արարի զնա Բելիարայ ծառայի իմոյ և ասեմ ցնա. Յելանելն իմ և ի մտանելն, զոր ինչ ասեմ ցՆադան, գրեա ի մատենի քում։

---

2 $B_1$ իմ փխ դից իմոց, $A_2$ աչաց իմոց փխ դից իմոց, $B_{7,17}$ դիմաց իմոց փխ դից իմոց։

5 $A_2$ $B_{4,5,7,8,12,15,17}$ պարգևեաց փխ երետ։

## ԱՅԼ ԽՐԱՏՔ ՆԱԴԱՆԱՅ ՔՈՒԵՐ ՈՐԴՈՅՆ ԻՒՐՈՅ, ԶՈՐ ԵՏ ԽԻԿԱՐ

*1. Որդեակ, որ ընդ ականջն ոչ լսէ, ընդ թիկունսն լսեցուցանեն։*

$A_2$ $B_{1-24}$ *թիկունսն և ընդ լանջսն։*

*Խօսել սկսաւ Նաղան և ասէ. Հայր, զի՞ ոխացար ընդ քեռորդոյս քո։ Ասեմ.*

$A_1$ չիք՝ *խօսել-ասեմ,* $A_2$ $B_{1-24}$ *ասէ Նաթան զի ոխացար քուեր որդոյ քում և ասէ ցնա* փխ *խօսել-ասեմ,* $A_{4,5}$ *և ասէ զի ոխացար ընդ իս* ($A_4$ *իս հայր*) փխ *խօսել-ասեմ։*

*2. Որդեակ, ես յաթոռ պատուոյ նստուցանել զքեզ կամեցայ, և դու յաթոռոյ իմոյ կործանել զիս կամեցար, բայց անմեղութիւն իմ ապրեցոյց զիս։*

$A_3$ *նստուցի* փխ *նստուցանել զքեզ կամեցայ, կործանեցեր,* չիք՝ *կամեցար,* $A_{2,4-5}$ $B_{1-24}$ *յաթոռ փառաց նստուցի զքեզ և դու յաթոռոյ* ($A_4$ *յաթոռոյ իմմէ*) *կործանեցեր զիս,* $A_2$ $B_{1-24}$ չիք՝ *բայց-զիս,* $A_{4,5}$ *զիս ի ձեռաց քոց։*

*3. Որդեակ, եղեր ինձ որպէս կարիճն, որ եհար զասեղն։ Ասէ. Ահա խայթոց, որ չար է քան զքոյդ։*

*Դարձեալ եհար զթաթ ուղտոյն, և նա հարեալ զթաթն ի վերայ կարճին, ճմլեաց և ասէ. Գերեկ, ոչ գիտացեր, թէ շունչ քո յոտս իմ է։*

$B_3$ *ոտացն ուղտոյն,* $B_3$ *եղիր* փխ *հարեալ,* $B_{12}$ *եհար* փխ *հարեալ,* $A_2$ $B_{1-24}$ *զոտն* ($B_7$ *զթաթն* փխ *զոտն*)՝ փխ *զթաթն,* չիք՝ *կարճին* ($B_{12}$ *նորա և* փխ *կարճին*), *ճմլեաց զնա, գիտէիր չար կարիճ, զօրութիւն* փխ *շունչ,* $A_3$ չիք՝ *ոչ գիտացեր։*

*4. Որդեակ, եղեր ինձ որպէս այծն, որ ուտէր զտօրունն։ Ասէ տօրունն ցայծն. Ոչ գիտես թէ ինև շիկեն զմորթ քո, զի՞ ուտես զիս։ Ասէ այծն. Ես ի կենդանութեանս իմում ուտեմ զքեզ, և ի մահուան իմում թող իլեն զտակ քո և շիկեն զմորթ իմ։*

$A_2$ $B_{1-24}$ *թէ արմատով իմով ներկեն* փխ *թէ ինև շիկեն զմորթ քո,* $A_3$ *ներկեն* փխ *շիկեն,* $A_2$ $B_{1-24}$ *յետ մահուան իմոյ թող հանեն զարմատ քո և ներկեն* փխ *ի-շիկեն։*

*5. Որդեակ, եղեր որպէս զայն, որ ձգէր նետ յերկինս և ոչ կարաց հասուցանել ի վեր, բայց զանօրէնութիւն շահեցաւ, և դարձաւ նետն ի գլուխ իւր։*

$A_2$ $B_{1-24}$ *ձգեաց* ($B_9$ *եհար և ձգեաց*) փխ *ձգէր*, *զնետ իւր* փխ *նետ*, $A_2$ $B_{1-24}$ *թէպէտ դարձաւ* փխ *և դարձաւ*, $A_2$ *հասուցանել ի վեր*, $B_{1-24}$ *զանօրէնութիւն իւր*։

*6a. Որդեակ, այսպէս կարծէիր, թէ զտեղի նորա լնում, բայց թէ իցէ ագի խոզի երկայն իբրև կանգուն հինգ, զձիոյ տեղին ոչ կարէ լնուլ։*

*Եւ թէ լինիցի ասր նորա ծիրանի, զմարմնով թագաւորի ոչ անկանի։*

$A_2$ չիք՝ *որդեակ*, $A_2$ $B_{1-24}$ *դու այդպէս*, չիք՝ *նորա*, *լնում զՄիկարայ*, *ագին խոզի լինի Թ կանգուն զտեղի ձիոյն* փխ *իցէ-տեղին*, չիք՝ *և թէ լինիցի-անկանի*։

*6b. Ես այսպէս ասէի, թէ կաս ի տան իմում և ժառանգես զին-չըս իմ, այլ ըստ անօրէնութեան քում ոչ հաճեցաւ զքեզ աստուած։*

$A_2$ $B_{1-24}$ *կարծէի* փխ *ասէի*, *կայցես* փխ *կաս*, $A_{2-5}$ $B_{1-24}$ *ժառանգեսցես*, $A_{4,5}$ *ապա որդեակ ըստ* ($A_5$ չիք՝ *ապա*) փխ *այլ ըստ*, $A_2$ $B_{1-24}$ *յաջողեաց քեզ* ($B_7$ *հաճեցաւ* փխ *յաջողեաց*) փխ *հաճեցաւ զքեզ*։

*7. Որդեակ, եղեր ինձ որպէս գայլն, որ պատահեաց իշոյն և ասէ. Ողջոյն քեզ յավանակ։ Ասէ էշն. Այդ ողջոյնդ տեառն իմոյ, որ արձակեաց զպարանն յոտից իմոց և ես տեսանել զդէմս քո չար և արեանարբու։*

$A_2$ *պատուհասեցաւ* փխ *պատահեաց*, $B_{4,5}$ *պատահեցաւ* փխ *պատահեաց*, $A_2$ $B_{7,12}$ *ասէ գայլն*, $A_2$ $B_{1-24}$ *ասէ ցնա*, $B_{3,7}$ *իմոյ եղիցի*, $A_2$ $B_{1-24}$ *զերեսդ* փխ *զդէմս*, չիք՝ *չար և արենարբու*, $B_3$ *տեսանել զքեզ և*։

*8. Որդեակ, եղեր ինձ որպէս որոգայթն, որ թաղեալ կայր յաղբըն և ունէր զհատն ի բերան իւր։ Եգիտ զնա ճնճղուկն և ասէ. Զի՞նչ գործես։ Ասէ որոգայթն. Յաղօթս կամ առ աստուած։ Ասէ ճնճղուկն. Այդ, որ ի բերանդ է, զի՞նչ է։ Ասէ որոգայթն. Քաղցելոց հացիկ է։ Եւ չանաց ճնճղուկն առնուլ զհացն։ Նա կալաւ զպարանոց նորա։ Ասէ ճնճղուկն. Թէ քաղցելոց հացն այս է, նա աստուած, որ յաղօթս կաս, այսպէս լսէ քեզ աղօթից քոց։*

$A_2$ $B_{1-24}$ *յաղբիւսն* փխ *յաղբն*, *տեսեալ* փխ *եգիտ*, *ասա զինչ* փխ *զինչ*, *հաց է քաղցելոց* փխ *քաղցելոց հացիկ է*, $A_{3-5}$ *հատիկ* փխ *հացիկ*, $A_2$ $B_{1-24}$ խմբում կրճատման հետևանքով աղավաղվել է բնագիրը, բացի $B_7$-ից։

9. Որդեակ, եղեր ինձ որպէս ոջիլ հացի, որ եկեր զշտեմարանս թագաւորաց, և ինքն ումեք ոչ է օգուտ և պիտանի։

10a. Որդեակ, եղեր ինձ որպէս պոյտն, որ արարին արկղ ոսկոյ, և կող նորա ի մրոյն ոչ պակասէր։

$A_{4,5}$ պտուկ փխ պոյտն, պակասէր երբեք։

10b. Դարձեալ եղեր որպէս սերմնացանն, որ ցանեաց գրիւս տասն և զկնի բազում աշխատանացն, ժողովեաց գրիւս հինգ։

$A_4$ չիք՝ դարձեալ, $A_5$ որդեակ փխ դարձեալ։

10c. Դարձեալ եղեր ինձ որպէս զոչխարն, որ զընկերն տարան ի խոհակերոցն, և զանձն իւր ոչ կարաց ապրեցուցանել ի զենմանէն։

$A_4$ չիք՝ դարձեալ, $A_5$ որդեակ փխ դարձեալ։

10d. Եղեր ինձ որպէս շունն, որ եմուտ ի հնոց բրտի և յորժամ ջեռաւ, սկսաւ հաչել ընդդէմ նորա։

$A_{4,5}$ որդեակ եղեր, $B_{13}$ զշունն բրտին, զարթեաւ փխ ջեռաւ, յերես բրտին, փխ ընդդէմ նորա։

11a. Որդեակ, եղեր ինձ որպէս խոզն, որ երթայր ի բաղանիսն։ Յորժամ ետես զնախարարսն, անկեալ ի տիղմն՝ թաւալէր ասելով թէ. Դուք ի ձերդ լուացեք և ես՝ յիմս։

$A_3$ և ասէր փխ ասելով թէ։

11b. Եղեր ինձ որպէս շուն ժպիրհ, որ ջիլս տեառն իւրոյ ծամեաց։

$A_{2-5}$ $B_{1-24}$ որդեակ եղեր, $A_3$ ամենայն իւրոյ փխ տեառն իւրոյ։

12. Որդեակ, սնուցի զքեզ որպէս զձագս աղուեսու։ Եւ ակն քո ի ծակ քո, մատն իմ կոգիւ ի բերան քո, և քո մատունքդ տարեալ է յաչս իմ։

$A_{2,3}$ չիք՝ որդեակ, $A_2$ $B_{1-24}$ արծուի փխ աղուեսու, և մատունք քո սրեալ են յաչս իմ քանզի ակն քո չար էր տեսանել զիս ($B_3$ մատունք, $B_{12}$ մատունքդ սրեցիր, $B_{4,5}$ սրեալ են) փխ եւ-յաչս իմ։

13a. Որդեակ, շուն, որ զորսն ինքն ուտէ, կերակուր գայլոց եղիցի։

$A_2$ $B_{1-4}$ թողու զտէր իւր փխ զորսն ինքն ուտէ։

13b. Ձեռք, որ սնուցի և ինձ ոչ օգտէ, ուսօքն հատցի։

$B_{1-24}$ որդեակ ձեռք, $A_2$ $B_{1-24}$ օգնէ ($B_{17}$ օգտէ) փխ օգտէ, $A_5$ սրով փխ ուսօքն։

13c. Եւ աչք, որ ինձ լոյս ոչ տա, ագռաւք հանցեն զնա։

$B_{1-24}$ որդեակ փխ և, $A_2$ $B_{1-24}$ հանցեն ագռաւք ձորոց փխ ագռաւք հանցեն զնա։

14. Որդեակ, զերեսս դիցն և զարքունեացն ցուցի քեզ և մեծ փառաց հասուցի, և դու ի փառաց ընկեցեր զիս։

$B_{1-24}$ զարքունի ($B_7$ զարքունեացն), $B_{4,5}$ դիցեն փխ դիցն, $B_{1-24}$ չիք՝ և մեծ փառաց հասուցի, $B_7$ փառաց իմոց։

15. Եղեր ինձ, որդեակ, որպէս ծառն, որ կտրէին։ Եւ ասէր ծառն. Թէ ոչ էր յինէն ի ձեռին քում, ոչ կարէիր յաղթել ինձ։

16. Որդեակ, եղեր ինձ որպէս ձագ ծիծռանն, որ անկաւ ի բունոյ իւրմէ։ Եւ գտեալ զնա աքիստ մի ասէ. Թէ յինէն ի զատ լեալ էիր, ի մեծ չարիս մատնեալ էիր։ Ասէ ձագն. Բարիդ, զոր առնես ինձ, ի գլուխ քո դարձցի։

$A_3$ աքիստ մի ասէ գոհացիր զաստուծոյ որ, $A_3$ առնել կամիս փխ առնես ինձ։

17. Որդեակ, եղեր ինձ որպէս զաքիստն, որ ասացին. Թող զսովորական զքարսդ քո և համարձակ լինի քեզ յարքունիս մտանել և ելանել։ Ասէ աքիստն։ Եթէ եղիցին աչք իմ արծաթի և թաթ իմ ոսկի, զսովորական բարս իմ ոչ թողից։

$A_{3,4}$ ասացին թէ, $A_2$ լիցի փխ լինի, $A_2$ $B_{1-24}$ չիք՝ և ելանել, $A_{4,5}$ արծվի փխ արծաթի, $A_2$ $B_{1-24}$ թաթ ($B_7$ թաղ) փխ թաթ։

18. Որդեակ, նմանեցար դու օձին, որ պատատեցաւ ընդ մասրովն և անկաւ ի գետն։ Եւ տեսեալ զնա գայլուն՝ ասէ. Ահա չար ի չար հեծեալ և չար է, որ վարէ զնոսա։

$A_3$ զմասրենովն փխ ընդ մասրովն։

19a. Որդեակ, տեսի զմաքին, որ սպանդանոցն ածին։ Երբ օրն չէր հասել, դարձաւ առ յընկերսն իւր և ետես զորդիս որդոց իւրոց։

$A_3$ տարան փխ ածին։

19b. Ես զամենայն բարիս ջամբեցի քեզ, և դու զհաց ի հողոյ արգելեր յինէն։

$A_{3-5}$ չիք՝ ես, քեզ Նադան, $A_2$ $B_{1-24}$ որդի Նաթան փխ ես, $A_2$ քո փխ ի հողոյ։

19c. Ես իւղով անուշիւ օծի զքեզ, և դու հողով զմարմինս իմ ապականեցեր։

$B_{1-24}$ որդեակ իւղով, $A_2$ $B_{1-24}$ զքեզ բեհեզս և ծիրանիս ագուցի քեզ, չիք՝ հողով, ապականեցեր ի տուն խաւարի ($B_{12,16}$ զիս մատնեցիր ի մահ փխ ապականեցեր-խաւարի)։

19d. Ես զքեզ արարի ծառ պտղով լիացեալ, և դու յարմատոց խլել կամեցար զիս։

$A_{3,4}$ լի պտղով փխ պտղով լիացեալ, $A_3$ խլեցեր փխ խլել կամեցար, $A_{4,5}$ խլեցեր զիս քեզ որդի իմ Նադան ($A_5$ քվեր փխ քեզ) փխ խլել կամեցար զիս։

*19e. Ես բարձրացուցի զքեզ որպէս աշտարակ, որ թէ եկեսցեն յիս թշնամիք, ելից ամրացայց ի քեզ, և դու ինքնին գտար թշնամի տան իմում և կորուստ անձին իմոյ։*

$A_5$ $B_{1-24}$ *որդեակ ես,* $A_2$ $B_{1-24}$ *զի թէ թշնամի հասանէր ի վերա իմ դու լինէիր ինձ ամուր պարսպի* ($B_{1-24}$ *ապաստանի* փխ *պարսպի,* իսկ $B_7$-ը լրիվ համապատասխանում է $A_1$-ին) փխ *որ թէ-ի քեզ,* $A_5$ չիք՝ *տան իմում,* $A_2$ $B_{1-24}$ չիք՝ *և կորուստ* ($B_7$-ը ունի)։

*19f*. Որդեակ, սնուցի զքեզ, որպէս մայր զանդրանիկ որդի, և դու ի կեանս իմ կորացուցիր զիս։ (9cA₂ և 20B₁)։*

$B_3$ *որպէս մայր զմանուկ և,* $A_2$ $B_{6,7,16}$ *ուսուցի* փխ *սնուցի,* $A_2$ $B_{6,7,14,16}$ չիք՝ *մայր,* $A_2$ *ուրացեր* փխ *կորացուցեր,* $B_{6,8,9}$ *կուրացուցեր* փխ *կորացուցեր։*

*Խօսել սկսաւ որդին ապերախտ և անհնազանդ և ասէ. Տէր իմ Նիկար և հայր բազմերախտ, արա ինձ ըստ ողորմութեան քում։ Աստուծոյ մեղանչեն մարդիկ, և թողուն նոցա։ Եւ մի՛ մեղանչեր անձին իմոյ, և ես եղեց քեզ չար ծառայ, որպէս զմի յանցաւորաց քոց։*

$A_{3-4}$ *նազան* փխ *որդին-անհնազանդ,* $A_2$ $B_{1-24}$ *առէ նաթան* փխ *խօսել-քում,* $A_{3,4}$ չիք՝ *և հայր բազմերախտ,* $A_3$ *թողու* փխ *թողուն, յարեան* փխ *անձին,* $A_2$ $B_{1-24}$ *և աստուած թողու* փխ *թողուն նոցա և դու թող, անպիտան* փխ *չար,* չիք՝ *քոց։*

*Ասէ.*

*20. Որդեակ, եղեր որպէս զարմաւենին, որ բուսեալ էր յափն գետոյն, և պտուղ նորա ի գետն անկանէր։ Եկն տէր ծառոյն կտրել զնա։ Ասէ արմաւենին. Թող զիս յայսմ ամի և ի միւսում ամին բերից պտուղ։ Ասէ տէրն. Դու ի ժամանակդ չես բերել ինձ պտուղ, և այժմ, որ կտրել կամիմ, զի՞արդ պիտանացիս։*

$A_2B_{1-24}$ *արմաւենի մի տնկեալ էր այր ումն* փխ *եղեր—բուսեալ էր,* $A_2$ $B_{1-24}$ *նորա* փխ *ծառոյն,* $A_4$ *յամ մի* փխ *յայսմ ամի, բերից քեզ, պտուղ և ոչ արկից ի գետն, տէր ծառոյն,* $A_4$ *դու ի քում ժամն կատար* փխ *դու ի ժամանակդ,* $A_1$ *դու ի քում այդր չեղեր պիտանի որ ոչ քո է զիարդ պիտանացիս* փխ *դու-պիտանացիս,* $A_5$ *յայնժամ կտրել կամիմ զքեզ* փխ *և այժմ-պիտանացիս։*

*21. Որդեակ, ասացին գայլուն, թէ ի բաց կաց ի գիհէդ, ապա թէ ոչ՝ շունք պատառեն զքեզ։ Ասէ գայլն թէ. Ի բաց կենամ, կուրանամ, զի փոշին աչացս դեղ է։*

$A_2$ $B_{1-24}$ չիք՝ *ապա-զքեզ, գիհին աչացս շահ է և փորոյս օգուտ* ($B_{16}$ *դեղ է աչացս*) փխ *աչացս դեղ է։*

22. *Որդեակ, ագին շանն հաց բերէ և բերանն՝ բիր։*

$A_{2,4-5}$ $B_{1-24}$ *տայ* փխ *բերէ,* $A_4$ *եւ դարձեալ ասէ որդեակ* փխ *որդեակ։*

*Եւ ի նմին ժամու չարախորհ որդին կորստեան ուռեալ պատառեցաւ։*

*Եւ ասէ Խիկար. Ով բարի առնէ, բարոյ հանդիպի և որ փորէ խորխորատ, անձամբն լնու։*

*Եւ որ սիրէ զչարն, ատելի է բազմաց, և որ առնէ զբարի, փրկի ի մահուանէ։*

$A_{2-5}$ $B_{1-24}$ *ուռաւ Նաթան* և փխ *չարախորհ-ուռեալ,* $B_7$ *պատառեցաւ և սատակեցու ի փառս սատանայի յայնժամ Խիկար գոհացեալ զաստուծոյ,* $A_5$ *փորէ հոր խորխորատ,* $B_{1-24}$ *խորխորատ ընկերին,* $B_6$ *ինքեանք անկանին և ի յաւիտենական հրոյն արժանի լիցին* փխ *անձամբն լնու։* $A_2$ *ընկերին ինքն անկանի* փխ *անձամբն լնու,* $A_{4,5}$ $B_{1-24}$ *իւրով լնու զնա* փխ *անձամբն լնու,* $A_2$ $B_{1-24}$ *զհետ երթա բարեաց ժառանգէ զնա* ($B_9$ *զարքայութիւն* փխ *զնա*) փխ *առնէ-մահուանէ։*

# ՊԱՏԱՌԻԿՆԵՐ

Այս բնագիրն առհասարակ Խիկարի գրույցի գրավոր ամենահին աղբյուրներից մեկն է։ Նրան տարեկից է միայն Բրիտանական թանգարանի № 7200 ասորական ձեռագրի հատվածը, որ հրատարակել է Ռ. Հարրիսը 1898 թվականին։ Երկուսն էլ հաշվվում են 11—12-րդ դար։ Մենք նկատի չունենք էլեֆանտինի արամեական պապիրուսները (մեր թվագրությունից առաջ 5-րդ դար), որ ներկայացնում են Խիկարի բացարձակ այլ խմբագրություն։

Հայկական հնագույն այս պատառիկները, որ նոր են հայտնի դառնում, պարունակում են որոշ հատվածներ ուսուցող խրատներից և պատմությունից։ Գրված են դասական հայերենով։

Բնագրին առավել մոտ է A խումբը, ուստի և դնում ենք այդ տարբերակի մեջ, համառոտագրելով A6։

Ձեռագիրը խիստ քայքայված է (Մատենադարանի ձեռագիր № 5465, էջ 101ա—103բ)։ Թղթերը խունացել են և եզրերից թափվել։ Վերանորոգվել է վերջերս։ Քայքայված մասերը լրացվել են նոր, սպիտակ թղթերով։ Դա բարձրացրել է պատառիկների տևունակությունը, բայց դարձրել պակաս ընթեռնելի։

Պատառիկներն ունեն բնագրագիտական մեծ արժեք։ Հրատարակում ենք լուսապատկերով։

* * *

Ա. Որդեակ, կցորդ [լեր] մարդո իմաստնո, զի իմաստնասցիս եւ մի՛ կցորդ լիներ ընդ մարդո անուրինի եւ անմտի եւ անզգամի, զի մի իբրև զնա հաստատեսցիս։

Որդեակ, մի՛ քաղցրանար, զի կլանիցեն զքեզ և մի՛ դառն լինիր, զի մի թշնամանիցեն զքեզ, այլ լեր հանդարտ ի գործս քո և կերիցես զզաւրութիւն ամենայն երկրի։

Որդեակ, մինչդեռ կաւշիկս յոտս են, կոխեա զփուշս եւ արա ճանապարհ, որդոց քոց և թոռանց։

Որդեակ, մեծատան որդին աւձ եկեր, ասեն վասն դեղո եկեր, աղքատին որդին եկեր, ասեն առ սովին եկեր։

Որդեակ, կեր զմասն քո եւ ընկերին մի աչս արձակեր։

Որդեակ, ընդ աներկեղի ի ճանապարհ մի երթիցես... ընդ անամաւթի հաց մի ուտեր։

Որդեակ, թե տեսանիցես զթշնամիս քո գլորեալ, մի ծաղր առնիցես զնա, միթէ յառնիցէ կանկնիցի ի վերա ոտից իւրոց եւ հատուցանէ քեզ։

Բ. ...Հայր իմ ծերացաւ։ Հաս[եալ կա] առ ա[փ]ն գերեզմանի։ Զանցեալ է միտք իւր եւ դողացեալ է խորհուրդ նորա։ Սկսաւ վատնել զինչս իմ։ Զծառայս եւ զաղախնայս եւ զսիրելիս իմ սկսաւ տանջել առաջի աչաց իմոց։ Զձիս և զջորիս իմ եւ զամենայն եհատ։

Իբրև տեսի ես եթէ Նադան քեռորդի իմ զբանս իմ այլայլեաց, խնաեցի յինչս իմ։ Խաւսել սկսա եւ ասեմ ցՆադան. Աղէ, դու... նչս իմ մերձե[ցիր]։

Որդեակ, ասացեալ է յառակս, թէ ձեռք որ ոչ ստացաւ, ակն մի հայեսցի։ Եւ պատմեցաւ առաջի Սենեքարիմա արքաի տեառն իմոյ։

Եւ ասէ արքա։ [Նա]դան, մինչ Խիկար կենդանի է [յինչ] նորա [մի մերձենար]։

Յայնժամ Նադան քեռորդին իմ իբրև ետես զՆաբուզադան եղբայր իւր կրտսեր, զոր ստ?նման նմա սնուցի եւ ուսուցի եթե ի տան իմում կեցցէ։ Յայնժամ տր....

Գ. ...յր(ի)ց նորա։ Եւ ասէ ցիս,. երթ յասպանչականս քո եւ ի վաղիւն եկ առ իս։ Եւ հրաման ետ.... առաջի իւր եւ ասէ ցիս. Ո՞ւմ նման եմ ես եւ Նախարարք իմ ո՞ւմ նման են։

Եւ ասեմ. Նման ես դու Սինա և Նախարարք քո քրմացն։

Եւ ասէ ցիս. Երթ յասպընչականս քո։

Եւ կանխեալ են....

Հրաման ետ Նախարարացն, զի զգեցցին Ներկածուս եւ ինքն զգեցաւ քարտեսս։

Եւ հրամաեաց կոչել զիս եւ ասէ. Ո՞ւմ նման եմ ես եւ նախարարք իմ ո՞ւմ նման են։

Եւ ասեմ. Նման ես դու....

Ծաղկաց նոցա։

Իբրեւ զայս լուաւ արքա, յոյժ ուրախ եղեւ եւ ասէ ցիս. Արդ, աղէ, ասա [ինձ] Սե[նեքերիմ]....

*Այս տարբերակը համապատասխանում է Ֆ. Կոնիբերի 1898 թվականի հրատարակությանը։*

*Բնագիրը սակայն կազմվել է այլ սկզբունքներով և հեռանում է Կոնիբերի օրինակից։*

*Կոնիբերի օգտագործած ձեռագրերը տարաբնույթ հավաքածու են և չեն պատկանում միևնույն խմբին։ Դա խանգարել է տալու աղբյուրի ճիշտ պատկերը։*

*Պարզ չէ, թե Կոնիբերի մոտ որ ձեռագիրն է համարվել հիմք, ուստի այստեղ նրա բնագիրն արտահայտում ենք* $C_4$ *համառոտագրությամբ, իսկ* $C_4$*-ի նկատմամբ բոլոր ընթերցումները տալիս ենք փակագծի մեջ, նրա իսկ օգտագործած պայմանական նշաններով։ Բայց եթե* $C_4$*-ը զուգահեռ է գնում մեր բնագրին, և շեղվում է տողատակ իջեցված որևէ այլ օրինակ, բերում ենք ուղղակի նրա ընթերցումը,* $C_4$*-ից անկախ։*

*Բնագրի համար հիմք է ծառայել* $C_1$*-ը։ Հազվադեպ ուղղումներ կատարվել են միայն այն ժամանակ, երբ դա թելադրել է C խմբի մեջ գտնվող որևէ այլ ձեռագիր։ Ուղղումների դեպքում խուսափել ենք հենվել Կոնիբերի օրինակի վրա, որովհետև այն անխառն չէ։*

CEF *խմբերի և* $A_3$ *ձեռագրի մուտքը ընդհանուր է, համեմատելի (նկատի չունենք բազմաթիվ այլընթերցումները), ուստի ներկայացնում ենք միասին, տարբերակների մեջ եղած առնչությունները անսքող պահելու համար։ Հիմքը դարձյալ* $C_1$*-ն է։*

*Բնագիրը կազմելիս ոչ թե նպատակ ենք ունեցել վերականգնել նախնականը, մի բան, որ այս տարբերակով հնարավոր չէ, այլ տալ տարբերակի ճիշտ պատկերը, ուստի այնպիսի ընթերցումներ, որոնք նախընտրելի չեն մյուս տարբերակների համեմատությամբ, բայց հատուկ են C խմբին, պահել ենք վերևում։*

*Երբ միևնույն խմբի մեջ չունենք ճիշտ օրինակը, սխալը թողնում ենք անփոփոխ (օր. № № 87, 97 խրատները և այլն)։*

Պահպանել ենք այն տարընթերցվածները, որոնք անարժեք են, ունեն վրիպակային բնույթ, բայց կարող են հուշել ձեռագրերի ազգակցության մասին։

Տարընթերցվածների համարակալումը խրատականքի բաժնում տրված է ոչ թե ըստ տողերի, այլ ըստ խրատների։

C տարբերակի հավելյալ խրատներն անհարազատ են, որովհետև գալիս են $C_4$-ից և հավանաբար այնպիսի ձեռագրից են ծագում, որոնք չեն պատկանում C խմբին, բայց պահպանել ենք Կոնիբերի հրատարակությունը լրիվ ներկայացնելու համար։

Հավելյալ խրատներն ընդմիջարկել ենք պատմողական խրատներից հետո, ուր հաջորդում է **Հարցումն թագաւորաց որդւոց և պատասխանիք խիկարայ** բաժինը, բնագրային խմբից տարբերել ենք աստղանիշերով (*)։

Հավելյալ պատժիչ խրատները պատկանում են Բոդլեյան գրադարանի արևելյան № 131 ձեռագրին, որը Կոնիբերը համառոտագրում է Canon։

Աղբյուրներն իրենց պայմանական նշաններով և խրատների համակարգը տրված են գրքի վերջում (աղյուսակ III—ուսուցող խրատներ, աղյուսակ IV—պատժիչ խրատներ)։ Կոնիբերի՝ իր կողմից հավելյալ համարվող խրատների համարակալումը հայկական տառերով (կ, կա, կբ) տալիս ենք նույնությամբ $C_4$-ի տակ։

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ԽՐԱՏ ԽԻԿԱՐԱՅ ԻՄԱՍՏՆՈՅ

Յամս և ի թագաւորութեան Սենեքարիմայ՝ արքային Նինուէի և Ասորեստանեաց, ես՝ Խիկարս, դպիր էի Սենեքարիմայ արքայի։ Կ կին առի և Կ ապարանս շինեցի և ես՝ Խիկարս, Կ տարւոյ եղա, և ոչ եղև ինձ որդի։

Յայնժամ մտի առ չաստուածսն իմ բազում ընծայիւք, բորբոքեցի հուր առաջի չաստուածոցն և արկի խունկս անոյշս ի վերայ նորա, մատուցի ընծայս և զոհեցի զոհս, եղի ծունրս և աղաչեցի։

Եւ այսպէս ասէի յաղաչելն իմում.

Ով տեարք իմ և չաստուածք. Բելշիմ և Շիմիլ և Շահմին. հրամայեցեք և տուք ինձ արու զաւակ, քանզի ահա Խիկար կենդանի մեռանի, և զի՞նչ ասեն մարդիկ, եթէ Խիկար կենդանի

---

2 $C_2$ չիք՝ յամս-արքային, $C_3$ ամս փխ յամս և ի, չիք՝ արքային։

3 $C_3$ ատենադպիր, Fa,b Սենեքերիմա։

4 Fa և արարի Կ կինս փխ Կ կին առի, Fb առի ինձ Կ կինս փխ Կ կին առի, $A_3$ արարի փխ առի, Fb չիք՝ և ես Խիկարս։

5 $E_{4,5}$ ամի փխ տարւոյ, Կ ամաց։

6 $E_{4,5}$ գնացի փխ մտի, $C_2$ աստուածսն, $E_{4,5}$ չաստուածքն, Fa,b կուռքն, ($Fa_1$ լուծքն) փխ չաստուածսն։

7 Fa,b և վառեցի փխ բորբոքեցի, $C_{1-3,5}$ $A_3$ չիք՝ առաջի չաստուածոցն, $C_4$ չիք՝ անոյշս (Paris 58 և 131 ունեն՝ և անուշս), $C_3$ անոյշս անոյշս Fa,b անուշահոտս։

8 Fa,b վասն ծննդեան փխ եղի ծունրս։

10 $C_1$ էր աղաչելն իմ փխ ասէի յաղաչելն իմում, Fa,b ասելով փխ և այսպէս ասէի յաղաչելն իմում։

11 չաստուածք իմ, $C_1$ Բէշիմ և Ջրիմիլ և Շահմին, $C_2$ Բելշիմ Շիմիլ և Ջահմին, $C_3$ Բէշիմ և Շիմել և Շամին, $C_4$ Բելշիմ և Շիմիլ և Շամին (Paris 131 Բէլշիմ և Շիմել և Շահմին), Fa Բէլշիմ և Շահմիմ, Fb Բէլշիմ և Շահիմ։

13 Fa,b չիք՝ կենդանի և։

և իմաստուն և ճարտար մեռաւ, և ոչ կայ իւր որդի, որ թաղէ զնա և ոչ՝ դուստր, որ լացցէ զնա։ Զունիմ ժառանգ յետ մահուան իմոյ, և եթէ որդի իմ աւուրս Ժ քանքարս ծախեսցէ, ոչ կարէ սպառել զինչս իմ, այլ զի արկցէ հող ձեռօք իւրովք ի վերայ իմ, զի մի մնացից անյիշատակ։

Յայնժամ ձայն եղև ի չաստուածոցն և ասէ. Խիկար, ոչ է հրամայեալ քեզ զաւակ, բայց եթէ առցես զնադան քեռորդին քո և սնուցանիցես զնա քեզ որդի, և հատուցանիցէ զանուն քո։

Յայնժամ լուայ զայս ի չաստուածոցն և առի զնադան քեռորդին իմ Ա տարոյ և ագուցի նմա բեհեզս և ծիրանիս և եդի մանեակ ոսկի ի պարանոց նորա և, որպէս որդի թագաւորի, գեղաշուք զարդարեցի զնա և արբուցի նմա կաթն և մեղր և ննջեցուցանէի զնա ի վերայ արծուեաց և աղաւնեաց իմոց, մինչև եղև է ամաց։

Եւ ապա սկսայ ուսուցանել նմա զդպրութիւն և զիմաստութիւն և զհանճարագիտութիւն և զպատասխանիս հրովարտակաց և զդարձուածս հակառակաց խօսից։ Ի տուէ և ի գիշերի ոչ դադարէի յուսուցանելոյ զնա։ Եւ յագեցուցի զնա ուսմամբ, իբրև հացիւ և ջրով։

Ապա ասէ արքայն ընդ իս. Խիկար, դպիր և իմաստուն,

---

1 Fa,b *իմաստուն էր,* $E_{4,5}$ *մեռանի,* Fa *կայր նորա* փխ *կայ իւր,* Fb *գոյր նորա* փխ *կայ իւր։*

2 $C_{4,5}$ $E_{4,5}$ *լայ,* Fa,b *լայր, զնա զինչ ասեմ։*

3 $C_4$ *և ոչ եթէ որդի յետի աւուրն* փխ *և եթէ որդի իմ աւուրս* (Paris 58 ունի ճիշտ ընթերցվածը)։

4 Fa,b *զի միայն։*

6 Fa,b *չաստուածոցն իմոց.* $C_1$ *ասացին* փխ *ասէ,* $C_4$ *ասէին,* $C_{2,5}$ $E_{4,5}$ *ասէր,* Fb *թէ* փխ *և ասէ։*

8—9 $C_1$ *հատուցանէ զնա* փխ *հատուցանիցէ զանուն քո,* $C_4$ *հատուցէ քեզ զանունդս քո,* Fa,b, $E_4$ *հատուցէ քեզ զանուն քո,* $E_5$ չիք՝ *և հատուցանիցէ զանուն քո։*

10 $C_{2,3,5}$ *յորժամ* փխ *յայնժամ։*

10—11 Fa,b *և ապա առի զնաթան քեռորդին իմ առ իս որ էր մի ամի։*

11 $E_{4,5}$ *մի ամի* փխ *ա տարոյ,* $E_{4,5}$ *զգեցուցի* փխ *ագուցի։*

12 $C_{1-3}$ $A_3F_{4,5}$ չիք՝ *եդի։*

14 $C_3$ *ուսուցանէի* փխ *ննջեցուցանէի,* $A_3$ *արծուենեաց։*

15 Bod *տարկան* փխ *ամաց։*

17 $C_4$ *զհանճար գիտութեան,* $E_{4,5}$ *հանճարս գիտութեան։*

17—18 $A_3$ *հրովարտակաց և զելսն իմուն* (Այստեղ $A_3$-ն ավարտվում է)։

18 $C_3$ *հակառակախօսից։*

*գիտեմ զի ծերացեալ ես, և յետ վախճանի քո ով է, որ կատարէ ճարտարութեամբ և իմաստութեամբ զգործս արքունեաց մերոց։ Եւ ես տրտում եմ յայդմ խորհրդիդ։*

*Եւ ասեմ ցնա. Արքայ, յաւիտեան կաց, է իմ որդի, որ է առաւել և հանճարեղ քան զիս։ Եւ ասէ թագաւորն. Ած զնա առ իս, զի տեսից։*

*Եւ իբրև ածի զնա և կացուցի առաջի թագաւորին, ետես և ասէ. Յաւուրս իւրում օրհնեալ եղիցի Խիկար, զի ի կենդանութեան իւրում էած կացոյց առաջի իմ զորդի իւր, և ինքն ի հանգստեան եղիցի։*

*Երկիր պագի տեառն իմոյ և առեալ տարա զնադան յապարանս իմ։*

*Եւ այսպէս ասեմ յուսուցանելն իմում և ի խրատելն զհանճար և զխորագիտութիւն զամենայն։*

---

1 $C_3$ *կարէ* փխ *է որ կատարէ։*

2 $C_3$ *իմաստութեամբ վճարել։*

3 Fa,b *և ես հանապազ, վասն այդ բանիդ* փխ *յայդմ խորհրդիդ։*

4 $C_1$ չիք՝ *արքայ,* Fa,b *պատասխանի ետու նմա և ասացի* փխ *և ասեմ ցնա,* չիք՝ *է (որ է)։*

5 $C_5$ $F_{4'5}$ Paris *131 և 58 առաւել աւելի,* Fa,b *հանճարեղ և իմաստուն է* փխ *և հանճարեղ,* $C_4$ չիք՝ *և հանճարեղ, քան զիս և է աւելի հանճարեղ։*

6 Fa,b *տեսից զնա։*

7 Fb *ես* փխ *իբրև ածի զնա և,* Fa,b *կացուցի զնա։*

8 $C_{1'2}$ *յաւուրս իւր աւրհնեալ եղիցի սորա* փխ *յաւուրս իւրում օրհնեալ եղիցի խիկար,* $C_3$ *աւուրս սորա,* Fa,b *այս օրս օրհնեալ եղիցի։*

9 Bod 58 չիք՝ *ինքն։*

11 Fa,b *և ես երկիրպագի արքային* փխ *երկիր պագի տեառն իմոյ։*

13 Canon *իմում ականջ արայ որդի իմ խօսկին և խրատն իմ գրէր ի մտանին քում և մի մոռասցիս զի ամք կենաց քոց շատանայ և փառօք և մեծութեամբ հասցես ի ծերութիւն,* $C_5$ *խրատելն իմում։*

13—14 $C_4$ $E_{4-5}$ Fa,b չիք՝ *և ի խրատելն-զամենայն,* $C_3$ *և խրատելն զհանճար և զգիտութիւն և զիմաստութիւն խրատ և խօսք Խիկարայ իմաստնոյ խրատն այս է Խիկարայ զոր ասաց քեռորդուն։*

## ԽՕՍՔ ԵՒ ԽՐԱՏ ԵՒ ԻՄԱՍՏՈՒԹԻՒՆ ԽԻԿԱՐԱՅ. ԽՐԱՏՆ ԱՅՍ Է ԽԻԿԱՐԱՅ, ԶՈՐ ՈՒՍՈՅՑ ՆԱԴԱՆԱՅ

*1a. Որդեակ, եթէ լսես բան ինչ ի դրան արքունի, մեռո և թաղո զնա ի սրտի քում և մի՛ ումեք ի վեր հանիցես:*

*1b. Զկապն կնքեալ մի՛ արձակեսցես և զարձակեալն՝ մի՛ կապեսցես:*

*1c. Եւ զոր տեսանես, մի՛ ասել և զոր լսես, մի՛ յայտնել:*

*2. Որդեակ, ի համբառնալ զաչս քո տեսանել զկին գեղեցիկ, յունեալ և ծարուրեալ, մի՛ ցանկանայցես ի սրտի քում: Եւ եթէ տացես նմա զամենայն ինչս քո, առաւել ի նմանէ ոչինչ գտանիցես, այլ դատապարտիս յաստուծոյ և ի մարդկանէ: Քանզի նման է նա գերեզմանի, որ ի վերոյ գեղեցիկ լինի և ի ներքոյ՝ լի ժահահոտութեամբ և ոսկերօք մեռելոց:*

*3. Որդեակ, լաւ է ընդ առն իմաստնոյ քարինս կրել, քան ընդ առն անմտի գինի ըմպել:*

*4. Որդեակ, մի՛ լինիր իբրև զնշենի, որ յառաջ ծաղկի և յետոյ հասանի պտուղ նորա, այլ լեր որպէս ձիթենի, որ յետոյ ծաղկի և յառաջ հասանի պտուղ նորա:*

---

1a $C_4$ *դրանէ*, $C_4$ *վերայ* փխ *վեր*:

1b Bod *կապեալ* փխ *կնքեալ*, $C_2$ *արձակես*, $C_4$ *արձակել* (Bod *արձակեսցես*), $C_5$ *արձակեր*, $C_2$ *կապես*, $C_5$ *կապեր*:

1c $C_1$ *զոր լսես մի յայտնեսցես և զոր տեսանես մի յայտնեսցես* փխ *եւ- յայտնել*, $C_2$ *զոր լսես միայն տես և զոր տեսանես մի ասես*, Bod չիք՝ *խրատը*:

2 $C_1$ չիք՝ *տեսանել*, $C_{1,2}$ *ծրարեալ* փխ *ծարուրեալ*, Canon *ոչինչ աւելի գտցես քան զքո միայն մեղս և ամօթ ի մարդկանէ և դատաստանն աստուծոյ*, Bod *ոչինչ իւիք ի նմանէ աւգտիս առաւել քան թէ դատաստան յաստուծոյ արդար իրաւանց է իմ*:

4 Ven, $C_1$ չիք՝ *որ յառաջ-պտուղ նորա*, $C_5$ *իբրև* փխ *որպէս*, $C_{2,4,5}$ *թթենի* փխ *ձիթենի*:

5. Որդեակ, ընդ իմաստնոյ մի՛ անմտիր և ընդ անմտին մի՛ իմաստնանար։

6. Որդեակ, ընդ առն իմաստնոյ կցորդ լեր, որ իմաստուն լինիս իբրև զնա և մի՛ լինիր կցորդ անզգամի և անմտի, զի մի իբրև զնոսա անմիտ կոչեսցիս։

7. Որդեակ, մի՛ լինիր կարի քաղցր, որ կլանեն զքեզ և մի՛ կարի դառն, որ թքանեն զքեզ, այլ լեր հեզ և հանդարտ ի գործս գնացից քոց և յամենայն բանս։

8. Որդեակ, մինչդեռ կոշիկդ յոտդ է, կոխեա զփուշն և արա ճանապարհ ոտից քոց։

9a. Որդեակ, մեծատան որդին օձ եկեր, և ասեն՝ դեղ է նմա, իսկ աղքատի որդին եկեր, և ասեն՝ առ սովոյ եկեր։

9b. Զքո մասն կեր և ի քո ընկերին աչք մի՛ արձակեր։

9c. Ընդ աներկիւղի ի ճանապարհ մի՛ երթար և ընդ անզգամի հաց մի՛ ուտեր։

10. Որդեակ, անկանի անօրէնն ի չար գործոց իւրոց և կանգնի արդարն ի բարի գործոց իւրոց։

11. Որդեակ, թէ տեսանես զթշնամին քո գլորեալ, մի՛ ծաղր առներ զնա, զի թէ կանգնի, չար հատուցանէ քեզ։

12. Որդեակ, մի՛ մերձենար ի կին անզգամ և բամբասօղ, զի մի արհամարհիս և կատակիս դու ի նոցանէ, և նա յափշտակէ զքեզ։

---

5 $C_4$ իմաստունս, $C_{2,4,5}$ իմաստանար ($C_2$ իմաստանայր)։

6 $C_4$ կցորդ լեր առն իմաստնոյ (Bod լեր ընդ), որպէս փխ իբրև, $C_3$ զնա փխ զնոսա։

7 $C_{3,5}$ զի մի կլանիցեն փխ որ կլանեն, $C_3$ զի մի թքանիցեն փխ որ թքանեն։

8 $C_{1,2,5}$ կոխէ փխ կոխեա, Canon որդոց փխ ոտից։

9a $C_{3,4}$ կերաւ, $C_3$ ասացին փխ և ասեն, $C_{2-5}$ չիք՝ իսկ, $C_3$ օձ կերաւ ասացին թէ քաղցած էր փխ եկեր և ասեն առ սովոյ եկեր, $C_4$ ի սովու կերաւ։

9b $C_3$ բաժինն փխ մասն, Ven, Canon կեր քաղաքութեամբ, $C_4$ զաչսդ մի արկաներ։

9c $C_3$ ընդ առն։

10 Bod, 58 չար գործաւք։

11 Bod չիք՝ տեսանես, Ven քեզ եւ լինի հանապազ չարկամ։

12 $C_4$ բանբանասող, Ven ի նոցանէ և դու ծաղր լինիս, $C_{3-5}$ ի նոցանէ դու և կատակիս։

13. Որդեակ, զգան որդւոյ քո մի՛ խնայեր, զի գանն մանկանն այնպէս է, որպէս աղբիւր պարտիզի, կամ կապ և մատնեհար քսակի և որպէս կապան յոտն իշոյ, այնպէս օգուտ է գանն կորճին, զի թէ հարկանես գաւազանաւ մի կամ երկու, հանդարտի և ոչ մեռանի, բայց եթէ թողուս զնա ի կամս իւր, գող լինի, և տանին զնա ի կախումն և ի սպանումն։ Եւ լինի քեզ նախատինք և բեկումն։

14a. Որդեակ, ուսո զորդին քո ի քաղց և ի ծարաւ, որ խոնարհութեամբ վարեսցէ զկեանս իւր։

14b. Զբան թշնամոյ որ ասեն, մի ընդունիցիս, զի զքոյդ նորա ասիցեն։

15. Որդեակ, առանց զինու ի ճանապարհ մի՛ երթիցես, զի մի թշնամին քո պատահեսցէ քեզ և կորնչիս։

16. Որդեակ, որպէս վայելուչ է ծառն պտղովք և ոստօք և լերինք անտառախիտ մայրօք, այնպէս վայելուչ է այր և կին, որդի և եղբայր, ազգական և բարեկամ և ամենայն զարմք։

17. Որդեակ, առն որ ոչ գոյ կին, որդի և եղբայր, ազգական և բարեկամ, զնա երկար արհամարհեն։ Եւ նման է նա ծառոյ, որ յանցքս ճանապարհի իցէ, և ամենեքեան, որ անցանեն ընդ նա, տերեւաթափ և ճղակոտոր առնեն զնա։

18. Որդեակ, մի՛ ումեք ասել չար և մի՛ լինիր շատախօս առաջի տեառն քո, զի մի անարգեսցիս ի նմանէ։

19. Որդեակ, յաւուր զոհից քոց մի՛ խոտորիր։ Գուցէ ոչ հաճեսցի տէր ի զոհս քո, զոր առնես։

---

13 Ven *զորդիդ ի ծեծ* փխ *զգան որդւոյ քո*, *ծեծ* փխ *գանն*, $C_{3,4}$ *աղբն ի* փխ *աղբիւր*, $C_{2,3,4}$ *և որպէս* փխ *կամ*, $C_4$ *ի իշուն ոտքըն* փխ *յոտն իշոյ*, $C_4$ (Ven?) *ծեծ տղային* փխ *գանն կորճին*, Bod չիք՝ *այնպէս-կորճին*, $C_4$ (Ven?) *զի թէ ծեծես գաւազանաւ մի կամ երկուս նայ խելաւքանայ հանդարտութեամբ ոչ մեռանի* (Bod *և 58* ինչպես բնագրում), $C_5$ չիք՝ *և ի սպանումն*, $C_2$ *կոխումն* փխ *բեկումն*։

14b $C_4$ *որդեակ զթշնամոյն*, $C_4$ չիք՝ *զբան* (Bod ունի *զբան*), Bod *քո որ ասիցէ քեզ* փխ *որ ասեն*, $C_{2,5}$ *ասէ* փխ *ասեն*, $C_3$ *թշնամուն*, $C_5$ *ընդունիս*, $C_3$ *ասիցեն և նա ես ոչ ընդունի*, $C_4$ *նոքայ* փխ *նորա*։

15 $C_{2-5}$ *երթար* փխ *երթիցես*, Canon *զինու ի գիշերի*, $C_3$ *հասանի կամ պատահէ* փխ *պատահեսցէ*։

16 Ven չիք՝ *և կին*, $C_4$ *զարմիք*, $C_3$ Bod *58* չիք՝ *և ամենայն զարմք*։

17 $C_4$ *որոյ* փխ *առն որ*, *կամ որդի կամ եղբայր և*, $C_4$ *յերկար ամաւք* փխ *զնա. երկար*, $C_3$ *որ ի ճանապարհի*, *որք անցանի*։

18 $C_{2,4,5}$ *շատախօս լինել*։

19 $C_4$ չիք՝ *քոց*, $C_4$ չիք՝ *զոր առնես* (*58*-ը ունի)։

*20. Որդեակ, մի՛ թողուր զլալիսն և երթար ի հարսանիսն, զի ամենեցուն մահ առաջի կայ, և պատուհասն մեծ է։*

*21a. Որդեակ, մատանի ոսկի, որ չէ քո, մի՛ դներ ի մատին քո։*

*21b. Եւ մի՛ ագանիր բեհեզս և ծիրանիս, որ չէ քո։*

*21c. Կամ ձի, որ չէ քո, մի՛ հեծանիր, զի ծաղր առնեն զքեզ տեսօղքն և որ գիտեն զքեզ։*

*22. Որդեակ, թէպէտ և քաղցեալ իցես, հաց, որ չէ քո, մի՛ ուտիցես։*

*23. Որդեակ, մարդ, որ զօրաւոր է քան զքեզ, մի՛ հակառակիլ ընդ նմա։ Գուցէ սպանանիցէ զքեզ։*

*24. Որդեակ, ճմլեա և մաշեա զչարն ի սրտի քում և բարի լինի քեզ յաստուծոյ և ի մարդկանէ, և բազակիս կամօքն աստուծոյ։*

*25. Որդեակ, թէ բարձր են սեմք տան քո երկան իբրև կանգունս է, յորժամ մտանես, խոնարհեցո զգլուխ քո։*

*26. Որդեակ, մի՜ առնուր կշռովն մեծ և տար փոքրովն և ասես թէ շահեցայ, զի աստուած ոչ տայ, այլ բարկասցի, և դու սովամահ կորիցես։*

*27. Որդեակ, մի՛ երդնուր սուտ, զի մի աւուրս քո պակասեսցին։*

*28. Որդեակ, օրինացն աստուծոյ ունկն դիր և ի չարէն մի՛ երկնչիր, զի պատուիրանն աստուծոյ պարիսպ է մարդկան։*

*29. Որդեակ, ի բազմութիւն որդւոց քոց մի՛ խնդասցես և ի պակասելն նոցա մի՛ տրտմեսցիս։*

*30. Որդեակ, որդիք և ստացուածք աստուծոյ շնորհին։ Աղքատն մեծանայ և մեծատունն աղքատանայ, խոնարհն բարձրանայ և բարձրն խոնարհի։*

---

21c $C_{3,4}$ *հեծնուլ* (Bod *հեծեր*, Canon *հեծնէր*), $C_4$ *հեծնուլ զնա*, չիք՝ *և որ գիտեն զքեզ* (Bod *ի գիտելն զնա*, *58 որ գիտեն զքեզ*)։

22 Canon *թէպէտ և կարի*, Bod *թեպէտ և յոյժ*։

23 $C_{3,4}$ չիք՝ *մարդ* (Bod *58* ունի)։

24 $C_3$ *և շահիս զու յաստուծոյ* փխ *և բազակիս կամօքն աստուծոյ*։

25 $C_{2-5}$ *շեմք*, $C_3$ չիք՝ *երկան*, $C_4$ չիք՝ *տան քո* (Bod *58* ունի), $C_4$ *յերկինան* փխ *երկան*, $C_3$ *յորժամ ի տունն, մտանես և ելանես*,

26 $C_3$ *մեծ կշռով*, $C_{3,4}$ *փոքր կշռովն*, $C_3$ *ասել*, Bod *58* չիք՝ *այլ բարկացի*, $C_{3,4}$ *կորնչիս*։

27 $C_2$ *աւուրց*, $C_3$ *աւուրք*, $C_4$ *յաւուրց քոց*, Bod *58 յաւուրք քո պակասցեն ի վերայ երկրի*։

28 $C_3$ *երկիր* փխ *մի երկնչիր*, $C_4$ *մարդոյ*։

30 $C_{1,4}$ *խոնարհանայ* փխ *խոնարհի*, $C_{2,5}$ *խոնարհի այլ երգ ոտիւք և տես աչաւք*... (Այդպիսով հաջորդ խրատն անիմաստ ձևով միակցվել է նախորդին):

31. Որդեակ, եթէ ընկերն քո հիւանդանայ, մի՛ ասեր թէ զինչ տանիմ նմա, այլ երթ ոտիւք և տես աչօք, զի լաւ է նմա, քան զՌ քանքարս ոսկւոյ և արծաթոյ։

32a. Որդեակ, վասն չարախօսութեան ոսկի և արծաթ մի՛ առնուր. զի գործքն մահաբեր է և չար յոյժ։

32b. Եւ մի՛ հեղուր արիւն արդար ի տարապարտուց, զի մի հեղցեն զարիւն քո փոխանակ արեան նորա։

33. Որդեակ, պահեա զլեզու քո ի չարախօսութենէ և զաչ քո յարատ հայելոյ, զձեռն քո ի գողութենէ, և բարի լինի քեզ յաստուծոյ և ի մարդկանէ։ Զի որ գողանայ ոսկի կամ այլ փոքր իրք, պատուհասն մի է և սպանումն։

34. Որդեակ, մի՛ շնար ընդ կնոջ ընկերի քո, զի մի բարկասցի աստուած և այլքն շնան ընդ կնոջ քո։

35. Որդեակ, մի՛ առնուր կին այրի, զի յորժամ բանս ինչ լինի և ասիցէ. Աւա՜ղ զառաջին այրն իմ, և դու տրտմիս։

36. Որդեակ, եթէ վրէժ հասանիցէ քեզ, յաստուծոյ մի՛ խոտորիր և տժգոհիր, զի մի բարկասցի աստուած և այլ խստագոյն ի տարաժամ սատակէ զքեզ։

37. Որդեակ, մի՛ սիրեր զորդին քո, առաւել քան զծառայքն, զի ոչ գիտես եթէ ի նոցանէ է՞, որ լինի քեզ պիտանի։

38. Որդեակ, խաշինքն, որ ի գիհէն ի զատ գնան, գայլոց մասն լինիցին։

---

31 $C_{2,5}$ չիք՝ *եթէ-նմա*, $C_4$ *եթէ բարձր են շէմք տան քո և ընկերն քո հիւանդանայ* (Bod, *58*, Canon չիք՝ *բարձր-քո և*) փխ *եթէ ընկերն քո հիւանդանայ*։

32a $C_{2,5}$ *չարախօս* փխ *չար յոյժ*։

32d $C_4$ *հեղցի*։

33 $C_3$ *փոքր ինչ պատուհաս մեծ է*, $C_4$ *պատուհասն և սպանումն մի է*։

34 $C_3$ *բարկասցի քեզ, զի մի և այլք շնասցեն* փխ *և այլքն շնան ընդ կնոջ քո*, $C_4$ *շնանան*։

35 $C_3$ *լինիցի*, $C_1$ չիք՝ *աւաղ*։

36 $C_{2,5}$ *ճըչկոհիր*, $C_3$ *ճըճգոհար*, $C_4$ *ճըճգոհիր*, $C_3$ *մահ տարաժամու սատակեսցէ զձեզ*։

37 $C_{2,5}$ *զծառայն քո*, $C_3$ *զծառայս քո*, *որն* փխ *է որ*, $C_4$ *եթէ ո ի նոցանէ պիտանի լինի քեզ* (Ven չիք՝ *ո* Bod *լինի բարի*, *58 եթէ ի նոցանէ որ լինի քեզ պիտանի*) փխ *եթէ-պիտանի*։

38 $C_1$ *գեհենէ* փխ *գիհէն*, $C_3$ *բաժին լինին* փխ *մասն լինիցին*։

*39. Որդեակ, դատեա զդատաստան արդար ի մտի քում և զծերսն պատուեա, զի ի մեծ դատաւորէն դու պատուեսցիս և լինի բարի։*

*40. Որդեակ, մի՛ հպարտանար յաւուր մանկութեան քո, զի մի կորուսցէ զքեզ մանկութիւն քո։*

*41. Որդեակ, ընդ դատախազին առաջի դատաւորին մի՛ ցասմամբ խօսիր, այլ իմաստութեամբ։*

*42. Որդեակ, մի՛ տար թոյլ ընկերին քո կոխել զոտն քո, զի մի համարձակեալ կոխեսցէ զպարանոց քո։*

*43. Որդեակ, եթէ խնդրեսցես յաստուծոյ բարի, նախ զկամս նորա կատարեա պահօք և աղօթիւք, և ապա կատարին խնդրուածք քո ի բարին։*

*44. Որդեակ, լաւ է անուն բարի, քան զտեսակ ցանկալի, զի գեղեցկութիւն ապականի, և անուն բարի յաւիտեան մնայ։*

*45. Որդեակ, լաւ է կոյր աչօք, քան զկոյր մտօք, զի կոյր աչօք արագ ուսանի զերթևեկ ճանապարհին, իսկ կոյր մտօքն թողու զուղղորդ ճանապարհն և երթայ ընդ կամս իւր։*

*46. Որդեակ, լաւ է աղքատութիւն ժողովել, քան ի մեծութիւն ցրուել։*

*47. Որդեակ, քննեա զբանն ի սրտի քում և ապա՝ ի վեր հանիցես, զի թէ փոխես զբանն՝ քաղցր լինի։*

*48. Որդեակ, եթէ լսես բան չար յումեքէ, թաքո զնա ի սրտի քում կանգունս է, զի այն չարն մեռանի և ի բարին կատարի։*

*49. Որդեակ, մի՛ ընդ վայր ծիծաղիր, զի ընդ վայր ծիծաղին կռիւ է, և կռւոյն սպանումն է և մահ։*

---

39 $C_1$ *արդարութեան* փխ *արդար*, $C_3$ չիք՝ *և լինի բարի*, $C_4$ *լինի քեզ*։

41 $C_{3,4}$ *դատախազին քո*, $C_3$ *դատաւորաց*, $C_3$ *բարկութեամբ մի խօսիր այլ հեզութեամբ և յաղթեսցես դու նմա* փխ *մի-իմաստութեամբ*, $C_4$ *ցասմամբ մի խաւսիր զի մի անգգամ և անմիտ կոչեսցիս* (Bod *անպիտան երևեսցիս* փխ *անմիտ կոչեսցիս*) *այլ զոր* (Bod չիք՝ *զոր*) *հարցանէ պատասխանի քաղցրութեամբ տացես և զդատաստան նորայ ի գլուխ նորայ կուտեսցես* փխ *մի ցասմամբ-իմաստութեամբ*։

42 $C_3$ *զասուն* փխ *զոտն*, *զպարանոցդ* փխ *զպարանոց քո*։

43 $C_3$ չիք՝ *ապա*։

45 $C_3$ *քանզի աչօք կուրն*, $C_3$ *մտօքն կուրն*, $C_4$ *ըստ* փխ *ընդ*։

46 $C_{3,4}$ *աղքատութեամբ*, չիք՝ *ի*, *մեծութեամբ*։

47 Bod *քննեա զբարի*, $C_3$ *հան զնա* փխ *հանիցես*. *զբանն և ընտրեա զբարին*, $C_4$ *վերայ հասանիցես* փխ *վեր հանիցես*։

50. *Որդեակ, բան սուտ և ստախօսութիւն որպէս արճիճ ծանր է, բայց յետ սակաւ աւուրց ի վերայ ջրին գայ, որպէս տերև ծառի։*

51. *Որդեակ, յայտնեա զփոքր խորհուրդն բարեկամին քո և յետ սակաւ աւուրց գրգռեա զնա և անարգէ։ Եթէ զայն խորհուրդն ոչ յայտնէ, ապա զմեծ խորհուրդն յայտնեա նմա և հաւատարիմ սիրելի պահեա զնա քեզ։*

52. *Որդեակ, առաջի թագաւորի և առաջի դատաւորի օգնական լեր ընկերին քո, զի ի բերանոյ առեւծոյ զերծուցանես զնա, և լինի քեզ անուն բարի և փառք։*

53. *Որդեակ, եթէ եկեսցէ թշնամին քո յոտս քո, թողութիւն շնորհեա նմա և ծիծաղեա ուրախութեամբ ընդ երեսս նորա և ընկալ զնա։*

54a. *Որդեակ, որ չկոչեն զքեզ, մի՛ երթար ի պատիւ և որ չհարցանեն, պատասխանի մի՛ տար։*

54b. *Ընդ հարուցեալ կամ ընդ սառուցեալ գետոյ մի՛ անցաներ, զի մի յանկարծամահ լինիցիս։*

55. *Որդեակ, փորձեա զորդին քո ի քաղց և ի ծարաւ։ Եթէ կարօղ իցէ, ապա տուր զինչս քո ի ձեռս նորա։*

56. *Որդեակ, ի կոչնատանէն և ի հարսանեացն քան զքո ընկերն յառաջ ել և այլ մի՛ դառնալ յետս, զի անուն բարի առնուս և չառնուս վէրք ի գլուխ քո։*

57a. *Որդեակ, կերա դառնիճ և արբի լեղի և ոչ էր լեղի, քան պաղքատութիւն։*

---

50 $C_1$ *Աւուր*, Bod *բայց պակաս յաւուրն*, $C_4$ *ծառոյ*։

51 $C_{3,4}$ *խորհուրդ քո, զայն փոքր*, $C_4$ *անարգէ զնա և* (Bod *զնա և տես*), $C_3$ չիք՝ *սիրելի*, $C_4$ չիք՝ *քեզ*։

52 $C_3$ *դատաւորի* փխ *առաջի դատաւորի*, $C_4$ *թագաւորաց, դատաւորաց, զի որպէս*։

53 $C_3$ *ընդունեա* փխ *ընկալ*, $C_4$ *զնա պատուով*։

54a $C_4$ չիք՝ *որ*, *երթալ*, $C_1$ *ուր* փխ *որ*, Bod *որ չի կոչիս ի պատիւ մի երթայր*, $C_4$ *ուր զքեզ*։

54b $C_4$ *և* փխ *կամ*, $C_4$ *անցանիցես*, $C_1$ *անընկամահ* փխ *յանկարծամահ*, Ven *անընկմահ լինիս*, $C_3$ *մեռանիս անմահ* փխ *յանկարծամահ լինիցիս*, $C_4$ *մեռանիցես* փխ *լինիցիս*։

55 $C_{3,4}$ *և թէ* փխ *եթէ*, $C_3$ *իցէ տանել*, $C_4$ *ձեռին*։

56 $C_3$ *դառնաս*, $C_{3,4}$ չիք՝ *յետս* (Ven ունի). Ven չիք՝ *քան-ընկերն*, Canon *էնպէսայ որ անուշ իւղով օծեցիր զգլուխ քո* ($C_4$-ի մյուս ձեռագրերը՝ ինչպես բնագրում՝ *զի անուն-գլուխ քո*։ Մեզ անհասկանալի է որ ձեռագրին է պատկանում *զի անուշ քո* փխ *զի անուն* ընթերցվածը, որը, ինչպես նշում է Կոնիբերը, համընկնում է ասորականի հետ):

57a $C_{3,4}$ *դառն* փխ *լեղի*։

57b. *Բարձի աղ, բարձի արճիճ և ոչ էր ծանր, քան զպարտքն, զի թէպէտ ուտէի և ըմպէի ոչ կարէի հանգչել։*

57c. *Բարձի երկաթ և քարինս ի վերայ ուսոց իմոց և լաւագոյն էր ինձ, քան զբնակիլն ընդ անգիտի և անմտի։*

58. *Որդեակ, թէ աղքատ իցես ի մէջ ընկերաց քոց, մի՛ յայտներ, զի մի արհամարհեսցիս ի նոցանէ, և բանից քոց ոչ լսեն։*

59a. *Որդեակ, սիրեա զկին քո, որպէս զմարմին քո, զի անձն քո է և կցորդ կենաց քոց և յոյժ աշխատանօք սնուցանէ զորդին քո։*

59b. *Եւ դու ուսո զորդին քո ի քաղց և ի ծարաւ, զի սովորութեամբ վարեսցէ զկեանս իւր։*

60. *Որդեակ, զգաղտ բան կնոջ քո մի՛ յայտներ, զի տկար է և փոքրոգի և յայտնէ կարևորացն և դու արհամարհիս։*

61. *Որդեակ, եթէ գինի ըմպես, պահեա զլեզու քո ի շատախօսութենէ և բարի լինի քեզ, և կոչիս իմաստուն։*

62. *Որդեակ, զինչս քո ի մարդ առանց մուրհակի և վկայի մի՛ տար։ Գուցէ ուրանայ և դու ապաշաւես։*

63. *Որդեակ, ի բարեկամէ քումմէ մի՛ հեռանար։ Գուցէ այլ ոչ գտանիցես այնպիսի խորհրդակից և բարեկամ։*

64. *Որդեակ, սիրեա զհայր քո, որ ծնաւ զքեզ և զանէծս հօր և մօր քո մի առցես, զի ի բարութիւն որդւոց քոց խնդասցես։*

65. *Որդեակ, լաւ է զի գողասցեն զինչս քո, քան թէ գտցեն ի վերայ քո գողութիւն։*

66a. *Որդեակ, առն, որում աստուած աջողեալ է, դու պատուեա զնա։*

---

57b $C_{3,4}$ *և* փխ *բարձի*, Canon *հանգչել մինչև հատուսցէ զպարտսն։*

57c $C_3$ *բարձի երկաթ ինձ լաւ էր քան թէ բնակէի ընդ անմտի* փխ *բարձի-անմտի։* $C_4$ *երկար* փխ *երկաթ։*

58 $C_1$ չիք՝ *քոց*, $C_3$ *քան ընկեր քո* փխ *ի մէջ ընկերաց քոց*, $C_3$ *յայտնեք նմա զաղքատութիւն քո։*

59a $C_{1,2,4,5}$ *սիրեա զմարմին քո և զկին քո* փխ *սիրեա զկին քո որպէս զմարմին քո*, $C_3$ *զի կցորդ է կենաց քո* փխ *զի անձն-քոց*, $C_3$ *զորդիսն քո ի քաղց և ի ծարաւ զի սովորութեամբ վարեսցէ զկեանս իւր* (Միակցվել են a և b խրատները, արտահայտելով անսովոր իմաստ):

59b $C_2$ *սովորութեան վառեսցէ* փխ *սովորութեամբ վարեսցէ։*

60 $C_3$ *զաղտնիք սրտի քո* փխ *զգաղտ բան*, $C_4$ *բան քո կնոջ*, $C_3$ *է բնութեամբ, յայտնէ զնա։*

61 $C_3$ *ի գինի ըմպելն* փխ *թէ գինի ըմպես։*

62 $C_4$ չիք՝ *ի մարդ*, $C_3$ չիք՝ *մի տար-ապաշաւես։*

63 $C_3$ չիք՝ *այնպիսի։*

65 $C_3$ *գողութիւն ի քեզ։*

66a $C_3$ *որում և* փխ *առն որում*, $C_4$ *մարդ որ իրենն աստուած յաջողէ։*

66b. Եւ յորժամ տեսանիցես զծերն, դու յոտն կացիր առաջի նորա և մեծարեա։

67. Որդեակ, խնամախօսութիւն մի՛ առներ, զի զբարին աստուծոյ յոզակէ տեսնուն և զմեղումն ի քենէ։

68. Որդեակ, եթէ ղաղարեն գետք ի գնացից, կամ արեգակն յընթացից, կամ քաղցրասցի լեղի որպէս մեղր, կամ սպիտակասցի ագռաւն որպէս զաղաւնի, նոյնպէս թողցէ անզգամն զանզգամութիւն իւր, և անմիտն զգաստասցի։

70. Որդեակ, շունն, որ հետ քեզ գայ, քարամբ հալածեա զնա, որ ոչ գայ։

71a. Որդեակ, գործք բարի և պատարագ անբիծ հաճոյ է աստուծոյ։

71b. Եւ յամօթոյ, իբրև յաստուծոյ, երկիր։

72. Որդեակ, խորհուրդ չար և սիրտ առնուլ ի դիւին հակառակութեան է, և համբերութիւն հիմն է ծերոց և ամրութիւն հաւատոյ։

73a. Որդեակ, որ քեզ չար թուի, ընկերին մի՛ առներ։

73b. Եւ զոր չէ քո, այլոց մի՛ տար։

74a. Որդեակ, սիրեա զճշմարտութիւն և ատեա զստութիւն։

74b. Պատուիրանացն աստուծոյ ունկն դիր և ի չարէ մի՛ երկնչիր, զի պատուիրանն աստուծոյ պարիսպ է մարդոյ։

75. Որդեակ, ի մարդոյ չարէ և ի ստախօսէ փախի՛ր, զի ագահութիւն մայր է ամենայն չարեաց, և ամենայն չարիք ի լրբութենէ ծնանի։

---

66в $C_5$ *ոտաց* փխ *յոտն*, $C_{3,4}$ *մեծարեա զնա*։

67 $C_3$ *զի բարին և ըռզակն յաստուծոյ առնուն և զվատն ի քէն*, $C_4$ *յաստուծոյ և յըռչակէ, քենէ և աւեն զքո զեմ հանաւղն*, $C_5$ *զմեչումն*, $C_4$ *զչարն* փխ *զմեջումն*։

68 $C_4$ *յընթացից նորա*, $C_3$ *անզգամութիւն իւր անմիտն* փխ *անզգամն*, *զգաստացի*, Canon *զգնացս իւր* փխ *զգաստասցի*։

70 $C_4$ *շուն որ թողու զտէրն իւր և գայ զհետ քո* (ven *զկնի քո*), $C_5$ *արեամբ* փխ *քարամբ*, Canon չիք՝ *որ ոչ գայ*, Bod *որ չի գայ*։

71b Bod *այնպէս* փխ *իբրև*։

72 $C_4$ *ի սիրտ առնուլն դիւրին* (Ven *և սիրտ, դիւրին*), $C_3$ *առն նենգաւորի հակառակութեան է* փխ *առնուլ-է*, *գործոց* փխ *ծերոց* (ven, **58** *ծերոց*), $C_3$ *բայց համբերութիւն հիմն է հաւատոյ* փխ *և-հաւատոյ*։

73a $C_3$ *որ ինչ*, $C_{3,4}$ *ընկերին քո զու* (Ven **58** չիք՝ *քո զու*)։

74a $C_4$ *ատեա զանօրէնութիւն և* (Ven, **58** չիք)։

74b $C_3$ *չարեացն*, *երկիր* փխ *մի երկնչիր*, Ven *վախել* փխ *երկնչիր*, $C_3$ *եղիցի քեզ* փխ *է մարդոյ*։

75 $C_3$ *ստախօսէ երկիր և*, Bod, **58** *ստախաւսութենէ*, $C_3$ *ստախօսութիւն* փխ *ագահութիւն*, Bod *մեղաց* փխ *չարեաց*, $C_3$ չիք՝ *և-ծնանի*։

*76. Որդեակ, զդատաստան մի՛ սիրեր։ Թէպէտ և յաղթես ոսոխին, սակայն յաստուծոյ դատաստանէն երկի՛ր։*

*77. Որդեակ, որ ըղորդ է մտօքն՝ արեգակն է լուսաւոր և որ նենգ է սրտիւ՝ խաւար է մթացեալ։*

*Որ առատ է սրտիւ՝ լի է ողորմութեամբ և որ ագահ է, թէպէտ և ունի ինչ, յիմար է։*

*78. Որդեակ, ի տուն արբեցողի մի՛ մտաներ և թէ մտանես, մի՛ յամեր, զի ի բարուց քոց ունայն և դատարկ մնաս։*

*79. Որդեակ, զընկեր քո ի մօտոյ կամ ի հեռաստանէ մի՛ բամբասեր, զի բանք չար շուտ և փութով հասցէ ի տէր։*

*80. Որդեակ, հրամայեալ է աստուած զգինին վասն ուրախութեան, բայց ի տեղիս բոզանոցի և այլ վատթար և անպատշաճ տեղի. լաւ է աղբ ըմպել քան զգինի։*

*81. Որդեակ, այր արբեցող այնպէս կարծէ ի միտս իւր, թէ ես քաջ եմ և զամենայն զոր և ինչ խօսիմ իմաստութեամբ խօսիմ։ Ոչ գիտէ, թէ հանդիպի առն քաջամտի, որ ի շօշափել ձեռաց իւրոց յերկիր կործանէ զնա և ձգէ։*

*82. Որդեակ, թէ տեսանես զթշնամին քո գլորեալ, դու տրտմեա ի վերայ նորա, զի բարեկամ առնես, ապա թէ ծաղր առնես, յորժամ կանգնի, չար հատուցանէ։*

*83. Որդեակ, այր արբեցող այնպէս կարծէ, եթէ երկիրս ի շուրջ է ի գալ, ոչ գիտէ, եթէ գլուխն իւր խելագարեալ է։ Քանզի որպէս մայր է երկիր ամենայն պտղոց և պտղաբերաց, նոյնպէս մայր է գինին ամենայն չարեաց։ Անխտիր ախտիւ ախտանալ տայ և անողորմ սպանանել տա՛յ, խելագարել տայ զմարդն և յանասնոց բնութիւնն փոխէ։*

---

76 Canon *զդատաստան անիրաւութեան*, $C_{4,5}$ *սիրեր զի* ($C_4$ *սիրել*)։

77 $C_1$, *58 խորդ* փխ *ըղորդ*, $C_4$ *ողորդ*, *արեգական նման*, $C_3$ չիք՝ *մթացեալ*, *աստուածանման է ողորմածն* փխ *լի է ողորմութեամբ*, *անողորմն* փխ *և որ ագահ է*։

79 $C_3$ *չար և գրգռութիւնք*, *շուտ և փուտ*, $C_{2,5}$, *58*, Canon *տէր և կռուիք*, *տէրն իւր*։

80 Canon *արար* փխ *հրամայեալ է*, $C_3$ *ի տեղիս տեղիս* փխ *ի տեղիս-տեղի*։

81 $C_3$ *արբեցողն* փխ *այր արբեցող*, *քան զինքն քաջ կայ* փխ *հանդիպի-ձգէ*։

82 $C_3$ *եթէ թշնամին քո գլորի տրտմեա այլ մի ուրախանար թէ ուրախանաս յորժամ կանգնէ քեզ չար հատուցանէ*, $C_{2,4,5}$ *առնես զնա հատուցանէ քեզ*։

83 $C_{2,5}$ *շուռ* փխ *շուրջ*, Canon, *58 շրջշրջէ* փխ *ի շուրջ է*, $C_5$ *գետինն* փխ *երկիր*, $C_1$ *մայր է գինին և* փխ *որպէս մայր է երկիր*, $C_2$ չիք՝ *մայր է-նոյնպէս*, $C_{2,5}$ Canon, *58 խելագրէ* փխ *տայ*, *խելագարել տայ*։

*84. Որդեակ, փախիր յերաշխաւորութենէ, ապա թէ երաշխաւոր կենաս, դու այնպէս կարծէ, որ ի գրպանէ քումմէ տացես։ Ոչ միայն տալն, այլև ճոխեն զմուրուսդ։*

*85. Որդեակ, ստախօս մի՛ լինիր, զի եթէ զքեզ ժամ մի սուտ գտանեն, երբ զղորդն խօսիս՝ սուտ հաշուին։*

*86*. Որդեակ, հեղցես զգինի քո և մի՛ ըմպել ընդ անզգամս և ընդ անօրէնս, զի մի՛ արհամարհեսցիս ի նոցանէ (7)։*

*87*. Որդեակ, յառաջ սիրէ մարդ սուտ, բայց յետոյ ատելի լինի քեզ, զի բան սուտ որպէս լոր պարարտ է, բայց որ անմիտ է, նա կլանէ զնա (17)։*

*88*. Որդեակ, մի՛ ասեր թէ տէրն իմ անմիտ է և ես իմաստուն, այլ համբերեա նմա անմտութեամբ և առ իմաստուն ունիցես զանձըն մինչև այլ ոք գովեսցէ զքեզ (22)։*

*89*. Որդեակ, ցածո զաչ քո և կակղացո զբարբառ բերանոյ քո և նայեա ընդ ակամբ քո, զի մի երևեսցիս մարդկան անզգամ, զի եթէ աղաղակաւ տաճար շինէր, էշն ամէն օրն է դարպաս շինէր և չարտախ (45)։*

*90*. Որդեակ, լաւ է կող մի ի ձեռին քո, քան զգէր բուծ մի յայլոց ձեռին։*

*Լաւ է ճնճղուկ մի ի ձեռին քո, քան զհազարս յերկինս թռուցեալ,*

*Լաւ է ուլ մի պատարագ ի տան քում, քան զուարակ մի ի տան այլոց (52)։*

*91*. Որդեակ, մի՛ անիծաներ զորդին քո, մինչև տեսանես վաղջան նորա և մի՛ արհամարհեսցես, մինչև տեսանեսցես զկատարածն և զվաղջանն և զշահն (54)։*

*92*. Որդեակ, հարց զայր իմաստուն բան խրատական և իմաստնասցիս։ Եւ եթէ հարցանիցես զայր անմիտ բանիւք բազմօք, նա ոչ իմանայ (64)։*

---

84 $C_3$ *կարծիր թէ գրոց բան քո տաս* փխ *կարծէ-զմուրուսդ*, $C_2$ չիք՝ *քումմէ-տալն*, Canon, *58*, $C_5$ *քո տաս, ի գրպանէ* փխ *տալն*։

85 $C_2$ Canon, *58 հաշուին և ոչ հաւատան*։

86* Par *58* չիք՝ *խրատը*, Ven *հեղցես զգինին և, անզգամին և անաւրինին*։

87* *58* չիք՝ *խրատը*, Bod *և տես եթէ* փխ *բայց*։

89* Ven *տաճար լինէր*, Canon, *69 տուն* փխ *տաճար*, Ven *ապարան* փխ *դարպաս*։

90* Ven, Canon *յերկինս*, Ven *ի տան քում պարարտ*։

92* Ven *բան խրատական*, Bod *բանս իմաստութեան*։

*93*. Որդեակ, եթէ զայր իմաստուն առաքես ի բան, մի՛ ինչ պատուիրել, ինքն կատարէ զբանն։ Ապա թէ զանմիտն առաքես, առաջի բազում մարդկան պատուիրէ և կամ դու գնա և զնա մի՛ յղեր (65)։*

*94*. Որդեակ, մարդ որ ստացուածք և ինչք բազում ունի, կոչեն զնա իմաստուն և առաքինի, և որ ինչք պակաս ունի, կոչեն զնա անմիտ և անարգ, և ոչ ոք պատուէ զնա (68)։*

*95*. Որդեակ եթէ առաքէ տէրն քո, թէ բեր սպտուր, խաղող մի՛ բերել նմա, զի զխաղողն ուտէ և զպատուհասն սպտուրին ոչ թողու (72)։*

*96*. Որդեակ, լաւ է բան իմաստնոյ յարբեցութեան, քան զբանն անմտի ի ծարաւութեան կամ լրջութեան։*

*Լաւ է ծառայ ղորդ, քան ազատ և սուտ։ ։*

*Լաւ է բարեկամ մօտևոր, քան եղբայր հեռաւոր (73)։*

*97*. Որդեակ, ընդ առն ունևորի և ընդ գետոյ յարուցելոյ մի՛ հակառակել, զի ագահ մարդոյ աչքն ոչ լցվի քաւել թէ հողով (81)։*

*Որդեակ Նաթան ի միտ առ զխրատս և մի՛ մոռանար։*

---

97* $C_3$ *մոռանար զհարցումն թագաւորաց,* Canon, *58 և ես առեմ ցնաթան որդեակ ի միտս քո փխ որդեակ-ի միտ։*

*Հուտայ և Բաղիայն հարցան ի Խիկարն, և ասէ Խիկար ի Նաթան.*

*1. Զորս իրք զմարդոյն աչաց լոյսն շատացնէ.*

Նախ՝ *ի վերայ ծաղկանց հայիլն,* Երկրորդ՝ *բոկիկ զկանաչն կոխել,* Երրորդ՝ *ի հետ ջրին ի վեր գնալ,* Չորրորդ՝ *զիւր բարեկամն տեսնուլ։*

*2. Դարձեալ չորս իրք զմարդն գիրացնէ և առողջ պահէ.*

Նախ՝ *փուշ հագնիլն,* Երկրորդ՝ *լսել բան հանց որ իւրն դուր գայ,* Երրորդ՝ *ի տանէ սիրտն առողջ լինայ,* Չորրորդ՝ *զհեռաւորն բարով տեսանէ։*

*3. Դարձեալ Դ իրք են, որ զմարդոյն հարկիքն աւելցնէ.*

Նախ՝ *ամէն բարի խօսելն,* Երկրորդ՝ *խոնարհ կենալն,* Երրորդ՝ *պակաս խօսելն և* չորրորդ՝ *ամաչէ ի մեծէ և ի փոքրէ։*

*4. Դարձեալ չորս իրք են, որ զմարդոյն երեսին ջուրն տանի.*

Նախ՝ *ի սիրոյ տիրութիւնն շատախօսիլ,* Երկրորդ՝ *ամէն բան ի սրտի ներս առնուլն,* Երրորդ՝ *զոր չգիտենայ պարծենայ, թէ գիտեմ,* չորրորդ՝ *ստախօսութիւն։*

*Հարցին ի Խիկար, խաւսին, թէ երկիրս ինչ կայ քաղցր։ Պատասխանի ասէ. Ամօթ երեսացն։ Որ ամօթ ունի, քաղցր է նա, զի ամենայն չարիք ի լրբութենէ ծնանի։*

*Այս է խրատն, զոր ուսուցի ես՝ Խիկար, Նադանայ։*

---

17 Bod չիք՝ *շատախօսիլ,* $C_5$ *տիրութիւն շատախօսիլն։*

18 $C_3$ *բարի չխօսելն* փխ *ի սրտի ներս առնուլն,* $C_4$ *և զոր ոչ գիտենայ պարծենայ* (չիք՝ Bod, *58*)*՝ ամէն բան թաքուցանելն յարել ի ներս ընկնելն և զոր ոչ գիտէ ի ներս ընկնի և ասէ* (չիք՝ Ven) փխ *ամէն բան-պարծենայ։*

19 *58 ստախաւսէ։*

20 $C_{2,4,5}$ *Պիտարխաւսին* փխ *Խիկար խաւսին։*

22 $C_4$ *լրբութենէ և անմտութենէ։*

* * *

*Զայս ամենայն ուսուցի Նադանայ, քեռորդւոյ իմոյ, ես՝ Խիկար, դպրապետս Սենեքարիմայ արքային։ Եւ այսպէս կարծէի ի մտի իմում, եթէ զուսումն և զխրատն, զոր ուսուցի Նադանայ, կացցէ և մնասցէ և պահեսցէ ի մտի իւրում։ Ոչ գիտէի եթէ զբանս իմ անտես արասցէ և հոսեսցէ որպէս զփոշի ընդդէմ հողմոյ։*

*Զայս եդեալ ի մտի իւրում, եթէ հայրն իմ Խիկար կենդանի է և ծերացեալ յոյժ և հասեալ է ի դուռն գերեզմանին, զառածեալ են միտք իւր և պակասեալ են խորհուրդք իւր և ոչինչ գիտէ, սկսաւ Նադան վատնել զինչս իմ ի կորուստ։ Ոչ խնայէր ի ծառայս իմ և յաղախնեայս իմ և տանջէր զնոսա և սպանանէր և կոտորէր զձիս և զջորիս և զերիւարս իմ և զընտիր ընտիրս ի հօտէ իմմէ սատակէր։*

*Եւ իբրև տեսի զՆադան քեռորդին իմ զգործս իմ այլայլեաց և զինչս իմ վատնեաց, խօսել սկսայ և ասեմ. Ի բաց կաց յընչից իմոց և մի՛ մերձենար։ Գրեալ է յառակսն, եթէ ձեռք որ ոչ են վաստակեալ, ակն նորա մի խնայեսցէ։*

*Եւ երթեալ պատմեցի տեառն իմոյ։ Եւ նա կոչեաց զՆադան և ասէ. Որչափ Խիկար կենդանի է, յինչս նորա մի՛ ոք մերձեսցի։*

*Յայնժամ ետես Նադան զԲուզան եղբօր իւրոյ, զոր սնուցեալ էր ի տան իմոյ և ասէ. Խիկար հայր իմ ծերացեալ է և բանք նորա անհամացեալ։*

---

1 $C_3$ *Նաթանայ քւեր որդւոյն իմոյ։*
2 *Սինիքարիմայ։*
4 $C_{2,5}$ չիք՝ *և պահեսցէ,* $C_5$ *սրտի* փխ *մտի։*
8 $C_3$ *ծերացեալ է յոյժ (58 և 92 կենդանի է և ծեր)* փխ *կենդանի-յոյժ։*
10 $C_4$ *զամենայն ինչս (92 զինչս,* Bod *զինչս նորա),*
12—13 $C_3$ *զխաշինս իմ կորուսանէր* փխ *զընտիր-սատակէր։*
14—15 Canon *այլափոխեաց Նաթան զգործս իւր,* Bod *այրեաց* փխ *այլայլեաց։*
16 $C_3$ *ամենայն ընչից։*
17 $C_4$ *ոչ խնայէ (92,* Canon *մի խնայեսցէ,* Bod *յինչ այն)* փխ *մի խնայեսցէ։*
18 $C_{1,2,5}$ *92 պատմեցին,* Bod, Canon *պատմեցի Սինիքերիմա։*
19—20 Ven *մի մերժեսցիս,* Canon *մի մերձենար։*
21 $C_1$ չիք՝ *զԲուզան,* $C_{2,5}$ *Փութան,* Ven *92 զԲուզան,* Bod *Բաւզան,* $C_3$ *զԲութան։*

*Եւ ես իբրև լուա զայս ամենայն, յընչից իմոց ի բաց արարի զնա։*

*Եւ խորհուրդ արարեալ Նադան չարութեան ի մտի իւրում, գրեաց յանուն իմ թուղթ առ թշնամին Սեննեքարիմայ, արքային Նինուէի և Ասորեստանի։ Եւ ասէր այսպէս. «Ես՝ Խիկարս, դպրապետ Սեննեքարիմայ, արքային Նինուէի և Ասորեստանի, առաքեցի առ Եգիպտոցւոց թագաւորիդ։ Եթե յորժամ գիրս ի քեզ հասանի, գումարեսցես զզօրս քո և եկեսցես ի դաշտն Արծրունեաց, որ օրն ԻԵ լինի ի հրոտից, և ես հնազանդեցուցից զաշխարհս ասորոց և տաց զթագաւորն Սեննեքարիմ ի ձեռս քո առանց աշխատանաց, զի կալցես զնա»։*

*Եւ նմանեցուցեալ էր զձեռագիրն ձեռագրի իմոյ և կնքեալ մատանեաւ իմով։*

*Եւ յորժամ խնդրեցին զամենեքեանն երթալ ի տունս իւրեանց, Նադան մեն մնաց առաջի թագաւորին։ Եւ ասէ Նադան ցթագաւորն. Արքայ, յաւիտեան կաց, զի զաղուհացդ, զոր կերեալ եմ ի տան քո, ինձ քաւ լիցի տեսանել զչարիս առաջի քո։ Խիկար հայրն իմ, որ ի պատիւ և ի մեծութեան քում էր, ստեաց ինձ և քեզ և եղև ի կողմն թշնամեաց քոց։*

*Եւ առեալ կարդաց զհրովարտակն առաջի թագաւորին, զոր ինքն էր գրեալ։*

---

3 $C_4$ *սրտի* փխ *մտի*։

4 Bod չիք՝ *գրեաց–թշնամին*, Ven չիք՝ *առ թշնամին*։

4—5 $C_{2,5}$ չիք՝ *արքային Նինուէի և Ասորեստանի*։

5 $C_3$ *եւ պատճեն գրոյն էր այսպէս* փխ *և ասէր այսպէս*։

6 $C_3$ *արքային յոյշ լիցի արքային*, $C_4$ չիք՝ *Նինուէի և Ասորեստանի*։

9 $C_3$ *Արծրունաց*, Canon *Արծունեաց*, $C_1$ *Ե* փխ *ԻԵ*, $C_{3,4}$ *հրոտից ամսուն* փխ *ի հրոտից*։

10 Ven, *92 Սինիքարիմ*, $C_4$ *զաթոռն Սինիքերիմայ ի ձեռն* փխ *զթագաւորն Սեննիքարիմ ի ձեռս*։

14 $C_3$ *բամքն* փխ *զամենեքեանն*, $C_4$ *զաւրքն թագաւորին գնալ*, փխ *զամենեքեանն երթալ*։

15 $C_3$ *մնաց* փխ *մեն մնաց*, $C_4$ *միայն* փխ *մեն*։

15—16 $C_4$ չիք՝ *Նադան ցթագաւորն*։

16 $C_1$ Ven չիք՝ *արքայ*, *92 թագաւոր* փխ *արքայ*։

17 $C_3$ *քո և ծածկել*։

19 $C_4$ *քոց և թուղթն զոր գրեալ էր Նաթան իմ բանիւ և նմանեցուցեալ էր զձեռագիրն իմոյ ձեռագրին*։

20 Bod *կնքեալ* փխ *գրեալ*։

Եւ իբրև լուաւ Թագաւորն, տրտմեցաւ յոյժ և ասէ. Զի՞նչ մեղանք եմ արարեալ ես Խիկարին, որ այսպէս արար ընդ իս։

Եւ վաղվաղակի գրէ Նաղան հրամանաւ արքային, թէ յորժամ ընթեռնուս զգիրդ, գումարեսցես զզօրս քո և եկեսցես ի դաշտն Արծրունեաց, որ օր ԻԵ լինի հրոտից ամսոյ և իբրև տեսցես, ճակատեսցես ընդդէմ իմ, քանզի հրեշտակք փարաւոնի առ իս են եկեալ, զի տեսցեն զզօրս իմ։

Եւ եբեր զթուղթն առ իս, և ինքն գնաց առ թագաւորն։ Եկաց առաջի նորա և ասէ. Մի տրտմիր, ով արքայ, այլ յաւիտեան կաց, երթիցուք ի դաշտն Արծրունեաց և տեսցուք թէ այդպէս իցէ, ապա զինչ հրամայեալ ես լինի։

Եւ առեալ Սենեքարիմ զզօրս իւր, եկն ի դաշտն Արծրունեաց և եգիտ զիս զօրօքն իմովք։ Եւ ես ճակատեցի ընդդէմ նորա, որպէս և հրամայեալ էր։

Եւ իբրև ետես արքայն, տրտմեցաւ յոյժ։

Խօսել սկսաւ Նաղան և ասէ. Մի՛ տրտմիր, արքայ, այլ երթիցուք ի տուն, և ես ածից զհայրն իմ Խիկար առաջի քո։

Ասէ արքայն ցՆաղան. Եթէ ածես զհայրն քո Խիկար առաջի իմ, պարգևս մեծամեծս տամ քեզ և ի վերայ ամենայն գործոց իմոց հաւատարիմ կացուցից զքեզ, և զամենայն գործ արքունեաց վճարես ճարտարութեամբ։

Եւ արքայն դարձաւ յապարանս իւր։

---

2 $C_3$ Խիկարայ։
3 $C_3$ արքային այսպէս, Ven Թագաւորին, Bod արքային Թուղթ։
5 $C_1$ Ե փխ ԻԵ։
9 $C_3$ չիք՝ այլ։
9—10 $C_4$ եկ փխ յաւիտեան կաց (92 յաւիտեան կաց փխ եկ)։
12—13 Canon և առեալ Նաթան զարքայն և գնաց ի դաշտն Արծունեաց։
13 $C_3$ ետես փխ եգիտ։
15 $C_{2,5}$ չիք՝ արքայն, արքայն փխ յոյժ։
18 $D_{3,4}$ չիք՝ զհայրն քո։ Ven չիք՝ Խիկար, $C_3$ և ածից Խիկար առ քեզ։
18—19 $C_3$ առ իս փխ առաջի իմ։
18—21 $C_3$ ասէ Թագաւորն Թէ ածիցես խիկար առ իս մեծ պարգևք առնուս յինէն ի վերա ամենայն իրաց կացուցից զքեզ և գործ արքունեաց իմոց քեզ լիցի վճարն փխ ասէ-ճարտարութեամբ։
21 $C_{2,5}$ քեզ վիճառես, $C_4$ քեզ վիճարեսցին (Bod ի ձեռս քո, Ven քեզ վիճարեն, 92 քեզ վիճարես, Canon գործք քո վիճարեսցին) փխ վճարես։

*Եւ Նադան քեռորդին իմ եկն առ իս և ասէ. Սենեքարիմ արքայն առաքեաց զիս առ քեզ և ասէ. Եկն առ իս, ի միասին ուրախ լինիցիմք։*

*Եւ յորժամ գնացի, ասէ ցիս արքայն. Խիկար դպիր և իմաստուն, խորհրդակից իմ և իշխան իմ էիր և հրամանատու տանն Ասորոց և Նինուէացոց, և դարձեալ եղեր ի կողմն թըշնամեաց իմոց։*

*Եւ զթուղթն, զոր գրեալ էր Նաղան իմ բանիւ և նմանեցուցեալ էր զձեռագիրն իմոյ ձեռագրին, ետ արքայն առ իս և ասէ՝ ընթերցիր։*

*Եւ ես իբրև ընթերցայ, լուծաւ ամենայն անդամք իմ, և լեզու իմ որպէս մագաղաթ գալարեցաւ։ Եւ ես ափշեցայ և եղէ որպէս զմի յիմարելոց։ Խնդրէի բան իմաստութեան և ոչ գտանէի տալ պատասխանի։*

*Խօսել սկսաւ Նադան և ասէ ցիս. Ի բաց կաց յերեսաց արքային, ալևոր զառածեալ։ Տուր զձեռն քո յերկաթ և զոտն քո ի կոճեղս։*

*Եւ արքայն դարձոյց զերեսս իւր յինէն և ասէ ցԱբուսմագ նայիպին իւրոյ. Տար, սպանանեա զանիաստուած Խիկարդ և հեռացո զգլուխ դորա իբրև կանկուննս Ճ։*

*Եւ ես անկայ ի վերայ երեսաց իմոց, երկիր պագի և ասեմ. Արքայ, յաւիտեան կաց, կամեցար զիս ի սպանումն և բանից իմոց ոչ անսացիր։ Ես յանձնէ իմմէ գիտեմ, որ ոչինչ մեղայ և ի սրտի իմում նենգութիւն ոչ գոյ, անմեղ եմ և անպարտ։ Արդ,*

---

4—7 $C_3$ *ասէ Թագաւորն Խիկար հրամանատու իմ Թագաւորութեանս իմ աղեկ դպրապետ և դարձեալ եղեր կողմն թշնամեաց իմոց* փխ *ասէ ցիս-իմոց։*

11 Bod *մարմինք անդամոց իմոց* փխ *անդամք իմ։*

12 $C_3$ *մօրադատ գլորեցաւ* փխ *մագաղաթ գալարեցաւ։*

15—16 $C_3$ *պատասխանի ետ Նադան և ասէ ցիս հեռի կաց ի Թագաւորէդ զառածեալ ծեր* փխ *խօսել-զառածեալ։*

16 $C_{2,4,5}$ *զառածեալ և աղճատեալ։*

18—19 $C_1$ *ցԱբուսմագն իւր* փխ *ցԱբուսմագ նայիպին իւրոյ,* $C_{2,5}$ *ցԱբուսմագ նայփ իւրոյ, 92 նայիպն իւր։*

21 $C_1$ *ասեմ ցարքայն։*

24 $C_4$ չիք՝ *և անպարտ։*

*ողորմեա ինձ և հրամայեա, զի ի դրան իմում սպանցեն զիս և զմարմինս իմ տացեն ի թաղումն։*

*Եւ թագաւորն հրամայեաց Արուսմագայ, զի ի դրան իմում սպանցեն զիս։*

*Եւ իբրև ելի ի նմանէ, գրեցի թուղթ լալով առ Աբեստան կինն իմ։ Եւ ասեմ. Յորժամ թուղթս ի քեզ հասանի, դու հանդերձ առաջի իմ գուսանս Ո, և զգեցցին զգեստ սգոյ և դիցեն սուք և լացցին զիս, զի ես տեսից աչօք իմովք զլալականս, որ լան զիս ի կենդանութեան իմում։ Եւ դու արասցես հացս մեծամեծս, որ տաս դահճաց իմոց և խորտիկս գեղեցիկս առ ի յուտել և ի ըմպել։*

*Եւ Աբեստան կինն իմ յոյժ իմաստուն էր և արար որպէս և հրամայեցի։ Եկ ընդ առաջ և եմոյծ զնոսա և եդ սեղան առաջի նոցա և կերակրեաց զնոսա և ետ ըմպել նոցա գինիս հինս և անապակս, մինչև թմրեցան և ի քուն մտին։*

*Եւ ես և կինն իմ անկաք յոտս Արուսմագայ լալով։ Եւ ասացի ցնա. Արուսմագ ընկեր իմ, հայեաց յերկինս և տես զաստուած աչօք քո և յիշեա զաղուհացն, զոր ի միասին կերեալ եմք և յիշեա զայն, որ մատնեցին զքեզ Սեննեքարիմ արքային հօրն, և ես առեալ պահեցի զքեզ, մինչև արքայն խնդրեաց զքեզ և իբրև տարայ, առայ պարգևս մեծամեծս ի նմանէ։ Արդ, պահեա զիս և հատո զփոխարէն երախտեաց իմոց, և լինի քեզ պարգևս մեծամեծս։ Է մարդ մի ի բանտին և յոյժ*

---

1 $C_5$ *ուրոյ սպանցէ զնա* փխ *իմում սպանցեն զիս,*

7 $C_3$ *կանայս* փխ *գուսանս*, $C_4$ *կուսանս* փխ *գուսան*, $C_3$ *զգեստն քո* փխ *զգեստ սգոյ*, $C_{2,4,5}$ *դիցեն ինձ։*

12—13 $C_4$ *զհրամայեալսն իմ կատարեաց* փխ *յոյժ-հրամայեցի* (Ven, *92*, *յոյժ-հրամայեցի*)։

13 $C_4$ *առաջ իմ։*

15 $C_3$ *արբեալ թմրբեցան*, $C_4$ *թմրեցան և արբեցան։*

18 $C_{2,5}$ *զաստուած քո։*

18—20 Canon *յիշեա զսէր եղբայրութեան մերոյ և մի մեղանչել արեան իմոյ զի գիտես որ ես անպարտ եմ այլև յիշեա զայն որ հայրն Սեննեքարիմայ ետ զքեզ ի ձեռս իմ ի սպանումն* փխ *յիշեա-հօրն։*

19—20 Bod *թագաւորին* փխ *արքային։*

21—22 $C_{2-5}$ *առ նա* ($C_4$ *առաջի նորա*) *պարգևս մեծամեծս ետ ինձ* ($C_3$ *վասն չմեռանելոյն քո*) փխ *առայ պարգևս մեծամեծս ի նմանէ։*

22 $C_4$ չիք՝ *փոխարէն* (*92* ունի)։

23 $C_4$ *մեծամեծս և փոխարէն քո բարուն լինի քեզ բարի*, Bod *քեզ փոխարէն աստուծոյ*, $C_3$ չիք՝ *և լինի-մեծամեծս*, Ven, Bod *իմ այր* փխ *մարդ մի*, $C_3$ չիք՝ *յոյժ։*

*նման է ինձ։ Արիւն արար ի դրանս իմ և մահապարտ է, և անուն նորա Սենեքար կոչի։ Արդ, տարցես զհանդերձս իմ ի բանտն և զգեցուցանես նմա և սպանցես զնա և կատարես զհրամանս թագաւորին։*

*Եւ իբրև զայս ասացի ցԱբուսմագ, գթացաւ ի վերայ իմ և արար զկամս իմ, զոր ասացի նմա։ Եւ զինուորք թմրեալք ի քնոյ, զարդեան ի հասարակ գիշերոյ և սպանին զՍենեքար ծառայն իմ և հեռացուցին զգլուխ նորա ի նմանէ կանկուսս Ծ։*

*Եւ ել համբաւս այս ի քաղաքս Ասորեստանեաց, եթէ Խիկար դպիր և իմաստուն մեռաւ։*

*Յայնժամ Աբուսմագ ընկեր իմ և Աբեստան կին իմ արարին ինձ տուն գետնափոր. երկայնութիւն նորա կանգունս է և բարձրութիւն նորա հաւասար գլխոյ իմոյ, մերձ ի դրան սեմանց տան իմոյ։ Եւ արկին զիս ի ներս և եղին առ իս հաց և ջուր։*

*Եւ գնաց Աբուսմագ առ թագաւորն և պատմեաց, եթէ Խիկար սպանաւ։ Եւ ամենեքեան, որ լսէին զմահն իմ, կոծէին և ապաշաւէին և ասէին. Աւա՜ղ զքեզ, դպիր, ով է որ վճարէ զգործս արքունեաց ճարտարութեամբ քո։*

*Յայնժամ կոչեաց արքայն զՆադան և ասէ. Երթ արա լալիք և սուգ հօր քո։*

*Եկն Նադան և փոխանակ լալոյ ժողովեաց զգուսանս և արար ուրախութիւն մեծ։ Եւ զծառայս իմ և զաղախնեայս իմ*

---

1—4 $C_3$ *և նա նման է ինձ և մահապարտ է սպան զնա և կատարեա զհրամանս թագաւորին* փխ *և նման-թագաւորին։*

7 $C_4$ *գինոյ* (Ven, *92 քնոյ*) փխ *քնոյ*, $C_{2,5}$ *զՍնաքար*, $C_3$ *Սինաքար։*

11 $C_1$ *Աբերան* փխ *Աբեստան*, $C_2$ *Աբուստան*, $C_5$ *Աբուստան* փխ *Աբեստան*

11—15 $C_3$ *Յայնժամ արարին ինձ տուն գետնափոր երկայնութիւն նորա է կանգուն և բարձրութիւն նորա գլխահաւասար մերձ տան իմոյ և եդին զիս անդ* փխ *յայնժամ- ջուր։*

13 $C_4$ *հասարակ* փխ *հաւասար (92 հաւասար)։*

13—14 $C_4$ *սեմոց տանս (92 սեմանց տան)։*

17 Bod *իմաստուն մեռաւ* փխ *սպանաւ։*

18 $C_{2,5}$ *աւաղ է։*

19 $C_4$ *զգործս քո։*

20—21 $C_4$ *լալիք զտան։*

21 Bod չիք՝ *և սուգ։*

22 Bod *զկուսանս* փխ *զգուսանս։*

չարաչար տանջէր դառնապէս, և Աբեստան կնոջէ իմմէ ոչ ամաչէր, այլ կամէր պոռնկել ընդ նմա, որ սնուցեալ էր զնա։

Եւ ես ի գետնափոր տանն լսէի զլացն և զհառաչանս ողբոց ծառայից իմոց, և ես այլ լայի։ Եւ ցանկայր անձն իմ սակաւ հացի և պատառ մսի և բաժակի։ Եւ էի կարօտ ամենայն ընչից իմոց։

Եւ ամենայն բնակիչք Ասորեստանեաց և Նինուէացոց փախեան։

Եւ իբրև լուաւ զայս թագաւորն Եգիպտացոց, եթէ Խիկար դպրապետն մեռաւ և Նինուեացոց աշխարհն և Ասորեստան փախեան, յոյժ ուրախ եղև։ Եւ գրեաց թուղթ փարաւոն արքայն Եգիպտացոց առ Սենեքարիմ արքայն Ասորեստանեաց այսպէս. «Ողջոյն լիցի տերութեանդ և թագաւորութեանդ։ Գիտութիւն լիցի քեզ, զի կամիմ շինել ապարանս ընդ երկինքն և ընդ երկիրս ի միջի կախ։ Տես և առաքեա առ իս ճշմարիտ և ճարտար և իմաստուն այր, որ շինէ և այլ, զոր ինչ հարցանեմ, տայ պատասխանի, ապա թէ անփոյթ առնես, գամ և բառնամ զթագաւորութիւնդ և զերկիրդ աւերեմ»։

Իբրև լուաւ զայս թագաւորն, տրտմեցաւ յոյժ և առաքեա՛ց ժողովեաց զնախարարսն իւր ի խրատ, թէ զինչ առնեմք։ Ասեն նախարարքն. Ով թագաւոր, այլ ո՞վ տայ պատասխանի, բայց եթէ Նադան, որ ուսեալ է ի Խիկարէն և գիտէ զդպրութիւն նորա և սնեալ է ի տան նորա։ Նա կարէ տալ պատասխանի այդմ բանիդ, զոր գրեալ է արքայն Եգիպտացոց։

1 $C_4$ չարչարէր (92 չարաչար) փխ չարաչար, դառնապէս յոյժ (92 չիք՝ յոյժ)։
2 Ven, Bod նաև փխ այլ։
3—4 $C_{1,2}$, 92 զհառաչն և զբոցն, $C_5$ զհառաչն և զողբոցն։
4 $C_4$ այլ ի հետ (92 չիք՝ ի հետ)։
5 $C_3$ մսոյ և գինոյ փխ մսի և բաժակի։
8 $C_{2,5}$ 92 փախեան յինէն, Ven, Bod փախեան ի նմանէ։
9 $C_{1,2,5}$, չիք՝ իբրև։
10 $C_4$ դպիր (92 դպրապետն), և ամենայն աշխարհս Ասորեստան փխ աշխարհն և Ասորեստան։
13 $C_4$ չիք՝ լիցի 92 (ունի), $C_{2,5}$ տէրութեանդ քո։
15—16 $C_4$ ճարտար այր փխ ճշմարիտ-այր (92 ճշմարիտ-այր)։
17 Canon առնես զկամս իմ։
18 $C_{2,5}$ զթագաւորութիւն քո, $C_{2,4,5}$ զերկիրն քո աւերեցից։
20 $C_4$ խրատ հարցանել (92 չիք՝ հարցանել)։
21 $C_4$ պատասխանի այդ բանիդ։
22 $C_3$ գտեալ փխ գիտէ։
20—24 Canon և նոքա տարակուսեալք առեն այդպիսի գործոյդ Խիկարն տայ պատասխանի և այժմ Նաթան որ է ի տեղի նորա փխ ասեն-Եգիպտացոց։

*Յայնժամ արքայն կոչեաց զՆաղան և յայտնեաց զխորհուրդն և ետ հրաման, որ զհրովարտակն ընթերցաւ Նաղան։ Եւ իբրև կարդաց զթուղթն, ի ձայն բարձր աղաղակեաց և ասէ. Ջայդ բանդ դիք և ոչ կարեն վճարել, կամ տալ պատասխանի, ես զի՞արդ կարացից վճարել։*

*Եւ իբրև լուաւ Թագաւորն, յարեաւ ի յոսկոյ աթոռոյ իւրոյ և նստաւ ի վերայ մոխրոյ, կոծէր ձեռօք իւրովք զերեսս իւր և ճողէր զմօրուսն և ասէր. Աւա՜ղ զքեզ, Խիկար դպիր և իմաստուն, ի խօսս մարդկան կորուսի զքեզ, քանզի վճարէիր զգործս արքունեաց իմոց։ Եթէ տայր ոք զքեզ ինձ, ես տայի նմա զինչ և խնդրէր յինէն, այնչափ զանձ ոսկւոյ։*

*Իբրև լուաւ զայս Աբուսմագն, ընկեր իմ, եկաց առաջի թագաւորին և ասէ. Թագաւոր, յաւիտեան կաց։ Որ զհրաման թագաւորին ոչ առնէ մահապարտ է, զի աստուծոյ հրամանքն և թագաւորին մի է։ Դու զԽիկար հրամայեցեր սպանանել, և նա դեռ կենդանի է։ Ասէ արքայն. Խօսեա Աբուսմագ ծառայ իմ և հաւատարիմ, եթէ զԽիկար կենդանացուցես ինձ, բեհեզս և ծիրանիս տամ քեզ և պարգևս մեծամեծս պարգևեմ քեզ։*

*Եւ Աբուսմագ, իբրև զսրաթռիչ հաւ, եկն առ իս և եբաց*

---

1 Ven, Bod չիք՝ *զՆաղան։*
2 $C_4$ *ի Նա* փխ *հրաման (92 հրաման)։*
3 $C_{2,5}$ *զթուղթն Նաղան։*
4 $C_{2,5}$ *ինքն* փխ *դիք։*
4—6 Canon *այդպիսի գործդ չաստուածք ոչ կարեն առնել պատասխանի ոչ թէ մարդիկ իբրև լուաւ արքայն տրտմեցաւ յոյժ յարեաւ* փխ *զայդ-յարեաւ*
8 $C_{2,5}$ *զմօրուսն իւր։*
9 $C_{2,4,5}$ *քանզի դու,* $C_3$ *քանզի դու ճշմարիտ։*
10 $C_4$ *մերոց* փխ *իմոց։*
11 $C_3$ *զոր ինչ և խնդրիցէ զանձս ոսկւոյ և արծաթոյ։*
19 $C_4$ *ոսկոյ և արծաթոյ (92* չիք՝ *և արծաթոյ)։*
12 $C_3$ *անկաւ* փխ *եկաց։*
14—15 Bod չիք՝ *զի-մի է։*
17 $C_4$ *կենդանի ցուցես* (Ven *կենդանի բերցես, 92 կենդանացուցես)։*
18 Bod *հապուցից* փխ *տամ։*
17—18 $C_3$ *կենդանի տաս ինձ և ես տաց քեզ բեհեզս և ծիրանիս ոսկի և արծաթ և մարգարիտս* փխ *կենդանացուցես-քեզ։*
19 $C_4$ *Աբուսմագ իբրև լուաւ զայս ի թագաւորէն (92* չիք՝ *իբրև-թագաւորէն),* $C_3$ *եհաս* փխ *եկն։*

զղուռն գետնափոր տանն և ե՛հան զիս անտի, և էին երեսք իմ այլագունեալ և գլուխ իմ թաղկեալ և բղնկունք իմ իբրև զարծւոյ աճեալ։

Իբրև ետես Թագաւորն, կորացոյց զգլուխն իւր և ամաչէր հայել յերեսս իմ և հազիւ հայեցաւ յիս ամօթալից երեսօք, և ասէ ցիս. Ով սիրելի և պատուական եղբայր իմ Խիկար, երթ ի տուն քո և դարմանեա զանձն քո աւուրս Խ և ապա՝ եկեսջիր առ իս։

Եւ արարի այնպէս։ Եւ դարձեալ եկի առ Թագաւորն։

Եւ ասէ Թագաւորն. Մեղայ քեզ, հայր Խիկար, ես քեզ ինչ ոչ մեղայ, այլ Նադան քեռորդին քո, որ սնուցեալ էիր։

Եւ ես՝ Խիկարս, անկայ ի վերայ երեսաց իմոց, երկիր պագի Թագաւորին և ասեմ. Որովհետև տեսի զերեսս արքային, կենդանի եմ, և ամենայն չարիք ինձ ի բարի դարձաւ, որովհետև եգիտ ծառայս քո Խիկար շնորհս։

Եւ ասէ Թագաւորն. Լուա՞ր, զայս, ո՛վ պատուական և բարի Խիկար, եթէ զինչ է առաքեալ և ասացեալ եգիպտացին, քանզի բնակիչք Նինուէի և Ասորեստանի փախեան։

Եւ ասեմ ցԹագաւորն. Արդ, տուր քարոզ կարդալ ի դրան արքունեաց քոց, եթէ Խիկար կենդանի է, և ամենեքեան որ լսիցեն, դարձցին ի տունս իւրեանց։

Եւ հրամայեաց Թագաւորն քարոզ կարդալ, եթէ Խիկար կենդանի է։ Եւ ամենայն բնակիչք Նինուէի և Ասորեստանի դարձան իւրաքանչիւր ի տեղիս իւրեանց։

Եւ ասեմ զԹագաւորն Սենեքարիմ, եթէ վասն այդմ բանիդ, որ առաքեալ է եգիպտացին, դու մի՛ հոգար, ես երթայց և տաց պատասխանի և զհարկն Եգիպտոսի բերից առ քեզ։

---

1 $C_3$ բանդին փխ գետնափոր տանն, $C_2$ գետնայփոր, $C_3$ և ետես զերեսս փխ և էին երեսք։

2—3 Canon և հեր գլխոյ իմոյ թաղկեալ էր և մազ մորուսիս փխ գլուխ-աճեալ։

4 Bod Թագաւորն այսպիսի։

12 $C_3$ յայնժամ փխ և, $C_4$ չիք՝ Խիկարս։

13 $C_{1,2,5}$ որ ով փխ որովհետև։

15 $C_3$ շնորհս առաջի քո։

19 $C_4$ ցարքայն փխ ցԹագաւորն։

21 $C_{2,4,5}$ տեղիս փխ տունս, $C_3$ դարձեալ գան ի տեղիս փխ դարձին ի տունս իւրեանց իւրաքանչիւր ոք։

22—24 Bod չիք՝ և հրամայեաց-իւրեանց։

*Իբրև լուաւ Թագաւորն, ուրախ եղև և ի գլուխ բազմականին բազմեցոյց զԱբուսմագ։*

*Եւ ի վաղիւն գրեցի առ Աբեստան կինն իմ այսպէս. «Յորժամ կարդաս զգիրս, դու որսալ տուր Բ ձագս արծւոյ և Բ տղայ դեռախօս և Բ կին դիեցուցանող, որ սնուցանեն զմանկտին և ասեն այսպէս. Կաւ, կիր, ծեփ, աղիւս, ճարտարքս կան խափան։ Եւ տուր մանել Բ պարան, երկայնութիւն նորա ԲԾ կանկուն և հաստութիւն նորա ըղնգուն մի և տուր արծուեացն յամէն օր Բ գառինս և տուր կապել զմանկտին ի վերայ արծուեացն և պակաս թռիչս առնել, մինչև սովորութիւն առնուն և այնպէս սովորութիւն տուր, մինչև բարձրանան ԲԾ կանկուն»։*

*Եւ Աբեստան կինն իմ յոյժ իմաստուն էր, արար վաղվաղակի զամենայն, զոր պատուիրեցի։*

*Յայնժամ արքայն հրամայեաց ինձ գնալ յԵգիպտոս։*

*Եւ իբրև հասի ի դուռն Եգիպտոսի, ածի զմանկտին յարկնոցն, որպէս սովորեալ էին։ Կապեցի ի վերայ արծուեացն զմանկտին։ Առեալ թռան և բարձրացան։ Եւ մանկտին աղաղակէին և ասէին. Կաւ, կիր, ծեփ, աղիւս, ճարտարքս կան խափան։ Եւ ես՝ Խիկարս, առի զգաւազան և ի հետ մտի, ուր և հանդիպէի գան հարկանէի և ասէի. Փութացե՛ք, տուք զոր խնդրեն ճարտարքն։*

*Երեկ արքայն և տեսեալ զարմացաւ յոյժ և ուրախ եղև և հրամայեաց իջուցանել զմեզ։ Եւ ասէ. Եկ, հանգիր յաշխատանաց քոց, կեր և արբ և վաղիւն եկ առ իս։*

*Եւ իբրև այգ եղև, կոչեաց զիս Թագաւորն և ասէ. Զի՞նչ է անուն քո։ Ասեմ. Աբիկամ է անուն իմ, քանզի սորուկ եմ Սենեքարիմայ արքային։*

---

1—2 $C_3$ *յոյժ ուրախացաւ և ամենայն բազմականին գլուխ կացոյց Աբուսմաք* փխ *ուրախ-զԱբուսմագ*, Bod *կացոյց* փխ *բազմեցոյց*։

4 $C_3$ *զգիրդ գայդ* փխ *զգիրս*, Canon *ակղ հաւու* փխ *արծւոյ*, $C_3$ *մանուկ* փխ *տղայ*։

6—7 $C_3$ *բերէք զի ճարտարքս պարապ են* փխ *ճարտարքս կան խափան*։

8 $C_4$ *ըղնգուն մի և տուր հիւսան զուգել Բ արկնոց մանկանցն*, $C_{2,5}$ *տուր կերակուր*։

10 $C_{2,5}$ *պակասաթռիչս*։

17 $C_{2,5}$ չիք՝ *զմանկտին*, $C_4$ *թռան ի վեր*։

22 $C_4$ *եկեալ արքայն Եգիպտացոց և* (Bod *որ եկ*) փխ *երեկ-տեսեալ*։

24 $C_4$ *նոցա* փխ *քոց*, Ven չիք՝ *քոց*, $C_4$ *արբ և ուրախ լեր*։

26 $C_3$ *աղքատն* փխ *սորուկ*։

Եւ իբրեւ լուաւ զայս արքայն, տրտմեցաւ և ասէ. Ես այնպէս անա՞րգ թվեցայ յաչս Սեննեքարիմայ արքային Ասորեստանեաց, զի ստրուկ մի առաքեաց առ իս տալ ինձ պատասխանի։ Եւ ասէ ցիս։ Աբիկամ, երթ ի տուն քո և վաղիւն եկն առ իս։

Եւ իբրեւ վաղիւն գնացի, հրաման ետ արքայն զօրացն իւրոց, զի զգեցցին քղամիթ կարմիր, և ինքն զգեցաւ զգեստ ծիրանի և նստաւ յաթոռ իւր, և զօրքն նորա շուրջ զնովաւ։ Հրամայեաց կոչեաց զիս և ասէ. Աբիկամ, ո՞ւմ նման եմ ես և կամ զօրքս իմ ո՞ւմ նման են։ Եւ ասեմ. Նման ես դու դիցն, և նախարարք քո քրմանց նոցա։ Ասէ. Երթ յօթեւանս քո և վաղիւն եկն առ իս։

Եւ իբրեւ եկն, զգեցոյց կտաւ զօրաց իւրոց, և ինքն զգեցաւ կարմիր։ Եւ ասէ ցիս։ Ում նման եմ ես, կամ զօրքն իմ ո՞ւմ նման են։ Եւ ասեմ. Նման ես դու արեգականն, և նախարարք քո ճառագայթից նորա։

Եւ դարձեալ ասէ ցիս. Երթ յօթեւանս քո և վաղիւն եկն առ իս։

Եւ հրամայեաց նախարարաց, զի զգեցան զգեստ ներկուածոյ, և ինքն թագաւորն զգեցաւ զգեստ փետրուածոյ և նստաւ յաթոռ իւր և ասէ. Ո՞ւմ նման եմ ես, կամ զօրքս իմ ո՞ւմ նման են։ Ասեմ. Նման ես դու գալար խոտոյ, և նախարարքդ քո՝ ծաղկանց նորա։

Յայնժամ արքայն ուրախ եղեւ յոյժ և ասէ. Ասա ինձ զճշմարիտն, Սեննեքարիմ արքայն ո՞ւմ նման է։ Ասեմ. Թագաւոր, քաւ լիցի քեզ յիշել զարքայն Սեննեքարիմ, քանզի նստեալ կաս, այլ յոտն կաց, և ես ասեմ։ Իբրեւ յարեաւ ասեմ. Սեննեքարիմ

---

1 $C_4$ թագաւորն փխ արքայն, $C_{2,4,5}$ տրտմեցաւ յոյժ։

4 $C_3$ այսօր գնա փխ երթ ի տուն քո։

7 $C_3$ չիք՝ քղամիթ։

7—8 $C_3$ ծիրանի աղեկ փխ զգեստ ծիրանի։

9 $C_1$ ասաց փխ ասէ, $C_4$ զիս առ ինքն։

11 Bod զաւրք փխ նախարարք։

19 $C_4$ և իբրև վաղիւն գնացի (Ven չիք՝ և-գնացի). $C_{2,5}$ և ի վաղիւն. $C_{2,5}$ հրամայեաց թագաւորն։

20 $C_3$ փետրուածոյ սեաւ, Ven փետրուածոյս։

22 $C_{2,4,5}$ գալարոյ փխ գալար խոտոյ, Ven գաշտոյ փխ գալար խոտոյ, $C_3$ գալար ծառոյ, $C_3$ զօրքդ փխ նախարարքդ։

*արքայն նման է Բելշիմի, և նախարարք նորա՝ փայլատականց նորա։ Յորժամ կամի նիւթէ զանձրև և հարկանէ զցօղն, ի բարձունս ելանէ Թագաւորիւք, որոտայ և կայծու զճառագայթս արեգականն, և յորժամ կամի. կարկուտ ածէ և մանրէ զփայտ դալար և չոր, ծակէ և հարկանէ զբոյսս դալարոյ։ Ասէ արքայն. Ասա ինձ զճշմարիտն, զինչ է անուն քո։ Ասեմ. Խիկար է անուն իմ։ Ասէ Թագաւորն. Թշուառական, կենդանացա՞ր։ Ասեմ. Որովհետև տեսի զերեսս քո, կամ կենդանի։ Ասէ Թագաւորն. Այս օր օրհնեալ եղիցի, զի Խիկար տեսի կենդանի աչօք իմովք։*

*Եւ անկայ ի վերայ երեսաց իմոց, երկիր պագի նմա և համբուրեցի զնա։*

*Ասէ Թագաւորն. Հան զայս խօսքս, թէ սիւն մի կայ, և ի վերայ սեանն՝ երկոտասան մարք, և ի վերայ նոցա՝ անիւք Լ—ք, և ի վերայ միոյ միոյ անուանցն՝ սուրհանդակք Բ—ք, մինն՝ սև և միւսն՝ սպիտակ։ Եւ ես ասեմ. Թագաւոր, զայդ ասորոց հորթարածներն գիտեն։ Սիւնն, զոր ասացիր, տարին է, մարքն Բժ-ան ամիսք են, անիւքն Լ աւուրք ամսոցն են, սուրհանդակքն. մինն՝ սև և միւսն՝ սպիտակ, ցերեկն ու գիշերն են։*

*Ասէ Թագաւորն. Զի՞նչ է բանս այս, որ յԵգիպտոսէ մինչև ի Նինուէ Շ փարսախ է, զիա՞րդ լուան կուսանք մեր զխրխնջուն երիվարաց ձերոց և վրիժեցան։*

---

1 $C_1$ *Բեւշիմի,* $C_3$ *Բելշեմի։*

1—2 $C_3$ *և զօրք նորա նման են փայլատականց* փխ *նախարարք նորա փայլատականց նորա,* $C_4$ *փայլատակացն* փխ *փայլատականց նորա* (Bod *փայլատականց նորա*)։

2 $C_3$ *զանձրև սեաւ,* Bod *նիւթ առնէ անձրևաց* փխ *նիւթէ զանձրև։*

3 $C_{2,4,5}$ *Թագաւորութեամբն։*

5 $C_2$ *և ծագէ* փխ *ծակէ,* $C_4$ *ծագէ առև.* $C_3$ չիք՝ *ծակէ և հարկանէ զբոյսս դալարոյ,* $C_1$ *գնա* փխ *արքայն,* $C_3$ *և ասէ Թագաւորն* փխ *ասէ արքայն,* $C_{2,5}$ չիք՝ *արքայն։*

7 $C_1$ չիք՝ *Թշուառական։*

8 $C_4$ *քո արքայ,* $C_{1,2,5}$ չիք՝ *ասէ Թագաւորն։*

9 $C_{3,4}$ *օրհնեալ եղիցի օրս այս։*

11 $C_3$ *զոտն* փխ *զնա։*

12 Ven *խաւսքս և ասէ։*

13 $C_1$ չիք՝ *երկոտասան։*

14 $C_4$ չիք՝ *միոյ միոյ* (Bod *միոյ քսան* փխ *միոյ միոյ*)։

16 $C_3$ *մեր տաւարածերն,* $C_1$ *որդըարծերն,* $C_2$ *որդըածերն։*

21 $C_{2-5}$ *ԵՃ խրասխ,* Ven, *92 խրախս* փխ *փարսախ։*

22 $C_1$ *վրինջեցան,* $C_3$ *վրէժեցան։*

*Ես՝ Խիկարս, ելի ի Նմանէ և կալայ աքիս մի և յանդիմանեալ տանչէի զնա։ Յայնժամ պատմեցին Թագաւորին, եթէ Խիկար զդիսն մեր անարգէ։ Կոչեաց զիս Թագաւորն և ասէ. Խիկար, վասն է՞ր իրի զդիսն մեր անարգես և զաքիսն տանջես։ Ասեմ ցնա. Զի դա շատ վնաս արար ինձ։ Յայնժամ աքաղաղ մի ետ ինձ Թագաւորն։ Ձայն նորա քաղցր էր և ի ժամուն զարդուն առնէր զիս. երթալ յարքունիս։ Ի գիշերիս յայամիկ չոգաւ և եհատ զգլուխ աքաղաղին և եկն աստ։ Ասէ արքայն. Ինձ այսպէս թուի, թէ որչափ ծերացար, բանք քո և իմաստութիւնք քո չրեցան։ Յեգիպտոսէ մինչև ի Նինուէ Ծ փարսախ է, արդ, մի աքիս ի մի գիշերի զիա՞րդ եհատ զգլուխ աքաղաղին և եկն աստ։ Եւ ասեմ. Որպէս խրխնջիւն, զոր լուան կուսանք և վրիժեցան։*

*Ասէ ցիս արքայն. Թող զայդ և եկ մանեա ինձ պարան աւազէ։*

*Եւ իբրև եկի ես ի Նմանէ, ասէ Թագաւորն ընդ իւրքն ամենայն, եթէ զինչ խօսի Խիկարն, ասացեք թէ մեք լուեալ եմք և գիտեմք զբանդ զայդ։*

*Եւ ես առեալ գրեցի թուղթ այսպէս. «Սենեքարիմայ արքայէ ողջոյն առ փարաւոն արքայն եգիպտացւոց։*

*Կարօտ են եղբար յեղբարց և թագաւոր թագաւորաց։ Ի*

---

1—2 $C_3$ *և ելի կալայ այգիս մի տանջեցի*, $C_1$ *յանդիմանի։*

3 $C_{2,5}$ *զդինս մեր անցանէ* փխ *զդիսն մեր անարգէ*, $C_3$ *անարգէ դիցն մեր*, $C_4$ *անարգէ և զաքիսն տանջէ։*

4 $C_{2,5}$ *վասն երկրի զդինսն* փխ *վասն էր իրի զդիսն*, $C_4$ չիք՝ *իրի*, *92 զդինսն.* փխ *զդիսն։*

5 Bod *վնասակ եղև* փխ *վնաս արար*, $C_{2,5}$ *վնասակար եղև։*

6 Ven, Bod չիք՝ *նորա։*

6—7 $C_4$ *յամենայն ժամու զարթուցանէր* փխ *ի ժամուն զարդուն առնէր։*

8 $C_1$ *եհան* փխ *եհատ։*

10 $C_4$ *շրջեցան (92 ջրեցան)* փխ *չրեցան*, $C_{2-5}$ *Ծճ խրասխ* փխ *Ծ փարսախ։*

12 Bod *այսրն* փխ *աստ*, Canon *զի է զերիվարքն խրխնջացին յԱսորիս լուան կուռքն մեր* փխ *որպէս-կուսանք և։*

12—13 *92 վրեժեցան։*

16 Ven, Bod չիք՝ *ասէ թագաւորն*, $C_3$ *զօրքն* փխ *իւրքն։*

16—17 Bod *ամենայն ասէին թէ։*

19 $C_4$ *ի Սենաքարիմայ։*

21 Ven *կարեոր են* փխ *կարօտ են*, $C_4$ *յեղբարց տեսանել (92* չիք՝ *տեսանել)*, $C_3$ *կարօտ եմք միմեանց թագաւոր թագաւորաց որպէս եղբայրք* փխ *կարօտ են-թագաւորաց։*

*ժամանակիս յայսմիկ ծախք և պարտք շատ եղեն, և արծաթ պակասեաց ի գանձուց մերոց։ Արդ, հրամայեա և տուր բերել ի ձեռն հրովարտակիդ արծաթ Ճ քանքար»։*

*Եւ զթուղթն պնդեցի և մտի առ թագաւորն և ասի. Յայսմ հրովարտակիս գրել եմ բան, որ ոչ քաղաքիդ և ոչ թագաւորիդ և ոչ նախարարացդ չեն լուեալ։ Եւ ասացին ամենեքան, թէ մեք լուեալ եմք զբանդ զայդ։ Եւ ասեմ. Եթէ լուեալ եք, ասացեք մինչդեռ չեք բացեալ։ Եւ ոչ կարացին ասել։ Եւ բացեալ կարդացին։ Ասեմ. Երբ լուեալ եք, զոր գրած է, տուք։ Ասէ արքայն. Եթէ զաւազեա պարանն ոչ մանես ինձ, զհարկն Եգիպտոսի ոչ տամ։*

*Եւ ես մտի ի տուն մի խորխորատ և ծակեցի զորմն տանն, ուստի արևն ծագէր, և ի ծագել արևուն ցայթեց ի տանն կանկունս է։ Եւ առի փոշի աւազի և արկի ի ծակն և փչէի ի նա։ Երևեցաւ, որպէս մանոցք։ Եւ ասեմ. Հրաման տուր, արքա՛յ, զի ժողովեսցեն զպարանն, և ես այլ մանեցից։*

*Եւ իբրև ետես արքայն, յոյժ ծիծաղեցաւ և ասէ. Օրհնեալ ես առաջի դիցն։*

*Եւ պարգևս մեծամեծս ետ ինձ և զհարկն Եգիպտոսի եթող և բարով և խնդութեամբ արձակեաց զիս, և գնացի։*

*Իբրև լուաւ թագաւորն Սենեքարիմ զգնալն իմ, ել ընդ առաջ իմ ուրախութեամբ։ Եւ իբրև ողջունեցաք զմիմեանս, առեալ տարաւ զիս յապարանս իւր և ի գլուխ բազմականին բազմեցոյց զիս և արար ուրախութիւն մեծ բազում աւուրս և պարգևս մեծամեծս շնորհեաց ինձ։*

1 $C_4$ *շատ են եղեալ։*
2 $C_1$ *համարեա* փխ *հրամայեա,* $C_4$ *բերել ինձ։*
6 $C_4$ *նախարարացդ իւրոցդ (92* չիք՝ *իւրոցդ)։*
7 $C_4$ *եմք և գիտեմք։*
11 $C_{2,4,5}$ *տանիս* փխ *տամ։*
13 Bod, **92** *տոյն* փխ *տանն։*
15 $C_4$ *մանացք* (Ven *մանոցք)։*
12—16 Canon *Յայնժամ մտայխորհ եղէ և ի թիկանց կոյս տանն ծակեցի զորմն ուստի արևն ծագէր և յորժամ ծագեաց արևն խառնեցի փոշի ընդ աւազ և արկի ի լուսամուտն և երևեցաւ շաղն որպէս մանոցք և ասեմ տէր իմ արքայ հրամայեայ զի ժողովեսցին* փխ *և ես մտի-մանեցից։*
20 $C_4$ *խաղաղութեամբ* (Bod *խնդութեամբ)* փխ *խնդութեամբ։*
21 $C_3$ *արքայն գալն* փխ *թագաւորն-զգնալն,* $C_4$ *զգալուստն* փխ *զգնալն։*
21—22 $C_{2,5}$ *ընդդէմն* փխ *ընդառաջ։*
22 $C_3$ *ուրախութեամբ և գուսանօք։*
24 $C_{2,5}$ *խրախութիւն։*

Եւ ասէ ցիս. Ով հայր իմ Խիկար, խնդրեա յինէն այլ մեծամեծ պարգևս։

Երկիր պագի նմա և ասեմ. Արքայ, յաւիտեան կաց, զոր ինչ պարգևել կամիս դու, Աբուսմագայ ընկերին իմոյ պարգեվեա, որ է տուօղ կենաց ծառայից քոց, այլ տացես ինձ զՆադան քեռորդին իմ, զոր ուսուցի, զի ոչ ուսաւ զառաջին ուսումն բարիոք։

Եւ ետ արքայն զՆադան ի ձեռս իմ։

Եւ ես առեալ տարայ զնա ի տուն իմ և կապեցի զնա ընդ աղխսոյ միոյ երկաթոյ, որ էր կշռովն է քանքարոյ ի դրան սրահին իմոյ։ Եւ յանձն արարի զնա Բելիար ծառայի իմոյ և հրամայեցի գան հարկանել ի թիկունս և ի փոր նորա։ Եւ ասեմ ցնա. Ի մտանելն և յելանելն, զոր ինչ առակաւ խօսիմ ընդ սա, գրեա ի թղթի և պահեա։

Եւ տայի նմա հաց սակաւ և ջուր սակաւ։

Խօսել սկսայ և ասեմ ցնա.

---

3 Bod չիք՝ երկիրպագի նմա և, Ven չիք՝ յաւիտեան կաց։

4 Bod կամիս տուր։

6 Canon զի այլ ուսումն ուսուցից նմա փխ զոր ուսուցի։

7 Ven զարուոմն փխ բարիոք, Bod իմ փխ բարիոք։

8 $C_4$ զնադան քեռորդին (Ven չիք՝ քեռորդին)։

9 $C_1$ չիք՝ ի տուն-զնա։

13 $C_{1,2}$ արկաւ փխ առակաւ, $C_3$ կարգաւ փխ առակաւ։

15 Bod տացի փխ տայի։

16 $C_4$ այսպէս փխ ցնա։

* * *

*1. Որդեակ, որ ընդ ականջս ոչ լսէ, ընդ թիկունս լսեցուցանեն։*

*Խօսել սկսաւ Նադան և ասէ. Ընդէ՞ր բարկացար ինձ, հայր իմ։ Մեղայ քեզ, հայր իմ պատուական։ Եթէ ողորմիս ծառայիս քո, ես եղէց քեզ մոխիր և ծառայ զամենայն աւուրս կենաց իմոց։*

*Եւ ես ասեմ ցնա.*

*2. Որդեակ, յաթոռ փառաց նստուցի զքեզ, և դու յաթոռոյ իմոյ կործանեցեր զիս։*

*3. Որդեակ, ես բեհեզս և ծիրանիս ագուցի զքեզ, և դու հողով զմարմինս իմ ապականեցեր։*

*4. Որդեակ, ես բարձրացուցի զքեզ որպէս աշտարակ, զի եթէ եկեսցէ առ իս թշնամին, ելից ամրացայց ի քեզ։ Դու ինքնին թշնամի գտար ի տան իմում։*

*5. Որդեակ, ես ետու զքեզ ի պատիւ և ի փառս, և դու մատնեցեր զիս ի ձեռս թշնամեաց և մահու։*

*6. Որդեակ, ես սնուցի զքեզ, որպէս զձագս աղուեսու. Եւ ակն քո ի ծակ քո, մատն իմ կոխեր ի բերան քո և զմատունս քո սրեր յաչս իմ։*

*7. Որդեակ, արդարութիւն իմ և անմեղութիւն իմ փրկեաց զիս և ապրեցոյց, և անիրաւութիւն քո ոչ աջողեաց քեզ։*

---

1 $C_1$ *ականջ քո որ ոչ լսեաց։*

2 $C_3$ *ասէ Նադան* փխ *խօսել-ասել,* չիք՝ *հայր իմ պատուական,* $C_4$ *Խիկար* փխ *պատուական.* Ven չիք՝ *մեղայ-պատուական,* $C_4$ *ողորմիս ինձ։*

3 $C_4$ *զգեցուցի* փխ *ագուցի։*

4 $C_2$ *իբրև* փխ *որպէս,* $C_4$ *ինքնին գտար թշնամի տան իմոյ (92 թշնամին գտար ինքնին ի տան)։*

5 $C_2$ *թշնամու* փխ *ի ձեռս թշնամեաց,* չիք՝ *թշնամեաց և։*

6 $C_4$ *ուսուցի* փխ *սնուցի,* $C_1$ *կոկեր* փխ *կոխեր,* Canon *որդեակ սնուցի զքեզ որպէս ձակս արծուի և մատունք քո սրեալ էին ի յաչս իմ քանզի ակն քո չար էր տեսանել զիս* փխ *որդեակ-յաչս իմ։*

7 $C_{2,4,5}$ *ապրեցոյց զիս,* $C_3$ չիք՝ *և ապրեցոյց։*

*8. Որդեակ, եղեր ինձ որպէս կարիճ, որ եհար զասեղն։ Եւ ասէ ասեղն. Ահա խայթոց, որ չար է քան զքոյդ։*

*Դարձեալ եհար զթաթն ուղտուն, և նա եհար զթաթն ի վերայ նորայ և ճմլեաց զնա և ասէ. Գերի, ոչ գիտէիր, եթէ շունչ և հոգի քո յոտս իմ էր։*

*9. Որդեակ, եղեր ինձ որպէս այծն, որ ուտեր զտորունն։ Ասէ տորունն. Զի՞ ուտես զիս, ոչ գիտես եթէ ինև գործեն զմորթիդ քո։ Ասէ այծն. Ես ի կենդանութեանս ուտեմ զքեզ, և ի մահուան իմոյ խլեն զտակ քո և շինեն զմորթի իմ։*

*10. Որդեակ, դարձեալ եղեր ինձ որպէս այն, որ ձգեաց նետ յերկինս և ոչ կարաց հանել ի վեր, այլ զանօրէնութիւն շահեցաւ։ Եւ դարձաւ նետն ի գլուխն իւր։*

*11. Որդեակ, եղեր ինձ սերմանահան, որ ցանեաց գրիւս Ժ և ժողովեաց գրիւս Ե և այլ պակաս։*

*12a. Որդեակ, եղեր ինձ որպէս կացին, որ կտրէր զծառն։ Եւ ասէր ծառն. Եթէ յինէն չէիր, ինձ յաղթել ոչ կարէիր։*

*12b. Դու այնպէս կարծէիր եթէ զտեղի նորա լնում, բայց եթէ լինիցի ագի խոզի իբրև կանկունս է, զձիոյ տեղին ոչ կարէ լնուլ։*

*12c. Եւ եթէ իցէ սարն, որ ծնանի մարմնոյ թագաւորին, բայց ինքն ումեք ոչ էր օգուտ և ոչ պիտանի, այլ անպէտ և վատ։*

---

8 $C_{1,2,5}$ չիք՝ *և ասէ ասեղն,* $C_3$ *ասեղն ցկարիճն,* $C_1$ *զթագն* փխ *զթաթն.* $C_3$ *զթաթ ըղտին,* $C_1$ *զթագն* փխ *զթաթն,* $C_3$ *զթաթ ըղտին,* $C_2$ *զտոյտն* փխ *ուղտուն,* $C_5$ *զտոյն* փխ *ուղտուն,* $C_3$ *որ շունչ քո* փխ *եթէ քո,* Ven չիք՝ *ուղտուն-զթաթն,* Canon *ոչ գիտէիր չար կարիճ թե զօրութիւնք քո ոտս իմ է* փխ *գերի-իմ էր։*

9 $C_2$ *գիտես զիս,* Bod *այսովք* փխ *ինև,* $C_3$ *չգիտես թե ես եմ զործի մորթոյ քո,* Canon *թէ արմատով իմով ներկեն զմորթն քո, խենդակաւ* փխ *խլեն զտակ քո։*

10 $C_3$ *նետն ի վեր և չկարաց հանել յերկինքն,* չիք՝ *այլ-շահեցաւ և,* $C_4$ *զանաւրէնութիւն իւր։*

11 $C_4$ *դարձեալ* փխ *որդեակ (92 որդեակ* փխ *դարձեալ), որպէս սերմանահատ։*

12a $C_4$ *ոչ յաղթէիր* փխ *ինձ-կարէիր (92 ինձ-կարէիր* փխ *ոչ յաղթէիր),* Ven չիք՝ *ասէր ծառն,* Canon *որպէս զծառն զոր կտրէին ասէ ծառն եթէ ոչ էիր յինէն որ ի ձեռինդ է ոչ կարէիր յաղթել ինձ* փխ *որպէս-կարէիր,* $C_3$ *եթէ յինէն չէր կոթ քո ոչ կարէիր յաղթել ինձ* փխ *եթէ-կարէիր։*

12b $C_3$ *թէ* փխ *բայց եթէ, է կանգուն* փխ *իբրև կանկունս է,* Bod *լնու,* փխ *կարէ լնուլ։*

12c $C_{2,5}$ *ծիրանի* փխ *ծնանի,* $C_4$ *և թէ լինի սար նորա որպէս ծիրանի թագաւորի ոչ կարէ նմանել ոչիլ հացի եկեր զմարմին թագաւորի։* C խմբի ընդօրինակություններում խրատն աղավաղված է։ Իրար են խառնվել A խմբի № 6 և 9 խրատները։

*13. Որդեակ, եղեր ինձ որպէս զձագ ծիծռան, որ անկաւ ի բնոյ իւրմէ։ Եւ եգիտ զնա ագիս մի և ասէ. Եթէ չինէն ի զատ էիր լեալ, այլ մեծ չարին էիր դիպեալ։ Ասէ ձագն ծիծռան, թէ զբարիդ զոր ինձ արարիր, ի գլուխ քո դարձցի։*

*14a. Որդեակ, շունն, որ զորսն ինքն ուտէ, կերակուր գայլոց եղիցի։*

*14b. Աչք, որ ինձ լոյս ոչ տայ, ագռաւք ծեծեն զնա։*

*14c. Ձեռք, որ ինձ չէ օգուտ, սրօք հատցեն զնա, որ ոչ է օգուտ։*

*15. Որդեակ, եղեր ինձ որպէս որոգայթ, որ թաղեալ կայր յաղբին։ Եգիտ զնա ճնճղուկ մի և ասէ. Զի՞նչ ես։ Ասէ. Յաղօթս կամ առ աստուած։ Եւ ասէ ճնճղուկն. Եւ այդ, որ ի բերանդ է, զի՞նչ է։ Ասէ. Քաղցելոց հացիկ է։ Արձակեալ ճնճղուկն առնուլ զհատն, և կալաւ զպարանոցաւն։ Ասէ. Թէ քաղցելոց հացիկն այս էր, աստուած այսպէս լսէ աղօթից քոց։*

*16. Որդեակ, ասացին գայլուն, թէ ի բաց կաց ի գիհեդ։ Ասէ. Թէ ի բաց կենամ, կուրանամ, զի փոշին աչիցս դեղ է։*

*17. Որդեակ, եղեր ինձ որպէս ոմն, որ ետես զընկերն իւր, որ դողայր, առեալ ջուր, արկ ի վերայ նորա։*

*18. Որդեակ, եղեր ինձ որպէս շուն, որ եմուտ ի քուրայ բրտին, յորժամ ջերաւ, սկսաւ հաչել ընդդէմ բրտին։*

*19. Որդեակ, ասացին ագխին, եթէ թող զսովորական բանն և համարձակ լինի քեզ յարքունիս մտանել և ելանել։ Ասէ ագխն. Եթէ եղիցին աչք իմ ոսկի և թաթ իմ արծաթի, զսովորական բանն իմ ոչ թողից։*

---

14a $C_3$ *ուտիցէ գայլոց կերակուր լինիցի։*

14b $C_2$ *ծիծեն*, Bod *լիս* փխ *ինձ*, *փորեն* փխ *ծեծեն*, $C_3$ *որդեակ աչք* (Այդպիսով խրատն անկախ բնույթ է ստացել), *խաւար եղիցի* փխ *ծեծեն զնա։*

14c $C_4$ *ուսովք* փխ *սրօք* (Ven, *92 (ս) բաւք)*, չիք՝ *որ ոչ է օգուտ (92* ունի՝ *որ ոչ է օգտ)։*

15 $C_1$ *թաղկեալ* փխ *թաղեալ*, $C_{3,4}$ *յաղբիսն*, Bod չիք՝ *կայր*, $C_2$ չիք՝ *յաղօթս*, $C_4$ *զինչ ես դու*, *աղցելոց* փխ *քաղցելոց*, *զհացն* փխ *զհատն*, Ven չիք՝ *քոց*, $C_3$ *կամեցաւ առնուլ զհացն։*

16 $C_2$ *քիղէդ* փխ *գիհեդ*, $C_5$ *գեւղէտ* փխ *գիհեդ*, $C_3$ *ասէ գայլն*, Bod, *92 դեղ է և շահ*, Canon *աչաց շահ է և փորուս օգուտ։*

17 $C_{2,5}$ *մոմն* փխ *ոմն*, $C_2$ *թողայր* փխ *դողայր։*

18 $C_3$ չիք՝ *ընդդէմ բրտին։*

19 Bod *զսովորութիւնդ*, Ven *լինի բանն*, Bod *համարձակեալ են ի քեզ*, $C_2$ չիք՝ *արծաթի*, $C_1$ *թադ* փխ *թաթ*, չիք՝ *և ելանել*, Canon *բարս* փխ *բանն։*

20. Որդեակ, եղեր ինձ որպէս օձն, որ փաթթեցաւ ի մասրենին և անկաւ ի գետն։ Եւ գայլն ետես զնա և ասէ. Ահա չարն ի չար է հեծեալ, և չար է, որ վարէ զնոսա։

21. Որդեակ, եղեր ինձ որպէս խլուրդն, որ ելաւ ի ծակէն և այլ ընդ այլ գնաց, վասն աչաց չի տեսանելոյ, և արձակեցաւ արծիւ մի, էառ զնա։ Ասէ խլուրդն. Եթէ ոչ էր զգալիքս ի վերայ իմ գալոց, յիմ տեղն էի կացեալ խաղաղական կենօք։

22. Որդեակ, զգայլուն ձագն յուսումն տարին և ասէին, թէ ասա այբ, բեն, գիմ։ Եւ նա ասէ. Այծ, բոյծ, գառն։

23. Որդեակ, զխոզն ի բաղանիս տարան, և նա անկեալ ի մուրատն, թաւալէր և ասէր. Դուք ի ձերն լուացուցեք և ես յիմս։

Խօսել սկսաւ Նաթան և ասէ. Հայր իմ Խիկար, աստուծոյ մեղանչեն, և նա թողու, յորժամ մեղայ ասեն։ Արդ, մեղայ քեզ, թող ինձ, և ես եղէց քեզ ծառայ յայսմհետէ մինչև յաւիտեան։

24. Որդեակ, եղեր ինձ որպէս արմաւենի, որ բուսեալ էր յեզր գետոյն և յորժամ պտուղն հասանէր, նա ի գետն անկանէր։ Եկեալ տէր ծառոյն առ ի կտրել զնա։ Ասէ ծառն. Թող զիս յայսմ տեղւոջն, զի միւս անգամ բերից զպտուղն։ Ասէ տէր ծառոյն. Մինչև ցօրս չեղեր ինձ պիտանի, այլ ոչ պիտանասցիս։

25. Որդեակ, աստուած ապրեցոյց զիս վասն անմեղութեան իմոյ և զքեզ կորոյս վասն անիրաւութեան քո։ Աստուած առնէ ընդ իս և ընդ քեզ փոխարէն, զի ագին շանն հաց տայ և բերանն՝ բիր։

26*. Որդեակ, ես այսպէս կարծէի, թէ կացցես ի տան իմ և ժառանգեսցես զինչս իմ, այլ ըստ անօրէնութեան քում ոչ յաջողեաց քեզ աստուած։

27*. Որդեակ Նաթան, զամենայն բարութիւնս ջամբեցի քեզ, և դու զհաց և զջուր արգելեր յինէն։

28*. Որդեակ, իւղիւ անուշիւ օծեցի զքեզ, բեհեզս և ծիրանիս ագուցի զքեզ, և դու զմարմին իմ ապականեցեր ի տուն խաւարի։

---

20 $C_2$ մարթենին փխ մասրենին, $C_{2,4}$ տեսեալ գնայ գայլոյն։

22 $C_3$ ուլ փխ բոյծ։

23 Ven մուրտն փխ մուրատն, $C_{2,4,5}$ ասելով փխ և ասէր։

24 $C_3$ Canon այսմ ամի փխ յայսմ տեղւոջն, $C_4$ միւս ամի (Ven, 92 միւս անգամ), $C_2$ մի կտրել բերից պտուղ այլ ոչ ընկէց ի գետն փխ Թող-զպտուղն, մինչև ցայսօր չեղար պիտան այլ ոչ լինիս պիտանի։

25 $C_4$ անաւրէնութեան փխ անիրաւութեան, Bod դատաստան փխ փոխարէն։

*29*. Որդեակ, սնուցի զքեզ, որպէս զմայր զանդրանիկ որդի, և դու զկեանս իմ կորացուցեր զիս։*

*Ի նմին ժամու ուռեցաւ Նաթան և պատառեցաւ։ Եւ ասեմ.*

*30. Որդեակ, որ բարի առնէ, բարի գտանէ, և որ այլոց խորխորատ փորէ, և խորխորատի ինքն անկանի։*

*Կատարի բարին ի բարի և չարն՝ ի չար։*

*Մինչև ցայս վայր կատարեցաւ Խիկար։*

---

30 $C_2$ չիք՝ *բարի գտանէ,* Canon *և որ փորէ խորխորատ ընկերի անձամբ իւրով լնու,* $C_2$ Ven, *92* չիք՝ *անկանի ի նմա,* $C_3$ *եւ ի նմին ժամու պատառեցաւ Նաթանն այն և կորեաւ չարն և բարձաւ ի միջոյ շնորհօքն աստուծոյ նոյն պէս և ամենայն չարախօսք պատառին ի դիմաց ծառայիս աստուծո պարոն Մալիք Հախնազարին զինքն անձնարարի գՔրիստոս որ պահէ անփորձ ի Թշնամեաց ամէն եղիցի եղիցի* փխ *և ի նմին-Խիկար։*

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ԽՐԱՏՔ ԻՄԱՍՏՆՈՅՆ ԽԻԿԱՐԱՅ

(ՏԱՐԲԵՐԱԿ D)

*Այս տարբերակը հավաքական բնագիր է, կազմված հետագայում որևէ խմբագրի կողմից։ Այդ են վկայում որոշ խրատների կրկնությունները։ Խմբագիրն օգտվելով տարբեր աղբյուրներից, շարքի մեջ վրիպումով տեղադրել է համաբնույթ խրատներ։*

*Բնագիրն ունի հարուստ խրատականք։ 210 ուսուցող և 41 պատժիչ խրատ։ Առանձին միավոր ենք հաշվել միայն այն խրատները, որոնք ունեն «որդեակ» սկիզբ։*

*Ընդարձակ է և մանրամասնած նաև պատմության բաժինը։*

*D տարբերակից մեզ հայտնի է միայն յոթ միավոր։ Առաջին, երկրորդ, երրորդ և հինգերորդ միավորները գրեթե ընթերցումներ չեն տալիս և համանաբար իրարից են ընդօրինակվել։ Ընթերցումներ ունեն միայն* $D_4$ *և* $D_6$ *ձեռագրերը, իսկ* $D_7$*-ը մի փոքրիկ անկարևոր հատված է։*

*Այդ նշանակում է, որ տարբերակն ավելի ուշ շրջանի խմբագրություն է և չի գտել մեծ տարածում։*

*Բնագրի համար հիմք է ծառայել* $D_1$*-ը։*

*Հրատարակում ենք AB և C տարբերակների սկզբունքներով։*

*Աղբյուրները և խրատների համադրական աղյուսակը տես գրքի վերջում (աղյուսակ V—ուսուցող խրատներ, աղյուսակ VI—պատժիչ խրատներ)։*

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ԽՐԱՏ ԻՄԱՍՏՆՈՅՆ ԽԻԿԱՐԱՅ

*Յամս Թագաւորութեան Սենեքարիմայ, արքայի Ասորեստանեաց, ես՝ Խիկարս, դպրապետ էի ի դրան Սենեքարիմայ արքայի։ Վաթսուն ապարան շինեցի և վաթսուն կին առի և եղէ ես վաթսուն տարոյ, և ոչ եղև ինձ զաւակ։ Յայնժամ խորհուրդ արարեալ իմ և մտի առ չաստուածսն, բորբոքեցի հուր և արկի խունկս անուշս ի վերայ նորայ և անկեալ առաջի նոցա, աղաչէի և ասէի. Ով տեարք իմ և չաստուածք իմ, օգնեցէք ինձ և տուք ինձ զաւակ, զի ահա ծերացեալ եմ և հասեալ եմ յափն գերեզմանին, և զի՞նչ ասեն մարդիկք, եթէ ահա Խիկար մեռանի և ոչ կայ նմա որդի, որ թաղէ զնա և ոչ՝ դուստր, որ լայ զնա։ Եւ չունիմ ժառանգ յետ մահուան իմոյ, որ ժառանգեսցէ զինչս իմ և արկցէ հող ձեռօք իւրովք ի վերայ իմ, զի մի՛ մնացից անյիշատակ ի մէջ ազգի իմոյ։*

*Յայնժամ ձայն եղև ի չաստուածոցն և ասէ առ իս. Ով Խիկար դպիր, ոչ է հրամայեալ քեզ լինել զաւակ, բայց թէ առցես*

2 D$_{4,5}$ *յայսմ* փխ *յամս*։
4 D$_{4}$ *և շինեցի ես Կ ապարանս*։
5 D$_{4}$ *ամաց* փխ *տարոյ*։
5—8 D$_{4}$ *և ես կայի տրտում անժառանգութեան իմոյ որ ելեալ ժառանգէր զինչս իմ յաւուր միում խորհուրդ արարի ի մտի իմում և սսի երթամ առ չաստուածն իմ և աղաչեմ միթէ լինի որ տա ինձ զաւակ և առեալ խունկս և մոմս և այլ ծխանելիս ելեալ գնացի ի տունն չաստուածոց մերոց արարի հուր կրակի և արկի խունկս անուշս ի վերա նորա և անկեալ առաջի չաստուածոց իմոց և ասէի այսպէս ով տէրք իմ* փխ *յայնժամ-ով տեարք իմ*։
9 D$_{4}$ *զաւակ ժառանգութեան որ ելեալ ժառանգէ զինչս իմ*։
11 D$_{4}$ *գոյ* փխ *կայ*։
12 D$_{4}$ *չունի*։
13 D$_{4}$ *նորա* փխ *իմ*, չիք՝ *իւրովք*, *նորա* փխ *իմ*։
13—14 D$_{4}$ *ահա մնացի* փխ *զի մի մնացից*։
15 D$_{5}$ չիք՝ *առ իս*։
16 D$_{4}$ *ահա* փխ *բայց թէ*։

զՆաթան քեռ որդին քո և սնուցանիցես զնա քեզ որդի, նա լցուսցէ զտեղի անուան քո ի մէջ ազգի քում։

Եւ յորժամ լուա ես զպատասխանիս զայս ի չաստուա-ոցն, յայնժամ առի զՆաթան քեռ որդին իմ միոյ ամաց և ագուցի նմա բեհեզս և ծիրանիս և զարդարեցի զնա իբրև զորդի թագաւորի և սնուցանէի զնա ամենայն բարութեամբ, մինչև եղև է ամաց։ Յայնժամ սկսա ուսուցանել նմա զդպրութիւնս գիտութեանց և զիմաստութիւնս հանճարոյ, զպատասխանիս հրովարտակաց և զդարձուածս հակառակախօսից։ Եւ ոչ դադարէի յուսուցանելոյ զնա զտիւ և զգիշեր, և յագեցուցանէի զնա ուսմամբ և իմաստութեամբ, իբրև զհացիւ և ջրով։

Եւ յաւուր միում ասէ ցիս արքայն Սենեքարիմ. Ով Խիկար դպիր, գիտեմք, զի ծերացեալ ես և անցեալ զաւուրբք և յետ քո ո՞վ է, որ կատարեսցէ զգործս արքունեաց մերոց, քանզի և ես տրտում եմ ի վերայ իրացս այսորիկ։ Եւ ես ասացի ցնա. Արքայ, յաւիտեան կաց և մի՛ ինչ տրտմիր վասն բանիդ այդորիկ, քանզի է իմ որդի, որ առաւել հանճարով քան զիս, և նա կատարեսցէ զամենայն գործս թագաւորութեան ձերում։

Եւ յորժամ լուաւ արքայն Սենեքարիմ զբանս իմ, զոր ծանուցի նմա, բերկրեցաւ ի սրտի իւրում և ցնծացաւ յոգի իւր և ասէ ցիս. Ածցես զորդին քո առ իս, զի տեսից զնա։

---

1 $D_4$ ի տան քում փխ քեզ որդի։
3—4 $D_4$ չաստուածոց իմոց։
4 $D_4$ ամաց և տարի ի տուն իմում։
5 $D_4$ նման փխ իբրև։
7 $D_4$ յետ այնորիկ փխ յայնժամ։
7—9 $D_4$ զվարս դպրութեան իմոյ գիտութեանց զպատասխանիս հրովարտաքաց արքունական պաղատէն փխ զդպրութիւնս–հրովարտակաց։
9—11 $D_4$ զամենայն իմաստութիւնս հանճարոյ իմոյ իբրև ուսմամբ և իմաստութեամբ գոցի առ աչս ամենեցուն արքունական պաղատին փխ և–ջրով։
13 $D_4$ դպրապետ իմ փխ դպիր, ահա փխ զի, անցեալ են, ցաւուրբք քո, յետ անցանելոյ։
14 $D_4$ ով կատարէ փխ ով է որ կատարեսցէ, իմոց փխ մերոց։
15 $D_4$ իրացդ այդ բանիդ։
16 $D_4$ չիք՝ ինչ, բանիցդ այդմիկ, $D_5$ ի վերա փխ վասն։
17 $D_4$ կա ինձ փխ է իմ, առաւել է լի իմաստութեամբ և։
18 $D_4$ կարող է կատարել զգործս թագաւորութեանդ։
19 $D_4$ զայս փխ Սենեքարիմ։
20 $D_4$ չիք՝ ի սրտի իւրում, սիրտն փխ յոգի իւր։
21 $D_4$ ցիս ով Խիկար, վասն թէ որում հասակի կա փխ զնա։

Յայնժամ առեալ իմ զՆաթան և զարդարեցի զնա պատուական հանդերձիւք, որպէս պատշաճն էր մտանել յարքունիս և ածի զնա առաջի Թագաւորին։

Եւ յորժամ ետես զնա արքայն, ուրախ եղև յոյժ և ասէ առաջի ամենայն մեծամեծաց իւրոց զայս ինչ. Աւուրք Խիկարայ օրհնեալ եղիցի, զի ի կենդանութեան իւրում էած կացոյց զորդի իւր առաջի իմ։ Այսուհետև ինքն ի հանգստեան եղիցի։ Յայնժամ խոնարհեալ իմ և երկիր պագեցի արքային և առեալ զՆաթան, տարայ յապարանս իմ և օրըստօրէ վարժէի զնա իմաստութիւնս և ի հանճարս։ Եւ առաւել քան զընտածին որդի իմ խնամ ածէի նմա։

Եւ յուսուցանելն իմ զգիտութիւն և զբանս խրատուց ասէի նմա այսպէս.

---

1—3 $D_4$ և ես առեալ զՆաթան քուեր որդին իմ տարի առաջի արքայի բազում զարդարանօք փխ յայնժամ-Թագաւորին։

5 $D_4$ չիք՝ ինչ։

6—7 $D_4$ զորդին փխ զորդի իւր, յայսուհետև դու Խիկար հանգստեան եղիցիս։

8 $D_4$ չիք՝ յայնժամ խոնհարեալ իմ, արքային իմոյ բազում պարգևս ետ արքայն որդոյն իմոյ Նաթանա։

9 $D_4$ ի տուն փխ յապարանս։

10 $D_3$ զնորածին փխ զընտածին։

11 $D_5$ խնամ ածի փխ խնամ ածէի։

2—13 $D_4$ սկսա օրըստօրէ ուսուցանել զվարս գիտութեան և իմաստութեան և խոնարհութեան այսպիսի փխ և-այսպէս։

*1. Որդեակ, եթէ լսես բան ինչ ի դրան արքունի, մեռո՛ զնա և թաղո՛ և ծածկեսցես ի սրտի քում և մի՛ հանցես ի վեր և մի՛ ումեք ասիցես։*

*2. Որդեակ, զկապն կնքեալ մի՛ արձակեր և զարձակեալն՝ մի կապեր։*

*3. Որդեակ, մի՛ համբառնար զաչս քո ի տեսանել զկին գեղեցիկ, օծեալ և ծարուրեալ. և մի՛ ցանկասցիս ի սրտի քում, զի եթէ զամենայն ինչս քո տացես ի ձեռս նորա, ոչինչ աւելի գտանիցես, քան զքոյդ, այլ միայն զամօթ և զնախատինս ի մարդկանէ և վասն մեղացն զդատաստանս յաստուծոյ։*

*4. Որդեակ, ի լեզուէ քումմէ, որպէս յօտարէ, երկնչիցես, զի ոչ գիտես, թէ յորում ժամու ածիցէ չարիս ի վերայ քո։*

*5. Որդեակ, առանց դպրութեան մի՛ կացցես, զի ընթեռնելն և քննելն զիմաստս և զհանճարս աճեցուցանէ։*

*6. Որդեակ, ցածո՛ զաչս քո և կակղացո զբարբառ քո և քաղցր ակամբ նայեսցիս առ ամենեսեան և մի՛ երևեսցիս մարդկան անզգամ։*

*7. Որդեակ, եթէ աղաղակաւ տուն շինուէր, էշն յաւուրն Ժ ապարանս կազմէր և եթէ ի սաստիկ զօրութենէ եզինք վարէին, լուծ յուղտոյ պարանոցէ ոչ պակասէր երբէք։*

*8. Որդեակ, լաւ է ընդ առն իմաստնոյ քարինս կրել, քան ընդ անմտին գինի ըմպել։*

---

3 $D_4$ *բայց* փխ *այլ, զնախատինս կրես, մեղացն պատիժ մեծամեծ կրես դու օր դատաստանին աստուծոյ,* չիք՝ *զդատաստանս յաստուծոյ։*

4 $D_6$ *զգուշացիր* փխ *երկնչիցես,* $D_5$ *յորժամու* փխ *յորում ժամու։*

6 $D_6$ *քաղցրութեամբ տար ամենեցուն զպատասխանին* փխ *քաղցր-ամենեսեան։*

7 $D_5$ *եթե մարդ,* $D_4$ *եզինք ոչ, զլուծն բայց ի յղտոյ։*

8 $D_{2,4,5}$ չիք՝ *ընդ* (Այդպիսով իմաստը փոխվում է)։

9. Որդեակ, հեղցես զգինի քո և մի՛ ըմպեսցես ընդ անօրէնս և ընդ անզգամս, զի մի՛ իբրև զնոսա արհամարհեսցիս:

10. Որդեակ, հրամայեալ է աստուած զգինին վասն ուրախութեան, բայց ի տեղիս բոզանոցի և անպատշաճ լաւ է աղբ ըմպել քան զգինի:

11. Որդեակ, զայր անմիտ և արբեցող պատգամաբեր մի՛ ուղարկեր, կամ բարէխօս, թէ ոչ՝ բազում չարիս ածէ ի վերայ քո անպիտան խօսիւք:

12. Որդեակ, որպէս երկիր, որ մայր է ամենայն բուսոց և տնկոց, նոյնպէս և արբեցութիւն մայր է ամենայն մեղաց:

13. Որդեակ, տգէտին և արբեցածին և դիւահարին խրատ մի՛ տալ և ոչ հետ նոցա սիրելութիւն մի՛ դնել:

14. Որդեակ, լեզու անմտին և արբեցողին որպէս զքիմս ասղան է, զայլ ոք ոչ կարէ հարկանել, այլ հանապազ զգլուխն իւր ծեծէ:

15. Որդեակ, այր անմիտ յորժամ գայ յանդիման առաջի թագաւորաց և կամ իշխանաց, խաբեութեամբ պատճառս պատճառելով, առաւել ես բարկացուցանէ և չարիս զարթուցանէ ի վերայ իւր:

16. Որդեակ, ընդ իմաստունս մի՛ անզգամիցիս և մի՛ լինիցիս կցորդ անզգամի և անմտի, զի մի իբրև զնոսա կոչեսցիս:

17. Որդեակ, ընդ առն վատասրտի և անզօրի մի՛ լինիր, վասն զի վատասրտութեամբն յաղթի յամենայնէ, և դու տրտմիս: Այլ լեր ընդ առն իմաստնոյ և քաջասրտի, զի յորժամ յաղթահարէ զթշնամին եթէ խօսիւք և եթէ մարտիւ և զո՛ւ ընդ նմա զօվիս և փառաւորիս, և եթէ դու յաղթիս ի թշնամոյն, նա քաջութեամբն և հանճարովն օգնէ և զերծուցանէ զքեզ:

18. Որդեակ, այր չարախորհուրդ և նախանձոտ ոչ թէ միայն ատելեաց իւրոց խորհի չար, այլ բնութիւն նորա ամենեցուն չար է: Այսպէս իմա և զբարի բնութիւն մարդկան:

---

9 $D_4$ *գիտես որ կու հեզցես զգինին, երբեք* փխ *իբրև*, $D_5$ *համարձակեցիս* փխ *արհամարհեցիս:*

12 $D_4$ չիք՝ *որպէս*, $D_6$ *չարեաց* փխ *մեղաց:*

13 $D_1$ *հետնոց*, $D_4$ *ի հետ նոցա*, $D_6$ *սիրելի լինիր* փխ *սիրելութիւն մի՛ դնել:*

15 $D_4$ չիք՝ *յանդիման*, $D_6$ *մեծամեծաց* փխ *թագաւորաց և կամ իշխանաց*, $D_5$ *յանդիման լիցի*, $D_3$ *ամենայն* փխ *կամ*, $D_5$ *բարկացուցանէ զարարիչն*, $D_6$ չիք՝ *ես բարկացուցանէ զնոսա:*

16 $D_4$ *անիմաստունս*, $D_5$ *անիմաստս*, $D_6$ *հակառակիր* փխ *անզգամիցիս*, *լինիցիր:*

17 $D_{2-5}$ *վատասրտութեամբն և անզօրութեամբն*, $D_6$ *անօրէնութեամբ* փխ *վատասրտութեամբն*, չիք՝ *եթէ խօսիւք և եթէ մարտիւ*, *հանճարիւն իւրով* փխ *քաջութեամբն և հանճարովն*, $D_5$ *օգնէ քեզ:*

18 $D_4$ *չարախօս*, $D_6$ *միում ումեք* փխ *ատելեաց իւրոց*, *չար է և հակառակ*, չիք՝ *այսպէս-մարդն*, $D_4$ *իմանաս զբարի բնութիւն մարդն:*

19. Որդեակ, զմասն քո կեր խաղաղութեամբ և ի քո ընկերիդ զաշխդ մի՛ արձակեր։

20. Որդեակ, զայր լեզուանի և անբարհաւաճ մի՛ համարձակեցուցաներ մտանել ի տուն քո, զի մի և դու ի գործոց նորա ամօթ կրեսցես։

21. Որդեակ, մի՛ հակառակիր ընդ մարդ և մի՛ ընդ վայր ծիծաղիր, զի ի ծաղրուն լինի կռիւ և անհարկութիւն։

22. Որդեակ, որ զուարթ է մտօք՝ արեգակն է լուսավոր և որ նենգ է և նեղ է սրտիւ՝ խաւար է մթացեալ։

23. Որդեակ, որ առատ է սրտիւ՝ լի է ամենայն բարութեամբ և որ ագահ է մտօք, թէպէտ և ունի ինչս բազումս, դատարկ է և ունայն և կենդանոյն մեռեալ է։

24. Որդեակ, ոչ թէ իմանալն է իմաստութիւն, այլ կատարելն, զի որ գիտենայ և ոչ առնէ՝ անմիտ է։

25. Որդեակ, եթէ կամիս ինչս գործել, մի՛ յառաջագոյն պարծիր կամ խոստանար, զի թէ յետոյ ոչ կարենաս կատարել, ծաղրն լինիս դու ամենեցունց։

26. Որդեակ, մի՛ լինիր որպէս նշենի շուտ, որ յառաջ ծաղկի և յետոյ ուտի պտուղ նորա, այլ լեր որպէս թթենի, որ յետոյ ծաղկի և յառաջ ուտի պտուղ նորա։

27. Որդեակ, եթէ վայելեսցես ի բարութեան զամենայն կեանս քո յաշխարհի, զօր մահուան քո մի՛ մոռանար հանապազ։

28. Որդեակ, հայելով հայեսցես ի գերեզման ընկերին քո և յիշեսցես, զի և դու նման նմա լինելոց ես։

29. Որդեակ, մի՛ լինիր կարի քաղցր, որ կլանեն զքեզ և մի՛ կարի դառն, զի թքանիցեն, այլ եղիցիս հեզ և հանդարտ ի գործս գնացից քոց։

30. Որդեակ, մինչ կօշիկն յոտդ է կոխեա զփուշն և արա ճանապարհ որդոց քոց։

---

21 $D_1$ չիք՝ մարդ, $D_6$ ոսոխի քում թէ ունիցիս դաւ ինչ ընդ նմա զի կարող ես քաղցրութեամբ յաղթել նմա բայց դառնութեամբ ոչ փխ մարդ և-անհարկութիւն։

22 $D_4$ թմրեալ փխ մթացեալ։

24 $D_6$ գիտենալն փխ իմանալն, գիտէ փխ գիտենայ, յիմար է և անմիտ փխ անմիտ է $D_5$ կատարեալն, զոր փխ զի որ, $D_4$ գիտենայ բան ինչ։

25 $D_6$ չիք՝ կամ խոստանար, չիք՝ յետոյ, չիք՝ դու ամենեցուն։

27 $D_4$ եթէ կամիս վայելել ի բարութեամբ, մի փխ քո մի, $D_6$ չիք՝ հանապազ։

28 $D_6$ նոյնպէս փխ նման նմա։

29 $D_4$ մի լինիր փխ մի, $D_{1,2}$ դաղան փխ դառն, $D_6$ չիք՝ զքեզ, թքանեն։

*31. Որդեակ, որ անժամ սերմանէ, ոչ հնձէ, և որ ոչ աշխատի ի գործս ինչ, ոչ առնու վարձս ի նմանէ։ Սոյնպէս որ ոչ խրատէ զորդիս ոչ հրահանգին։*

*32. Որդեակ, մեծատանն որդին օձ կերաւ, ասին՝ դեղ կերաւ, աղքատին որդին կերաւ ասին՝ ի սովոյն կերաւ։*

*33. Որդեակ, ընդ աներկիւղն ի ճանապարհ մի՛ երթար և ընդ անզգամին հաց անգամ մի՛ ուտեր։*

*34. Որդեակ, թէ տեսանիցես զթշնամին քո գլորեալ, մի՛ ծաղր առներ զնա, զուցէ կանգնիցէ և քեզ չար հատուցանիցէ։*

*35. Որդեակ, ի թշնամոյն քո պատրաստ լեր և զգոյշ կացիր, զի ոչ գիտես, թէ յորում ժամու չար առնիցէ քեզ։*

*36. Որդեակ, մի՛ մերձենար ի կին աղաղակող և լեզուանի և անզգամ, զի կորուստ բերէ անձին։*

*37. Որդեակ, տեսի գազան զօրեղ, և ոչ արձակեցաւ յիս, հանդիպեցայ թշնամոյն և ոչ յաղթեցայ ի նմանէ, դիպեցայ կնոջ պոռնկի և անզգամի և յաղթեցայ ի նմանէ։*

*38. Որդեակ, մի՛ ցանկար կնոջ գեղոյ, այլ գեղ կնոջ համեստութիւն է, իսկ իմաստունն՝ պարծանք է առն իւրում։*

*39. Որդեակ, եթէ պատահիցէ քեզ ատելին քո չարով, եւ դու ընդ յառաջ նորա բարով և եթէ ի տարապարտուց վարէ զքեզ, դու քաղցրութեամբ պատասխանի տացես և դատաստան կուտեսցես ի գլուխ նորա։*

*40. Որդեակ, անկանի անօրէնն ի չար գործոց իւրոց և կանգնի արդարն ի բարի գործոց իւրոց։*

*41. Որդեակ, զորդին քո ի գաւազանէ մի՛ խնայեր, զի որպէս պիտոյ է աղբն պարտիզին և որպէս կապն քսակին և որպէս պարանն ի յոտն իշոյն, այնպէս պիտոյ է ծեծն տղային, զի թէ մի՛ անգամ, կամ երկու և երիցս խրատես զնա հանդարտութեամբ, ոչ մեռանի, իսկ եթէ թողուս զնա ի կամս իւր, գող և ավազակ լինի, և տանին ի կապանս և ի սպանումն, և լինի քեզ նախատինք և բեկումն։*

---

31 $D_4$ *յորժամ սերմանէ* փխ *որ անժամ սերմանէ*, $D_5$ *յորժամ ոչ* փխ *որ անժամ*, $D_4$ *այսպէս խրատէ զորդիս որ ոչ հրահանգին*, $D_6$ չիք՝ *ինչ*, չիք՝ *ի նմանէ*, *զզոնանան* փխ *հրահանգին*։

32 $D_4$ *ասացին թէ ի ազահի սովոյն կերաւ*։

33 $D_4$ *մի հաց ուտեր ոչ մի անգամ*։

35 $D_6$ *կացիր հանապազ*, *առնէ* փխ *առնիցէ*։ $D_4$ *առնէ քեզ չար*։

37 $D_4$ *վաղվաղակի յաղթեցայ* փխ *յաղթեցայ ի նմանէ*, $D_6$ *երկեա* փխ *յաղթեցայ*։

38 $D_4$ *իմաստուն և պարծանք առն իւրում* փխ *իսկ-իւրում*։

41 $D_6$ *տանին զնա*, $D_4$ *նախատինք ամօթ*։

*42. Որդեակ, հնազանդեցո զորդին քո, մինչդեռ փոքր է և կակուղ, զի մի՛ ընդ քեզ մարտուցեալ, ելանիցէ յուս քո, և ի վնասու նորա կորուսանիս և անէծս առցես յօտարաց վասն անխրատութեան նորա։*

*43. Որդեակ, ստացիր քեզ էշ հաստոլոք և ձի սմպակաւոր և մի՛ ստանար ծառայ փախչող և կամ աղախին կաքաւող, զի զամենայն ստացուածս քո վատնեսցին։*

*44. Որդեակ, յորժամ անմտին խրատ տաս, համարեա թէ փոշի ցանեցեր ի վերայ յարուցեալ գետոյ։*

*45. Որդեակ, առերեսք սիրէ մարդն սուտակայ և յետոյ արհամարհէ, բայց դու ի գործոց քոց յիմասցիս։*

*46. Որդեակ, խօսք մարդոյ ստոյ որպէս լորու պարարտ է, և որ անմիտն է՝ կլանէ զնա։*

*47. Որդեակ, սիրեա զհայր քո, որ ծնաւ զքեզ և զանէծս մօր քո մի՛ առցես, զի և դու ի բարութեան որդոց քոց խնդասցես։*

*48. Որդեակ, ընդ դատախազի քո առաջի դատաւորին ցասմամբ մի՛ խօսեսցիս, զի մի անզգամ և անմիտ կոչեսցիս և պատուհաս ի դատաւորէն կրեսցես։*

*49. Որդեակ, այր, որ խիստ է քան զքեզ, մի՛ հակառակիր ընդ նմա։*

*50. Որդեակ, ի գիշերի առանց սրոյ ընդ ուրեք մի՛ երթայցես, զի ոչ գիտես, թէ չարկամն ուր կայ պահեալ և կամ թէ ի թշնամեաց ո՞ ելանիցէ ընդառաջ քո։*

*51. Որդեակ, խաշինք, որ ի գիհէն ի զատ գնան, գայլոց բաժին լինենան։*

*52. Որդեակ, որպէս վայելուչ է ծառ պտղովք և լեառն անտառախիտ մայրիւք և որպէս ծառ ի մէջ պարտիզի, այնպէս վայելուչ է մարդոյ ի մէջ ազգականաց իւրոց և ի կին և յորդիս իւր։ Իսկ որում ոչ գոյ կին և որդիս և ազգականս, նա արհամարհելի է և նման է ծառի միոյ, որ լինի յանցս ճանապարհաց, և ամենայն, որ անցանէ ընդ այն, տերևաթափ և ճղակոտոր առնեն զնա։*

*53. Որդեակ, մի՛ ասեր թէ տէր իմ անմիտ է և ես՝ իմաստուն, այլ համբերեա նորա անմտութեան, և իմաստնասցիս դու։*

---

42 $D_4$ *մարտիցէ և ելանիցէ* փխ *մարտուցեալ ելանիցէ։*

44 $D_4$ *եթէ* փխ *յորժամ։*

51 $D_{2,5}$ *գեհէն,* $D_4$ *կերակուր գայլոց եղիցին։*

52 $D_4$ *անտառ խոտիւք մայրիւք* փխ *և լեառն անտառախիտ մայրիւք,* $D_6$ չիք՝ *ի մէջ ազգականաց իւրոց և։*

54. Որդեակ, մի՛ լինիր յաչս անձին քում իմաստուն, յորժամ ի բազմաց ոչ վկայեսցիս։

55. Որդեակ, մի՛ ասեր զուր զումեքէ, զի մի և այլք քեզ ասասցեն։

56. Որդեակ, մատնութիւն երկու ոչէս ունի։ Եթէ տեսանես զթշնամին ի սպանումն տեառն քո և ոչ յայտնես նմա՝ մահապարտ ես։

57. Որդեակ, առաջի տեառն քո մի՛ լինիր շատախօս, զի մի անարգեսցիս։

58. Որդեակ, յորժամ առաքէ զքեզ տէր քո առ այլ ոք ասել ինչս, մի՛ աւելուցուս ի խօսսն և մի՛ ինչ հատցես ի բանիցն, զի մի ծաղր լինիցիս և պատուհաս յերկոցունցն կրեսցես։

59. Որդեակ, ընդ բազմանալ որդոց քոց մի՛ խնդար և ի պակասելն մի՛ տրտմիր, զի որդիքն և ստացուածքն յաստուծոյ շնորհին։

60. Որդեակ, եթէ ընկեր քո հիւանդ է, մի՛ ասեր թէ զինչ ուղարկեմ նմա, այլ երթ ոտիւք և տես աչօք և լաւ է նմա, քան զտուրս ոսկոյ և արծաթոյ։

61. Որդեակ, պահեա զլեզու քո ի ստութենէ և զաչս քո՝ յարահայելոյ, զձեռս քո՝ ի գողութենէ և զոտս քո՝ ի վատ տեղ գնալոյ, զի բարի լինիցի քեզ յաստուծոյ և ի մարդկանէ, և երկայն աւուրբք կացցես յաշխարհի։

62. Որդեակ, վասն չարախօսութեան ոսկի և արծաթ մի՛ առնուլ, զի գործն չար է և վնասբերիչ։

63. Որդեակ, մի՛ հեղուր զարիւն մարդոյ ի տարապարտուց, զի մի հեղցեն զարիւն քո փոխանակ նորա։

64. Որդեակ, լաւ է ծառայ, որ ողոքանոք խօսի ընդ տեառն իւրում, քան որդի, որ խրոխտալով մեծամեծս խօսի և ածէ ի բարկութիւն։

65. Որդեակ, լաւ է բան իմաստնոյ ի հարբածութ, քան զխօսս անմտի ի ծարաւութ։

---

55 $D_1$ ումեք փխ զումեքէ, $D_3$ ուրէք փխ զումեքէ, $D_4$ ասիցեն և ով որ փորէ խորխորատ ինքեամբք ի նոյն անկանի փխ ասասցեն։

57 $D_4$ անարգեսցիս ի նմանէ։

58 $D_4$ աւելցներ, երկոցունց կողմանց, $D_6$ մի յետոյ ծաղր։

59 $D_4$ շնորհեալ է կամի աւելցնէ և կամի նուազէ։

62 $D_5$ չարութեան փխ չարախօսութեան, $D_6$ կորուստաբեր է անձին փխ գործն չար է և վնասբերիչ։

66. Որդեակ, լաւ է սրտմտութիւն իմաստնոյն, քան զքաղցրութիւն անզգամին։

67. Որդեակ, լաւ է վէրս բարեկամին, քան զհամբոյրս թշնամոյն։

68. Որդեակ, լաւ է կոյր աչօք, քան թէ կոյր մտօք, զի կոյրն աչօքն արագ ուսանի զերթևեկ ճանապարհին, իսկ կոյրն մտօք թողու զերթևեկ ճանապարհին և ընդ կամակորն գնայ։

69. Որդեակ, լաւ է բարեկամ մօտևոր, քան զեղբայր ի հեռուստ բնակեալ։

70. Որդեակ, լաւ է ատելութիւն և խռովութիւն առն արդարոյ, քան զքաղցրութիւն և ողորմութիւն անօրինին։

71. Որդեակ, զհաց քո յայլոց սեղանէ մի՛ ուտիցես, զի մի երախտիք այլոց առնուցուս։

72. Որդեակ, լաւ է ճնճղուկ մի ի ձեռս քո, քան զհազարս յերկինս թռուցեալ։

73. Որդեակ, լաւ է կող մի ի ձեռին քում, քան թէ բուծ յայլոց ձեռն։

74. Որդեակ, լաւ է ուլ պատարագ ի տան քում, քան զուարակ յայլում տան։

75. Որդեակ, լաւ է կշռատ մի պղնձոյ իմաստնոյ, քան զհարիւր կշռատ ոսկոյ անմտի։

76. Որդեակ, հանդէս իմաստնոց ի հրապարակս գովի, և արծաթ անմտի ի խաւարի ծածկի։

77. Որդեակ, լաւ է անուն բարի, քան զտեսակ ցանկալի, զի գեղեցկութիւն ապականի և անուն բարի յաւիտենական մնայ։

78. Որդեակ, նման է ցանկութիւն աշխարհիս յաչս ամենայն տեսողացն որպէս զոմն առիւծ կոչեցեալ, որ ծնաւ ի գիշերի, և սնուցին զնա ի խաւարի, և յորժամ ետես զճառագայթս արեգականն, որպէս ի դժոխս համարեցաւ զամենայն ցկեանս իւր։

---

67 $D_6$ քան զկամակոր։
68 $D_3$ չիք՝ իսկ-ճանապարհին։
69 $C_5$ մոտաւոր, $D_{4-6}$ հեռուստանէ։
70 $D_4$ չիք՝ առն։
73 $D_4$ գող փխ կող, դու փխ բուծ (Այդպիսով խրատը փոխել է իր բնույթը)։
74 $D_4$ ուլ մի։
75 $D_{5,6}$ կշռակ, $D_6$ արծաթոյ փխ ոսկոյ։
77 $D_4$ գեղեցկութիւն կու, յաւիտեանն։
78 $D_4$ աստեղաց փխ տեսողաց։

*79. Որդեակ, լաւ է առն, եթէ իցէ ի վերայ նորա ձիւն և սառն և սուսեր, քան թէ մերձենայ ի կին աղաղակող և լեզուանի։*

*80. Որդեակ, նման է տեսութիւն անզգամ կանանց իբրև գերեզմանաց բռելոց, որ ի դրուցէ քանդակեալ են ոսկով և ի ներքոյ լի են ոսկերօք մեռելոց և ժահահոտութեամբ։*

*81. Որդեակ, լաւ է առն, եթէ ոք ի նեղութեան իցէ և կարէ բանիւք օգնել նմա, զի այնպէս է, թէ որպէս ի բերանոյ առիւծոյ զերծուցանէ զնա։*

*82. Որդեակ, ծառայ, որ մեղանչէ տեառն իւրում և երթայ առ այլս յաշխարհի, հանգիստ մի՛ գտցէ և մի՛ ողորմութիւն ատաուծոյ։*

*83. Որդեակ, ծառայ, որ երկմիտ է ընդ տեառն իւրում, թէպէտ և սիրէ զքեզ, մի վստահանար ի նա, քանզի ծառայ, որ ատէ զտէր իւր, ոչ է քեզ բարեկամ։*

*84. Որդեակ, ընդ ընկերի քում ուղիղ դատեսջիր և բարութեամբ հասանիցես ի ծերութիւն։*

*85. Որդեակ, բարակացո զմիտս քո հեզութեամբ և կակղացո զլեզու քո քաղցրութեամբ և լեր առատութեամբ և բարութեամբ առ ամենայն ոք, և հանգստեամբ վճարես զժամանակս կենաց քոց։*

*86. Որդեակ, եթէ յամբարտաւանիս յանձին քում և սիրես զհակառակութիւն, ատիս յաստուծոյ և ի մարդկանէ և հանգիստ կենաց քոց ոչ գտանիս յաւիտեան։*

*87. Որդեակ, մի՛ հպարտանայր յաւուր մանկութեան քո, զի մի սուր կերիցէ զքեզ։*

*88. Որդեակ, առաջի անարգ մարդկան բազմախօս մի՛ լինիր, զի մի թեթևասցիս։*

*89. Որդեակ, քիչ ուտելն մարմնոյն շահ է, և սակաւ խօսելն հոգոյն շահ է, զի քիչ ուտելովն մարդն ոչ ախտանայ, բայց շատ և յաւելի ուտելովն հազարք մեռանին։*

---

79 $D_4$ *առն և սուսեր և սուսեր* փխ *առն-սուսեր*, D *ձիւնոյ և սառին ընակեալ քան ոնդ կնոջ անզգամի ի տան միում* փխ *նորա—լեզուանի։*

80 $D_6$ *տեսութիւն լկտի կանանց նման է* փխ *նման է-իբրև, ոսկով և արծաթով*, $D_4$ *ներքոյ հողոյ։*

82 $D_{4,6}$ *յայլս աշխարհի* փխ *առ այլս։*

83 $D_5$ *զքեզ* փխ *զտէր իւր։*

85 $D_6$ *զբարբառս* փխ *զլեզու*, $D_1$ չիք՝ *և-քաղցրութեամբ։*

88 $D_6$ *շատախօս* փխ *բազմախօս։*

89 $D_6$ չիք՝ *քիչ ուտելն-շահ է զի, սակաւ* փխ *զի քիչ, ուտելովն բազումք ցաւոտին* փխ *և յաւելի-մեռանին*, $D_4$ *բազումք* փխ *հազարք։*

90. Որդեակ, խօսքն զինչ ճօհար է, ի սատաֆի մէջն դիր և յամէն տեղ մի՛ ցրուեր։

91. Որդեակ, եթէ տաս բան բարի գիտես, զհինգն խօսէ և զհինգն պահէ։

92. Որդեակ, լեզուն հարցաւ գլխոյն, թէ հալդ ինչ է։ Ասաց, թէ քանի դու լուռ կաս, նա ես խիստ հանգիստ եմ։

93. Որդեակ, որչափ որ քիչ զրուցես, այնչափ հարկիս առնուս ի մարդկանէ։

94. Որդեակ, զոտքդ ի կաւն դնես՝ ի փշոյ պատրաստ կացիր, ըզձեռքդ ի ծակն տանիս՝ ի յօձու պատրաստ կացիր։

95. Որդեակ, յամենայն մարդ խօսք մի՛ վստահանայր և զծածուկս քո մի՛ յայտներ ումեք։

96. Որդեակ, ընկեր հետ աղէկին եղիր, որ աղէկութիւնդ յաւելնայ։

97. Որդեակ, ով որ զբարեկամին բարի խրատն առէ, արժանի է, որ թշնամին ի վերայ նորա խնդայ։

98. Որդակ, հետ վատին քիչ նիստ, թէ ոչ՝ քան զամէնն որ աղէկ ես, նա վատ դու դառնաս։

99. Որդեակ, տես զարեգակն, թէ որչափ պայծառ է. բայց փոքր մի ամպ որ ի դէմն գայ, կու մթնեցնէ զինքն։ Այսպէս և վատ մարդն զաղէկն կու խանգարէ։

---

90 $D_6$ ի մէջ, չիք՝ մէջն դիր և յամէն ընդ վայր։

91 $D_{4,6}$ չիք՝ բարի, զմինն ($D_6$ մեկն) փխ զհինգն, Թ ($D_6$ զինն) պահէ փխ զհինգն։

92 $D_6$ հանդիստ եմ և խաղաղ։

93 $D_4$ չիք՝ որ, հարկինքս, $D_6$ զրուց տաս այնքան ավելի հարկինս առնուս, մարդկանէ զի շատախօսիցն շատ պատճառս ծնի չարեաց։

95 $D_4$ ումեք՝ զի բնութիւն նորա ոչ գիտես, $D_6$ զծածուկ գործդ քո, բնաւ փխ ումեք։

96 $D_4$ հետ ընկերիդ աղէկ եղիր (խրատը փոխում է բնույթը). $D_6$ բարեգործ մարդկանց փխ աղեկին, բարութիւնդ փխ աղեկութիւնդ։

97 $D_{4,5}$ չիք՝ բարի։

98 $D_{4,5}$ կու փխ դու, $D_6$ վատ մարդկանց մի յարիր թէ ոչ դու այլ գետ զնոքայ լինիս փխ վատին-դառնաս։

99 $D_4$ չիք՝ բայց, $D_6$ և թէ սակաւ փխ բայց փոքր մի, մթեցնէ իր զլոյսն փխ մթնեցնէ զինքն, $D_4$ զաղէկ մարդուն անունն կաւիրէ որ թէ հետն ի միասին լինի։

100. Որդեակ, ով մօտ ի լուսինն նստի, երեսն նման լուսոյ պայծառանայ, և ով մօտ ի սև պուտուկն նստի, նորա նման լինենայ։

101. Որդեակ, հարկևորին հարկիս արա. վասն իւր հարկիցն և անհարկուն հարկիս արա. վասն քո հարկիցդ։

102. Որդեակ, ինքեան գիտակն աստուածաճանաչ է և իմաստուն։

103. Որդեակ, եթէ ասէ ոսկին, թէ ես Հնդիստանի եմ, ինչ շահ է իւր ասելն, վասն զի մահաքն կու ճանաչէ զինքն։

104. Որդեակ, որ լսէ և ոչ առնէ, մէկ աչօքն կոյր է, և որ ոչ կամի լսել և ոչ առնել, երկու աչօքն կոյր է, իսկ որ լսէ և առնէ, երկու աչօքն ի լոյս է։

105. Որդեակ, կինն, թուր, ձի ոչ են հաւատալի։ Զշունն բտէ և զկին անզգամ ոչ, զի շունն ոչ մոռանայ զերախտիս մարդոյ, իսկ կին, թուր, ձի ոչ ճանաչեն զտէր իւրեանց։

106. Որդեակ, խնամէխօսութիւն մի՛ առներ, զի բարին յաստուծոյ և յրոզակէ առնուն, և զմեղումն ի քենէ։

107. Որդեակ, մի՛ տայր թոյլ ընկերին կոխել զոտս քո, զի մի համարձակիցի կոխել զպարանոց քո։

108. Որդեակ, հարց զայր իմաստուն բանս իմաստութեան և իմաստնացիս դու, և թէ հարցանես զայր անմիտ բանիւք բազմօք, ոչինչ յիմանայ։

---

100 $D_4$ է լուսի փխ լուսոյ պայծառանայ, լուսին լինի փխ ի լուսինն նստի, սև պտուկի նստի նորա նման սևանայ, $D_6$ չիք՝ երեսն նման լուսոյ, չիք՝ սև, պտուկն, մրոտի փխ նորա նման լինենայ։

101 $D_4$ Հարկևորին հարկիս արա,
Վասն իւր հարկեցն կորա.
Եւ անհարկինհարկիս արա
Վասն իւր հարկեցն կորա։

103 $D_4$ հանդարտ եմ փխ Հնդիստանի եմ, $D_{4,5}$ մահանքն, $D_4$ գիտէ ու ճանաչէ փխ կու ճանաչէ զինքն։

104 $D_3$ չիք՝ և որ-կոյր է, $D_6$ և որ ընաւ, չիք՝ և ոչ առնել, և որ փխ իսկ որ,

105 $D_6$ անհաւատալիք են փխ ոչ են հաւատալի, այլ կինն ի նոյն ժամայն փխ իսկ կին-իւրեանց։

106 $D_5$ զմէջումն փխ զմեղումն, $D_4$ զմեղումն ինքնէ փխ զմեղումն ի քենէ։

108 $D_4$ բան բազում ոչինչ օգտիս ի նմանէ փխ բանիւք-յիմանայ։

*109. Որդեակ, եթէ ի բան ինչ առաքես զայր իմաստուն, մի՛ ինչ պատուիրեր նմա, և թէ ոչ լինի՝ դու ինքնին աստ, իսկ եթէ պատահի, որ զանմիտ ոք առաքես դու, առաջի երկուց ընկերաց պատուիրեա, ապա թէ ոչ՝ անարգանս ածէ ի վերայ քո անպիտան խօսիւք։*

*110. Որդեակ, սիրեա զկին քո, զի մարմին քո է և զհետ կնոջ օտարի մի՛ երթիցես, զի գործդ մահաբեր է։*

*111. Որդեակ, ուսո զորդին քո ի քաղց և ի ծարաւ, զի ըստ սովորութեան վարիցէ զկեանս իւր, զի որկորայքն ոչ ժուժեն, յորժամ ոչ գտանեն։*

*112. Որդեակ, փորձեա զորդին քո յուտել հացին և տես թէ իցէ իմաստուն, և ապա՝ տացես զինչս քո ի ձեռս նորա։*

*113. Որդեակ, մի՛ գնար մէն ընդ առն բարկացողի և մի՛ կագիր ընդ նմա, զի յաչս նորա թեթև թուի արիւն քո։*

*114. Որդեակ, ի կոչնատանէն և ի հարսանեաց քան զընկերս քո յառաջագոյն հրաժարեա և այլ մի՛ դարձցիս անդրէն, զի մի առնուցուս վէրս ի գլուխս քո։*

*115. Որդեակ, ուր չկոչեն զքեզ, մի՛ գնար և ուր չհարցանեն՝ պատասխանի մի՛ տար։*

*116. Որդեակ, ընդ յարուցեալ գետ մի՛ անցանել և ընդ արբեցեալսն մի՛ հակառակիլ։*

*117. Որդեակ, մի՛ երկու լեզու լինիր ի մէջ նմանեաց քոց և կարծիցես զքեզ սիրելի ամենեցուն, զի ոչ գիտես, թէ յորում ժամու յանդիմանեն զքեզ բանք քո, և յայնժամ ծաղր լինիս ի մէջ նոցա։*

*118. Որդեակ, զբանս հզօրաց մի՛ հոգասցես և որ մեծն է քան զքեզ, ծառայեա նմա։*

*119. Որդեակ, եթէ բարձր իցեն սեմք տան քո, իբրև կանկունս եօթն, յորժամ մտանիցես, խոնարհեցո զգլուխս քո։*

*120. Որդեակ, մի՛ առնուր կշռաւ մեծաւ և տալ փոքրիւ և ասել թէ շահեցայ, զի անօրէնութիւնք և չարութիւնք են առաջի աստուծոյ։ Գուցէ բարկասցի ի վերայ քո և զոր ունիցիս տացէ ի ձեռս օտարաց։*

---

109 $D_6$ *զանմիտ ոք* փխ *ոչ լինի դու-որ զանմիտ ոք։*

110 $D_4$ *չար բերէ* փխ *մահաբեր է։*

115 $D^1$ *ուրեք ոչ կոչեն* փխ *ուր չկոչեն։*

116 $D_4$ *գետն մի անցաներ և ընդ հարբեցեալսն բնաւ մի ումէք խօսիր զի գէշ կու թուի թէ աղէկ խօսք այլ ասես* փխ *գետ-հակառակիլ։*

118 $D_4$ *հանցես* փխ *հոգասցես։*

120 $D_6$ *չարիք*] փխ *չարութիւնք*, $D_4$ *ինչս ունիս գուցէ և տացէ օտարաց* փխ *գուցէ-օտարաց։*

*121. Որդեակ, մի՛ երդնուր ամենևին, և թէ երդնուս և ստես. պակասին աւուրք կենաց քոց։*

*122. Որդեակ, եղիցին բանք քո ճշմարիտ և մի՛ երկբայ։*

*123. Որդեակ, եթէ կամիս խնդրել ինչս յաստուծոյ, մի՛ խոտորիր ի կամաց նորա։ Պահեա զպատուիրանս նորա, երկիր ի նմանէ և սրբութեամբ կաց առաջի նորա, և յաւելցի քեզ։*

*124. Որդեակ, որ քեզ չար թուի, ընկերի քում մի՛ առներ, այլ արա զոր սիրես։ Եւ թէ արասցեն քեզ բարեկամք քո, արա և դու ամենեցուն, զի ամենայնէ բարի գտցես։*

*125. Որդեակ, եթէ եկեսցէ թշնամին քո յոտս քո, թողութիւն շնորհեա նմա և ծիծաղեա յերեսս նորա և ուրախութեամբ ընկալ զնա։*

*126. Որդեակ, յորժամ իցես ի մէջ արանց, եթէ աղքատ իցես, մի՛ յայտներ զաղքատութիւնս քո, զի բանից քոց ոչ լուիցեն, և արհամարհիս ի նոցանէ։*

*127. Որդեակ, եթէ առաքէ զքեզ տէր քո բերել սպտուր, դու մի՛ բերիցես խաղող, զի զխաղողն ուտէ և զպատուհաս սպտուրին ոչ թողու։*

*128. Որդեակ, եթէ լուիցես չար ինչ զումեքէ, թաքո ի սրտի քում և մի՛ հանցես ի վեր, և մի՛ ոք լուիցէ ի բերանոյ քումմէ։*

*129. Որդեակ, մարդոյ, որոյ չիք գործ ուղիղ և անուն բարի, լաւ է նմա մահ, քան զկեանք։*

*130. Որդեակ, լաւ է աղքատութիւն անփոխ, քան զմեծութիւն ցրուեալ։*

*131. Որդեակ, մի՛ ասեր բան չար բարեկամին քո, այլ հանապազ ուրախ լեր ընդ նմա։*

*132. Որդեակ, եթէ տեսանիցես զթշնամին քո գլորեալ, տրտմեա ի վերայ նորա, զի բարեկամ առնիցես զնա քեզ, իսկ եթէ ծաղր առնիցես զնա, և յորժամ կանգնիցի, չարիս հատուցանէ քեզ։*

---

123 $D_4$ *քեզ ինչս։*

124 $D_4$ *բան որ քեզ, կամենար* փխ *առներ։*

125 $D_4$ *թշնամիք քո եկեսցեն առ ոտս քո,* $D_6$ չիք՝ *և ծիծաղեա յերեսս նորա։*

126 $D_6$ *թէ* փխ *յորժամ,* չիք՝ *եթէ աղքատ իցես։*

127 $D_4$ *յորժամ* փխ *եթէ,* չիք՝ *զքեզ, առցէ* փխ *ուտէ,* $D_6$ *բերեր* փխ *բերիցես։*

128 $D_6$ չիք՝ *և մի հանցես ի վեր։*

130 $D_6$ *հաւաք և հանգստեամբ* փխ *անփոխ, ցրուեալ և ցնորեալ։*

131 $D_5$ չիք՝ *բան.* $D_6$ *գովեա զնա և զուարթ դիմօք խօսեա ընդ նմա* փխ *ուրախ լեր ընդ նմա։*

132 $D_6$ *մի ծաղր առներ զնա զուցէ կանգնիցէ և քեզ չար հատուցանիցէ* փխ *տրտմեա-հատուցանէ քեզ։*

133. Որդեակ, ընդ կնոջ քո խորհեսջիր, բայց զգաղտնիս քո մի՛ յայտներ նմա, զի տկար է և ոչ կարէ պահել, յայտնէ կարևորաց, կարճամիտ է և փոքրոգի և ոչ կարէ ծածկել զբանս ի սրտի։

134. Որդեակ, բազում անգամ խորհեա զբանս ի սրտի քում և ապա ի վեր հանիցես, զի թէ փոխել կամիցիս, ծաղր լինենաս։

135. Որդեակ, մի՛ հաներ բան դատարկ ի բերանոյ քումմէ, զի լաւ է յանցանք մարմնոյ, քան զյանցանս լեզուի։

136. Որդեակ, ի մէջ երկուց կռվողացն մի՛ կանգնիր, զի մի ի զուր մեռցիս կամ ձաղեսցիս. այլ փախիր ի նոցանէ ի հեռի։

137. Որդեակ, մի՛ ընդ վայր ծիծաղիր և նախատեր զոք, զի ի նմանէ ծնանի կռիւք և սպանութիւն։

138. Որդեակ, ի տուն արբեցողի մի՛ մտաներ և թէ մտանես՝ մի՛ յամեր, զի մի ի բարուց քոց ունայն և թափուր մնասցես։

139. Որդեակ, եթէ կամիս իմաստուն լինել, պահեա զլեզու քո ի շատ խօսելոյ և նայեա առաջի աչաց քոց, և լիցիս պատուական առաջի ամենեցուն։

140. Որդեակ, ամենայն մարդ, որ ոչ վարի իրաւամբք և արդարութեամբ, զաւուրս իւր կարճէ։

141. Որդեակ, յաւուր պատարագի աստուծոյ մի՛ հեռանար, թէ-պէտ և աղքատ իցես։

142. Որդեակ, վասն սակաւ պատճառի ի բուն բարեկամէ քումմէ մի՛ հեռանար, զուցէ այլ ոչ գտանիցես այնպիսի խորհրդակից և բարեկամ։

143. Որդեակ, առանց գրաւականի և առանց վկայի զինչս քո ումեք մի՛ տացես, զուցէ ուրանայ և դու ապաշաւես։

---

133 $D_4$ թագուցաներ զբանս և ծածկեր ի սրտի իւրում փխ ծածկել զբանս ի սրտի։

136 $D_6$ մտանիր փխ կանգնիր, $D_4$ խռովիս կամ մեռանիս փխ մեռցիս կամ ձաղեսցիս։

137 $D_6$ զոք ծաղր առնելովն, ծաղրուն ծնանին անհարկութիւնք և այլ ևս չարիք մեծամեծք փխ նմանէ- սպանութիւն, $D_4$ կռիւ և սպանութիւն լինի։

138 $D_4$ ի տուն գինոյ շատիւ մի գնասցես զի մի բարուց և ընչից քոց յու-նայն և թափուր մնասցես փխ ի տուն-մնասցես, $D_6$ լինիցիս փխ մնասցես։

139 $D_5$ հայեաց փխ նայեա։

140 $D_4$ ամենայն մարդ որչափ վարի իրաւամբ և արդարութեամբ զաւուրս իւր բարիոք անցուցանէ փխ ամենայն—կարճէ։

141 $D_4$ և թէ որչափ փխ թէպէտ և։

142 $D_4$ սակաւ բան, $D_5$ չիք՝ քումմէ, $D_6$ բարեկամեզ փխ բարեկամէ քումմէ։

*144. Որդեակ, որոյ ձեռն լի է, նա է այր իմաստուն և առատ, և ամենայն ոք պատուէ զնա։ Եւ որոյ դատարկ է, նա անմիտ է և անարգ, և ոչ ոք պատուէ զնա։*

*145. Որդեակ, եթէ կաշառս ոք տայ դատաւորին, պատուհասիր յաստուծոյ, զի զաչս դատաւորին կուրացուցանէ կաշառն։*

*146. Որդեակ, կերտ դառնիճ և արբի լեղի, և ոչ էր դառն քան զաղքատութիւն և զպանդխտութիւն։*

*147. Որդեակ, բարձի աղ և արճիճ, և ոչ էր ծանր քան զպարտքըն, զի թէպէտ ուտէ և ըմպէ, ոչ կարէ հանգչել։*

*148. Որդեակ, յաւուր պատարագաց քոց առատաձեռնեա և մի՛ աչս արձակեր, զի ոչ հաճի աստուած։*

*149. Որդեակ, ձի, որ չէ քո, մի՛ հեծնոյր և մատանի, որ չէ քո, մի դներ ի մատդ և թէպէտ և կարի քաղցեալ իցես, հաց որ չէ քո, մի՛ ուտեր։*

*150. Որդեակ, յայտնեա զխորհուրդդ առաջի բարեկամին քո և յետ աւուրց ինչ գրգռեա զնա։ Եթէ զոր ասերն, ոչ յայտնէ զխորհուրդ քո, բարեկամ քո լիցի, զի հաւատարիմ գտաւ ի բանսն։*

*151. Որդեակ, յորժամ հետ մարդոյ ծանոթանաս, մի՛ զքեզ վստահանար ի նա և թէ հազար որ քաղցրալեզու լինի, նա մի՛ հաւատալ և զծածուկս քո մի՛ բնաւ յայտնել նմա, զի դեռևս չես գործոց նորա տեղեակ։*

*152. Որդեակ, զխորհուրդս քո մի՛ յայտներ այլում և ասել, թէ կու ծածկէ նա, զի զքո խորհուրդ, երբ դու չպահես, նա յայլք որպէ՞ս պիտի որ պահեն։ Ոչ գիտես, որ երբ մարդն դառնանայ, նա ո՛չ եղբայր գիտէ և ո՛չ սիրելի։*

---

146 $D_4$ չիք՝ *և արբի լեղի և, լեղի* փխ *դառն։*

147 $D_6$ *ըմպէ բայց։*

149 1—2 $D_{1-3}$ *մի դներ ի մատդ* փխ *մի հեծնոյր,* $D_{1-3}$ չիք՝ *մատանի որ չէ քո մի դներ ի մատդ,* $D_6$ *թէ* փխ *թէպէտ,* $D_5$ *ուտեր, զի անպատեհ է։*

150 $D_4$ *տես թե զոր ասերդ* փխ *եթէ զոր ասերն, գտար զնա ի բանսն քո։*

151 $D_6$ *երբ ումեմն ծանոթանաս մի շուտով հաւատար նմա թէ հազար որ շողոքորթի և բարեկամաբար վրուցէ զծածուկ գործս քո մի յայտներ նմա մինչև քանիմ անգամ փորձես զնայ* փխ *յորժամ հետ-նորա տեղեակ։*

152 $D_5$ *կարծելով ի մտիդ թէ կու պահէ երբ զքո խորհուրդն դու չի կարես պահել նա այլ որպէս պիտի պահէ զի ոչ գիտես թէ յերբ մարդն դառնացէ ոչ եղբայր գիտէ ոչ սիրելի և վազվազակի յայտնէ* փխ *և ասել-սիրելի,* $D_6$ *մի ասեր թէ զխորհուրդս իմ ասեմ նմա և նա չի յայտնել ումեք զի երբ դու չպահես զբանս քո նայ այլք որպէս տի պահեն և առաւել* փխ *զխորհուրդս քո-ոչ գիտես որ։*



13—904

*153a. Որդեակ, եթէ չար ինչ գործեսցես, մի՛ ոք տեսցէ, զի աստուծոյ հաճոյքն գործք բարիք են։*

*153b. Եւ յամօթոյ, իբրև աստուծոյ, երկիր, զի ամենայն չարիք ի լրբութենէ գործին։*

*154. Որդեակ, խաբելով կեղծաւոր մարդիկ և սէր ցուցանելով յիմանան զծածուկս ընկերին և յորժամ ոչ գնան ըստ կամաց իւրեանց, զնոյն որոգայթ կազմեն ընկերին, որ գործեաց, որ նա այլ ոչ կարենայ խօսել ի դէմ նորա։*

*155a. Որդեակ, յորժամ քաղցր է ակն տեառնդ ի վերայ քո, յայնժամ առաւել երկիր ի նմանէ։*

*155b. Եւ յորժամ տեսանես զքեզ յաչս մարդկան փառաւոր, մի՛ հպարտանար ի սրտիդ և զթշնամիս քո մի՛ յոչինչ համարիր, այլ ծիծաղեա յերեսս նոցա, զի բամբասեսցեն առաջի տերանցն, զի փոքրաւորքն են զմարդոյ վկայութիւնս հաստատողքն առաջի մեծամեծաց։*

*156. Որդեակ, եթէ խնդրէ ոք ի քէն ինչս և կարող ես տալ, մի՛ արգելուր ի նմանէ, զի առցես յաստուծոյ միոյն զհարիւրն։*

*157. Որդեակ, յորժամ տեսանիցես զծերն, պատուեա զնա և յոտն կաց առաջի նորա, զի և այլք քեզ արասցեն։*

*158. Որդեակ, առն, որում աչողեալ է աստուած, դու պատուեա զնա և մեծարեա։*

---

153a $D_5$ *բարութիւնք* փխ *բարիք*, $D_6$ *զի մի պատճառս լինիցիս ուսանելո նոցա և դու մասնակից լիցիս չարեաց նոցա* փխ *զի աստուծոյ-բարիք են։*

153b $D_4$ *իբրև աստծոյ երկիր զի թէ յլրբութեամբ առնես* փխ *եւ-երկիր* (Այդպիսով խրատը լրիվ միակցված է a խրատին), $D_6$ *որդեակ* փխ *և* (Այդպիսով խրատը տրոհվել է երկուսի)։

154 $D_4$ *կեղծաւոր մարդիկ կամին խաբելով*, չիք՝ *և յորժամ-ընկերին*, $D_6$ *կեղծաւորք ոմանք սուտ սէր ցուցանելով յիմանան զծածուկ գործ մարդո և յորժամ ոչ գնաս ըստ կամաց նոցա սպառնան նովաւ որ այլ ոչ կարենաս խօսել ընդդէմ նոցա* փխ *խաբելով-ի դէմ նորա։*

155a $D_4$ չիք՝ *առաւել*, $D_6$ *խոնարհ լեր զուցէ համարձակիս և հպարտանաս* փխ *երկիր ի նմանէ։*

155b $D_6$ *որդեակ* փխ *և* (Այդպիսով խրատն անկախ բնույթ է ստացել), $D_4$ *զի մի չարախօսեսցեն զքեզ առաջի տեառնդ քո զի փոքրաւորք մարդոյ վկայութիւն և հաստատողք են*, $D_6$ *պատուեա զամենեսեան քաղցր լեզուաւ զի մի բամբասեսցեն զքեզ առաջի տէրանցն այլ գովեսցեն և փառաւորեսցեն* փխ *ծիծաղեա-առաջի տէրանցն*, չիք՝ *յորժամ-ի սրտիդ և։*

156 $D_4$ չիք՝ *յաստուծոյ։*

157 $D_5$ չիք՝ *յորժամ*, $D_4$ *տեսանես։* $D_6$ չիք՝ *զնա։*

*159. Որդեակ, եթէ դադարեսցեն գետք ի գնացից և արեգակն յընթացից, կամ քաղցրասցի լեղի որպէս զմեղր, կամ սպիտակասցի ագռաւն որպէս զաղաւնի, նոյնպէս թողցէ անզգամն զանզգամութիւն իւր և անմիտն զգօնասցի։*

*160. Որդեակ, եթէ պաշտոնեայ ես աստուծոյ, զգոյշ լեր և սրբութեամբ ծառայեա նմա։*

*161. Որդեակ, որ ի մեղաց ոչ երկնչի, ճարակ հրոյ եղիցի։*

*162. Որդեակ, շուն, որ թողու զտէր իւր և գայ զհետ քո, քարիւ հալածեա զնա ի քէն։*

*163. Որդեակ, մի՛ ստանար ինչս յանիրաւութենէ, զի մի կորուսանիցես զամենայն ստացուածս քո ընդ նմա։*

*164. Որդեակ, լաւ է թէ գողասցեն զինչս քո, քան թէ գողութիւն գտցի ի վերայ քո։*

*165. Որդեակ, ընդ մահ թշնամոյն քո մի՛ ուրախանար, զի կա և քեզ մահ։*

*166. Որդեակ, մի՛ յաճախեր ոտիւք ի տուն բարեկամին քո, զի մի թեթևասցիս։ Գուցէ յագեսցի և ատեսցէ զքեզ։*

*167. Որդեակ, ի մարդոյ չարէ փախիր, և ընդ առն իմաստնոյ եղիցին գնացք քո։*

*168. Որդեակ, յորժամ վիշտ հասանէ քեզ, զաստուած մի՛ հայհոյեր, զի մի բարկասցի քեզ խստագոյն և տարաժամ սատակեսցէ զքեզ։*

*169. Որդեակ, մի՛ առներ կին այրի, զի յորժամ նեղութեան հանդիպի և կամ այլ ինչ և ասիցէ. Աւաղ զառաջին այրն իմ, և դու տրտմիս։*

*170. Որդեակ, հաստատեա յառակսն, որ ասեն. Ծնիր և կոչեա որդի, գնեա և կոչեա ծառա։*

*171. Որդեակ, յորժամ ասիցէ կին քո, եթէ խեղդեմ զիս ի ձեռաց քոց, զգոյշ լեր անձինդ, զի զքեզ կամի խեղդել։*

*172. Որդեակ, ագահութիւն մայր է ամենայն մեղաց և ծնօղ ամենայն չարեաց։*

*173. Որդեակ, ողորմութիւն և ճշմարտութիւն ձեռնտու է բարեաց և սէր առ ամենայն մարդիկ։*

---

163 $D_4$ *զամենայն ուղիղ։*

165 $D_4$ *մահ առաջի քո,* $D_6$ *խնդալ* փխ *ուրախանար։*

169 $D_6$ չիք՝ *և կամ այլ ինչ։*

170 $D_4$ *ծանիր* փխ *ծնիր։*

171 $D_6$ *խեղդիմ* փխ *խեղդեմ զիս, ձեռաց քոց ծաղր արա զնա բայց։*

*174. Որդեակ, ագահութիւն կորուստ է անձին և յիշատակ չարի և ատելութիւն առ ամենայն ոք, քանզի որ սիրէ զինչս՝ ատէ զընկերն, Վասն այնորիկ ագահութիւն օտար է յամենայն բարի գործոց։*

*175. Որդեակ, եթէ դատաւոր ես, ուղիղ դատեսջիր, զի մի ի մեծ դատաւորէն պատուհասեսցիս։*

*176. Որդեակ, դատաստան անիրաւութեան մի՛ առներ, զի թէպէտ և յաղթես ոսոխին, յաստուծոյ դատաստանացն երկիր։*

*177. Որդեակ, մի՛ սերմաներ բռասմն չարի, զի մի անօրէն դահճաց մատնեսցիս։*

*178. Որդեակ, օրինաց ունկն դիր և ի չարեաց մի՛ երկնչիր, զի պատուիրանն աստուծոյ պարիսպ է մարդկան։*

*179. Որդեակ, խրատ բարի տացես ամենայն մարդոյ և կոչեսցիս իմաստուն։*

*180. Որդեակ, դատաստան միակողմանի ոչ է պարտ առնել և ոչ՝ հաւատալ չարախօսութեան մարդոյ, մինչև լուեալ իցես զպատասխանիս միւսոյն։ Ո՞ գիտէ, լինի թէ սա է սուտ և նա է ճշմարիտ, զի դեռևս չես տեղեակ, թէ զինչ է ասելոց միւսն։*

*181. Որդեակ, մի՛ ասիցես աղքատին և տկարին, թէ դու ինձ չար ոչ կարես առնել, քանզի տէր է վրեժխնդիր նոցա։*

*182. Որդեակ, զայր յականէ մի՛ խոտեր, զի բազում չարիք յանարգ մարդկաց ելանեն և ոչ ի պատուականաց։*

*183. Որդեակ, կրթեա զլեզուս քո ի խօսս բարիս և ի մէջ ընկերաց քոց վայելուչ երևեսցիս։*

*184. Որդեակ, չար բանն արագ հասանէ ի լսելիս մարդկան, և որ խօսի զբարին՝ փառք անձին իւրում է։*

*185. Որդեակ, երկիր յաստուծոյ, և զչար գործս քո մի՛ ոք տեսցէ, զի մի պատճառ լինիցիս ուսանելոյ նոցա։*

*186. Որդեակ, զոխս թշնամոյն հան ի սրտէ քումմէ, վասն զի սերմն չար է և չար պտուղ ծնանի։*

---

174 $D_5$ *այնորիկ ամենայն,* $D_4$ *անիրաւ է* փխ *օտար է* $D_6$ *ագահք օտար են,* չիք՝ *յամենայն։*

177 $D_4$ *ռազմ,* $D_6$ *բռազմն։*

180 $D_4$ *լուիցես պատասխանի իրաւոյն* փխ *լուեալ-միւսոյն,* $D_6$ *աղաղակի ումեք* փխ *չարախօսութեան մարդոյ, իցէ զասացուածս* փխ *իցես զպատասխանիս,* չիք՝ *զի դեռևս-միւսն։*

181 $D_4$ *կամ տնանկին* փխ *և տկարին։*

182 $D_4$ *խոտորեր* փխ *խոտեր։*

184 $D_4$ *անարգ հասանիցէ* փխ *արագ հասանէ։*

185 $D_5$ *ումեք* փխ *ոք,* $D_6$ *թէ չար ինչ գործեսցես* փխ *երկիր-գործս քո, նոցա և դու մասնակից լիցիս չարեաց նոցա։*

187. Որդեակ, հետ խաղբի և հետ արբածի մի՛ հակառակիր և մի՛ ասեր, թէ քո չեմ։

188. Որդեակ, զմարդ, որ ի կապանս տանին և կամ յաւազակաց ի սպանումն, հեռի լեր ի նոցանէ։ Ո՞ գիտէ, թէ զինչ ասէ և կամ ում նմանեցնէ, և չարիս ծնանիցի։

189. Որդեակ, յանիրաւէն փախիր, զի զանձն իւր մատնեալ է ի կորուստ և յապականութիւն։

190. Որդեակ, որ ծաղր առնէ զաղքատն, ինքն շուտ հասանի յաղքատութեան։

191. Որդեակ, որ սիրէ զշատախօսութիւն, անարգանս բերէ անձին իւրում։

192. Որդեակ, զշարախօսութիւն յումեքէ մի՛ ընդունիր, զի որպէս զուր է, խոցանէ զսիրտ լսողին և մի՛ տրտմիր ի բարբառոյ նախատանաց, զի ընդունայն է, զի ոչնչանայ և անցանի որպէս զհողմն։

193. Որդեակ, ի մարդոց ծերոց և յիմաստնոց պատկառեա և ընդ նոսա լեր հանապազ։

194. Որդեակ, մարդ, որ սիրէ զխաղաղութիւն, հանապազ ուրախութիւն և ցնծութիւն է ի տուն նորա և գովեստ ի հրապարակս։

195. Որդեակ, ի գինարբունսն մի՛ սիրեր զշատախօսութիւն և մի՛ հակառակիր ընդ ումեք, զի ի նմանէ ծնանի կռիւք և անհարկութիւն։

196. Որդեակ, ընդ առն լեզուանոյ մի՛ կռուիր, զի այնպէս է, որպէս թէ ի վերայ հրոյ փայտ դիզես։

197. Որդեակ, խօսք կակուղ որպէս զջուր է և շիջուցանէ զհրացեալ և զգազանաբարոյ սիրտ մարդոյ, վասն զի պատասխանի խոնարհ խորտակէ զբարկութիւն։

198. Որդեակ ամբարտաւան մարդիք հեռանան ի բարեկամութենէ մարդկան և ի սիրոյ և առնուն անարգանս անձինն և մեկուսանան յընկերաց, նոյնպէս և ագահքն։

---

187 $D_6$ *ասել* փխ *մի ասեր*։

188 $D_6$ չիք՝ *և չարիս ծնանիցի*։

190 $D_1$ *զաղքատութիւն* փխ *զաղքատն*, $D_4$ *շուտով*։

191 $D_4$ *զախտախօսութիւն* փխ *զշատախօսութիւն*, *անարգս*, $D_6$ *անձինն* փխ *անձին իւրում*։

192 $D_6$ *զուր է որ*, չիք՝ *և մի տրտմիր–որպէս զհողմն*։

195 $D_6$ *մարդոյ* փխ *ումեք*, *սպանութիւնք* փխ *անհարկութիւն*։

196 $D_4$ *դառն* փխ *առն*։

197 $D_6$ *որդեակ* փխ *վասն զի* (Այդպիսով խրատը տրոհվել է), *խոնարհ և կակուղ համբերութեամբ*։

198 $D_4$ *քահանայքն* փխ *ագահքն*։

199. Որդեակ, բարեբարոյ մարդիք և երկիւղածք ունկնդիր լի-նին բանից օգտակարաց, եթէ յիմաստնոց և եթէ պարզամտաց և առնուն յամենայնէ զօգուտ անձինն։

200. Որդեակ, ի խոնարհութեան կալ զանձն քո հանապազ առ ամենայն ոք, եթէ առ մեծամեծս և եթէ առ աղքատս, քանզի խո-նարհութիւն մայր է խաղաղութեան և բնակարան ողջունի։

201*. Որդեակ, յորժամ արբենաս, փակեա զլեզուն քո և մի՛ բնաւ խօսիր, զի բնութիւն ձեռին քում ոչ է (12$D_6$ և 13$D_4$)։

202*. Որդեակ, մի՛ տրտմեցուցաներ զոք, և ոչ տրտմիս յումե-քէ (19$D_6$)։

203*. Որդեակ, այր չարագործ կարծէ ի միտս իւր, թէ զգործս իմ ծածկեմ և թաքուցանեմ։ Եւ ոչ գիտէ, թէ նման է ի շուն մեռեալ և նեխեալ դժնդակութեամբ, որ ոչ ծածկի հոտ նորա (67$D_6$)։

204*. Որդեակ, թէ հանդիպիս կնոջ անառակի և լրբի, հուր մեր-ձեցաւ յանկողինս քո և օձ չարագոյն յշտեմարանս քո, գազան ան-տառի ի մէջ խաշանց քոց և թշնամի սրով զինեալ ի զօրս քո (84$D_6$)։

205*. Որդեակ, պատրաստ լեր յագահութեան կերակրոց, զի ցաւս զարթուցանէ անձին (94$D_6$)։

206*. Որդեակ, բնութիւն մարդոյն նման է ջրոյ. թէ մեղր լնես քաղցրանայ, թէ սպառ լնես լեղենայ (105$D_6$)։

207*. Որդեակ, կին, որ արհամարհէ զայր իւր և գովէ զքեզ, եր-կիր ի նմանէ, զի նման է դեղս մահաբերս, որ թագուցեալ լինի ի վերակուրս քաղցրագոյնս (218$D_6$)։

208*. Որդեակ, այր ագահ և զեղխ նման է ի թռչուն գիշակեր, զի ծանրացեալ և թուլացեալ թևօքն, ոչ կարէ թռչել և դիւրաւ ըմբռնի յորսողաց։ Սոյնպ..ես և այր արբեցող և ագահ, զի թափի ի մտաց և ի զգայութեան և դիւրաւ ըմբռնի ի թշնամեաց յորոգայթս, թէ՛ հոգով և թէ՛ մարմնով (147$D_6$)։

209*. Որդեակ, այր անմիտ և ա..բեցող լաւ է քեզ թշնամի քան սիրելի, և ի խորհրդոց քոց հեռի արայ ..նա (161$D_6$)։

210*. Որդեակ, որպէս լերինք շտեմարա..նք են սառնամանեաց, նոյնպէս և սիրտ նենգաւորաց բնակարան չար..եաց (204$D_6$)։

Իսկ որ առնէ զխրատքս զայսոսիկ, գովի յաստ..ուծոյ և ի մարդ-կանէ և եղիցի փառաւոր և պատուական աստ և ի հան..դերձելումն։

---

199 $D_5$ անձին ով մարդ։

201 $D_6$ չիք՝ բնաւ։

210 $D_6$ զայս ամենայն փխ զխրատքս զայսոսիկ, $D_4$ հանդերձելումն ամէն, $D_5$ հանդերձելումն որում փառք յաւիտեանս ամէն հայր մեր որ յերկինս։

* * *

Զայս ամենայն ուսուցանէի Նադանայ, քեռորդոյ իմոյ ես՝ Խիկար դպիր, այսպէս կարծելով ի մտի իմում, եթէ պահեսցէ զխրատս իմ ի մտի և կացցէ ի դրան արքունի։ Իսկ նա հոսեաց զբանս իմ, որպէս զփոշի առաջի հողմոյ։

Զայս եդեալ ի մտի, եթէ Խիկար հայրն իմ ծերացեալ է և հասեալ է յափն գերեզմանին, զառածեալ են միտքն և մաշեալ ամենայն մարմին նորա։ Եւ սկսաւ Նադան վատնել և կորուսանել զամենայն ինչս իմ։ Ոչ խնայէր ի ձիս և ի ջորիս, ի ծառայս և յաղախնեայս, այլ չարչարեալ տանջէր զնոսա և կորուսանէր անխնայ։

Եւ յորժամ տեսի ես, եթէ Նադան զգործս իմ այլայլեաց և զինչս իմ վատնեաց, խօսել սկսայ և ասեմ ցնա, եթէ յինչս իմ մի՛ մերձենար, զի ասացեալ է յիմաստնոցն, թէ ձեռք, որ չէ վաստակել, ակն մի՛ խնայեսցէ։

Եւ երթեալ պատմեցի Սենեքարիմայ արքայի։ Եւ նա կոչեաց զՆադան և ասէ. Որչափ հայր քո Խիկար կենդանի է, յինչս նորա մի՛ մերձենար։

Եւ յայնմ օրէ ոխացաւ Նադան ընդ իս և մահու սպասէր անձին իմոյ և խորհուրդ չարութեան արարեալ ի մտի իւրում և գրեաց հրովարտակս Բ. մինն՝ առ փարաւոն արքայն եգիպտացոց։ Եւ գրեալ էր այսպէս. «Ես՝ Խիկար, դպրապետ Սենեքե-

---

2 $D_{1-3}$ իմ փխ ի մտի իմում, $D_4$ մտի իւրում՝։

5 $D_4$ մտի իւրում։

6 $D_{1-3}$ զառանցեալ։

8—9 $D_4$ ոչ ծառայս և ոչ աղախնեայս։

11 $D_4$ տեսի ես Խիկարս։

13—14 $D_4$ ձեռք որ ոչ են վաստակեալ և ակն ոչ խնայեսցէ ըստուգ են ասացեր։

15—16 $D_4$ և ես յաւուր միում գնացեալ պատմեցի արքային իմոյ Սենեքարիմայ արքային զոր ինչ առնէր ինձ և արքայն կոչեաց զՆաթան և բազում բանիւք զպարտեաց զնա փխ և երթեալ-զՆադան։

18 $D_4$ կամէր փխ սպասէր։

20—21 $D_4$ եգիպտացոց և միւսն այլ Սենեքարիմա արքայէն իմոյ առ իս։

*րիմայ արքայի, գրեմ առ փարաւոն արքայդ եգիպտացոց։ Գիտութիւն լիցի քեզ, զի յորժամ գիրս հասանի առ քեզ, վաղվաղակի գումարեսցես զզօրս քո և եկեսցես ի դաշտն Արծրունեաց, որ օր ԺԵ լիցի հրոտից ամսուն, և ես տարայց և թագաւորեցուցից զքեզ ի վերայ սորա առանց աշխատանաց»։*

*Եւ դարձեալ գրեաց այսպէս. «Ի Սենեքարիմայ արքայէ ողջոյն առ Խիկար դպրապետդ իմ։ Յորժամ հասցէ գիր թագաւորութեանս իմոյ առ քեզ, ժողովեսցես զզօրս, որ ընդ ձեռամբ քո է և եկեսցես ի դաշտն Արծրունեաց, որ օր ԺԵ լիցի հրոտից ամսուն։ Եւ յորժամ մերձեսցիս, ճակատեսցես զզօրսդ ընդդէմ իմ, որպէս զայն որ պատրաստին ի պատերազմ ընդդէմ թշնամեաց, քանզի դեսպանք փարաւոնի առ իս եկեալ են, զի տեսցեն զզօրսդ մեր և զարհուրեսցին»։*

*Եւ զգիրն առաքեաց առ իս, որպէս թէ ի թագաւորէն։*

*Եւ ինքն չոգաւ առ արքայն և ասէ. Ես զաղուհացն, զոր կերեալ եմ ի տան քո, ինձ քաւ լիցի նենգել արքայիդ, զի զհայրն իմ Խիկար, զոր առաքեցեր ի հանգստեան, ոչ արար ըստ հրամանի քում, այլ եղեալ է ի կողմն թշնամեաց մերոց։*

*Եւ էր տուեալ զգիրն հաւատարիմն թագաւորին, և նոքա ետուն ի թագաւորն, և նա ետ ցՆադան, և ընթերցաւ Նադան,*

---

21 (*էջ 199*)—2 $D_4$ *և էր գրեալ բերանէ իմմէ առ փարաւոն արքայն եգիպտացւոց Խիկար դպրապետս ի գրան Սենեքարիմա արքայէն ողջոյն լիցի առ փարաւոն արքայթ Եգիպտացոց գիտութիւն լիցի քոյին տերութեանդ* փխ *և գրեալ էր-քեզ։*

4—5 $D_4$ *և ես զօրքս սորա առհասարակ կոտորեալ տայցեմ ընդ զօրսդ քո և յետոյ տարեալ թագաւորեցից զքեզ ի վերա յաթոռոյն սորա առանց աշխատութեանց* փխ *և ես-աշխատանաց։*

6 *և դարձեալ գրեաց,*—այստեղից $D_4$-ում պատմվում է նույնը, բայց շարադրանքն այլ հերթակարգ ունի։ Փարավոնին հղած նամակից հետո պատմում է հետևանքները, թե ինչպես թուղթն ընկավ թագավորի ձեռքը: Նա հարցաքննում է, տրտմում, վախենում Խիկարի դավաճանությունից: Այնուհետև պատմում է, թե ինչպես Նաթանը Խիկարին է թուղթ հղում և ապա գնում թագավորի մոտ, հորդորելով, որ գնան Արծվաց դաշտ: Խիկարը գնում է:

Համեմատում ենք համապատասխանաբար. $D_4$ *և դարձեալ Նաթան գրեալ կրկին թուղթ ի Սենեքարիմա արքայէն առ իս այսպէս* փխ *և դարձեալ գրեաց այսպէս։*

6—7 $D_4$ *ողջոյն սիրոյ։*

7—8 $D_4$ *հասանէ գիրս թագաւորութեան։*

11 $D_4$ *նման* փխ *ընդդէմ։*

15 $D_4$ *և Նաթան չոքաւ առաջի արքային։*

որպէս և գրեալ էր։ Եւ ասէ արքայն. Ո՞վ ետ ի ձեզ զգիրս զայս։ Եւ որպէս պատուիրեալ էր նոցա Նաղան, ասացին, թէ անցաւորք, որ յեգիպտոս երթային, նոքա ունէին զգիրս զայս, և ծառայք քո տեսեալ՝ առին բռնութեամբ։ Եւ թագաւորն տրտմեցաւ յոյժ և ասէ. Զի՞նչ արարի ես Խիկարայ, որ զայսպիսի չարիս գործեաց մեզ։ Եւ ասէ Նաղան. Մի՛ տրտմիր, արքայ, այլ երթիցուք ի դաշտն Արծրունեաց և տեսցուք, թէ այդպէս իցէ, յայնժամ զինչ և հրամայես՝ արասցուք։

Եւ ել թագաւորն և գնաց ի դաշտն Արծրունեաց։

Իսկ ես՝ Խիկարս, յորժամ տեսի զզայն թագաւորին, պատրաստեցի զզօրս իմ ընդդէմ նորա, որպէս և գրեալ էր առ իս։

Եւ յորժամ ետես թագաւորն, տրտմեցաւ յոյժ։ Եւ ասէ Նաղան. Մի՛ տրտմիր, արքայ։ Ես ածից զԽիկար առաջի քո։

Եւ զայս լուեալ թագաւորին՝ դարձաւ յապարանս իւր։

Յայնժամ եկն Նաղան առ իս և ասէ. Հրաման տուր զօրացդ երթալ ի տեղիս իւրեանց, և դու եկ առ թագաւորն։ Եւ ես ելեալ գնացի խնդութեամբ, որպէս թէ կատարեցի զհրամայեալսն, և այժմ արժան եմ պատուոյ։

---

19 (էջ 200)—4 $D_4$ և այսպէս նմանեցուցեալ էր զգիրն իմոյ գրին և զմատնեհարն իմոյ մատանեացս և արարեալ ընդ կամակից ի դրան արքունեաց զերկս այլս և տարեալ ետ զթուղթն ի նոսա և նոքա տուեալ թագաւորին և թագաւորն կոչեաց զնաթան զի ընթերցցի նայ էր ամենայն հրովարտակք դրան արքունի և նա ընթերցաւ և լուաւ թագաւորն զբանն այն զահի հարաւ և յոյժ բարկացաւ ի վերայ Խիկարա և նայեցեալ զգիրն և զմատնեհարն որ Խիկարայ էր կամէր նոյն ժամայն սպանանէր և եհարց արքայն զհաւատարքն և ասաց ով ետ ի ձեզ գիրս այս և նոքա որպէս ուսեալ էին Նաթանա ասացին անցաւորք որ յեգիպտոս երթային նոքա ունէին զգիրս զայս և մեք ըմբռնութեամբ առաք զգիրս զայս փխ եւ էր տուեալ-բռնութեամբ։

1 $D_1$ չիք՝ արքայն։

7 $D_4$ երթիցուք ամսոյ ԺԵ-ին։

8 $D_4$ արասցուք հօրն իմ Խիկարա։

9 $D_4$ և թագաւորն եղեալ առնէր պատրաստութիւն գնալ ի դաշտն այն որ օրն էր հրոտից ամսոյն ԺԵ։

11 $D_4$ զզօրս իմ քաջամարտիկ գնալ, առ իս որ և օրն էր հրոտից ամսոյն տասնուհնգին։

12 $D_4$ յորժամ գնացի ի դէմ նորա յայնժամ, Նաղան ցարքայն։

13 $D_4$ քո և զինչ որ հրամայես նմա արասցուք անպատճառ։

14 $D_4$ և արքայն լուաւ զայս։

15 $D_4$ չիք՝ առ իս։

16 $D_4$ զի երթիցեն փխ երթալ, թագաւորն հրամայէ զքեզ։

17 $D_4$ խնդութեամբ առ թագաւորն։

17—18 $D_4$ կարծելով ի մտի իմում թէ կատարեցի զհրամանն արքային փխ որպէս թէ-պատուոյ։

Եւ յորժամ կացի ես առաջի արքային, ասէ ցիս. Ով Խիկար դպիր, որ խորհրդակից մեր էիր և հրամանատու տանն ասորոց, և այժմ ընդ է՞ր եղեր ի կողմն թշնամեաց մերոց և նենգեցեր մեզ։ Եւ ես ասեմ. Զի՞նչ է այդ զոր ասէքդ։ Յայնժամ զթուխթն, զոր գրեալ էր Նաթան իմ քանիւ և նմանեցուցեալ էր զգիրն իմոյ գրի, ետ արքայն ցիս և ասէ՝ ընթերցիր։ Եւ իբրև ընթերցայ ես, լուծաւ ամենայն անդամս իմ, և լեզու իմ զալարեցաւ, և ես յափշեցայ և եղէ որպէս զմի ի յիմարելոց. խնդրէի բան իմաստութեան և ոչ կարէի տալ պատասխանի։

Յայնժամ ասէ Նաթան ցիս. Ի բաց կաց յերեսաց արքայիդ, է, ալևոր զառածեալ և աղճատեալ։ Տուր զձեռն քո յերկաթ և զոտն քո ի կոճեղս։

Եւ արքայն դարձոյց զերեսս իւր յինէն և ասաց ցԱբուսմաք վազիրն իւր, թէ տար, սպանեա զանաստուած Խիկարդ։

Յայնժամ անկայ ես ի վերայ երեսաց իմոց և ասեմ. Արքայ, յաւիտեան կաց, ես զանձէ իմմէ չար ինչ ո՛չ գիտեմ, և ի սրտի իմում չարութիւն ո՛չ գոյ, այլ հրաման արքայիդ եղիցի։ Բայց զայս խնդրեմ, զի հրաման տացես ի դրան իմում սպանանել զիս։

Եւ հրամայեաց այնպէս։

Եւ յորժամ ելի յերեսաց արքային, գրեցի առ Աբեստան կին իմ, եթէ հանցես ընդ առաջ իմ զուասնս և լալականս, զի լացցեն զիս, և ես ի կենդանութեան իմում տեսից զսուգ իմ, և դու արասցես խորտիկս զեղեցիկս և ըմպելիս անուշահամս ի կերակրել զնոսա։

Եւ Աբեստան կինն իմ արար զամենայն, որպէս և ասացի և ել ընդ առաջ իմ և եմոյծ զմեզ ի տուն։ Եւ եդ սեղան և կերակրեաց զնոսա և արբեցոյց նոցա գինիս հինս, մինչև թմրեցան ամենեքեան և ի քուն մտին։ Յայնժամ ես և Աբեստան կինն իմ

---

4 $D_4$ ով արքայ փխ զոր ասէքդ։
7 $D_4$ և տեսի զբանն զոր գրեալ կայր յայնժամ լուծաւ ամենայն մարմինս իմ և կապեցաւ լեզու իմ փխ լուծաւ լեզու իմ։
8 $D_4$ զալարեցաւ աղիք իմ։
10 $D_4$ երթ ի բաց փխ ի բաց կաց։
11 $D_4$ պիտի ձեռն քո և ոտդ ի կոճեղս երկաթի փխ տուր-կոճեղս։
18 $D_4$ խնդրեմ ի հրամանուցէդ։
20 $D_4$ և հրամայեաց արքայն այնպէս արասցեն փխ և հրամայեաց այնպէս:
21 $D_4$ գրեցի թուխտ:
22 $D_4$ կինն փխ կինն իմ։
28 $D_4$ չիք՝ և արբեցոյց-հինս։
29 $D_4$ ի խմելն զգինին հին փխ ամենեքեան, և ամենեքեան ի զինուորացն։

*անկաք յոտս Աբուսմաքայ, և ասեմ. Ով Աբուսմաք, յիշեա զաղուհացն, զոր կերեալ եմք և հայեաց յաստուած և մի՛ սպանաներ զիս, այլ պահեա ի թագստի, որպէս գիտես։ Եւ յետ աւուրց փոշիմանի արքայն և խնդրէ զիս։ Եւ յորժամ տացես զիս կենդանի, պարգևս մեծամեծս առցես վասն իմ։ Է ումն ի բանտին ի ծառայից իմոց և է մահապարտ, զի արիւն արար ի դրան իմում։ Տացես զհանդերձս իմ և զգեցուցես նմա և բերեալ սպանցես զնա ըստ հրամանաց թագաւորին։*

*Իսկ Աբուսմաք գթացաւ ի վերայ իմ և արար որպէս և ասացի։ Եւ զինուորքն, թմբրեալք ի գինոյն, զարթեան ի մէջ գիշերին և սպանին զծառայն իմ։*

*Եւ ել համբաւ ընդ ամենայն երկիր, եթէ Խիկար դպիր մեռաւ։*

*Յայնժամ Աբուսմաք ընկերն իմ և Աբեստան կինն իմ արարին ինձ տուն գետնափոր, մերձ դրան իմոյ և արկին զիս անդ և տային հաց և ջուր չափով։*

*Եւ գնաց Աբուսմաք առ թագաւորն և ասաց, եթէ սպանաւ Խիկար։ Եւ որք լսէին զմահն իմ, աւաղէին և ասէին. Ո՞վ ոք վճարեսցէ զգործս արքունեաց ճարտարութեամբ Խիկարայ։*

*Եւ կոչեաց արքայ զՆադան և ասէ. Երթ և արա սուգ ի վերայ հօր քո։ Եւ եկն Նադան և փոխանակ լալոյ ժողովեաց զուսանս և ուտէր և ըմպէր և զծառայս և զաղախնեայս իմ չարչարէր դառնապէս և յԱբեստան կնոջէ իմմէ ոչ ամաչէր, մինչ զի կամէր պոռնկել ընդ նմա, որ սնուցեալ էր զնա։*

*Եւ ես ի գետնափոր տունն լսէի զլացն և զհառաչն ծառա-*

---

1 $D_4$ *ասեմք լալով* փխ *ասեմ, Աբուսմաք ընկեր իմ հայեաց երկինս և տես զաստուած քո աչօքդ և։*

2 $D_4$ *եմք ի միասին և յիշեա զօրն այն որ մատնեցին զքեզ Սենեքարիմա հօրն արքային և ես առեալ պահեցի զքեզ մինչև արքայն խնդրեաց զքեզ և ես տարայց առաջի արքային առի պարգևս մեծամեծս և այլ խնայեա ինձ և մի սպաններ,* չիք՝ *և հայեաց յաստուած։*

3 $D_4$ *թագեա զիս* փխ *պահեա, ահա գիտութիւն է որ յետ աւուրց փոշմանի* փխ *որպէս գիտես—փոշիմանի։*

5 $D_4$ *կենդանի առաջի արքային։*

11 $D_4$ *զծառայն իմ և գիտացեալ թէ Խիկար է։*

15 $D_4$ *իմոյ և ես մտի անդ միայն գիտութեամբ Աբուսմաքա և Աբեստան կնոջ իմոյ և այլ ոչ ոք գիտէին։*

15—16 $D_4$ չիք՝ *և արկին-չափով։*

18 $D_4$ *զմահն իմ ամենեքեան։*

20—21 $D_4$ *վասն հօր քո Խիկարա* փխ *ի վերայ հօր քո։*

21 $D_1$ չիք՝ *լալոյ։*

*յից իմոց։ Եւ ես լայի ընդ նոսա, և ցանկայր անձն իմ սակաւ հացի և պատառ մի մսոյ և բաժակի, և էի կարօտ ամենայն բարութեանց։*

*Իբրև լուաւ փարաւոն արքայն յեգիպտացւոց, եթէ սպանաւ Խիկարն, ուրախ եղև յոյժ և գրեաց հրովարտակս առ Սենեքարիմ արքայ և բանս հարցուկս և պատասխանիս խնդրել։*

*Եւ կոչեաց արքայն զնադան և ասէ, եթէ գրեա պատասխանիս եգիպտացոյն։ Եւ նա ոչ կարեաց գրել զպատասխան իւածս բանիցն։ Եւ տրտմեալ արքայն Սենեքարիմ և ասէ. Աւաղ զքեզ, Խիկար դպրապետ իմ։ Եւ մորմոքէր ի կսկծոյն։*

*Իբրև գիտաց փարաւոն, եթէ ոչ կարացին տալ պատասխանի գրոյն, առաքեաց զօրս բռնաւորս, և առին հարկս ի Սենեքարիմայ։ Եւ որչափ յամեաց Խիկար ի բանտին, բազմացաւ հարկն փարաւոնի յԱսորեստան։ Եւ որք էին ընդ ձեռամբ Սենեքարիմայ, աղքատացան յոյժ։ Եւ աւերեցաւ երկիրն ամենայն, և ամենայն բնակիչք Ասորեստանեաց փախեան, և տուն գանձուց արքային դատարկացաւ։*

*Եւ յոյժ տրտմեալ արքայն Սենեքարիմ և ասէ. Աւաղ զքեզ Խիկար, զի ի խօսս մարդկան կորուսի զքեզ։ Ով որ տայր զքեզ ինձ կենդանի, բազում ինչս տայի նմա և հաւասար թագաւորութեանս իմոյ պատուէի զնա։ Եւ Աբուսմաք ոչ յատնէր արքային, մինչև յոյժ նեղացի և գիտացէ զօգուտն Խիկարայ։*

*Եւ դարձեալ առաքէ փարաւոն հրովարտակս Սենեքարիմայ։ Եւ է այսպէս. «Ի փարաւոն արքայէ Եգիպտացոց ողջոյն առ Սենեքարիմ արքայդ Ասորեստանեաց. Գիտութիւն լիցի*

---

1 D$_4$ *և ես զնոսա հանապազ աւախէի զնոսա* փխ *և ես լայի ընդ նոսա։*

2 D$_4$ *գինոյ* փխ *բաժակի։*

4 D$_4$ չիք՝ *փարաւոն։*

8 D$_4$ *զոր խնդրէ եգիպտացին* փխ *եգիպտացոյն։*

8—9 D$_4$ *տալ պատասխանի գրել զդարձուածս բանին* փխ *գրել զպատասխան իւածս բանիցն։*

14 D$_4$ *ի վերա Ասորեստանի* փխ *յԱսորեստան։*

14—17 D$_4$ *և եղեն Ասորեստան ընդ ձեռամբ ի ներքս փարաւոնի և որչափ ամեայ Խիկար ի բանտն այնչափ զօրացաւն ի վերա Ասորեստանեաց կամէր աւեր տալ և բառնալ զերկիրն և տուն գանձուց դատարկեցաւ և որք էին ընդ ձեռամբ Սենեքերիմա աղքատացան յոյժ և աւերեցաւ երկիրն ամենայն բնակիչք Ասորեստանեաց փախեան և մնաց երկիրն դատարկ* փխ *Եւ որք էին-դատարկացաւ։*

21—22 D$_4$ *նմա* փխ *արքային։*

23 D$_4$ *դարձեալ յաւուր միում։*

*քեզ, վի կամիմ ապարան շինել ընդ երկինս և ընդ երկիրս ի մէջ։ Առաքեա առ իս այր իմաստուն, որ եկեալ շինեսցէն և այլ զոր ինչ և հարցանեմ, տայցեն զպատասխանիսն։ Եւ եթէ անփոյթ արասցեն զասացեալսն իմ, զամ բազում զօրօք և աւերեմ զաշխարհս քո և բառնամ զթագաւորութիւնս քո»։*

*Եւ յորժամ լուաւ զայս արքայն Սենեքարիմ, տրտմեցաւ յոյժ, խռովեցաւ յոգի իւր։ Եւ ժողովեաց զամենայն մեծամեծս իւր և ասէ ցնոսա, թէ զինչ արասցուք պատասխանի բանիս այսորիկ։ Եւ նոքա ասեն, եթէ ոչ այլ ոք կարող է տալ պատասխանի այդորիկ, բայց եթէ Նադան, զոր ուսեալ է ի Խիկարայ։ Նա վճարեսցէ զգործդ զայդ։*

*Եւ կոչեաց թագաւորն զՆադան և ետ զթուխտն փարաւոնի։ Եւ յորժամ ընթերցաւ և գիտաց, ի ձայն բարձր աղաղակեաց և ասէ. Ով թագաւոր, զայդ բանքդ դևքն ոչ կարեն վճարել, կամ տալ պատասխանի, ես զիա՞րդ կարացից։ Եւ հայրն իմ Խիկար, թէ կենդանի էր և նա ևս ոչ կարէր տալ պատասխանի բանիցդ այդորիկ։*

*Իբրև լուաւ Սենեքարիմ զբանս Նադանայ, յարեաւ աթոռոյ իւրմէ և նստաւ ի վերայ մոխրոյ։ Կոծէր զանձն իւր և ասէր. Աւաղ, աւաղ զքեզ, Խիկար, դպիր և իմաստուն։ Եթէ տայր ինձ ոք զքեզ կենդանի, ես տայի նմա զամենայն, զոր ինչ և խնդրէր յինէն։*

*Յայնժամ եկաց Աբուսմաք առաջի արքային և ասէ. Թագաւոր, յաւիտեան կաց, որ զհրամանս թագաւորի ոչ առնէ,*

---

1—2 $D_4$ *ի յերկինս և ընդ երկրիս մէջ ապարան շինել որ ոչ հասեալ լինի երկիր միայն երկնի և երկրի միջի լինի* փխ *ապարան շինել-ի մէջ։*

3 $D_4$ *հարցանեմ բան իմաստութեան։*

6 $D_4$ *թագաւորն* փխ *արքայն։*

9 $D_4$ *կարէ* փխ *կարող է։*

10 $D_4$ *բանիցդ այդմիկ* փխ *այդորիկ։*

13 $D_4$ *ընթերցաւ և ոչ կարաց տալ պատասխանի,* չիք՝ *և գիտաց ի ձայն բարձր։*

14 $D_4$ *թագաւոր յաւիտեան կաց։*

15 $D_4$ *տալ բանիցդ այդմիկ։*

20 $D_4$ *դպրապետ* փխ *դպիր, իմաստուն կորուսի զքեզ ճարտար և խօսատու մարդկան, ո՞* փխ *եթէ։*

22 $D_4$ *յինէն և հաւասար թագաւորութեան իմոյ պատուէի զնա։*

23—24 $D_4$ *արքա* փխ *թագաւոր։*

24 $D_4$ *ով ոք* փխ *որ։*

մահապարտ է։ Դու հրամայեցեր զԽիկար սպանանել, և նա դեռևս կենդանի է։ Եւ ասէ Թագաւորն ցնա, թէ ով Աբուսմաք, եթե զԽիկար կենդանի ցուցցես ինձ, առցես զոր ինչ և խնդրեսցես յինէն։

Յայնժամ Աբուսմաք, իբրև զարաթռիչ հաւն, եկն առ իս և եբաց զգետնափոր տունն և եհան զիս։ Եւ էին երեսք իմ այլագունեալ և գլուխ իմ թաղկեալ և ըղնկունք իմ որպէս զարծուոյ աճեալ։

Եւ իբրև կացոյց զիս առաջի արքային, և նա կորացուցանէր յինէն զգլուխս իւր և ամաչէր հայել յերես իմ։ Եւ ասէ ցիս. Ով Խիկար դպրապետ իմ, երթ ի տուն քո և դարմանեա զանձն քո աւուրս ինչ և ապա՝ եկեսցես առ իս։

Եւ ես գնացի ի տուն իմ և դարմանեցի զանձն իմ և եկի առ Թագաւորն։ Եւ ասէ ցիս Թագաւորն. Մեղայ քեզ, հայր Խիկար, զի լսեցի Նաթանայ քւեր որդւոյ քո։ Եւ ես երկիր պագի առաջի Թագաւորին և ասեմ. Որովհետև տեսի զերեսս արքայիդ՝ կենդանի եմ, և ամենայն չարիքս իմ ի բարի դարձաւ։ Եւ ասէ Թագաւորն. Օրհնեալ է օրս այս, որ տեսի զԽիկար կենդանի։ Եւ նստոյց զիս առ ինքն և ասէ. Լուա՞ր եթէ զինչ է գրել առ մեզ Եգիպտացին։ Եւ ետ ցիս զգիրն։ Եւ ընթերցայ և ասեմ. Ո՞վ արքայ, մի՛ հոգասցես վասն բանիդ այդորիկ, այլ առաքեա զդեսպանսն երթալ ի տեղիս իւրեանց, և ես յետոյ երթեալ, կատարեցից զհրամանս փարաւոնի։

Եւ իբրև ուղարկեաց զնոսա, ասի Թագաւորին, եթէ տուր քարոզ կարդալ, եթէ Խիկար կենդանի է, և ամենեքեան որ լսիցեն, դարձցին ի տեղիս իւրեանց։

Եւ հրամայեաց Թագաւորն, և քարոզ կարդացին, եթէ Խիկար կենդանի է։ Եւ ամենեքեան, որք լուանն, դարձան ի տեղիս իւրեանց։ Եւ ուրախացաւ Թագաւորն և պատուէր զիս և զԱբուս-

---

3 $D_4$ կենդանացուցես, ՝չիք՝ ինձ։

9 $D_4$ տարաւ փխ կացոյց, արքային կացոյց։

10 $D_4$ ցիս արքայն։

12 $D_4$ երիս փխ ինչ։

13 $D_4$ իմ և անուշ իւղով անուշահոտեացա, ելեալ գնացի փխ եկի։

15 $D_4$ լսեցի զբանն։

16 $D_4$ Թագաւորին իմ։

22 $D_4$ յետ ինչ աւուրց փխ յետոյ։

24 $D_4$ զդեսպանքն ելեալ գնացին ի տեղիս իւրեանց առ փարաւոն արքայն փխ զնոսա։

29 $D_4$ եւ յոյժ ուրախացաւ։

*մաք ընկերն իմ ընդ իս, որ ետ զիս կենդանի և ուրախացոյց զնա։*

*Եւ ես ետու բերել Բ ձագս անգղ հաւու և Բ տղայ փոքրիկ դեռախօս և ասացի սնուցանել զձագսն հում մսով և տղայսն, զի ասէին. Բերեք քար և կիր, որ գործենք։*

*Եւ իբրև հաստատեցան թևք ձագուցն և թռանէին, յայնժամ սահմանեցի սնտուկ մի փայտեայ, զվերևն ի բաց ունելով։ Եւ դնէի զմանկունս անդ և լծէի զանկղսն, որ առեալ վերանային։ Եւ կայր ի ձեռս մանկանցն իւրաքանչիւր շամփուր մի միս, որ թէ բարձրացուցանէին զմիսն, հաւքն ի հետ վերանային և թէ ցածուցանէին՝ նա զհետ իջանէին։*

*Յայնժամ առի հրաման ի թագաւորէն և գնացի յԵգիպտոս և մտի առ փարաւոն արքայն և երկիրպագի նմա։ Եւ նա մեծարեաց զիս և նստոյց առ ինքն։ Եւ խօսէաք բանս, զոր պիտոյ էր մեզ։*

*Եւ ասէ փարաւոն ցիս. Ո՞ւր են արուեստաւորքն, որ շինելոց են զապարանսն։ Եւ ասեմ ցնա, եթէ ի ճանապարհին աշխատեալ էին և ննջեալ հանգչին, բայց տեսցես ի վաղիւն։*

---

1 $D_4$ *կենդանի թագաւորին։*

4—5 $D_4$ *սկսա ուսուցանել ձագուցն ուտել հում միս և տղայոցն ուսուցի միայն ասել թէ բերեք քար և կիր որ գործեսցաք զապարանն թագաւորին* փխ *և ասացի-գործենք։*

8—11 $D_4$ *և կապեալ էի պինդ պարանօք զսնտուկն և զչուանն լուծի ի մէջն անկղղոյ հաւուցն որ և առեալ վերանային եւ կայր ի ձեռս մանկանց մի մի շամփուր միս որ թէ բարձրացուցանէին շամփուրն մսով և հաւքն վերանային ընդ սնդկովն ի բարձր ելանէին և կամէին առնուլ միսն և որքան ոչ կարենային առնուլ միսն նա այլ աւելի բարձրանային սնտուկովն և տղայքն ի մէջն բարձր ձայնիւ աղաղակէին և ասէին թէ բերէք քար և կիր զի գործեսցաք զապարանն թագաւորին մինչև վերուստ ի վայր գայր ձայն տղայոցն եւ թէ զմիսն ասա և անդ շրջեցուցանէին նա հաւքն ի միսն վազէին զսնտուկ ասա և անդ վերացեալ շրջեցուցանէին և յորժամ կամենային իջանել ընդ երեսս երկրի նոյնժամայն խոնարհեցուցանէին տղայքն զշամփուրն ի վայր և հաւքն ի միսսին գային խոնարհութեամբ ընդ երեսս երկրի նոյնժամայն ատնէին զմիսն և կերակրէին* փխ *լծէի-իջանէին։*

12 $D_4$ *Եւ յորժամ տեսի որ հաստատեցաւ բանն և ուսուցի զայս հնարս ամենայն յայնժամ առի հրաման ի թագաւորէն իմմէ և ելեալ* փխ *յայնժամ—թագաւորէն և։*

13 $D_4$ *արքայն Եգիպտացոց։*

14 $D_4$ *բանս բազում զոր ինչ։*

*Եւ ի վաղւին ասէ ցիս փարաւոն, թէ՝ աստ ի վերայ քաղաքիս կամիմ շինել զապարանսն, զի հանապազ նայիմ ի վերայ քաղաքիս և զուարճանամ։ Եւ ես ասեմ ցնա, եթէ, ով արքայ, տուր զվարձս նոցա, զի եկեալ շինեսցեն։ Եւ ասէ փարաւոն. Երդնում ի գլուխ իմ, զի յորժամ տեսանիցեմ զարուեստաւորսն քո, զի ելանիցեն յօդս շինել զապարանս, յայնժամ բազում պարգևս տացից քեզ և նոցա։*

*Եւ ես գնացեալ պատրաստեցի և թռուցի զհաւքն, և նոքա բարձրացան և ելին յօդս, որպէս ուսեալ էին։ Եւ մանկտին ձայնէին, թէ բերէք քար և կիր, զի շինեսցուք ապարանս թագաւորին։ Եւ զարմացեալ փարաւոն և ամենայն եգիպտացիքն։ Եւ յոյժ պատուեաց զիս արքայն և ետ ինձ հանդերձս մեծագինս, նոյնպէս և ճարտարացն, որ ընդ իս էին։ Եւ հրամայեցի նոցա իջանել ի վայր։ Եւ գնացեալ յիջևանս մեր՝ հանգեաք։*

*Եւ ի վաղւին գնացի առ թագաւորն, և խօսէաք ընդ միմեանս։ Եւ ասէ ցիս թագաւորն, թէ զինչ է անուն քո։ Եւ ես ասեմ. Աբիկամ է անուն իմ։ Ասէ թագաւորն. Վասն է՞ր է այդպէս անուն։ Եւ ես ասեմ. Վասն այնորիկ է, քանզի ստրուկ եմ Սենեքարիմայ արքային։*

*Իբրև լուաւ փարաւոն, տրտմեցաւ յոյժ և ասէ, եթէ այդպէս անարգ թուեցայ յաչս Սենեքարիմայ, որ ստրուկ մի առաքեաց առ իս տալ ինձ պատասխանի։ Եւ ասէ ցիս. Երթ ի տուն քո և ի վաղւին եկեսցես առ իս։*

*Իբրև վաղն լուսացաւ և ես գնացի անդ։ Եւ հրամայեալ էր թագաւորն զօրաց իւրոց, զի զգեցեալ էին հանդերձս կարմիրս, և ինքն զգեցեալ էր ծիրանիս և նստեալ յաթոռ իւր։*

*Եւ ասէ ցիս. Ասա ինձ, Աբիկամ. ես ո՞ւմ նման եմ և կամ իմ զօրքս ո՞ւմ նման են։ Եւ ես ասեմ, եթէ նման ես դու դիցն և նախարարքդ՝ քրմաց նոցա։ Եւ ասէ ցիս։ Երթ յիջևանս քո և ի վաղւին եկեսցես այսր։*

---

8—10 $D_4$ *և գնացեալ պատրաստեցի և առեալ բերի ի մէջ քաղաքին ի տես ամենեցուն որ բազում եգիպտացւոց ի տեսութիւն և մանկտիքն բարձրացուցին զմիս և հաւքն առեալ զնստուկն բարձրացան և մանկտիքն սկսան աղաղակել և ասել թէ բերէք փխ եւ ես-թէ բերէք։*

12 $D_4$ *եւ ես ասեմ արքա առաքեա ի վեր քար և կիր զի շինեցեն զապարանսն և նա ասէ զարմանալի է բանքս այս զի այսօր տեսի զքանչելիս անհեղ և ես հրաման ետու մանկանցն իջանել ի վայր և արքայն յոյժ մեծարեաց զիս փխ և յոյժ պատուեաց զիս արքայն։*

13 $D_4$ *ճարտարացն իմոց։*

13—14 $D_4$ *և առեալ գնացաք ի յօթևանս մեր հանգեաք փխ որ ընդ իս հանգեաք։*

24 $D_4$ *և իբրև լուսացաւ վաղւին, ես եկեալ եմ։*

*Եւ ի վաղիւն զգեցուցեալ էր զօրացն սպիտակ և ինքն զգեցեալ էր կարմիր։ Եւ ասէ ցիս. Ես ո՞ւմ նման եմ և կամ իմ զօրքս ո՞ւմ նման են։ Եւ ասեմ նմա, եթէ նման ես դու արեգականն և նախարարքդ՝ ճառագայթից նորա։ Եւ ասէ ցիս. Երթ ի տուն քո և ի վաղիւն եկ առ իս։*

*Եւ ի վաղիւն զգեցուցեալ էր զօրացն գոյնզգոյնս և ինքն զգեցեալ էր փետրածոյս և ասէ. Ես ո՞ւմ նման եմ և կամ իմ զօրքս ո՞ւմ նման են։ Եւ ես ասեմ. Նման ես դու դալարոյ և զօրքդ՝ ծաղկանց նորա։*

*Եւ լուեալ զպատասխանիս զայսոսիկ և ուրախ եղև յոյժ և դարձեալ ասէ ինձ, եթէ այժմ հարցանել կամիմ քեզ բանս և դու ասասցես ինձ զճշմարիտն։ Եւ ասէ ցիս, եթէ Սենեքարիմ արքայն ո՞ւմ նման է։ Եւ ես ասեմ. Քաւ լիցի քեզ յիշել զարքայն Սենեքարիմ, քանզի նստեալ ես։*

*Եւ նա յարեաւ ի վերայ ոտից, և ես ասեմ ցնա, եթէ Սենեքարիմ արքայն նման է Բելշիմի և նախարարք նորա՝ փայլատականց նորա։ Յորժամ կամի ածէ զանձրև և հարկանէ ցօղ, եղանէ ի բարձունս և որոտա թագաւորութեամբ և կալնու զճառագայթս արեգականն։ Եւ յորժամ կամի ածէ կարկուտ և մանրէ զփայտ զշոր և զդալար և ծագէ արև և զուարճացուցանէ զբոյսս դալարոյ։*

*Եւ ասէ ցիս Թագաւորն, եթէ ասա ինձ զճշմարիտն, զի՞նչ է անուն քո։ Եւ ես ասեմ. Խիկար է իմ անունն։ Եւ ասէ Թագաւորն. Ով Թշուառական, կենդանացա՞ր։ Եւ ես ասեմ. Որովհետև տեսի զերեսս քո, կամ կենդանի։*

*Եւ ասէ արքայն. Օրհնեալ է օրս այս, զի զԽիկար կենդանի տեսի աչօք իմովք։ Եւ ես անկեալ երկիր պագի նմա։ Եւ նա ուրախ եղև յոյժ, և ասացաք զամենայն անցս, զոր անցեալ եղև ընդ մեզ։ Եւ գոհացաք զաստուծոյ։*

*Յայնժամ եհարց ընդ իս և ասէ, եթէ կայր սիւն մի և ի վերայ նորա՝ ԺԲ մարգք և ի վերայ նոցա՝ անիւք Լ, Լ և ի վերայ*

6 $D_4$ *և վաղիւն ելեալ գնացի տեսի որ զգեցուցեալ էր։*

15 $D_4$ *յարեաւ յաթոռոյն և եկաց ի վերա ոտիցն* փխ *յարեաւ ի վերայ ոտից։*

16 $D_4$ *Բելշէմի։*

21 $D_4$ *դալարոյ և ահէ նորայ սասանի ամէն բոլոր երկիր։*

24 $D_4$ *թագաւորն եթէ ասա ինձ, թշուառական յերբ։*

28—29 $D_4$ *և սկսա խօսել զամենայն անցս զոր եբեր Նաթան ընդ գլուխս իմ զամենայն պատմեցի փարաւոնի արքային և նա զարմանայր և փառս ետունք աստուծոյ* փխ *և ասացաք-զաստուծոյ։*

*միոյ անուանցն՝ սուրհանդակք Բ, Բ, մինն՝ սև և միւսն՝ սպիտակ։*

*Եւ ես ասեմ. Ով արքայ, զայդ ասորոց հովիւքն այլ գիտեն։ Սիւնն տարին է, մարգն ԲԺ ամիսքն են, անիւքն Լ աւուրքըն են, սուրհանդակքն՝ սև և սպիտակ, տիւ և գիշերն է։*

*Ասէ արքայն. Զի՞նչ է այս, որ յԵգիպտոսէ մինչև ի Նինուէ ԵԾ խրախս է. զի՞արդ լուան կանայք մեր զխրխնջիւնն երիվարաց ձերոց և վրիժեցան։*

*Իսկ ես ելեալ ի դուրս, կալայ աքիս մի և տանջէի զնա։ Եւ պատմեցին Թագաւորին, եթէ Խիկար անարգէ զգիսն մեր։ Եւ կոչեաց զիս Թագաւորն և ասէ. Ընդ է՞ր անարգես զդիսն մեր և տանջես զաքիսդ։ Եւ ես ասեմ ցնա, եթէ վնաս մեծ արար սա ինձ, զի Թագաւորն իմ տուեալ էր ինձ աքաղաղ մի, որ ձայն նորա կարի քաղցր էր, և նա զարթուցանէր զիս ի ժամու երթալ յարքունիս, և սա ի գիշերիս յայսմիկ շոգաւ և եհատ զգլուխ աքաղաղին և եկն աստ։ Եւ ասէ Թագաւորն ցիս, եթէ որչափ ծերացար բանք և իմաստութիւն քո չրեցան։ Յեգիպտոսէ մինչև ի Նինուէ ԵԾ խրախս է, և մին աքիս ի միում գիշերի որպէ՞ս կարէ գնալ անդ և գործել զոր ասեսդ։ Եւ ես ասեմ. Որպէս խրխնջումն, զոր լուան կանայք ձեր և վրիժեցան։*

*Ասէ արքայն, եթէ կամիմ զի մանեսցես ինձ պարան աւազի։ Եւ ասեմ. Այո, եղիցի։ Եւ ելի դուրս։*

*Յայնժամ Թագաւորն ասէ ընդ իւրքն ամենայն, եթէ զինչ և ասիցէ Խիկարն դուք ասացէք. Մեք ամենեքեան լուեալ եմք զբանդ զայդ և գիտեմք։*

*Եւ իմ գիտացեալ զխորհուրդս նոցա, առի թուղթ և գրեցի զայս. «Ի Սենեքարիմայ արքայէ ողջոյն առ փարաւոն արքայդ*

---

9 $D_4$ *սկսա տանջել* փխ *տանջէի։*

9—10 $D_4$ *և գնացեալ մերձակայքն Թագաւորին պատմեցին* փխ *և պատմեցին Թագաւորին։*

11 $D_4$ *Թագաւորն ի ներս։*

11—12 $D_4$ *ով Խիկար ընդէր անարգես և տանջես զդիսն մեր զաքիսդ։*

15 $D_1$ *ի գիշերի միոյ* փխ *ի գիշերիս յայսմիկ։*

17 $D_4$ *մեծացար* փխ *ծերացար։*

20 $D_4$ *ժպրհեցան* փխ *վրիժեցան, ժպրհեցան և Թագաւորն այլ ոչ կարաց տալ պատասխանի և ես ելեալ գնացի յօթևան իմ և ի վաղիւն կոչեաց զիս արքայն ելեալ գնացի։*

21 $D_4$ *ասէ ցիս ով Խիկար* փխ *ասէ արքայն, շինես* փխ *մանեսցես։*

26 $D_4$ *ես լուա* փխ *իմ գիտացեալ։*

27 $D_4$ *արքայից արքայէ, ողջոյն սիրով։*

*Եգիպտացւոց։ Կարօտ եմք եղբարք եղբարց և թագաւոր թագաւորաց։ Ի ժամանակիս յայսմիկ ծախք բազումք եղեն մեզ, և արծաթ բազում պակասեաց ի գանձուց մերոց։ Եւ արդ, զայն որ ունիմքս առ քեզ ի պահեստի արծաթ Ճ սիկղն, արդ առաքեա ի ձեռն գրոյդ»։ Եւ մտի առ թագաւորն և ասեմ. Յայսմն գրի հանց բան կա, որ ո՛չ թագաւորդ և ո՛չ նախարարքդ քո լսել չեք։ Եւ որպէս ասացեալ էր նոցա թագաւորն, ասացին ամենեքեան, թէ լուեալ եմք և գիտեմք զբանդ զայդ։ Եւ ես ասեմ. Երբ գիտէք կարդացէք զգիրս և տուք զարծաթն։*

*Եւ տեսեալ արքային և զարմանայր ընդ հանճարս իմ, զոր առնէի։ Եւ ասէ ցիս. Եթէ ոչ մանես ինձ պարան աւազի, ոչ տանիս զարծաթն յԵգիպտոսէ։*

*Եւ ես ելեալ մտի ի տուն մի և ծակեցի զորմն տանն, և ի ծագեալ արեւուն՝ ցայթեաց ի տունն։ Եւ ես առեալ փոշի աւազի, արկանէի ի ծակն և փչէի ի նա, և երևէր որպէս մանոցք։ Եւ ասեմ ցարքայն. Հրաման տուր, զի ժողովեսցեն զպարանն, և ես այլ մանեցից։*

***Եւ իբրև եաես արքայն, ուրախ եղև և ասէ. Ով Խիկար, օրհնեալ ես դու առաջի դիցն։ Եւ պարգևս բազումս ետուր ինձ** և զհարկն,զոր խնդրէր՝ եթող։ Եւ օրով արձակեաց զիս։*

*Եւ ելեալ գնացի աշխարհն իմ։*

*Եւ իբրև մերձ եղէ անդ, ել ընդ առաջ իմ արքայն Սենեքարիմ և խնդութեամբ ողջունեաց զիս և առեալ տարաւ յապարանս իւր և ի գլուխ բազմականին բազմեցոյց զիս և արար խրախութիւն մեծ և պարգևս բազումս տայր ինձ և ասէ ցիս,*

---

4—5 D$_4$ *առաքեա փութով։*

9 D$_4$ *զարծաթն ահա դու-ք բերնով ձերով վկայեցիք։*

12 D$_4$ *յինէն* փխ *յԵգիպտոսէ։*

14 D$_4$ *ցաթեաց արևն։*

16 D$_4$ *ցարքայն թագաւոր։*

19 D$_4$ *դիցն և ես երկիրպագի նմա ասելով ահա այս են մանոցքն աւազեա։*

20 D$_4$ *խնդրէր ի մեզանէ, եթող զնա և ես առեալ բազում արծաթ և ոսկի և բազում պարգևս արքայէն փարաւոնի:*

21—22 D$_4$ *և ես ողջունեցի զնա արքա բարով կաց և երկրպագի առաջի արքային և ելի ի ճանապարհ և մերձ եղէ աշխարհին իմոյ* փխ *եւ ելեալ․․․ եղէ անդ։*

23 D$_4$ *զիս և ես զնա։*

25 D$_4$ *ուրախութիւն մեծամեծ* փխ *խրախուն մեծ։*

եթէ զինչ կամ է քո խնդրեա յինէն, և տաց քեզ։ Եւ ես երկիր պագի նմա և ասեմ. Զամենայն, զոր ինչ պարգևել կամիս ինձ, շնորհեա զայն Աբուսմաքայ ընկերի իմում, որ եղև պատճառ կենդանութեանս իմ, այլ ինձ տացես զՆադան, զոր ուսուցի, զի ոչ ուսաւ զառաջին ուսումն բարիոք։

Եւ արքայն ետ զնա ի ձեռս իմ։ Եւ ես առեալ զնա և տարի ի տուն իմ և կապեցի զնա շղթայիւք ի սիւն մի քարեայ, ի դրան սրահի իմում։ Եւ եդի նմա պահապան զմի ի ծառայից իմոց, զի ի մտանելն և յելանելն իմ, զոր ինչ և ասիցեմ նմա, գրեսցէ զամենայն։

Եւ իմ առեալ բիր և հարկանէի զնա։ Եւ ասէ Նադան. Զի՞ ոխացար ընդ իս, հայր։ Եւ ես հարեալ բրիւն ի կուշտս նորա, և ասեմ.

1. Որդեակ Նադան, որ ընդ ականջն ոչ լսէ, ընդ թիկունսն լսեցուցանեն։

2. Որդեակ, ես յաթոռ փառաց նստուցի զքեզ, և դու յաթոռոյ իմմէ կործանեցեր զիս։

3. Որդեակ, ես զքեզ բարի խրատիւք ուսուցանէի, և դու կամեցար ի զուր կործանել զիս, բայց անմեղութիւն իմ ապրեցոյց զիս ի ձեռաց քոց։

4. Որդեակ, եղեր դու որպէս կարիճն, որ եհար զասեղն, և ասէ. Ահա խայթոց, որ չար է քան զքոյդ։

5. Որդեակ, դարձեալ եհար զթաթ ուղտոյն, և նա կոխեալ ի վերայ նորա և ճմլեաց և ասէ. Գերեկ, ոչ գիտացիր, թէ շունչ քո յոտս իմ էր։

---

4 $D_4$ զոր ինչ։

5 $D_4$ և նա փխ զի, լուաւ փխ ուսաւ, բարիոք ոչ էր և յետինն բարիոք լինի։

9—10 $D_4$ զամէնն գրէ ի մէջ թղթի փխ գրեսցէ զամենայն։

11 $D_4$ բիր մի, սկսա հարցանել փխ և հարկանէի զնա։

12 $D_4$ չիք՝ բրիւն։

---

1 $D_6$ չիք՝ Նադան։

3 $D_6$ իմաստութեան վարժէի փխ բարի խրատիւք ուսուցանէի։

5 $D_4$ զոտուն փխ զթաթ, ճմլեաց զնա, չիք՝ գերեկ։

6. Որդեակ, եղեր ինձ որպէս զայծն, որ ունէր զորորունն։ Եւ նա ասէ. Ոչ գիտես, թէ ինև շիկեն զմորթ քո, զի՞ ուտես զիս։ Եւ ասէ այծն. Ես ի կենդանութեան իմում ուտեմ զքեզ, և յետ մահուան իմոյ թող խլեն զտակ քո և շիկեն զմորթ իմ։

7. Որդեակ, եղեր որպէս զայն, որ ձգեր նետ յերկինս և ոչ կարաց հասուցանել ի վեր, այլ զանօրէնութիւն շահեցաւ։ Եւ դարձաւ նետն ի գլուխն իւր։

8. Որդեակ, այսպէս կարծէիր, թէ զտեղի նորա լնում, բայց թէ իցէ ագի խոզին երկայն իբրև կանկունս է, զձիոյ տեղին ոչ կարէ լնուլ և թէ լիցի ասրն նորա ծիրանի, զմարմնով թագաւորի ոչ ագանի։

9. Որդեակ, ես այսպէս ասէի, թէ կացցես ի տան իմում և ժառանգեսցես զինչս իմ։ Իսկ ընդ անօրէնութեան քում ոչ հաճեցաւ քեզ աստուած։

10. Որդեակ, եղեր որպէս զգայլն, որ պատահեաց իշոյն և ասէ. Ողջոյն քեզ, յաւանակ։ Եւ ասէ էշն, թէ այդ ողջոյնդ տեառն իմոյ, որ արձակեաց զպարան յոտից իմոց և ետ տեսանել զդէմս քո չար և արենարբու։

11. Որդեակ, եղեր որպէս զորոգայթն, որ թաղեալ կայր յաղբն և ունէր զհատն ի բերանն։ Տեսեալ զնա ճնճղուկն և ասէ. Զի՞նչ գործես։ Եւ նա ասէ, թէ յաղօթս կամ առ աստուած։ Ասէ ճնճղուկն. Այդ որ ի բերանդ է, զի՞նչ է։ Ասէ որոգայթն. Քաղցելոց հատիկ է։ Եւ չանաց ճնճղուկն առնուլ զհատն։ Եւ նա կալաւ զպարանոց նորա։ Ասէ ճնճղուկն. Թէ քաղցելոց հատն այս է, այն աստուածն, որ յաղօթս կաս առ նա, այսպէս լուիցէ աղաչանաց քոց։

12. Որդեակ, եղեր ինձ որպէս զոչխլ հացի, որ եկեր զշտեմարանս թագաւորաց, և ինքն ումեք ոչ է օգուտ և պիտանի։

---

6 $D_4$ զքեզ յինէն փխ զտակ քո։
7 $D_6$ չիք՝ հասուցանել ի վեր։
8 $D_4$ ոչ կարէ աղվոր ձիոյ տեղն լնուլ, թագաւորի ի արտաքնոցէ։
9 $D_6$ չիք՝ այսպէս, բայց փխ իսկ, $D_4$ ըստ փխ ընդ։
10 $D_4$ ողջոյն ընդ, իմոյ եղիցի խնդրեմ որ արձակես զպարանն յետին ոտացս և յորժամ տեսես զգայլն յետին կողմանէ եհար զնա էշն և արիւ-նարբու արար, չիք՝ որ-արենարբու։
11 $D_4$ յորոգայթն փխ նա, առ յօղս և առ աստուած աղաչեմ փխ եթէ յաղօթս կամ առ աստուած, և անկաւ որոգայթն ի պարանոց նորա, $D_6$ չիք՝ առ նա։
12 $D_6$ զու փխ ինձ, շտեմա... Այստեղ ընդհատվում է բնագիրը։

13. Որդեակ, եղեր դու որպէս պտուկ, որ արին արկղ ոսկոյ, և կոզ նորա ի մրոյն ոչ պակասէր երբէք։

14. Որդեակ, եղեր դու որպէս սերմանացան, որ սերմանեաց գրիւս Ժ և, յետ բազում աշխատանաց, ժողովեաց գրիւս Ե։

15. Որդեակ, եղեր դու որպէս զոչխարն, որ զընկեր իւր տանին ի խոհակերոցն և զանձն իւր ոչ կարաց ապրեցուցանել ի զենմանէն։

16. Որդեակ, եղեր որպէս զշունն, որ եմուտ ի հնոց բրտին և յորժամ ջեռեաւ, սկսաւ հաչել ընդդէմ նորա։

17. Որդեակ, զբարիս ջամբեցի քեզ, և դու հաց հողոյ արգելեր յինէն։

18. Որդեակ, ես իւղով անուշիւ օծի զքեզ, և դու աղտիւ զմարմինս իմ ապականեցեր։

19. Որդեակ, ես յապարանս ոսկէզօծս սնուցի զքեզ, և դու ի ներքո հողոյ բնակեցուցեր զիս։

20. Որդեակ, ես արարի զքեզ ծառ լի պտղով, և դու յարմատոց խլեցիր զիս։

21. Որդեակ, ես բարձրացուցի զքեզ, որպէս աշտարակ, զի թէ եկեսցեն յիս թշնամիք, ելայց և ամրացայց ի քեզ, և դու ինքնին գտար թշնամի և կորուստ անձին։

22. Որդեակ, ես վարժէի զքեզ յիմաստութիւնս, և դու զչարիս կամեցար անձին քում։

23. Որդեակ, զգայլուն ձագն յուսումն տվին, եթէ ասա այբ, բեն, գիմ։ Եւ ասէ. Այծ, բուծ, գառն։

24. Որդեակ, եղեր որպէս զխոզն, որ տարան ի բաղանիս և յորժամ ետես զնախարարսն, անկեալ ի տիղմն թաւալէր ասելով. Դուք ի ձերդ լուացէք, և ես՝ յիմս։

25. Որդեակ, եղեր դու որպէս զշուն ժպիրհ, որ զջիլս տեառն իւրոյ ծամեաց։

26. Որդեակ, ես սնուցի զքեզ որպէս զձագս աղուեսաց։ Եւ ակն քո ի ծակ քո, մատն իմ կոգիւ ի բերան քո, զմատունքդ սրել-ես յաչս իմ։

---

13 $D_4$ պուտուկ, պեղ փխ արկղ, չէք՝ երբէք։
19 $D_4$ սնուցեր փխ բնակեցուցեր։
20 $D_4$ խզեցեր փխ խլեցիր։
21 $D_4$ եղեր փխ գտար, անձէն իմոյ։
23 $D_4$ թէ այբուբեն ասա փխ եթէ-գիմ։
26 $D_4$ աղուէնոյ փխ աղուեսաց։

*27. Որդեակ, շուն, որ զորսն ինքն ուտէ, կերակուր գայլոց եղիցի։*

*28a. Որդեակ, ձեռք, որ սնուցի և ինձ ոչ օգնէ, ուսովն հատցի։*

*28b. Եւ աչք, որ ինձ լոյս ոչ տայ, ագռաւք հանցեն զնա։*

*29. Որդեակ, զերեսս դիցն և զարքունիս ցուցի քեզ և մեծ փառաց հասուցի զքեզ, և ի փառաց ընկեցեր զիս։*

*30. Որդեակ, եղեր ինձ որպէս ղծառն, որ կտրէին, և ասէր. Թէ ոչ էր յինէն ի ձեռին քում, ոչ կարէիր հատանել զիս։*

*31. Որդեակ, եղեր որպէս զձագ ծիծռան, որ անկաւ ի բունոյ իւրմէ, և եգիտ զնա աքիսն և ասէ. Եթէ յինէն ի զատ լեալ էիր, ի մեծ չարիս մատնեալ էիր։ Ասէ ձագն. Զբարիսդ, զոր կամիս աքիս, ի գլուխ քո դարձցի։*

*32. Որդեակ, եղեր որպէս զաքիսն, որ ասացին թէ թող զսովորական բարս քո և համարձակ լիցի քեզ յարքունիս մտանել և ելանել։ Եւ նա ասէ. Եղիցին աչք իմ արծաթի և թաթք իմ ոսկի, զսովորական բարս իմ ոչ թողից։*

*33. Որդեակ, նմանեցար օձին, որ պատեցաւ ի մասրենի և անկաւ ի գետն։ Եւ տեսեալ գայլուն և ասէ. Ահա չար ի չարն է հեծեալ և չար է, որ վարէ զնոսա։*

*34. Որդեակ, տեսի զմաքին, որ ի սպանդանոցն ածին և երբ օրն չէր հասեալ, դարձաւ առ ընկերս իւր և ետես զորդիս որդոց իւրոց։*

*Եւ ասէ Նաթան. Տէր իմ Խիկար, արա ինձ ողորմութիւն, զի մարդիկ աստուծոյ մեղանչեն։ Եւ ես եղեց քեզ չար ծառայ, որպէս զմի յանցաւորաց քոց։*

*Եւ ես ասեմ ցնա.*

*35. Որդեակ, եղեր ինձ որպէս զայն, որ ետես զընկերն, զի դողայր, և նա առեալ ջուր, սրսկեր ի վերայ նորա։*

*36. Որդեակ, եղեր ինձ որպէս զարմաւենին, որ բուսեալ էր յեզր գետոյն, և պտուղ նորա ի գետն անկանէր։ Եւ եկն տէր ծառոյն կտրել զնա։ Իսկ նա աղաչէր զնա և ասէր. Թող զիս և ի միւսում ամին բերից պտուղ, որպէս և կամիս։ Եւ ասէ տէր ծառոյն. Դու ի քում ժամանակիդ ոչ ես բերեալ ինձ պտուղ շահաւէտ, և այժմ, որ կտրել կամիմ, զիարդ պիտանասցիս։*

---

29 $D_4$ *զերիս* փխ *զերեսս, զու* փխ *ի։*
31 $D_1$ չիք՝ *ասէ ձագն*, $D_4$ չիք՝ *աքիս։*
33 $D_4$ *գայլուն զնա։*

*37. Որդեակ, ասացին գայլուն, թէ ի բաց կաց գիհէդ, ապա թէ ոչ՝ շունք պատառեն զքեզ։ Եւ նա ասէ. Եթէ ի բաց կենամ, կուրանամ, զի փոշի նոցա աչացս դեղ է։*

*38. Որդեակ, որ արտաքոյ ճանապարհին ընթանայ, փշալից եղեալ պատառին ամենայն մարմին նորա։*

*Այսպէս և որ զչարիս գործեսցեն և արտաքոյ պատուիրանին ընթասցեն, չարաչար կորնչեն յանօրէնութենէ գործոց իւրեանց։*

*39. Որդեակ, ագին շանն հաց տայ և բերանն՝ բիր։ Նմանապէս և գործք մարդոյ օգնեսցեն։*

*40. Որդեակ, որ զքարինս զգւէ, ատամնաթափ լինի, և որ ի ծով սերմանէ, զձկունս կերակրէ, և որք սիրեն զանօրէնութիւնս, յանձինս իւրեանց տուժեսցեն զփոխարէնն։*

*Եւ ի նոյն ժամուն ուռաւ Նադան և պատառեցաւ։*

*Եւ ասէ Խիկարն. Ով բարի առնէ, բարոյ հանդիպի, և որ փորէ խորխորատ, անձամբ իւրով լցցէ զնա։*

*Որ սիրէ զչար, ատելի է բազմաց, և որ առնէ զբարի, փրկի ի մահուանէ, աստ մարմնով ուրախասցի և անդ յաւիտենական բարիսն զուարճասցի։*

*Եւ Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։*

---

38 $D_4$ ճանապարհին փխ պատուիրանին, չիք՝ գործոց։
39 $D_4$ ագահին փխ ագին։

# ԽՐԱՏՔ ՊԻՏԱՆԻՔ ԵՒ ՕԳՏԱԿԱՐՔ, ԶՈՐ ԱՍԱՑԵԱԼ Է ԽԻԿԱՐԱՅ ԻՄԱՍՏՆՈՅ

(ՏԱՐԲԵՐԱԿ EF)

Այս տարբերակը համապատասխանում է «Պղնձե քաղաքի պատմության» ժողովածուի հայտնի բնագրին։ Խիստ բարբառային է, համառոտված և այժմյան տեսքով շատ է հեռանում մայր թարգմանությունից։

Ձեռագրական աղբյուրների (E) և տպագրերի մեջ (F) կա որոշ ընթերցվածային տարբերություն։

Տպագիրը գալիս է ձեռագրից. իսկ բոլոր հրատարակությունները կազմում են երկու խումբ (Fa և Fb)։

Համեմատության համար յուրաքանչյուր խմբից ընտրել ենք մի բնորոշ տպագիր՝ Fa—1792 թվականի հրատարակությունը, Fb—1857 թվականի հրատարակությունը։

Այն ձեռագրերը, որոնք հետագայում արտագրվել են տպագրերից, ձեռագրական միավորների մեջ չենք հաշվում։

Խրատականքի և պատմության համար հիմք է ծառայել $E_1$-ը, իսկ մուտքի համար՝ $F_1$-ը, որովհետև $E_1$-ը մուտք չունի։

E խմբի մուտքը ներկայացված է C տարբերակում, ուստի այստեղ տալիս ենք առանց ընթերցումների։

Բնագրի մեջ հազվադեպ ուղղումներ կատարվել են E խմբի օրինակներով, իսկ Fab-ի բոլոր ընթերցումները արտահայտել ենք միայն տողատակերում։

Պահպանվել է բնագրի ուղղագրությունը։

Աղբյուրները և խրատների համակարգը տես գրքի վերջում (աղյուսակ VII—ուսուցող խրատներ, աղյուսակ VIII—պատժիչ խրատներ)։

## ԽԻԿԱՐԱՅ ԻՄԱՍՏՆՈՅ
## ԽՐԱՏՔ ՊԻՏԱՆԻՔ ԵՒ ՕԳՏԱԿԱՐՔ, ԶՈՐ ԱՍԱՑԵԱԼ Ի

*Ես՝ Խիկարս, դպիր էի Սենեքերիմա արքային Ասորեստանեայց։ Եւ արարի Կ կինս, և շինեցի Կ ապարանս, և ես՝ Խիկարս, եղէ Կ ամաց, և ոչ եղև ինձ որդի։*

*Յայնժամ մտի առ կուռքն բազում ընծաիւք և վառեցի հուր և արկի խունկս անուշահոտս ի վերայ նորա, մատուցի զընծայս և զոհեցի զոհս վասն ծննդեանն։ Եւ աղաչեցի ասելով.*

*Ով տեարք իմ և շաստուածք իմ. Բէլշիմ և Շահմիմ, հրամայեցէք և տուք ինձ արու զաւակ, քանզիահա Խիկարս կենդանի մեռանի։ Եւ զինչ ասեն մարդիք, թէ Խիկար իմաստուն էր և ճարտար, մեռաւ՝ և ո՛չ կայր նորա որդի, որ թաղէր զնա և ո՛չ դուստր, որ լայր զնա։ Զի՞նչ ասեմ, չունիմ ժառանգ յետ մահուան իմոյ։ Եւ եթէ որդին իմ յօրն Ժ քանքարս ծախեսցէ, ոչ կարէ սպառել զինչս իմ, այլ զի միայն արկցէ հող ձեռօք իւրովք ի վերայ իմ, և զի մի մնացայց անյիշատակ։*

*Յայնժամ ձայն եղև ի շաստուածոցն իմոց, և ասէ. Խիկար, ոչ հրամայեալ է լինիլ քեզ զաւակ, բայց թէ առցես զնաթան քեռորդին քոյ և սնուցես զնա որդի քեզ, և նա հատուսցէ քեզ զանուն քո։*

*Եւ ապա առի զնաթան քեռորդին իմ առ իս, որ էր ի մի ամի և հագուցի նմա բեհեզս և ծիրանիս և եդի մանեակ ոսկի ի պարանոց նորա, որպէս որդի թագաւորի գեղաշուք զարդարեցի զնա և արբուցի նմա կաթն և մեղր և ննջեցուցանէի զնա ի վերայ արծուոց և աղաւնեաց իմոց, մինչև եղև է ամաց։*

*Եւ ապա սկսա ուսուցանել նմա զդպրութիւն և զիմաստութիւն և զհանճարագիտութիւն և զպատասխանիս հրովարտակաց և զդարձուածս հակառակ խօսից։ Եւ ի տուէ և ի գիշերի ոչ դադարէի ուսուցանելոյ։ Եւ յագեցուցի զնա ուսմամբ իբրև հացիւ և ջրով։*

*Ապա ասէ արքայն առ իս. Դպիր և իմաստուն Խիկար, գիտեմ զի ծերացեալ ես, և յետ վախճանի քոյ ո՞վ է, որ կատարէ ճարտարութեամբ և իմաստութեամբ զգործս արքունեաց մերոց, և ես հա-*

նապաստ տրտում եմ վասն այդ խորհրդիդ։ Պատասխանի ետու նմա և ասացի. Արքայ, յաւիտեան կաց, է իմ որդի, որ առաւել հանճարեղ և իմաստուն է քան զիս։ Ասէ Թագաւորն. Ած զայ առ իս, զի տեսից զնա։ Եւ իբրև ածի զնա, կացուցի զնա առաջի Թագաւորին։ Յորժամ ետես Թագաւորն, ուրախ եղև և ասէ. Այս օրս օրհնեալ եղիցի, քանզի Խիկար ի կենդանութեան իւրում էած և կացոյց զորդին իւր առաջի իմ, և ինքն ի հանգստեան եղիցի։

Եւ ես երկրպագի արքային իմոյ և առեալ տարայ զՆաթան յապարանս իմ։

Եւ այսպէս ասէի ի խրատելն իմում.

1. Որդեակ, Թէ լսես խօսք ի դուռն Թագաւորաց և իշխանաց, կամ մեծամեծաց, պահեա և մեռո զնա ի սրտի քում և մի՛ ասեր մարդոյ, մինչև այլ մարդ ասէ, ապա իմանաս։

2. Որդեակ, զմարդոյ մօհրած և զկապած մի՛ արձակեր և զարձակեալն մի՛ կապեր։

3. Որդեակ, լաւ է իմաստուն մարդոյ հետ քար կրել, քան զհետ յիմար մարդոյ և անզգամի ուտել և ըմպել։

4. Որդեակ, մի՛ լիցի, զի առաքեսցեն զքեզ ի բան, և դու ոչ իմանաս զբան և զնաս, և այլ մարդ զրկեն յետև, որ գայ հոգայ զբանն, և դու ծաղր լինիս։

5. Որդեակ, մի հանց բան աներ, յորտեղ որ երթաս, ասեն, Թէ ել և գնա, այլ հանց բան արա, որ ասեն, Թէ եկ այլվի առ մեզ։

6. Որդեակ, յորժամ կոչեն զքեզ ի պատիւ, մի՛ նստիր քան զքո լայեխիդ տեղիքն ի վեր, զի մի ասիցեն, Թէ ել յայդ տեղացդ և եկ ի վայր, և դու ամօթով լինիս։

---

1 $E_2$ չիք՝ կամ, չիք՝ և մեռոյ, չիք՝ մարդ, Fb յայտներ փխ ասեր, Fab այլքն ասեն ի քեզ փխ այլ մարդ ասէ ապա իմանաս։

2 $E_{4,5}$ կնքած և զմաւհրածն, Fa կապած և մօհրածն, Fb կապած և կնքածն։

3 Fab քան զանզգամին հետ ուտել և խմելն (Fb ըմպելն)։

4 Fb որդեակ եԹէ առաքեսցեն զքեզ ի տեղի ինչ վասն բանի լաւ ի միտ առ զբանն զոր ասելոց ես և ապա գնա զի մի գուցէ յետոյ լինիցիս ծաղր առաջի այլոց փխ որդեակ-լինիս, Fa երԹաս յետոյ այլ ոք ուղարկեն որ երԹա ի բանն փխ գնաս-զբանն։

5 $E_2$ եկեալ վաղն առ մեզ փխ եկ այլվի առ մեզ։

6 $E_{4.5}$ պատիւ կամ ի հարսանիս։ Fa մի այնպէս աներ որ երԹաս ի տեղ մի և ի քեզանէ մեծ մարդոյն ի վեր նստիս որ չասեն Թէ եկու ի վայր որ յամօԹ լինիս ի վայր նիստ որ ասեն Թէ եկու ի վեր փխ յորժամ-լինիս, Fb որդեակ եԹէ գնաս ի հրաւիրեալ տեղիս յորում գտանի քան զքեզ մեծ և յարգի մի նստիր ի վերին կողմն զի յետոյ սակաւ առ սակաւ իջանես ամօԹով ի ստորին կողմն փխ որդեակ-լինիս։

7. Որդեակ, թէ ընկեր քո հիւանդ է, մի՛ ասեր մտօքդ, թէ տանձ կամ խնձոր գտնում և ապա՝ երթամ ի տես։ Երթ ոտիւքդ և տես աչօքդ, զի հիւանդին քո դատարկ տեսն լաւ է, քան զբազում կամակս։

8. Որդեակ, մի՛ հեղուր զարիւն մարդոյ, զի մի այլ ոք հեղցէ զարիւն քո, փոխանակ արեան նորա։

9. Որդեակ, մի՛ շնար ընդ այլոց կանանց, զի մի այլք շնասցեն ընդ կնոջ քո, և դու լինիս սևերես։

10. Որդեակ, լաւ է ծառայի՝ միամտութեամբ տալ պատասխանի տեառն իւրում, քան զոր խրատելով խօսի և ածէ ի բարկութիւն։

11. Որդեակ, մի՛ տար ընկերի կոխել զոտս քո, զի մի համարձակեսցի և կոխեսցէ զպարանոց քո։

12. Որդեակ, մի՛ լինիր քաղցր, որ կլանեն զքեզ և մի՛ խիստ դառն, զի մի թքանիցեն զքեզ։

13. Որդեակ, լաւ է կոյր աչօք, քան թէ կոյր մտօք, զի կոյրն արագ տեսանէ զերթևեկ ճանապարհին, և կուրամիտ մարդն հանապազ գնա կամակոր։

14. Որդեակ, լաւ է աղջիկ, որ ծնանի և շուտ մեռանի, քան թէ ապրի և ազգին սևերեսանք բերէ։

15. Որդեակ, լաւ է կող մի ի ձեռին քո, քան թէ չարեկ մի յայլոց ձեռին։

16. Որդեակ, լաւ է ուլ մի քո տունն մորթած, քան թէ եզ մի յայլոց տունն։

17. Որդեակ, ի պարտէզ թագաւորաց մի՛ մտաներ և ընդ կնոջ դատաւորի մի՛ խօսիր։

18. Որդեակ, աչք մարդոյ ագահ է. ոչ լցւի զանձով, մինչև լցւի հողով։

---

7 $E_1$ առնում փխ գտնում, $E_{4,5}$ եւ քո փխ երթ, Fab զհիւանդն փխ հիւանդին քո, $E_{2,3}$ չիք՝ երթ-կամակս, $E_{4,5}$ քան զքոյ, Fab տեսանել շատ, Fa կամա՛կս ուտելոյ, Fb միրգս տանել փխ կամակս։

8 $E_1$ այլք փխ այլ ոք, Fab այլքն հեղցեն փխ այլ ոք հեղցէ, Fab չիք՝ փոխանակ արեան նորա։

9 Fab չիք՝ և դու լինիս սևերես։

12 Fab լինիր լեղի որ թքանեն փխ խիստ-թքանիցեն, $E_{4,5}$ որ փխ զի մի։

13 Fab մտօք կոյրն փխ կուրամիտ մարդն։

14 $E_{2,3}$ չիք՝ լաւ է, $E_1$ բերէ և խախկութիւն, Fa ազգին իւրոյ, Fb իւրոյ լինի նախատինք փխ սևերեսանք բերէ, $E_5$ լինի փխ բերէ։

15 Fa չարիք ի յայլոց ձեռքին փխ չարեկ մի յայլոց ձեռին։

16 Fab ի ձեռ փխ քո, զենած փխ մորթած, ի տունս այլոց։

17 $E_{2,3}$ զի պարտ է փխ ի պարտէզ, Fab յապարանս փխ պարտէզ։

18 Fa կշտանայ փխ լցւի։ Fb շատանայ զանձով մինչև մտանէ ի հող փխ լցւի հողով։

19. Որդեակ, մարդոյ կին մի՛ թպտրեր։ Թէ պէշ լինի, անխծանեն զքեզ, թէ աղեկ լինի, այլ ոչ յիշեն զքեզ։

20. Որդեակ, յորժամ ի դատաստան երթաս, մի՛ շատախօսիր և մի՛ ծուռ զրուցեր, թէ չէ զսուտ հանեն, և մտնաւ ի գնտան։

21. Որդեակ, յառաջն խէմիտ հետ զտաւիդ արա։ Թէ սուտ ես, մեղայ ասա, թէ չէ դատաւորն ի բանդ դնէ և բռզակդ թալանէ։

22. Որդեակ, մարդ, որ ի կախել տանին, յառաջ մի՛ երթար ի թամաշան, թէ չէ ի սրտին կսկծուն կասէ, թէ սա իմ ընկերն է, և դու խապար չունիս։

23. Որդեակ, յորժամ երթաս ի հարսանիս, կամ ի մահտուն, յառաջն հաց կեր ի ձեր տունն և ապա՝ գնա, զի թէ հարսանիս է, ի խնդութենէն հոգ չանեն զքեզ, և թէ մահտուն է, ի տրտմութենէն հոգ չանեն զքեզ, և դու անօթի մնաս։

24. Որդեակ, լաւ է ի կարմունջ գնալ հեռու, քան թէ մօտ գետ մտանել և խեղդիլ։

25. Որդեակ, Նոր դատաստան մի՛ սերմաներ անիրաւութեամբ, թէպէտ իշխանաւոր ես։

---

19 Fa ընդ մարդոյ կնոջ մի խնամախօսիր զի փխ մարդոյ—Թպտրեր, Fb մի պատճառ լինիր հարսնացուցանելոյ զդուստրն ուրուք ընդ առն օտարի զի փխ մարդոյ-Թպտրեր, յետոյ այրն վատ փխ պէշ $E_1$ զքեզ ընաւ և ոչինչ, Fb յիշեն ընաւ։

20 $E_{2-4}$ շատ խաւսիր, $E_5$ Fab շատախօս լինիր, Fa զի մի սուտ հանցեն զքեզ փխ թէ չէ զսուտ հանեն, Fb սուտ խօսիր զի մի յետոյ մտանիցես ի բանտ փխ ծուռ-գնտան։

21 $E_{4,5}$ ընդ միտդ փխ խէմիտ հետ, Fab յառաջ զխօսքն ի միտքդ խորհիր թէ սուտ ես մեղայ ասա զի մի դատաւորն արկցէ ի բանտ և թալանէ զինչս քո (Fb զխօսքն ի մտի քում խորհեա, և տուժեսցէ զքեզ փխ և թալանէ զինչս քո) փխ յառաջն-թալանէ։

22 Fab զմարդն որ ի կախել տանին մի յառաջ նորա ընթանայր զի մի մատնէ զքեզ և ասէ թէ սա այլ իմ ընկեր է (Fb եթէ զմարդն, չիք՝ որ, մատնեսցէ, ասասցէ, ես փխ այլ) փխ մարդ-չունիս, $E_{2-5}$ թէ չէ ասէ սայ է իմ ընկերն ($E_{2,5}$ ասէ թէ այ ալ իմ ընկերն է)։

23 Fab տունդ փխ ձեր տունն, Fb մեռելոյ տուն փխ մահտուն, $E_1$ խընդութեան փխ ի խնդութենէն, Fb մոռանան փխ հոգ չանեն, մնաս քաղցեալ փխ անօթի մնաս։

24 $E_{2,3}$ հեռանալ փխ գնալ հեռու, Fab կամուրջ մի հեռի գնալ անցանել լաւ է քան մտնուլ ի ջուր մօտիկ (Fb մտնել) փխ լաւ է-խեղդիլ, $E_{2-5}$ չիք՝ և խեղդիլ։

25 $E_1$ անեբ փխ սերմաներ, Fab սահմաներ փխ սերմաներ, թէպէտ և իշխան լինիս ի սահմանէ զուրս մի ելաներ փխ Նոր-ես։

26. Որդեակ, մի՛ բանար զաչքդ և մի՛ հայիր ի կին գեղեցիկ, զի գեղեալ է գերեսն և ծարուրեալ է զաչսն։ Եւ թէ ծախես զամենայն ինչս քո ի սէր նորա, ոչինչ աւելի գտանես քան զկնոջ քո, բայց միայն զմեղքն և զաներեսանքն։

27. Որդեակ, թէ տեսանիցես զերիտասարդ մարդն թռուցեալ յօդս, մի՛ հաւատար գործոյ նորա, զի բան ծերոց հաստատ է, քան զտղայոց։ Օգնել բանիւ, իբրև բերանոյ առիւծոց զերծուցանես զնա։

28. Որդեակ, թէպէտ որդին քո իմաստուն է, յառաջն Ա, Բ անգամ փորձեա զնա և ապա՝ տուր զապրանքդ ի ձեռն նորա։

29. Որդեակ, ի կնոջ օտարէ և ի հարսնատանէ քան զընկեր քո յառաջ ել և գնա և այլ մի՛ դառնար, որ հարկւոր մնաս, ապա թէ դառնաս, առնուս ի գլուխ քո անարգութիւն։

30. Որդեակ, որ քան զքեզ պնդերես է, մի՛ հակառակիր ընդ նմա։

31. Որդեակ, թէ բարձր է շեմ տան քո իբրև Թ կանգուն, յորժամ մտանես, խոնարհ կալ զգլուխ քո։

32. Որդեակ, մի՛ առնուր կշռով մեծ քարով և ծախեր փոքր քարով և ասես ի մտիդ, թէ շահ արի։ Ոչ գիտես, թէ բարկանայ աստուած և զոր ունիս, առնու և տայ այլոց։

33. Որդեակ, մի՛ երդնուր և մի՛ ասեր սուտ, զի սուտ ասելն և սուտ երդումն մարդոյ արևն պակսեցնէ։

---

26 Fab վատնես փխ ծախես, առաւել փխ աւելի։ $E_{2,3,5}$ գտանես ի նա, $E_4$ գտանես ի նոսա, Fab զաներեսութիւն։

27 Fb չիք՝ մարդն, գործոց, բայց երիտասարդ որդւոյն ոչ (Fb բայց երիտասարդին ոչ) փխ քան զտղայոց, Fa անհա օրինակ սորա ասացեալ է թէ իբրև բերան առիւծու որ զերծուցանէ զնա փխ օգնել-զնա Fb չիք՝ օգնել-զնա։ $E_1$ չիք՝ բերանոյ։

28 Fab յառաջագոյն փխ՝ յառաջն Ա Բ անգամ, զինչս քո փխ զապրանքդ, $E_{2,3}$ քո փխ ի ձեռն նորա։

29 $E_5$ տանէ փխ ի հարսնատանէ, Fa լինիս փխ մնաս, դառնաս փոխարէն հարկացդ, Fa չիք՝ ի գլուխ քո։

30 Fab ով որ քան զքեզ պինդ երես է, $E_1$ նմա զի վերջքն չար է։

31 Fab քո առաւել, $E_1$ թէ շտեմարանք քո բարձր է փխ թէ բարձր է շեմ տան քո, Fa այլ որ փխ յորժամ, Fab խոնարհեցո փխ խոնարհ կալ, Fb ի մտանելն քո ընդ այն փխ յորժամ մտանես։

32 Fab չիք՝ քարով, ասեր ի սրտի քում թէ շահեցայ (Fb մտի փխ սրտի), որ փոխանակ ի յայն փոքր շահուն (Fb չիք՝ փոքր) փխ թէ, առնու ի ձեռաց քոց։

33 Fab զմարդոյ կենաց պակասութիւն բերէ, $E_{2,3}$ աւրերն պակասեցուցանէ, $E_4$ օրէն պակասեցուցանէ, $E_5$ ումրն փխ արևն։

34. Որդեակ, թէ կամիս խնդրել ինչ յաստուծոյ, ի կամաց նորա մի՛ հեռանար։ Եւ զոր խնդրես, տացէ քեզ աստուած։

35. Որդեակ, զինչ բան որ քեզ չար թւի, ընկերին քո մի՛ կամենար։

36. Որդեակ, զոր ինչ որ կամիս, թէ արասցեն քեզ բարեկամք քո, արա և դու ամենեցուն, զի յամենայնէ բարի գտցես։

37. Որդեակ, յորժամ իցես ի մէջ մարդկաց, մի՛ յայտներ զպարտք և զպակասութիւն քո, զի ի նոցանէ շահ ոչ լինի քեզ, և արհամարհիս ի մէջ նոցա։

38. Որդեակ, սիրեա զկին քո, զի մարմին քո է և աշխատանօք անուցանէ զորդի քո, և կցորդ կենաց քոց է։

39. Որդեակ, սիրեա զեղբայր քո հաւասար քեզ, զի ի հասանել որդոց քոց՝ խնդասցես։

40. Որդեակ, ուսո զորդի քո ի քաղց և ի ծարաւ, զի սովորեն համբերել, յորժամ հանդիպի ժամանակ սովոյ կարասցեն ժուժկալել։

41. Որդեակ, թէ առաքէ տէր քո, թէ բեր սպասուր, մի՛ բերեր խաղող, զի ուտէ զխաղողն և զսպասուրն ի քէն պահանջէ։

42. Որդեակ, մարդուն գործքն, որ չէ շիտակ և չունի անուն բարի, լաւ է այն մարդն մեռած, քանց կենդանի։

43. Որդեակ, թէ լինիս մարդոյ ղոնախ, օձ և կարիճ դնեն առաջի քո, ի մէկալ իջևանն մի՛ գանգատիլ։

---

34 Fab խնդրել բանս, չիք՝ աստուած։

35 Fa անէր փխ կամենար, անէր և զոր ինչ բարին է կատարէ և արասցէ քեզ բարեկամ և դու յամենեցունց բարի գտցես։

36 $E_{2-5}$ չիք՝ որդեակ (Այսպիսով խրատը միակցվել է Նախորդին), Fb թէ կամիս գտանել յամենեցունց զբարիս արա դու այլոց զբարիս փխ զոր-գտցես, Fa միակցվել է Նախորդին։

37 Fab լինիս փխ իցես, $E_1$ նոցա և այլ ոչ անեն քեզ զառաջին պատիւն։

39 Fa հաւասար ընդ, Fb իբրև զանձն քո փխ հաւասար քեզ, $E_1$ քոց հաւասար։

40 Fab ուսանիցեն փխ սովորեն, համբերել նեղութեան և։

41 $E_{2,3}$ սուտ է փխ ուտէ, զըսպասուն ինքնէն ոչ թողու փխ զսպասուրն ի քէն պահանջէ, $E_{4,5}$ սպասուրին քենն ոչ թողու։

42 Fab մարդոյ գործք որ ոչ է բարի փխ մարդուն գործքն որ չէ շիտակ, բարի յաշխարհի։

43 Fa յորժամ լինիս այլոց տան հիւր եթե օձ և կարիճ բերեն առաջի քոյ մի քալէջեան և մի գանկատիր փխ թէ լինիս-գանգատիլ, $E_{2,3}$ խոնախ։

44. Որդեակ, մի՛ ասեր բան չար բարեկամի քո, այլ ծիծաղեա յերեսս նորա, և ուրախ լինի ի մէջ ընկերաց քոց։

45. Որդեակ, զամենայն բարութիւն կնոջ քո արա, բայց զսըր-տիդ խորհուրդն մի՛ յայտներ, զի կին մարդ տկար է, ոչ կարէ պա-հել զբան քո, յայտնէ դրացեաց և զքեզ ի փորձանս ձգէ։

46. Որդեակ, ապրանք, որ քո չէ, մի՛ առնուր և մի՛ այլոց տար։

47. Որդեակ, խորհեա զբանն ի սրտիդ, ընտրեա զպիտանին և ապա՝ բեր ի լեզուդ և խօսիր։ Եւ թէ զինչ գայ բերանդ խօսիս, ծաղր լինիս։

48. Որդեակ, երկու մարդ որ կռվին սրով, դու ի մէջ նոցա մի՛ անկանիր, թէ չէ ի զուր մեռանիս։

49. Որդեակ, մի՛ դատարկ բան խօսիր և ծիծաղիր զմարդիկ, զի տնազելուն կռիւ լինի և ի կռւոյն՝ սպանութիւն։

50. Որդեակ, թէ կամիս, որ իմաստուն լինիս, պահեա զլեզուդ ի չար խօսելոյ։

51. Որդեակ, թէ կանչելով մարդ տուն շինէր, էշն օրն Ը դար-պաս կու շինէր, և թէ ի սաստիկ զօրութենէ եզինն վարին, լուծն ի յըղտուն պարանոցէն ոչ ելանէր։

52. Որդեակ, թէ աղքատ ես, յաւուրս պատարագաց սատուծոյ մի՛ հեռանար։

53. Որդեակ, մի՛ տացես բռզակն քո առանց գրի և վկայի, զի մի բազում խօսք լինի յետոյ ի միջին, և ի բուն բարեկամէն քակտիս։

54. Որդեակ, զբան աղային քո մի՛ յաւելուր, թէ փոքր է, և թէ մեծ՝ մի պակասեցուցաներ զհրամայեալսն։

---

45 $E_1$ *խորհուրդն քո*, Fab *զխորհուրդ սրտի քոյ*, $E_5$ *մարդ* փխ *կին մարդ*, Fab *կինն* փխ *կին մարդ*, *դրացեաց քոց*, *և դու անկանիս ի փորձանս և ի նեղութիւն* (Fb *փորձութիւնս*) փխ *և զքեզ ի փորձանս ձգէ*։

47 Fb *որդեակ նախ, սրտի քում և*, Fb *զի մի յետոյ ծաղր լիցիս այլոց* փխ *բեր ի-լինիս*։

48 Fa *ընդ կռւիլն և ընդ ծեծուիլն* փխ *որ կռվին սրով դու*, Fb *եթէ տե-սանես զկռուիլն երկու մարդոյ ընդ միմեանս մի մտանեք ի մէջ նոցա*, Fab *զի մի* փխ *թէ չէ*, $E_{2,3}$ *սրով զքեզ հատանեն և դու մեռնիս* փխ *ի զուր մեռանիս*։

49 Fa *դատարկաբանութիւն, զի մարդն ի նուազելոյն* փխ *զմարդիկ զի տնազելուն*։

52 Fa *ես յամենայն*։

53 Fa *ապրանք* փխ *բռզակն*, *գնի* փխ *գրի*, չիք՝ *յետոյ ի միջին*, $E_{2,3}$ *բարեկամին հետ լինիս կռիւ* փխ *բարեկամէն քակտիս*։

54 $E_{2,3}$ *մի մեծացներ մի պակասեցուցաներ* փխ *և թէ մեծ մի պակասե-ցուցաներ զհրամայեալսն*, $E_{4,5}$ չիք՝ *զհրամայեալսն*։

55. Որդեակ, պատուեա զհայր քո և զմայր, զի ի հասանել որդոց քոց և դու ի նոցանէ պատուիս։

56. Որդեակ, շալկեցի երկաթ և ի վերայ՝ արճիճ, և ոչ էր ծանր, քան զպարտքն։ Թէպէտ որ ուտէ և ըմպէ, ոչ կարէ հանգչել, մինչև վճարէ զպարտսն։

57. Որդեակ, յաւուր զոհից քոց առատ բռնեա զձեռն քո, որ աչք ի ձեռն քո ոչ մնայ, և ոչ հաճի աստուած, և ի մարդկանէ անարգիս։

58. Որդեակ, մեծատան որդին օձ կերաւ, ասեն, թէ դեղ է նմա, աղքատին որդին ձուկ կերաւ, ասեն, թէ ի սովուն է։

59. Որդեակ, ձի որ քո չէ, մի՛ հեծնուր։ Թէպէտ որ կարի քաղցեալ ես, հաց, որ քո չէ, մի՛ ուտեր։

60. Որդեակ, յայտնեա զխորհուրդ քո բարեկամիդ և յետ քանի մի աւուր փորձեա զնա և սակաւ մի կռուեա ընդ նմա։ Թէ պահէ զբան քո ի սրտին մէջն և ոչ յայտնէ, նա բարեկամ է, սիրեա զնա։

61. Որդեակ, լաւ է գողանալ զամենայն ինչս քո, քան թէ զտանեն մի գողութիւն ի վերայ քո։

62. Որդեակ, ընդ թշնամեաց կորուստ մի՛ խնդար, զի առաջի քո կայ մահ։

63. Որդեակ, յորժամ տեսանես զծերն, յոտն կաց և պատուեա զնա, զի այլք արասցեն քեզ զնոյն։

64. Որդեակ, թէ դադարեն գետք ի գնացից և կամ քաղցրանայ ծով, որպէս մեղու, կամ սպիտականայ ագռաւ, որպէս զաղաւնի. այնպէս թողու անզգամն զանզգամութիւն, կամ անմիտն զգայուն լինի։

---

55 Fab տացես և դու զնոյն (Fb զտացես) փխ և-պատուիս։

56 Fa արճիճ և երկաթ փխ երկաթ և ի վերայ արճիճ։

57 $E_1$ մնայ այլ ամենեցուն հաւասար բաշխէ և թէ առատ ոչ բռնես։

58 $E_{2,3}$ ասեն յամենեքեան, Fa, $E_{4,5}$ մեծատան որդին թէ օձ ուտէ կասեն թէ վասն բժշկութեան կերաւ և թէ աղքատն ուտէ կասեն թէ սովալլուկ մեռանելոյն կերաւ ($E_{4,5}$ կերաւ փխ ուտէ, ասեն փխ կասեն թէ, $E_4$ եկեր փխ կերաւ) փխ մեծատան-սովուն է։

59 $E_1$ ուտեր այն է կարի լաւ։

60 $E_{2,3}$ աւր վրա փխ նմա։

61 Fa գողոց տալ փխ գողանալ, $E_{2,3}$ ի քէն փխ ի վերայ քո, Fb մի գողանար զինչս մարդկանց զի մի զուցէ աստ մահու մեռանիցիս և անդ յանշէջ հուրն այրիցիս փխ լաւ է-ի վերայ քո։

62 Fab թշնամւոյն կորստեան։

64 Fab չիք՝ ծով, սպիտակի, Fa զաղաւնի նա, Fb նոյնպէս փխ այնպէս, Fab զանզգամութիւն իւր, Fb չիք՝ կամ անմիտն զգայուն լինի, $E_{2,3}$ անզգայուն լինի փխ անզգամն-լինի։

*65. Որդեակ, մի՛ յաճախեր ի տուն բարեկամի քո, զի մի յաւելցի ատել զքեզ։*

*66. Որդեակ, ագահութիւն մայր է ամենայն չարեաց և ծնուցիչ է մեղաց։ Ողորմութիւն ձեռնտու է ամենայն բարեաց։*

*67. Որդեակ, որ սիրէ զխաղաղութիւն, ի դատաստանէն հեռի կացցէ։ Որ հանապազ յօժարի ի դատաստան, մայր է չարեաց, յիմարեալ է և ոչ գիտէ զինչ առնէ։*

*68. Որդեակ, օրինացն աստուծոյ ունկնդիր լեր, զի պատուիրանն աստուծոյ ամուր պարիսպ է մարդոյ։*

*69. Որդեակ, շատախօսութիւն զումեքէ մի՛ լսեր, զի կարի խոցոտէ զսիրտ մարդոյ լսողին և ապականէ զբարք մարդոյ, զի նախատինք է։*

*70. Որդեակ, սովորեցո զլեզուն քո ի բարին խօսել ի մէջ ընկերաց քոց։*

*71. Որդեակ, թէ խրատ բարի տացես ամենայն մարդոյ, կոչիս իմաստուն, զի չարն հանապազ ի չար մարդուէն ծնանի։*

*72. Որդեակ, որ պայծառ է մտօք, իբրև զարեգակն լուսաւորէ զինքն, որ պիղծ է սրտիւ և նենգ է մտօք, խաւար է խորհրդով, որ ագահ է մտօք՝ մարդ և ունի ինչս բազումս, ունայն է և կենդանի մեռեալ։*

*73a. Որդեակ, թէ կամիս գործ մի գործել, յառաջն մի՛ պարծենար, լինի թէ չկարենաս և ծաղր լինիս։*

*73b. Եւ թէ կամիս մարդոյ ինչս տալ, յառաջն մի՛ պարծենար, կամ խոստանալ, զի թէ պարծենաս և չտաս, հետ բարեկամիդ թըշնամի լինիս։*

---

65 Fab *յագեալ ատիցեն* փխ *յաւելցի ատել։*
66 Fab *ծնուցիչ ամենայն։*
67 Fab *պատրաստ կաց* փխ *հեռի կացէ, դատաստան նա,* $E_{2,3}$ չիք՝ *որ հանապազ-առնէ,* Fab *մայր է ամենայն մեղաց և։*
69 $E_{2,3}$ *կարէ* փխ *կարի,* Fab *մի ասեր և,* չիք՝ *լսողին, զփառք* փխ *զբարք,* Fa *զի մեծ, նախատինք մեծ։*
70 Fb *կրթեա զլեզուդ քո խօսել զբարի ի մէջ ամենեցուն* փխ *սովորեցոքոց։*
71 Fb չիք՝ *ամենայն,* Fa *զտցես զու իմաստուն կոչիս* փխ *տացես-իմաստուն,* Fb *գտանես զու զբարի* փխ *կոչիս իմաստուն։*
72 Fb *որ ամբարտաւան է աչօք և ագահ սրտիւ. Այնպիսի մարդն թէպէտ և ունի* փխ *որ պայծառ է-ունի,* $E_{2,3}$ *որ պայծառ է մտաւք և խաւար է խորհրդով որ ագահ է մտօք մարդ և յունի ինչս բազումս յունայն է և կենդանի մեռեալ* (աղավաղված), $E_{4,5}$ *զմարդն* փխ *զինքն, մտօք և,* Fa չիք՝ *զինքն, այնպիսի մարդն թէպէտ և* փխ *մարդ և։*
73 Fab չիք՝ *թէ-լինիս* (73a), $E_{2,3}$ *որդեակ և թէ* փխ *և թէ* (Այդպիսով խրատը տրոհվել է երկուսի), Fab *և մի* փխ *կամ,* Fb *զի մի զուցէ յետոյ ոչ կարիցես տալ և լինիցիս ծաղր և այպն ալլոց* փխ *զի թէ-լինիս։*

*74. Որդեակ, մի՛ ցանկար մարդոյ արեան և մի՛ սիրեր զկռիւ, այլ սիրէ զխօսք կակուղ, զի կակուղ խօսքն շիջուցանէ զհրաբորբոք, զազանացեալ սիրտ մարդոյ։*

*75. Որդեակ, յորժամ ըմպես գինի, մի՛ շատախօսիր, զի շատախօսիս՝ կռիւ լինի, և հետ կռւոյն՝ սպանութիւն։*

*76. Որդեակ, անբարտաւան մարդն հեռի և օտար է յընտանեաց և բարեկամաց և թէ բազում անգամ ջանայ սիրոյ, առնու անարգանս անձին իւրոյ և հեռանայ ընկերաց, նոյնպէս ագահ մարդն և խոզամիտն։*

*77. Որդեակ, խոնարհութիւն մայր է խաղաղութեան, բնակարան է ողջունի և զաւուրս մարդոյն խաղաղութեամբ առնէ։*

*78. Որդեակ, մինչ կոշիկդ յոտքդ է, կոխեա զփուշն և արա ճանապարհ, որ հետ քեզ գալոց են։*

*79. Որդեակ, ջանա որ, քանի կենդանի ես, շահիս անուն բարի, զի լաւ է մարդոյն անուն բարի, քան զգեղ զովելի, զի գեղեցկութիւն հիւանդութեամբ և մահուամբ ապականի, և անուն բարի մնայ յաւիտեան։*

*80. Որդեակ, լաւ է ստանալ ձի սմբակեղ և էշ ստվարոլոք, քան զծառայ փախչող և ստախօս։*

*81. Որդեակ, մի՛ երաշխաւոր լինիր բարեկամին քո, զի բազում վիշտս կրես մինչև վճարես զպարտս նորա, և ցաւի մորուսդ։*

---

74 Fa *և խօսք որ* փխ *զի կակուղ խօսքն*, Fb *որ* փխ *զի կակուղ խօսքն։*

75 $E_{4,5}$ Fab *շատախօս լինիր*, Fa *խմես* փխ *ըմպես*, *յետոյ խռովութիւն և սպանութիւն* փխ *հետ կռւոյն սպանութիւն*, Fb *ծնանի կռիւ և յետոյ խռովութիւն զուգէ և սպանութիւն*, $E_{4,5}$ Fab *շատ խօսիցն* (Fab *ի շատ խօսից*), $E_5$ *սպանութիւն լինի։*

76 $E_1$ չիք՝ *և բարեկամաց*, Fab *բարեկամաց իւրոց* (Fb *իւրոց այլ խոնարհն միշտ մերձ է ոչ միայն ընտանեաց և բարեկամաց իւրոց այլև հեռաւորաց և անծանօթից*), $E_{4,5}$ *անգամ առնու նա զանս անձին իւրոյ* փխ *ջանայ-իւրոյ*. Fb չիք՝ *և թէ բազում-խոզամիտն*, $E_1$ *ոչ կարէ* փխ *առնու-իւրոյ և*, Fa *սիրով նա*, չիք՝ *նոյնպէս-խոզամիտն։*

77 Fa *խաղաղութիւն մայր է ամենայն բնական ողջունի խոնարհութեան*, Fb *խաղաղութիւն մայր է ամենայն առաքինութեան* փխ *խոնարհութիւն մայր է խաղաղութեան։*

78 Fab *ընկերի քում որ ընդ քեզ է գալոց* փխ *որ հետ քեզ գալոց են։*

79 Fa *և շահիր* փխ *որ-շահիս*, Fb *և ստացիր* փխ *որ-շահիս*, Fab *քան թէ։*

80 Fa *սմակել* փխ *սմբակեղ*, Fb *ծոյլ և պղերգ* փխ *սմբակեղ*, Fab *ըստվարուք* փխ *ստվարոլոք։*

81 $F_{2,3}$ *ճարես* փխ *վճարես*, Fb *զի յետոյ*, $E_{2,3}$ *սիրտն քո* փխ *մորուսդ*, Fab չիք՝ *և ցաւի մորուսդ։*

*82. Որդեակ, թէ հանդիպիս կնոջ անզգամի, հնազանդի՛ր նմա, կամ փախի՛ր ի նմանէ։*

*83. Որդեակ, ի լեզուէ քումմէ վախեցիր, քան զօտար թշնամոյն, զի ոչ գիտես, թէ յորժամ գայթակղեցուցանէ զքեզ։ Լեզու անմիտ և արբեցողի, որպէս նետ ի լարս աղեղան, զայլ ոք ոչ կարէ հարկանել, այլ հանապազ զգլուխ ծեծէ։*

*84. Որդեակ, լաւագոյն է քեզ թշնամութիւն ընդ առն իմաստնոյ, քան սիրելութիւն առն անմիտ մարդոյ։*

*85. Որդեակ, այր անմիտ և արբեցող ի բան մի զրկեր, զի թէ ուզես, այլ բազում չարիս ածէ ի վերայ քո։*

*86. Որդեակ, թէ անմտին խրատ տաս, այնպէս է քո խրատն, որպէս թէ ոք ցանէ փոշի ի վերայ ելման գետոյ։*

*87. Որդեակ, չար իմաստնոյ որպէս փաթերակի գայ ի ժամանակի, բայց անմիտն յամենայն ժամ չար ուզէ իւր անձինն։*

*88. Որդեակ, չար, անմիտ և լեզուանի և ամբարհաւաճ մարդ ի տուն քո մի՛ տանիր, զի ի գործոց նորա ամօթու լինիս։*

*89. Որդեակ, թէ լինիս տէր աշխարհիս, զմահ քո մի՛ մոռանար յամենայն ժամ։*

*90. Որդեակ, արար աստուած զկինն վասն ուրախութեան, բայց տես մի՝ լի ըմպեր քան զգինի։*

*91. Որդեակ, փառաւոր առնէ գինին երբեմն զմարդիկ և երբեմն՝ ծաղր և ամօթալի առնէ։*

---

82 $E_{2,3}$ *քան զաւտար* փխ *ի նմանէ։*

83 Fa *զի այլ ոք ոչ կարէ հարկանել զքեզ եթէ ոչ զնա* փխ *զի ոչ-ծեծէ,* Fb *զի այլ ոք ոչ կարէ այնչափ վնասել զքեզ եթէ ոչ նա* փխ *զի ոչ-ծեծէ,* $E_{2,3}$ *է ի չար* փխ *ի լարս,* $F_{2,3}$ *զայլս քո* փխ *զայլ ոք։*

84 $E_{2,3}$ չիք՝ *ընդ առն իմաստնոյ,* Fab *քան թէ,* $E_{2-5}$ Fab *անմտի* փխ *անմիտ մարդոյ,* $E_{4,5}$ Fa *սիրելութիւն ընդ։*

85 Fb *ի գործ ինչ մի առաքեր* փխ *ի բան մի զրկեր.* Fb չիք՝ *թէ ուզես այլ,* Fa *և թէ կուզես որ* փխ *զի թէ ուզես, քո ուղարկեաւ։*

86 Fab *անմիտ մարդոյ խրատ տալն,* չիք՝ *քո խրատն,* չիք՝ *վերայ,* $E_{2-5}$ Fab *գնացման* (Fb *գնացս*) փխ *ելման։*

88 $E_1$ *չարմիտ* փխ *չար-լեզուանի,* Fa *մացներ* փխ *տանիր,* Fb *ի մէջ տան քո մի ընդունիր* փխ *ի տուն քո մի տանիր,* Fa *զտանիս* փխ *տանիր։*

89 $E_{2-5}$ Fab չիք՝ *յամենայն ժամ,* Fb *մոռանար և որչափ մեծութեան հասանիս այնքան ի խոնարհութեան կալ զանձն քո։*

90 Fab *ած զգինի վասն ուրախութեան բայց տես թէ լինի թէ ըմպէ գինին զքեզ* (Fb *մի գուցէ* փխ *լինի թէ,* *զքեզ զի փառաւոր առնէ երբեմն զմարդն և երբեմն ամօթալից և ծաղր*), $E_{2,3}$ չիք՝ *լի։*

91 Fb խրատը միակցվել է նախորդին, $E_1$ *առնէ զմարդն։*

*92. Որդեակ, լաւ է քեզ կուել ընդ մարդոյ զինուորի, քան ընդ կնոջ անզգամի։*

*93. Որդեակ, մարդ չարախորհուրդ և նախանձոտ ոչ միայն ատելեաց խորհի չարութիւն, այլ բնութեամբ ամենեցուն հակառակ կայ։*

*94. Որդեակ, մարդ չարաբարոյ և ամբարտաւան, յորժամ տեսնու զխոովութիւն ընկերի իւրոյ, ցնծայ և ուրախ լինի և կարծէ ի միտս իւր, թէ փառս ինչ յաւելցաւ նմա։*

*95. Որդեակ, յորժամ քաղցրանայ աչք աստուծոյ ի վերայ քո, առաւել վախեցիր ի նմանէ, զի մի՛ յետոյ մեղադրես անձին քո։*

*96. Որդեակ, յորժամ տեսանես զքեզ առ աչս տեառն քո և թագաւորաց փառաւորեալ, և ամենայն մարդ սիրէ զքեզ, և յորժամ արհամարհիս յաստուծոյ, յայնժամ թագաւորք և իշխանք և ամենայն սիրելիք քո ատեն զքեզ։*

*97. Որդեակ, մի՛ ասեր աղքատին, թէ դու ինձ չար ոչ կարես առնել։ Տես զի բազում չարիք անարգ և ոչինչ մարդուէն եղանեն և ոչ՝ պատուականէն։*

*98. Որդեակ, կին օտար, որ սիրէ զքեզ և ասէ, թէ դու լաւ ես քան զիմ այրն, մի՛ հաւատար դու նմա, զի կին պոռնիկ նման է շան, որ խառնակի յամենայն շան։*

*99. Որդեակ, մի՛ վախեցուցաներ զսիրտ քո հետ նոր բռնած սիրելուդ, մինչև քանիցս անգամ փորձես զչարն և զբարին։*

*100. Որդեակ, մի՛ լրբալեզու լինիր ի մէջ ընկերացդ, զի կարծես զքեզ սիրելի լինել նոցա։ Յորժամ յանդիմանեն զքեզ, լինի բան քո ամօթալից։*

---

93 Fab *ատելեացն առնէ զչարութիւն* փխ *ատելեաց խորհի չարութիւն։*

94 Fab *զկռվութիւն* (Fb *զկռիւ*) փխ *զխոովութիւն*, *մտի իւրում* փխ *միտս իւր*, Fb *յաւելու յանձին իւրում* փխ *յաւելցաւ նմա։*

95 Fb *երկնչիր ի պատուիրանացն նորա որով յաչս թագաւորաց հաճոյ երևիս և ամենայն մարդ սիրէ զքեզ և յորժամ արհամարհիս յաստուծոյ յայնժամ թագաւորք և իշխանք և ամենայն սիրելիք քո ատեն զքեզ* փխ *վախեցիր-անձին քո*, Fa *երկնչիր* փխ *վախեցիր*, *յետև* փխ *մի յետոյ։*

96 $E_{2,3}$ *յառաջ* փխ *առ աչս*, Fa *տեառն աստծոյ*, Fb միակցվել է նախորդ խրատին:

97 Fab *և անարգանք* փխ *անարգ և*, Fb չիք՝ *տես*, $E_{2-5}$ Fa *պատուական մարդոյն* (Fa *մարդկաց*), Fb չիք՝ *և ոչ պատուականէն։*

98 $E_{2,3}$ *որ սիրէ զքեզ* փխ *դու նմա*, Fab *խառնակի ընդ*, *շանց* (Fb *շանց և նման է գերեզմանի բոելոյ որ ի ներքս լի է դարշահոտութեամբ*)։

99 Fa *քանի մի ինչ* փխ *քանիցս*, *գնա չարեօք և բարեօք* փխ *զչարն և զբարին*, EF բնագրում պետք է լինի՝ *վառեցուցանէր* փխ *վախեցուցանէր։*

100 $E_{2,3}$ *շնայլեզու* փխ *լրբալեզու*, Fab *և կարծեր թէ սիրելի ես նոցա այլ* (Fb *զի* փխ *այլ*) փխ *զի-նոցա։*

*101. Որդեակ, լերինք շտեմարանք սառեցան, և սիրտ նենգաւորաց բնակարան չարեաց են։*

*102. Որդեակ, կին պոռնիկ նման է գերեզմանաց բռելոց, որ ի ներքոյ են գարշահոտութեամբ։*

*103. Որդեակ, մի՛ այլոց կին կատարեր զցանկութիւն քո, զի օտար կինն նման է աղի ջրի, զի որչափ խմես առաւել ծարաւիս։*

*104. Որդեակ, ոչ ամենայն մարդ ժառանգէ զանուն մարդոյ, այլ որ իմաստուն է, զի որպէս հուր ի լուսոյ և ի տապոյ բորբոքի, որպէս արեգակն ի ճառագայթից երևի լուսաւոր, որպէս առիւծն ուժովութեան գովելի և որպէս բազան սրընթաց առ ի սաչելոյ թևացն մեծարի յաչս թագաւորաց, նոյնպէս պարտ է մարդոյ, որ լինի դպիր և իմաստուն, զի գովի յաչս թագաւորաց և մեծամեծաց։*

*105. Որդեակ, առն խոզամտի սիրելի ոչ կայ երբեք, զի մարդ խոզամիտ ասէ յիւր մտին, թէ կեանքս ոչ անցանէ և ըռզակ իմ ոչ պակասի։ Աստուած տայ նմա մահ և զինչքն նորա յայլոց տայ, և չունենայ անուն բարի, որ յիշեն զնա։*

*106. Որդեակ, այր անմիտ, յորժամ արբենայ, յօժարի ի կռիւ, կարծէ ի միտս, թէ մեծագոյն է քան զայլսն և ոչ գիտէ, թէ հանդիպի առն քաջասրտի, և սպանէ զինքն։*

---

101 Fb *որդեակ որպէս*, Fab *սառաց են* փխ *սառեցան*, *և նենգաւորք* (Fb *նոյնպէս և նենգաւորք*) փխ *և սիրտ նենգաւորաց*։

102 Fa *գերեզմանի բռելոյ*, Fb միակցվել է № 98 խրատին, Fa *ներքս լի է* փխ *ներքոյ են*։

103 Fb *մի զհետ*, $E_{2,3}$ *այլ* փխ *այլոց*, Fab *կանանց*, $E_{2,3}$ *աղջրի*, $E_1$ *այնչափ* փխ *առաւել*, Fab *որ որքան* փխ *զի որչափ*, Fb *ըմպես* փխ *խմես*, Fa *առաւելագոյն*, Fb *այնքան* փխ *առաւել*, Fab *ծարաւիս և զանուն վատ ժառանգես*։

104 Fa *զի որ իմաստուն է նման է* փխ *ոչ-զի*, Fb չիք՝ *ոչ ամենայն-զի*, *հուր միշտ*, չիք՝ *ի լուսոյ և*, Fab *և լուսաւորէ զարարածս և կամ*, *որ ուժեղութեամբն*, $E_{2,3}$ չիք՝ *սրընթաց առ ի սաչելոյ թևացն*, Fb *գովի* փխ *մեծարի*, Fa *թևացն գովի ևս առաւել*, Fb *նոյնպէս և իմաստունն միշտ իմաստութեամբ իւրով պայծառ երևի ի մէջ ամենեցուն և մանաւանդ ի թագաւորաց և ի մեծամեծաց և յիշխանաց պատիւ ընդունի* փխ *յաչս-մեծամեծաց*։

105 Fab *գոյ* փխ *կայ*, $E_{2,3}$ չիք՝ *մարդ*, Fab չիք՝ *մարդ խոզամիտ*, *ի սրտի իւրում* փխ *յիւր մտին*, Fab *պակասի և ոչ գիտէ թէ* (Fb *թէ յանկարծ*), *այնպիսեաց* փխ *նմա*, Fb *ինչքս* փխ *ըռզակ իմ*, $E_{2,3}$ չիք՝ *զնա*, Fb *որք ոչ երբէք յիշեն զնա* փխ *տայ և-զնա*։

106 Fb *ոչ գոյ մեծ և հզօր քան զինքն* փխ *մեծագոյն է քան զայլսն*, Fab *թէ յորժամ*, *առն քաջ* փխ *քաջասրտի և*, Fb *ուրումն քաջի յաղթի ի նմանէ զուցէ և տայցէ սպանանել զինքն* փխ *առն—զինքն*։

107. Որդեակ, յորժամ արբենաս, լեզուդ ի քեզ կապէ, զի խելքդ ի քէնէ գնացեր է։

108. Որդեակ, որպէս հողն մայր է ամենայն տնկոց, նոյնպէս արբեցութիւնն մայր է ամենայն չարեաց։

109. Որդեակ, թէ իշխան ես աշխարհի և մարդկան, պահեա զանձն քո ի զեխութենէ, զի առ քեզ են հոգք երկնաւորաց և երկրաւորաց։

110. Որդեակ, տեսի գազան կատաղեալ, արձակեցայ յիս և ո՛չ վախեցայ ի նմանէ, հանդիպեցայ թշնամոյ իմոյ և ո՛չ յաղթեցայ ի նմանէ, հանդիպեցայ կնոջ լեզուանոյ և յաղթեցայ ի նմանէ։

111. Որդեակ, մի՛ լինիր փոյթ, իբրև զնշենի, որ յառաջն ծաղկի և յետոյ ուտվի, այլ լեր հնազանդ, հեզ և հանդարտ, որպէս զթզենի, որ յառաջն ուտվի պտուղ նորա և յետոյ ծաղկի։

112. Որդեակ, անարգի անօրէնն վասն չարեաց իւրոց և կանգնի արդարն վասն բարի գործոց իւրոց։

113*. Որդեակ, միշտ խորհեա զաղքատն և զտնանկն, զի յաւուր չարէ փրկէ աստուած զանձն քո (44 Fb)։

Որդեակ Նաթան, զայս ամենայն ուսուցի քեզ, ի միտ առ և կատարեա զամենայն և լինիս իմաստուն ի մէջ ընկերաց քոց և յաչս թագաւորաց երևելի լինիս։

---

108 $E_1$ չիք՝ որպէս $E_{2,3}$ որպէս յարբեցութիւն մայր է ամենայն չարեաց նոյնպէս հողն մայր է ամենայն տնկոց փխ որպէս–չարեաց։

109 Fab վասն զի ի փխ զի առ. չիք՝ երկնաւորաց և, երկնաւորաց ամենայն։

110 Fab ի վերա իմ փխ յիս, Fb երկեա փխ վախեցայ, Fa յաղթեաց զիս փխ յաղթեցայ ի նմանէ, Fb նմանէ բայց։

111 $E_1$ չիք՝ հեզ. Fa ապայ փխ յետոյ, հնազանդ և պտղաբերեա զհեզութիւն, Fa չիք՝ հեզ-ծաղկի, չիք՝ նորա։

112 Fab անկանի փխ անարգի, չար գործոց փխ չարեաց, Fb և ոչ կարէ կանգնիլ վերստին բայց թէև անկանի արդարն անդէն կանգնի վասն բարեաց իւրոց փխ և կանգնի–իւրոց։

113 $E_{2,3}$ լինիս այս է ուսումն թէ միտքդ պահես և Քրիստոսի փառք յաւիտեան, $E_{4,5}$ երանելի փխ երևելի։

* * *

*Այս է ուսումն, որ ուսուցի ես՝ Խիկարս, քվեր որդոյն իմոյ Նաթանայ։ Եւ ես գիտէի, թէ զամենայն բանս իմ պահեալ էր ի մտի։ Նա որպէս փոշի, որ լնուս ի վերայ եղման գետոյ, որ կորնչի, նա այնպէս արար զխրատս իմ։*

*Յառաջն տվի նորա զտունս իմ և զծառայքս, զինչս և զստացուածս և զիշխանութիւնս և արարի ատենադպիր Սենեքարիմայ թագաւորին։ Եւ նա սկսաւ ինձ չարութիւն առնել։ Զծառայքս իմ ոչ խնայէր և զինչս իմ վատնէր և զբազում խրատս իմ անտես առնէր։ Եւ ես՝ Խիկարս, յորժամ տեսի զՆաթանայ չարութիւն, գնացեալ թագաւորին իմոյ ասի։ Եւ ասէ թագաւորն առ Նաթան, թէ մի մերձենար յինչս Խիկարայ։ Եւ ես ելեալ գնացի ի տունս։*

*Եւ Նաթան սկսաւ յիւր մտին չարիս գործել Խիկարայ դպրի։*

*Գնաց Նաթան ի դուռն թագաւորին, գրեաց թուղթ մի գաղտ յանուն իմ և կնքեաց իմ մօհրովս և ղրկեաց փարաւոն թագաւորին, որ չար կամէր իմ թագաւորին՝ Սենեքարիմայ։ Եւ գիրն էր այսպէս. «Խիկար իմաստասիրէս ողջոյն քեզ, փարաւոն արքայ։ Յորժամ գիրս առ քեզ հասանի, փութով առ զզօրքդ և եկ ի դաշտն Արծւոյ, որ օրն ԻԵ լինայ հրոտից ամսոյն։ Առցես զՍենեքարիմայ թագաւորութիւն, առանց պատերազմի»։*

*Եւ Նաթան ընկէց դաղտաբար զթուխտն ի դուռն թագաւորին, և այլք գտին զթուղտն և տարան առ թագաւորն։*

---

3 $E_{2,3}$ *գնացման* փխ *եղման*։
7 $E_5$ *անել* փխ *առնել*։
10 $E_5$ *գնացի* փխ *գնացեալ*։
11 $A_3$ *նորա* փխ *Խիկարայ*։
15 $A_3$ *քաղաքին* փխ *թագաւորին*։
16—17 $E_5$ *փարաւոնին* փխ *փարաւոն թագաւորին*։
18 $A_3$ *գրէր գիրն* փխ *գիրն էր*։
21 $A_3$ *առանց պատճառի և*։

Եւ Նաթան դարձեալ թուղթ մայլ գրեաց յիմ թագաւորին բերնէն և առ խս ուղարկեաց։ Եւ այսպէս էր գրեալ ի մէջ թըղթին. «Խիկար, յորժամ թուխտս, որ ի քեզ հասնի, հեծել ժողովեա և եկ ի դաշտն Արծունեաց, որ օրն Ին լինայ հրոտից ամսոյն, և պատերազմեա հետ փարաւոնի, զի դեսպանք եկեալ են առ խս ի փարաւոնէ»։

Եւ տվեալ զթուխտն Նաթան առ հաւատարիմն թագաւորին, և բերեալ զԲ թուխտն եառւն առ թագաւորն։ Եւ տեսեալ թագաւորն զթուխտն, զահի հարեալ և ոչ գիտէր զինչ առնէր Խիկարայ։ Յայնժամ Նաթան, որ դպիր էր թագաւորին, ասէ, թէ հայրըն իմ Խիկար ոչ գիտաց զերախտիսն քո և զթագաւորութիւնդ կամի խափանել։

Դեսպանին հրամայեաց և բերին զԽիկար, բարկութեամբ հարցին զբան թխտին։ Յայնժամ կապեցաւ լեզուս և գնաց իմաստութիւնս յինէն։ Շատ լացի և ողբացի, թէ չունիմ խապար յայտ թխտերոյդ, և նոքա ոչ լսեցին, այլ հրամայեաց սպանանել զիս։

Յայնժամ Նաթան քեռորդին իմ կապեաց զձեռս իմ յետևս։ Յառաջին խրատս իմ այս էր, թէ զարձակեալն մի՛ կապեր։ Նա յառաջն զիս կապեաց։

Եւ աղաչեցի զթագաւորն, թէ տուր զիս յԱնբուսմաք զորապետն, որ տանի զիս յիմ դուռն գլխատէ և զգլուխն իմ Ծ կանկուն ի մարմնոյս հեռի թաղէ։

Եւ առեալ տանէին զիս։ Եւ ես գաղտն խապար ղրկեցի Արբուստան կնոջն իմոյ, թէ Ռ գուսան լալով բեր առաջի իմ, որ լան զիս։ Եւ կինն իմ իմաստուն էր, արար զոր ինչ ասացի։ Եւ արար պատիւ և արբոյց զամենեսեան, որք եկեալ էին յըսպանումն իմ։ Եւ անկեալ ամենեքեան՝ քնացան։ Եւ ես՝ Խիկարս, կապեալ կայի երկաթով, զարթուցի զԱնբուսմաք զորապետն, որ բերեալ էր զիս յսպանումն և աղաչեցի զնա և

---

1 $E_{4,5}$ այլ թուղթ մի։
2 $E_1$ ղրկեաց փխ ուղարկեաց։
5 $E_{2,3}$ թեսպանք փխ դեսպանք։
13 $E_{2,3}$ թեսպանին։
15 $E_{4,5}$ ողորմացի փխ ողբացի։
21 $E_{4,5}$ յԱբուսմակ։
25 $A_3$ Արուստան, $E_{2,3}$ կուսակ փխ գուսան։
29 $A_3$ երկաթի կապանօք փխ երկաթով։
29—30 $E_{3-5}$ ընկերն իմ փխ զորապետն։

ասի. Գիտես եղբայր, որ ժամանակ մի Թագաւորն քեզ բարկացաւ և ետ զքեզ ի յիս, թէ տար սպանէ զդա։ Եւ ես տարեալ պահեցի զքեզ։ Եւ յորժամ զղջացաւ, ափսոսաց զքեզ և ասաց. Աւաղ զքեզ Աբուսմաք, կենդանի պիտէիր։ Յայնժամ բերի զքեզ Թագաւորին և բազում պարգևս առի ի նմանէ։ Նոյնպէս դիր զիս գաղտ հօրն ի տան իմում, և ես ունիմ ինձ ծառայ մի մահապարտ և մարդասպան, և կու նմանի յիս։ Հան զհալաւն իմ և հագո ծառային իմոյ և զարդո զօրքն քո և շուտով կտրեա զգլուխ ծառային իմոյ և տար թաղեա զգլուխն Ծ կանկուն ի մարմնոյն հեռի։

Եւ արար Նաբուսմաք այնպէս և գնաց առ Թագաւորն, թէ սպանի զխիկար։

Յայնժամ ուրախացաւ Նաթան և գայր ի տուն իմ, ուտէր և ըմպէր և աղտեղէր զծառայքն իմ, յանկարգ և չար։ Եւ կամէր չարիս գործել ընդ կնոջն իմոյ։ Եւ ես ի հորն էի և լսէի ականջով իմով զձայն գուսանաց և զխաղուց և զպագշոտել կնոջ իմոյ, և ես մահ խնդրէի և ոչ գտանէի։

Լսեց փարաւոն արքայն, թէ Խիկար սպանեալ է, ուրախացաւ և գրեաց թուխտ Սենեքարիմայ թագաւորին. «Ծանուցումն լիցի քեզ, որ կամիմ շինել դարպաս մի ի մէջ երկնից և երկրիս, անսուն և անգերան։ Ղրկէ ինձ ճարտար և իմաստուն մէյմար, որ եկեալ շուտով կատարէ, և թէ ոչ ղրկես, բազում հեծելով գամ և աւերեմ զերկիրդ և զաշխարհդ և առնում ի քէն զհարկն»։

Յորժամ կարդացին զթուխտն առաջի Սենեքարիմայ արքային, զարհուրեցաւ և կոչեաց զիւր իմաստունքն և զմեծամեծքն և ասէ. Զխիկար սպանեցաք, այլ ո՞վ կարէ տալ պատասխանի փարաւոնի։ Ասացին մեծամեծքն. Արքայ, յաւիտեան կաց, կայ որդեգիր մի Խիկարայ Նաթան անուն, հանճարեղ և իմաստուն քան զխիկար։

Կոչեաց Թագաւորն զՆաթան և ետուր կարդալ զթուխտն և ասէ. Կարե՞ս տալ պատասխանի փարաւոնի։ Եւ ասէ Նաթան. Այդ անհնար է ի մարդկանէ։ Յայնժամ տարակուսեալ Թագաւորն և ասէ. Վայ մեզ, ոչ գիտեմք զինչ տամք պատասխանի փարաւոնի արքային։ Լայր Սենեքարիմ և ասէր. Աւաղ զքեզ

---

7 $E_{2-4}$ մարդասպան զոր կապեալ կայ ի բանտին։

11 $E_{4,5}$ Աբուսմաք։

19 $E_{2-5}$ արքային փխ թագաւորին, $A_3$ թագաւորին իմոյ։

*Ի բերան, Խիկար իմաստուն։ Ինչ մարդ որ զքեզ կենդանի ինձ բերէր, կշռովն ոսկի տայի նմա։ Եւ ասէ Աբուսմաք. Ով որ բերէ առաջի քո զԽիկար կենդանի, փոխանակ նորա սպանանես զնա։ Եւ ասէ Թագաւորն. Փոխանակ սպանանելոյն պատւեմ զնա։*

*Եւ գնացեալ Աբուսմաք, հանեալ զԽիկար ի հորոյն և եբեր առաջի Թագաւորին։ Եւ յորժամ ետես Թագաւորն զԽիկար կենդանի, յարեաւ աթոռոյն և անկեալ զպարանոցաւն, համբուրէր զնա և ասէր. Ով Խիկար, մեռեալ էիր և կենդանացար։*

*Եւ ուրախացաւ Թագաւորն յոյժ և հրամայեաց Խ օր զԽիկար պատւել և յետոյ բերեալ առաջի իւր և ետ կարդալ զթուխտըն։ Եւ ասէ Խիկար. Մի վախեր, ով Թագաւոր, ես երթամ տամ պատասխանի փարաւոնի արքայրին և առնում զհարկն և գամ։*

*Եւ ես՝ Խիկարս, ղրկեցի թուխտ առ Աբեստան կինն իմ, թէ բռնէ երկու ձագս արծւոյ և մանել տուր երկու պարան երկայն և բերել տուր Բ ծծկեր տղայ և բեր Բ կին, որ պահեն զտղայքն և ուսուցանեն տղայոցն կանչել, թէ կաւ, ծեփ և աղիւս բերէք, հանէք ի վեր։ Եւ Բ տղայն յամէն օր կապեա ի վերայ ձագու արծւին և թռո յօդն պարանով և իջո ի վայր, մինչև կատարեալ ուսանին զելանելն և զիջանելն։ Եւ կինն իմ Աբեստան իմաստուն էր և փութով կատարեաց զհրամանս իմ։*

*Եւ ես առի հրաման ի Թագաւորէն և գնացեալ առի զերկու ձագն արծւին և զերկու տղայն և եդի ի սնտուկն և ելեալ գնացի առ փարաւոն արքայն յԵգիպտոսի և իջայ ի տուն մի և թողի զսնտուկն ի տունն այն և գնացի առաջի Թագաւորին։*

*Եւ ասէ փարաւոն. Ո՞վ ես դու և կամ ուստի՞ գաս։ Եւ ես ասի. Աբիկամ է անուն իմ, և ղրկեաց Սենեքարիմ արքայն կատարել զհրամանս քո։ Եւ ասի. Բերեալ եմ ճարտարքս, որ շինեն*

---

1 $A_3$ *իմաստուն կենդանի պիտէիր։*
2 $E_2$ *Աբուսմաք ով Թագաւոր։*
5 $A_3$ *զնա և մեծարեմ։*
13 $E_{2,3}$ *Թագաւորին* փխ *փարաւոնի արքային*, $E_5$ *փարաւոնին* փխ *փարաւոնի արքային։*
14 $A_3$ *Աբուստան։*
16 $E_5$ *բերել տուր* փխ *բեր։*
20 $A_3$ *Ամբուստան։*
27 $A_3$ *Աբիկէ* փխ *Աբիկամ։*
28 $E_{4,5}$ *ես ասացի* փխ *ասի։*

*դարպաս յօդս։ Եւ ասէ փարաւոն. Զի՞նչ են պետք ճարտարացն ի պէտս պարսպին։ Եւ ես ասի. Բերել տուր կաւ, ծեփ, աղիւս։ Եւ նոքա բերին։*

*Եւ ես գնացի կապեցի զերկու տղայն ի վերայ երկուց արծուոց ճագուն և թռուցի դէպի յօդն։ Եւ տղայքն աղաղակելով կանչէին, թէ բերէք կաւ, ծեփ և աղիւս, որ շինեմք դարպաս։ Եւ ոչ ոք կարէր ինչ հանել ի վեր։ Եւ ես առի գաւազան մի և ծեծեցի զօրքն փարաւոնի, և նոքա փախեան և անկան ի դարպասն փարաւոնի։ Եւ ելեալ փարաւոն ետես զճագն արծուոցն և զձայն տղայոցն և զարմացաւ յոյժ և եմուտ ի դարպասն և ասէ յիւր մտին, թէ շատ իմաստուն է սա քան զԽիկար։ Եւ ոչ գիտէր, թէ Խիկար է։*

*Եւ ասէ թագաւորն. Ստոյք ասա ինձ, ո՞վ ես դու։ Եւ ես ասի, թէ Խիկարն եմ։ Եւ ասէ փարաւոն. Ով թշուառական, կենդանացա՞ր։ Եւ ասէ փարաւոն. Զինչ որ ասեմ, կատարեա։ Եւ ասէ. Զի՞նչ է այն, որ սիւնն ի վերայ սնի, մայրք երկոտասան ի վերայ մայրից, անիւք Լ ի վերայ անվից, սուրհանդակք երկուս. մինն սև և միւսն սպիտակ։*

*Ասէ Խիկար. Սիւնն տարին է, Բժ-ան մայրքն ամիսք տարոյն է, Լ անիւքն աւուրք ամսոյն են, Բ սուրհանդակքն տիւն և գիշերն է։*

*Եւ ասէ փարաւոն. Մանեա ինձ պարան յաւազէ։*

*Եւ ես երթեալ ծակեցի զորմն պատին, դէմ արեգականն։ Եւ ի ծագել արեգականն, առեալ աւազ և փոշի, շփէի յերկու ափիս մէջն և տայի ի դէմս արեգականն, որ տանէր ոլոր, ոլոր ի ծակն ի ներս։ Եւ ես կանչէի. Կծկեցեք շուտով զպարանն։ Եւ զահի հարեալ փարաւոն, ապուշ մնայր։*

*Եւ յայնժամ փարաւոն պատուեաց զիս և ետ ինձ բազում խալիաթ և զհարկն թագաւորին իմոյ։*

*Եւ ողջունեցի զփարաւոն և ելեալ գնացի առ թագաւորն իմ Սենեքարիմ, անկայ յոտս նորա և համբուրեցի։ Յայնժամ ու-*

---

2 $E_{4,5}$ *դարպասին* փխ *պարսպին։*
6 $A_3$ *աղաղակէին* փխ *կանչէին։*
9 $A_3$ *եկեալ* փխ *ելեալ։*
14 $E_{4,5}$ *փարաւոն ով Խիկար։*
19 $E_1$ *Սիրաք* փխ *Խիկար։*
24 $A_3$ *փչէի* փխ *շփէի։*
29 $A_3$ *թագաւորութեան* փխ *թագաւորին։*
30 $E_5$ *զփարաւոն արքայն։*
31 $E_5$ $A_3$ *առ ոտս* փխ *յոտս։*

թախացաւ արքայն, իբրև ետես զիս, և ասէ. Խիկար, զինչ խնդրես յինէն և տաց քեզ։ Եւ ես ասի. Իմ խնդիրքն այն է ի քէն, որ զՆաթան քեռորդին իմ, որ է ինձ որդէգիր և աշակերտ, տաս ի յիս, զի այլ ուսումն կայ, զայն ալ ուսուցանեմ և լինի կատարեալ։ Զառաջին խրատն իմ ոչ պահեաց ի մտի, զոր ուսուցի քաղցրութեամբ, հիմի ուսուցանեմ դառնութեամբ։

Թագաւորն ետ զՆաթան ի ձեռս իմ և ասէ. Զինչ որ քո կամքն է, զայն արա։

Եւ ես առեալ զՆաթան, երկաթի կապանօք տարայ ի տունս իմ և եդի ի պարանոցն նորա ԾԾ լիտր երկաթ և յանձնեցի զնա ի Բելիար ծառայն իմ և ետու թուխտ և թանաք և ասեմ. Յելանելն իմ և ի մտանելն իմ, զինչ որ առնեմ Նաթանայ, գրեա՛ զամենայն։

Նախ և առաջի զարկի ի թիկունս Նաթանայ Ռ բիր և ասի.

1. Մարդոյ ականջն, որ ոչ լսէ, ի թիկունս ծեծելով լսեցուցանել պարտ է։

Հաց և ջուր կշռով տայի։ Ո՛չ մեռանէր և ո՛չ ապրէր։

Խօսեցաւ Նաթան և ասէ. Զի՞ ոխացար ընդ քեռորդոյ քում։ Եւ ես ասեմ.

2. Որդեակ Նաթան, յաթոռ փառաց նստուցի զքեզ, և դու յաթոռոյ իմոյ ընկեցեր և կործանեցեր զիս։

3a. Որդեակ, Եղեր ինձ որպէս կարիճ, որ եհար զասեղն, որ ասեղին խայթոցն չար է քան զքոյդ։

Դարձեալ եհար զթաթ ըզտուն, և նա հարեալ զթաթն ի վերայ կարճին և սատակեաց զնա։

3b. Եւ դարձեալ եղեր որպէս զվայրենացեալ եզն, որ արկցէ զտիրոջ վարոցքն և վիրաւորի իւր ոտքն։

4. Որդեակ, եղեր ինձ որպէս այծն, որ ուտէ զտորունն և ասէ. Ես ի կենդանութեանս ուտեմ զքեզ, թող յետոյ հանեն զտակ քո և ներկեն զմորթս իմ։

---

3 Fab զի եղեր, կարիճն այն, ծայրն փխ խայթոցն, զիւրն փխ զքոյդ, և զարձեալ իբրև զայն որ եհար զտից (Fb չիք՝ իբրև զայն որ) փխ դարձեալ եհար զթաթ, որդեակ զի փխ և դարձեալ, եղեր ինձ, էարկ զտաճն Fb զտորգն) և անկաւ վարոցն և վիրաւորեցաւ փխ արկցէ-վիրաւորի։

4 Fab կենդանութեան իմում, զքո քոքն (Fb արմատն), փխ զտակ քո։

*5. Որդեակ, եղեր ինձ այն ոգէտ մարդն, որ ձգեաց նետ յեր-կինս, թէպէտ ոչ կարաց հասուցանել, զանօրէնութիւն շահեցաւ։ Եւ դարձաւ նետն ի գլուխ իւր։*

*Նոյնպէս և դու կամեցար սպանանել զիս, այլ անմեղութիւն իմ ապրեցոյց զիս։*

*6a. Որդեակ, եղեր ինձ որպէս այրն այն, որ դողայր ի ցրտոյն, և այլ ոմն բերեալ պաղ ջուր, լնոյր ի վերայ նորա։*

*6b. Դու նոյնպէս կարծէիր, թէ զտեղի նորա լնում, բայց թէ իցէ ագի խոզին ինն կանգուն երկայն, զտեղի ձիուն ոչ կարէ լնուլ։*

*7. Որդեակ, եղեր ինձ որպէս արջն, որ հանդիպեցաւ իշոյ միոյ և ասէ. Ողջոյն քեզ, էշ։ Ասէ էշն. Այդ ողջոյնդ իմ տիրոջն պարա-նոցն, որ զիս արձակեաց ի մսրէն, որ քեզ հանդիպեցայ և տեսի զքո գէշ երեսդ աղտեղի։*

*8. Որդեակ, եղեր ինձ որպէս որոգայթ, որ թաղեալ կայր յաղ-բիսն։ Եւ եկեալ ճնճղուկն՝ ասէ. Զի՞նչ գործես։ Ասէ ակնատն. Աղօթս առնեմ առ աստուած։ Ասէ ճնճղուկն. Զի՞նչ է այդ ի բերանդ։ Ասէ ակնատն. Քաղցելոց հացիկ է։ Եւ վաղեաց ճնճղուկն առնուլ զհատն յակնատէն, և անկաւ ակնատն ի վիզ ճնճղկին։ Եւ ասէ ճնճղուկն. Քաղցելոց հացն այդ է, ապա այդպէս լսէ աստուած աղօթից քոց։*

*9. Որդեակ, եղեր ինձ որպէս շունն, որ եմուտ ի հնոցն բրտին և յորժամ տաքցաւ, սկսաւ հաչել յերեսս բրտին։*

---

5 $E_{4,5}$ *որպէս յայն* փխ *այն ոգէտ մարդն,* Fab *որպէս այրն այն* փխ *այն ոգէտ մարդն,* Fa *նետ դէպ, հասուցանել այլ։*

6 Fab *որդեակ զի թէ ագի խոզին ութն կանգուն երկայն լինի ի տեղի ձիոյն ոչ կարէ լինի* փխ *զու-լնուլ։*

7 Fab *որդեակ զի, արջն այն, ողջոյն ընդ,* չիք՝ *էշ,* Fa *պարանոցն լինի,* Fb *ի վիզն տեառն իմոյ եղիցի* փխ *իմ տիրոջն պարանոցն,* Fab *որ եկի և հանդիպեցայ քեզ, չար* փխ *աղտեղի։*

8 Fab *որդեակ զի, որոգայթն այն, կայցես աստ* փխ *գործես, հաց* փխ *հացիկ է, զհացն* փխ *զհատն,* Fb *նորա* փխ *ճնճղկին,* $E_{4,5}$ *ճնճղուկն թէ։*

9 Fab *որդեակ զի, շունն այն որ դողայր ի ցրտոյն, և մտաւ* (Fb *եմուտ*) փխ *որ եմուտ, ընդ երես* փխ *յերեսս։*



16—904

10. Որդեակ, եղեր դու որպէս զայն ագահ շունն, որ ունէր հաց մի ի բերանն և երթայր յեզերք գետոյն։ Եւ տեսեալ շուն մի այլ ի մէջ գետոյն և հաց մի ի բերանն։ Եւ ձգեաց զիւր հացն ի բերանոյն և անկաւ ի ջուրն, զի առցէ զայնիր հացն, այլ ոչ շուն եգիտ և ոչ հաց։ Եւ զիւր ձգած հացն շուն մի այլ առեալ գնաց։ Ինքն խեղդեցաւ ի ջուրն և զրկեցաւ յիւր հացէն։

Նոյնպէս եղեր և դու. զիմ հացն խլել կամեցար և զրկեցար ի քո հացէդ։

Ասէ Նաթան. Մեղայ քեզ, հայր, այլ չի գործեմ զինչ գործեցի։ Մի՛ չարչարեր զիս և մի՛ հատուցաներ չար փոխանակ չարի։

11. Ասէ Խիկար. Ծառ մի բուսեալ էր յեզերք գետոյն, և մարդ մի ծառայէր նմա մինչ ի ժամ պտղոյն։ Եւ յորժամ հասանէր պտուղն, թափէր ի գետն և կորնչէր։ Եւ յորժամ մարդն եկեալ պտուղ խնդրէր, ոչ գտանէր։ Բ, Գ տարի զայս արար և ոչ շահեցաւ ի պտղոյն, յետոյ կտրեաց զծառն և ընկէց ի ջուրն և ասէ. Այսչափ երախտեացս մինչև հիմա զի՞նչ արիր, որ այլ համբերեմ նա զինչ տի անես։

Արժան ես այդ չարչարանացդ։ Ոչ կայ հնար ազատիլ ի ձեռաց իմոց, մինչև մեռանիս։

Ինչ մարդ, որ բարոյն չար հատուցանէ՝ իբրև զնաթան, պիտի կորնչի աստ և ի հանդերձեալն։

---

10 Fab *որդեակ զի, ինձ* փխ *դու*, $E_{4,5}$ *տեսեալ* փխ *տեսեալ*, Fab *ջրին* փխ *գետոյն*, *բերան նորա*, *ձգեալ* փխ *և ձգեաց*, $E_{2,3}$ *եգիտ ոչ հաց*, Fab *հացն և իբրև հասաւ ի մէջ գետոյն* (Fb *եհաս*), չիք՝ *և զիւր—գնաց*, Fb *զրկեցար դու*։
Fab *և դարձեալ Նաթան աղաչանօք ասէ առ իս* փխ *ասէ Նաթան*, *չարաչար տանջեր* փխ *չարչարեր*, չիք՝ *և մի-չարի*։

11 Fab *և ես ասացի առա տամ քեզ օրինակ մի* փխ *ասէ Խիկար*, *զի որպէս ծառն այն որ բուսեալ էր յեզր գետի միոյ*, չիք՝ *մինչև ի ժամ պտղոյն, և երբ գայր տէրն ոչ գտանէր զպտուղն և աշխատեցաւ այրն այն Բ և Գ տարի այլ ի հասանիլ պտղոյն թափէր ի ջուրն և ոչ շահէր ի նմանէ և ապա կտրեաց զծառն և ձգեաց ի ջուրն ասելով այսքան աշխատեցայ զինչ շահեցայ որ այսուհետև գտանեմ նոյնպէս և դու եղեր ինձ զի յառաջագոյն այսչափ խրատս տուի քեզ և ոչ լսեցիր այժմ զինչ պիտի լինիս արժանի ես յայդ չարաչարանացդ մինչև մեռանիս և սպանի զնա և բարձաւ չարն ի միջոյ և եղև խաղաղութիւն արդ զինչ մարդ որ բարւոյն չար հատուցանէ իբրև զնաթան կորնչելոց է յորմէ փրկեսցէ զմեզ Քրիստոս աստուած մեր և նմա* (Fb *շահեցայ մինչև ցայժմ, եւ շահեցայց* փխ *գտանեմ*, *խրատ ետու*, *լուար*, *եւ չունիս լսել վասն որոյ* փխ *զինչ պիտի լինիս*, *մեռանիցիս*, *և ապա սպանի*, *փոխանակ բարւոյն*, *հատուցանէ* փխ *հատուցանէ*, *չարաչար մահուամբ կորնչի* փխ *կորնչելոց է*, *նմա փառք յաւիտեանս ամէն*) փխ *և յորժամ-հանդերձեալն*։

# ԽԱՒՍՔ ԽԻԿԱՐԻ՝ ԴՊՐԱՑՊԵՏԻ ԵՒ ԻՄԱՍՏՆԱՑՍԻՐԻ ՍԵՆԵՔԱՐԻՄԱՅ ԱՐՔԱՅԻ ԱՍՈՐԵՍՏԱՆԻ ԵՒ ՆԻՆՈՒԷԻ

(ՏԱՐԲԵՐԱԿ Ը)

*Սա բացառիկ և արժեքավոր բնագիր է, հեռանում է հայկական խմբագրության մյուս տարբերակներից։*

*Ունի միակ օրինակ. Մաշտոցի անվան մատենադարանի ձեռագիր № 5599, 1347 թվականի գրչություն, էջ 222ա—232բ։ Թղթի եզրերը մաշված են, որից բնագրի որոշ բառեր ջնջվել, կամ դարձել են անընթեռնելի։*

*Ձեռագրի 227ա էջի կեսից («Որդեակ, ի հետ խաբածի և ի հետ հարբածի») մինչև 228ա էջը լրիվ («Պարգևս մեծամեծս տաց քեզ») գրիչը փոխվում է։ Նույն երկրորդ գրչինն են նաև 229բ էջի կեսից («Ով է ի ձենջ, որ կարող է երթեալ») մինչև 230ա էջը («Խիկար, լուեալ է քո եթէ եգիպտացիքն ինչ յղեցին»)։*

*Ամբողջ բնագիրը գրված է կարմիր, իսկ 231ա—232բ էջերը՝ սև թանաքով։ Այս հատվածը թերևս ընդօրինակել է մի երրորդ գրիչ։*

*Բնագրի ջնջված կամ անընթեռնելի տեղերը փորձել ենք վերականգնել։ Մեր կողմից առաջադրվող որևէ ընթերցում առել ենք ուղղանկյուն փակագծերի մեջ։ Ուր բաց է մնում և հնարավոր չէր վերականգնել, նշել ենք բազմակետով (....)։ Այդ տեղերը ենթադրում են մեկից ոչ ավելի բառ կամ բառի հատված։*

*Բնագիրը ներկայացվում է հարազատորեն։ Թույլ չենք տալիս ուղղագրական, կամ որևէ այլ կարգի միջամտություն, բացի մի դեպքից. երբ գրիչն անտեղի ու կապակցությունը արտահայտում է օ տառով (օրինակ. փարաօն, զօակ, մեռօ) փոխել ենք ու-ի։ Գրության այդ ձևն ունի առաջին ընդօրինակողը։*

*Ուղղել ենք բացահայտ վրիպակները, խաթարված ձևերն իջեցնելով տողատակ։*

222ա ԽԱՒՍՔ ԽԻԿԱՐԻ՝ ԴՊՐԱՅՊԵՏԻ ԵՒ ԻՄԱՍՏՆԱՅՍԻՐԻ ՍԵՆԵՔԱՐԻՄԱՅ ԱՐՔԱՅԻ ԱՍՈՐԵՍՏԱՆԻ ԵՎ ՆԻՆՈՒԷԻ

Յամս Սենեքարիմայ արքայի Ասորեստանի ես՝ Խիկար, դպրայպետ էի նմայ, Մինչ դեռևս տղայ էի, հրաման եղև ինձ, թէ որդի քեզ չէ հրամայած յաստուծոյ լինելոյ։ Եւ մեծութիւն յոյժ ստացեալ էր իմ։ Կ. կին առի և Կ. ապարան շինեցի և Կ. ամաց եղէ, և ոչ եղև ինձ որդի ի նոցանէ։

Յայնժամ ես՝ Խիկար, շինեցի բագին մեծ, վառեցի հուր և արկի ի վերայ խունկս անուշահոտս 'և նուէրս, զոհեցի զոհս և մատուցի ընծայս և այսպէս ասէի յաղաչելն իմում. Ով տեարք իմ և աստուածք. Բէլշիմ և Միրշահմին, Էշարիշէ և Իշեմիշահ, եթէ հրամայիցէք[1] ինձ արու որդի, զի մի՛ անժառանգ մնացից, զի ահայ մեռանիմ, և զի՞նչ ասեն ինձ մարդիք. Աւաղ զքեզ Խիկար, դպրայպետ և [ի]մաստուն, մեռաւ և ոչ ոք է որդի, որ թաղէ զնայ և զաւակ, որ յիշատակ լինի նմայ։ Արդ, աղաչեմ զձեզ, տեարք իմ և աստուածք իմ, տու[ք] ինձ որդի արու, զի յորժամ մեռանիմ, արկցէ հող ձեռօք [իւր]ովք ի վերայ իմ։

Յայնժամ լուան նոքայ ինձ, և այսպէս բար[բա]ռ լսելի եղև ինձ և ձայն յաստուածոցն իմոց, որ ասէին. Ով Խիկար [դպր]այպետ և իմաստուն, այս լսելի եղիցի քեզ, զի ի հետ մահ[ու քո, որպէս] ամենայն ինչ քո ի ձեռս մեր է, այլ չէ հրամայած քեզ յաստուծոյ զաւակ լի[նելոյ]։ Մի տրտմիր, զի ահայ Նադան քեռորդին քո, զի եթէ առցես և սնուցես և արասցես զնայ քեզ յորդեգիրս, և նայ հատուսց[է քեզ] զանուն քո և կարող է զամենայն ինչ ուսանել։

---

[1] Գրչի օրինակի մեջ եղել է **հրամայեցէք**, բայց նա սխալվել է և գրել **հրամարեցէք**, ապա նկատելով՝ **հ**-ի գլխին ավելացրել է **ր**, մոռանալով մյուս ուղղումը կատարելու։ Այդպիսով բնագրում մնացել է **հրամարեցէք**:

Եւ յորժամ լուայ ես՝ [Խիկարս] այս, կարդացի առ աստուած իմ և ասեմ. Ով աստուածք իմ և տեարք իմ, ես [Ննջեց]ուցանեմ զնայ ի վերա բարձուց իմոց և ի ծոց իմ կրեմ զնայ, [զի] արկցէ[1] հող ձեռօք իւրօք ի վերայ իմ։ Զայս ծանուցանե[, զի թէ] ‖ զամենայն աւուրս կենաց իւրոց ուտիցէ և
222բ ըմբիցէ, ինչ իմ ոչ պակասէ։

Եւ այլ ոչ ետուն պատասխանի։

Եւ ես ըստ հրամանի նոցայ արարի։ Առի զնադան քեռորդին իմ միամեայ, մինչ դեռևս տղայ էր։ Եւ ագուցի նմայ բեհեզս և ծիրանիս և մանեակ[2] ոսկի ի պարանոց նորայ և իբրև որդի թագաւորի, շքեղացուցի զնայ և ձեռօք իմովք արբուցանէի նմայ կաթն և կոչեցի սնուցանողս, որ սնուցանէին զնայ եղով և մեղրով և շաքրով, և ննջեցուցանէի զնա ի վերայ ծնկաց իմոց, արծուաց և աղաւնեաց։ Եւ սնաւ քեռորդին իմ և զուարճացաւ։ Եւ ուսուցի նմայ դպրութիւն և զիմաստութիւն և զհանճար և զգիտութիւն։ Եւ իբրև եկն արքայ, ուստի երթեալն էր, ասէ ցիս արքայ. Ով Խիկար դպրայպետ և իմաստուն խորհրդակից իմ, յորժամ ծերացի[ս] և վախճանեսցիս, ո՞վ պահեսցէ զիս։ Խօսել սկսայ ես՝ Խիկար, և ասեմ. Արքայ, յաւիտեան կաց, է իմ քեռորդի մի իմաստուն և հանճարեղ, և զդպրու[թիւն] իմ առաւել գիտէ, քան զիս։ Ասէ արքայ. Ած զնայ առ իս և ցոյց ինձ, զի զքեզ արձակեցից, զի հանկըստեամբ վարեսցես զծերութիւն քո ի տան քո, մինչև ժամանակք քո լցցին կենաց։

Յայնժամ տարայ զնաթդան քեռորդին իմ առաջի արքային։ Տէր իմ այսպէս ասէ. Օրս այս յաւուրս օրհնեալ եղիցի, զի ի կենդանութեան իւրում էած կացուց Խիկար զորդի իւր [առ]աջի իմ, և ինքն ի հանկըստեան եղիցի, զի ի փաստակոց որ առ իս՝ [բ]արւոյ կատարեցաւ։

Եւ առեալ զնայ արքային և արկ ի վերայ նորա ...նկս և այսպէս ասաց. Զի Խիկար զորդի իւր կացուց ի դրան իմ[ում ի] կեանս իմ, և զինքն հրամայեցի ի հանկիստ։

Եւ ես՝ Խիկար, փառաց [կ]այի, երկիր պագի և ոչ դադարէի յուսուցանելոյ զորդին իմ, մինչև [յագե]ցուցի զնայ ուսմամբ, իբրև հացիւ և ջրով։

Եւ յուսուցանել նմայ [իմում] և ասէի ցնայ խրատ.

---

1 Ձեռագրում՝ արկոցէ:

2 Ձեռագրում՝ մանակ:

*1. Որդեակ, եթէ լսես բան ինչ ի դրան ար[քունի], մեռոյ և թաղոյ զնայ ի սրտի քում և մի՛ մոռասցիս և կամ ի վեր հա[նիցես]։ Գուցէ հանդիպեսցի ի թագաւորէն քեզ տանջանք և բանդ։*

*2. ‖ Որդեակ, մի՛ լիներ շտապկոտ, իբրև զնշենի փութոտ,*
223ա *սանիցես, մի՛ ումեք ասասցես։*

*3. Որդեակ, զկապ կնքեալ մի՛ արձակեսցես և զարձակեալն մի՛ կապեսցես։*

*4. Որդեակ, եթէ հայեսցիս և տեսանիցես զեղեցկացեալս և ծարուրեալս, սնդրեալս և պաճուճեալս, մի՛ ցանկանայցես ի սրտի քում, զի թէ զամենայն ինչս և զզանձս քո վատնեսցես և աւելի ի նմանէ ինչ ոչ գտանիցես, բայց միայն զմեղս և զանօրէնութիւն շահեսցիս և պատիժս սաստիկս յաստուծոյ և ի մարդկանէ։*

*5. Որդեակ, մի՛ լինիր[1] շտապկոտ, իբրև զնշենի փութոտ, որ յառաջն ծաղկէ և յետոյ [հ]ասանի պտուղ նորայ, այլ լեր որպէս թթենի, որ յետոյ ծաղկէ և յառաջ ուտի պտուղ նորայ։*

*Այլ եղիցիս դու հեզ և հանդարտ ի [գ]ործս գնացից քոց, և բարի լիցի քեզ։*

*6. Որդեակ, ցածոյ զաչս քո և կակղացոյ զբարբառ քո և նայեա ընդ ակամբ և մի՛ երևեսցիս մարդկան անըսգամ, զի թէ աղաղակաւ տաճար շինուէր, էշն աւուրն Չ ապարան շինէր և եթէ ի սաստիկ զօրութենէ և ի խիստ [ուժովն] եզինք վարէին, ապայ լուծ և արօր ոչ պակասէր ի պարա[նոցէ] ուղտուց։*

*7. Որդեակ, լաւ է ընդ իմաստնոյ քարինս կրել, քան ըն[դ առ]ն յիմարի և անըսգամի խմել գինի։*

*8. Որդեակ, հեղցես զգինի յ[ոտս] արդարոց և մի՛ ըմբեսցես զնայ ընդ անօրէնս և ընդ ան[ըսգ]ամս, զի մի իբրև զնոսայ անըսգամ և անմիտ կոչեսցիս։*

*9. Որդեակ [ընկ]եր լեր մարդոյ իմաստնոյ և իմաստնասցիս իբրև զնայ [և մի՛ ը]նկեր լինել մարդոյ անօրինի, և չար լինիցի քեզ։*

*10. Որդեակ [մի՛ աս]եր չար զումեքէ, բայց եթէ ասիցես՝ չարարարին ա[սես]։*

*11. Որդեակ, մի՛ բազմայխօս լինիցես[1] առաջի տեառն քո, զի մի յան[դիմ]անեսցեն զքեզ։*

---

[1] *Ձեռագրում՝* լինիցե:

12. Որդեակ, մի՛ թէ առաքեն զքեզ ուրեք, և դու [ոչ] գիտիցես և զկնի գայլ ոք առաքեն, և դու ծաղր լին[իցես]։

223բ 13. ‖ Որդեակ, յաւուր մատաղաց, կամ պատարագաց մի՛ ագահ երևեսցիս, զի ոչ հաճի աստուած, և ի մարդկանէ անարգանս առնուս։

14. Որդեակ, մի՛ թողուր զլալիսն և գնալ ի հարսանիսն, զի ամենեցուն մահ առաջի կայ։

15. Որդեակ, յորժամ ի կոչնայտունս մեծարիցիս[1], մի՛ նստցիս բարձր քան զընկեր քո, քանզի ասիցեն քեզ, թէ յարի աստի, և բազում տրտմութիւն գայ քեզ։

16. Որդեակ, ձի, որ չէ քո, մի՛ հեծանես, զի բազումք արհամարհեն զքեզ, որք ճանաչեսցեն։

17. Որդեակ, մատանի, որ չէ քո, մի՛ դներ ի մատին քո և անդերձ[2], որ չիցէ քո, մի՛ ագաներ բեհեզս և ծիրանիս ատարս, զի ծաղր արասցեն տեսողքն։

18. Որդեակ, զքո մասն կեր և ընկերին մի՛ աչս արձակեր և զհաց ընկերի քո մի՛ ուտիցես, որ չէ քո, և ոչ լինիս քա[ղց]ած։

19. Որդեակ, այր, որ խիստ է քան զքեզ, մի՛ հակառակիր ընդ նմայ և մի՛ լին[իր] թշնամի մարդոյ, որ ուժով է քան զքեզ, զի մի՛ խորհեսցի քեզ չարութիւն, և բարի լինիցի քեզ։

20. Որդեակ, ջնջեայ զչարութիւն ի սրտէ քումէ և զոխս [և] զխռովութիւն հան ի սրտէ, զի սերմն չար է և չար ծնանի։

21. Որդեակ, եթէ բ[ար]ձր է շեմք տան քո, իբրև կանկուն է, յորժամ մտանես, խոնարհեց[ոյ] զգլուխ քո և ապայ՝ մտանիցես, եթէ չհանդիպեսցի ցածայգոյն և դ[իպ]եսցի ընդ երեսս քո։

22. Որդեակ, մի՛ առնուր կշռով մեծաւ և տալ փոքրովն և [սաստ]ցես ի սրտի քում, եթէ շահեցայց և ինչք յաւելուն ի տան իմոյ, [զի] անօրէնութիւն և չարիք են։ Գուցէ հայեսցի աստուած յերկնից և տեսանիցէ [զ]քեզ և դարձուցանիցէ զերեսս իւր ի քէն և իբրև յանօրինէ և յամբար[տաւանէ] երկինք և երկիր չեն բաւական տանել դատաստան ի քո։

23. Որդեակ, մի [երդնուց]ուս սուտ յաստուածս և ստիցես, թէ՝ յորաց քոց պակասէ։

24. Որդեակ, եթէ խնդ[րեսց]ես ինչք յաստուծոյ, զբանիւք նորայ մի՛ յանցանիցես։

---

[1] Ձեռագրում՝ մեծարիցի։

[2] Ձեռագրում՝ անդրերձ։

25. Որդեակ, պահեայ զպատ[ուիր]անս աստուծոյ և զօրէնս և մի՛ մոռանար և մի՛ մեղանչէր, և բարի լինիցի քեզ։

26. Որդեակ, [ընդ բ]ազմութիւն որդոց քոց մի՛ խնդասցես և ընդ պակասիլն նոցայ մի՛ [տրտմեսցես, զ]ի որդիք և ստացուածք յաստուծոյ շնորհին, զի մեծն աղքատանայ և խո[նարհն] բարձրանայ և բարձրն խոնարհի։

224ա 27. Որդեակ, զհետ անդաստանաց ‖ քոց և ստացուածոց մի՛ աշխատիր, զի ստացուածք և մեծութիւնք յաստուծոյ շնորհին։

28. Որդեակ, թէ ընկերն քո հիւանդանայ, մի՛ ասեր թէ զինչ տարայց նմայ, [այ]լ ե՛րթ ոտիւք և տե՛ս աչօք և բանս քաղցունս ասայ նմայ, զի լաւ է, քան թէ Ծ. քանքար ոսկոյ տարցես նմայ։

29. Որդեակ, մի՛ հեղցես զարիւն մարդոյ ի տարայպարտուց, զի մի հեղցեն զարիւն քո փոխանակ արեան նորայ, և չար լինիցի քեզ առաջի աստուծոյ և մարդկան։

30. Որդեակ, պահեայ զլեզու քո ի չարայխօսութենէ, զձեռն քո ի գողութենէ և զաչս քո յարատ հայելոյ, զի որ գողանայ ոսկի և կամ[1] միրգ, վրեժ պատուհասին մի է։

31. Որդեակ, մի՛ շնասցես ընդ կնոջ աղուհացկերի քո, զի մի տեսանիցէ աստուած և բարկանասցէ ի վերայ քո և արկցէ ի սիրտ այլոց, և շնասցեն ընդ կնոջ քո, և դու տրտմիս։

32. Որդեակ, զխորհուրդ քո ընդ կնոջ խորհիջիր, բայց զգաղտնիս քո մի՛ յայտներ նմայ, զի կարճամիտ է և փոքրոգի, ոչ կարէ ծածկել զբանս ի սրտի, յայտնէ կարևորաց իւրոց և եղբարց և տայ ծեծել զքեզ։

33. Որդեակ, որ լսիցէ զբանս իմաստնոց և պահիցէ ի սրտի իւրում, այնպէս է, որպէս թէ գտանիցէ ջուր ցուրտ և զովանայ և ըմբիցէ ընդ կամս իւր։

34. Որդեակ, յաւուր չարի մի՛ հայհոյեսցես զաստուած, զուցէ լսիցէ և բարկասցի ի վերայ քո։

35. Որդեակ, մի՛ սիրեսցես զծառայս քո առ[աւ]ել, քան զընկերս քո, զի ոչ գիտիցես, թէ ո՞ր պիտանի լինիցի քեզ ի նոցանէ, և մի՛ սիրեր զորդի քո առաւել, քան զծառայն։

36. Որդեակ, լաւ իցէ ծառայ, [որ] միամտութեամբ և ողորմնօք տայ պատասխանի տեառն իւրոյ, քան որդի, [թէ] մեծայմեծս խրոխտալով խօսի և ածէ ի բարկութիւն և թէ քան

[1] Ձեռագրում՝ մամ:

[մեծ]այմեծս մատուցանիցէ պատուական խորտիկս և բազմայզանս?։

37. Որդեակ, որ մեղանչիցէ տեառն իւրոյ և երթայ առ այլս[1] յաշխարհի, հան[գիստ մի] գտցէ։

38. Որդեակ, շուն, որ զորսն ինքն ուտէ, կերակուր գայլոց եղիցի։

39. [Որդեակ], զգաստաստան քո ուղեղ կտրեցեր և բարեաւ հասցես ի ծե[րութիւն]։

40. Որդեակ, ցածոյ զաչս քո և կակղացոյ զբարբառ քո, զի ագի շանն [հաց բերէ] || և բերանն՝ բիր։

224բ 41. Որդեակ, մի՛ պանծար ի մանկութիւն քո, զի մի կորուսցէ զքեզ։

42. Որդեակ, մի՛ տալ թոյլ ընկերին կոխել զոտն քո, զի մի համարձակիցի կոխել զպարանոցդ։

43. Որդեակ, մի՛ լինի կարի քաղցր, զի մի կլանիցեն զքեզ և մի՛ կարի դառն, զի մի թքանիցեն, այլ լեր հեզ և հանդարտ ի գործս գնացից քոց։

44. Որդեակ, հարց զայր իմաստուն բանիւք իմաս[տ]նօք և փութով իմաստնացիս։

45. Որդեակ, մարդ, որ մեծայտուն է և ունի ինչս բազումս, նայ առատ է, և ամենայն ոք պատուէ զնայ։

46. Որդեակ, որ ոչ ունի ինչս, աղքատ է, անարգ և անմիտ, և ոչ ոք պատուէ զնայ։

47. Որդեակ, եթէ կաշառ ոք[2] դատաւորին տայ, պատուհասի յատուծոյ, զի զաչս դատաւորին կուրացուցանէ կաշառն։

48. Որդեակ, կերայ դառն ինչ և արբի լեղի և ոչ էր դառն, քան զաղքատութիւն։

49. Որդեակ, բարձի աղ և բարձի առճիճ և ոչ էր ծանր, քան զպարտքն։ Որ պարտի ոք, զի թէպէտ ուտէ և ըմբէ, ոչ կարէ հանկչել, զի այնպէս ծանրացաւ ի վերայ, որ պարտ իցէ ոք ումեք։

50. Որդեակ, բարձի երկաթ և բարձի քար և ոչ ծանրացաւ ի վերայ իմ, իբրև առն, որ բնակեալ է ի տան աներոջ իւրոյ։

51. Որդեակ, մեծայտանն որդին աւձ եկեր, ասեն դեղ է նմա, աղքատին որդին եկեր, ասեն առ սովին եկեր։

---

[1] Ձեռագրում՝ այրս։

[2] Այս բառից հետո բնագրում ավելորդ կրկնվում է՝ եթէ։

52. Որդեակ, եթէ ա[ղք]ատ ես և ի մէջ աղքատաց բնակեալ, մի՛ ասեր, թէ աղքատ եմ ես, [զի] մի արհամարհեսցեն զքեզ և լինիցի սիրտ նոցայ իբրև... չեռուցեալ, զի թէ հարկանես զայր անմիտ բրօք բա[զմօք], ոչ առնու ի միտ։

53. Որդեակ, եթէ առաքես ուրուք պատգա[մաւոր] զայր իմաստուն, մի՛ յաճախել պատուիրել նմայ և եթէ զ[այր ան]բզգամ և անմիտ առաքես, առաջի երկուց և երից վկայ[ից պատուիրեա], կամ դու քեզէն երթ և գնայ մի առաքել, թէ չէ վնասս բ[երէ զքեզ]։

54. Որդեակ, ուսոյ զորդին քո ի քաղց և ի ծարաւ, զի ըստ
225ա սով||որութեանն վարեսցեն զկեանս իւրեանց, զի որկորքն ոչ ժուժեն, յորժամ ոչ գտանեն։

Եւ յորժամ փորձես զորդին քո, ապայ տացես զինչս քո ի ձեռս նորայ։

55. Որդեակ, ի կոչնայատանէն և ի հարսանաց քան զընկերս քո յառաջայգոյն հրաժարեայ և այլ մի՛ դարձցիս յետս, եղով անուշիւ օծանիլ, ապայ թէ յետս դարձար, գուցէ առնուցուս զանս և վէրժս ի գլուխ քո։

56. Որդեակ, այր, որ խիստ է քան զքեզ, մի՛ հակառակիր ընդ նմայ, գուցէ առնուցու զքեզ և դիցէ յորմ անդր։

57. Որդեակ, ընդ մարդոյ, որոյ որդիք և ինչք ստացուածք շատ է, մի՛ կռուիր։

58. Որդեակ, սիրեայ զկին քո, զի մարմին քո է և կցորդ կենաց քոց և մայր որդոց քոց և յոյժ աշխատի սնուցանել զորդիս քո։

59. Որդեակ, զեղբայր քո առաւել սիրեայ, քան զամենիսեան, զի յոյժ պիտոյ են քեզ։

60. Որդեակ, եթէ առաքեսցէ տէր քո բերել սպտուր, խաղող մի՛ բերել նմայ, զի զխաղողն ուտէ և զպատուհաս սպտրին ոչ թողու։

61. Որդեակ, լաւ է բանք իմաստնոյ յարբունոյթ, քան մարդոյ անմտի և անըզգամի ի ծարաւութ։

62. Որդեակ, [ամ]ենևին մարդոյ երեշխնոր մի՛ կենաս, զի եթէ չլսես ինձ, մո[ր]ադ? ցաւի և յետոյ վճարես և յոյժ տրտմիս։

63. Որդեակ, լաւ է կոյր աչօք, քան կոյր մտօք, զի կուրն արագ ուսանի զերթևեկ ճան[ապ]արհին, իսկ կոյրն մտօք թողու զուղղ ճանապա[րհ և] երթայ ընդ կամայկորն։

64. Որդեակ, լաւ է կնոջ, թէ յորժամ [ծնանի]ցի՝ մեռցի, քան արտաքոյ տրտմեցուցանէ զնոսայ և ...ուին այնոցիկ, որ սնուցանեն զնոսայ։

65. Որդեակ, լաւ է ծառ[այ հաւ]ատարիմ, քան որդի ազատ և ճշմարտութիւն ի նմայ [ոչ գոյ]։

Լաւ է բարեկամ մերձաւոր, քան եղբայր հեռաւոր։

66. Որդեակ, [լաւ է ա]նուն բարի, քան տեսակ ցանկալի,
225բ զի զեղեցկու[թիւն այս] ‖ ականի և անուն բարի յաւիտեան մնայ։

67. Որդեակ, լաւ է մահ, քան զկեանս։

Լաւ է ձայն լալոյ, քան զձայն հարսանեաց։

68. Որդեակ, լաւ է կող մի ի ձեռին քո, քան երբուծ մի յայլոյ ձեռին։

69. Որդեակ, լաւ է ուլ զենած ի տան քո, քան զուարակ յայլոյ տան։

70. Որդեակ, լաւ է ճնճղուկ[1] մի ի ձեռին քո, քան թէ Ռ՝. ընդ երկինս թռուցեալ։

71. Որդեակ, լաւ իցէ մարդոյն այնմիկ, եթէ իցէ ի վերայ ձիուն, սառն և սոսուռ, քան եթէ մերձեսցի ի կին անըսգամ և լեզվանի և բամբասող։

72. Որդեակ, զայս գիտասջիր, զի թէ դադարեսցեն գետք ի գնացից և կամ արեգակն յընթացից և կամ սպիտակասցի ագռաւ իբրև զաղաւնի և կամ քաղցրասցի լեղի իբրև զմեղր, նոյնպէս թողցէ անըսգամն զանըսգամութիւն իւր և անմիտն սգաստասցի[2]։

73. Որդեակ, մի՛ տացես զինչս քո առանց մուրհակի և վկայի, զի մի յետոյ զղջասցիս։

74. Որդեակ, եթէ կամեսցիս իմաստուն լինել, յորժամ ի մէջ ընկերաց ըմբես գինի, մի՛ շատախօս լինիր, ունկն դիր, զի ի բազում խօսից կռիւ լինի և կռուեն սպանութիւնք։

75. Որդեակ, ի բարեկամաց քո[ց] մի՛ հեռենար, զի գուցէ այլ ոչ ևս լինիցին ըստ սրտի քում։

76. Որդեակ, եթէ առաքէ զքեզ տէր քո ուրեք, եթէ մեծ իցէ բանն, մի՛ հա[տցես] ի բանիցն և եթէ փոքր է, մի՛ մեծացուցաներ, զի գուցէ [ո]չ ևս լինիցին ըստ նմանութեան, և մի՛ յաւելցես ի խաւսս։

---

[1] Ձեռագրում՝ ճնճուկ:

[2] Ձեռագրում՝ ստաստացի:

77. Որդեակ, պատուեայ զՀայր քո և զմայր և ի բարութիւն որդւոց ք[ոց խնդ]ասցես։

78. Որդեակ, ի պարտեզ թագաւորաց մի՛ մտանէր և [ընդ] կնոջ դատաւորաց մի՛ խօսիր։

79. Որդեակ, լաւ է թէ գողասցին [զինչս ք]ո, քան թէ գտցի ի վերայ քո գողութիւն։

80. Որդեակ, եթէ [տեսան]ես զծերն, պատուեայ զնայ և յոտն կաց առաջի [նորա], և այլք զնոյն քեզ արասցեն։

226ա 81. Որդեակ, մարդոյ, որոյ ‖աստուած յաջողեալ է, նոյնպէս և դու պատուեայ զնայ։

82. Որդեակ, մի՛ Հակառակիր[1] ընդ մարդոյ յաւուրս նոցայ և մի՛ ընդ գետոյ՝ ի յորդութեան նորայ։

83. Որդեակ, ակն մարդոյ ագաՀ է. ոչ լցցի զանձով, մինչև լցցի Հողով։

84. Որդեակ, մարդոյ կին մի՛ խօսեսցիս, զի եթէ չար ինչ լինիցի, անիծանեն զքեզ և եթէ բարի՝ ոչ յիշեն զքեզ։

85. Որդեակ, մի՛ յաճախեր ի տուն բարեկամի քո, զի մի ատիցեն զքեզ, և ինքն ընդ ինքն տրտընջեսցէ։

86. Որդեակ, շուն, որ թողու զտէր իւր և գայ զՀետ քո, քարեամբք Հալածեայ զնայ։

87. Որդեակ, օրէնք և պատուիրանք և Հաճուքն աստուծոյ գործք բարիքն են։

88. Որդեակ, ի մարդոյ ամօթոյ, իբրև յաստուծոյ, երկիր և ամաչեայ։

89. Որդեակ, խորՀրդոց բարեաց ցանկացիր, զի մարդիք տեղիք չարութեան են։

90. Որդեակ, Համբերութիւն ծերոց Հիմն է։

91. Որդեակ, զոր ինչ քեզ չար թուի, ընկերին քո մի՛ առներ։

92. Որդեակ, մի ոք տեսցէ զքեզ, զի գործես զան[ար]ժանս։

93. Որդեակ, սիրեայ զճշմարտութիւն և ստութիւն իբրև զմաՀ տես։

94. Որդեակ, վկայք չար բանք ստութեան քո են։

95. Որդեակ, գեղ կնոջ քո մի՛ Հնազանդեցուսցէ զքեզ, այլ խորՀուրդ նորայ.

96. Որդեակ, ի մարդոյ լեզվանոյ փախիր և ստոց, զի ագաՀութիւն և ստութիւն մաՀ է չարեաց։

---

[1] Ձեռագրում ճակառիր:

97. Որդեակ, ի մէջ երկուց կռուողաց մի՛ [մ]տանիցես, չի մի ի զուր մեռցիս, կամ ձաղեսցիս և պատու[հաս]եսցիս, փախիր հեռի:

98. Որդեակ, զդատաստանս անիրաւու[թեան] մի՛ սերմանեսցես, զի մի տրտմութեամբ հնձեսցես:

99. Որդեակ, յոր[ժա]մ ի դատաստան գնաս, առաջի դատաւորին ցասմա[մբ] մի՛ խօսիցես և մի՛ աղաղակ բառնար, թէ չէ ասեն ց[քեզ.] Այդ լեզուիդ ի դէմ ով կենայ և տռայովն զշլն...?

100. Որդեակ, ընդ քո խսմին ի ճանապարհն դատես[ցես:
226բ Թ՚է] ‖ սուտ լինիցիս, մեղայ ասայ նմա, ապայ թէ ոչ լսես, տարցէ զքեզ առաջի դատաւորին, և դիցեն զքեզ ի բանդ, և անդի ոչ ելանիցես:

101. Որդեակ, մարդոյ, որ ի սպանումն տանին և կամ յաւաղակաց՝ ի կախումն, առաջի նորայ մի՛ գնար, թէ չէ ասէ եթէ իմ ընկեր է և մեծ վնաս բերէ քեզ:

102. Որդեակ, ի գիշերի առանց զինու ի ճանապարհ մի՛ ելանել, զի ոչ գիտես, թէ ի ճանապարհի ի թշնամեաց քոց պատահեսցին և ելանիցեն ընդ առաջ քո և վնաս բերեն քեզ:

103. Որդեակ, յորժամ ի շեն ուրուք կամիցիս մտանել, մինչ դեռ[1] ձեր տունն լինի, առջև հաց կեր, զի թէ հարսանիս լինի, ի խնդոյն պետ չառնեն քեզ և կամ մահ լինի՝ ի տրտմութենէն:

104. Որդեակ, ի զատարան լավ է գնալ և ի հեռի, քան ի գետն և ի մոտ:

105. Որդեակ, բուք օրն ի ճանապարհ մի՛ ելանել, զի ո[չին]չ վտանկեսցէ զքեզ:

106. Որդեակ, ընդ կրակն մի՛ վանիր ու ասէ [ե]թէ կումաշ հանեմ, թէ ոչ՝ մեծ որոգայթ լինի և մահ:

107. Որդեակ, [ն]որ դատաստան մի՛ սերմանիցես անիրաւութեամբ[2], զի մի՛ տրտմ[ու]թեամբ հնձեսցես, թէպէտ և յաղթող ես:

108. Որդեակ, ի շահս չարեաց մի՛ [գն]ասցես և զողոց ականջ մի՛ դնես:

109. Որդեակ, զչարայխօսութիւն [զ]ումեքէ մի՛ լուիցես, զի սուտ է նայ:

[1] Ձեռագրում՝ ինչո, վերջին տառի (ո) վրա պատիվ է դրված:

[2] Ձեռագրում՝ արիրաւութեամբ:

110. Որդեակ, մի՛ յափտակիր [չա]րէ և մարդոց ստոց, որ աղտեղացուցանէ զսիրտս [իմ]աստնոց։

111. Որդեակ, երկնչելն աստուծոյ բարի է, և չերկնչելն՝ մահ է և կորուստ։

112. Որդեակ, խրատ առջիր ամենայն մարդոյ [և կոչես]ցիս իմաստուն և ոչ եթէ որոյ պարտ միայն իցէ, [որո]ւմ չեն արժանի. թէ կոչեսցի նայ իմաստուն, այլ [մարդոյ] իմաստնոյ, որպէս սրով սպանանէ զանմիտն?։

227ա 113. ‖ Որդեակ, խափանելն զչարն առաւել քաջութիւն է։

114. Որդեակ, որ ընդարձակ է. մտօքն, պայծառ է քան զարեգակն և վայելուչ։

115. Որդեակ, որ ագահ է, ոչ աստ շահի և ոչ ի յաստուծոյ դատաստանին, այլ զտանջանսն կրիցէ։

116. Որդեակ, որ ծաղր առնէ զաղքատն, ինքն շուտ հասանէ յաղքատութիւն, և նայ ոչ է առաւել քան զնայ։

117. Որդեակ, եթէ կամեսցիս ինչս տալ մարդոյ, մի՛ յառաջ պարծիր։

Եւ զոր ինչ կամիս գործել և յետոյ չկարես վճարել և գործել, ծաղր լինիս ամենեցուն։

118. Որդեակ, եթէ նստեալ իցես ի մէջ ընկերաց, ըմբես գինի, մի՛ շատախաւս լինիլ։

119. Որդեակ, ի հետ խաբածի և ի հետ հարբածի մի՛ ասեր, թէ չեմ քո։

120. Որդեակ, ամբարտաւութեւին մարդոյ անարգէ զնա, և խոնարհութիւն՝ բազում առնէ զպաքն։

121. Որդեակ, մեծով գինի մի՛ խմեր, թէ չէ վնաս լինի քեզ և փոխիս յառողջութենէ։ Գովեն ոչ զքեզ, այլ բամբասեն։

Այս ուսումն է, զոր ուսուցի ես Նայդանայ քեռորդոյ իմոյ, թէ պահեսցէ և կացէ ի դրան արքունի։ Եւ զայս ոչ լուայ, եթէ Նայդան զբանս իմ ոչ պահեաց, այլ երան երետ, այլ որպես հողմ փոշի։

Եւ այսպէս ասէ Նադան, թէ խեկար հայր իմ ծերացեալ և հասեալ կայ յափն գերեզմանի, [քան]զի անցեալ միտքն և կորուսեալ են իմաստք նորա։

Եւ սկս[աւ] վատնել և կորուսանել զինչս իմ, ոչ խնայէր ի ծառայ[ս] իմ և յաղախնայս։ Եւ զսիրելիսն իմ սկսաւ տանջել և [չար]չարել առաջի իմ և զձիս իմ և զջորիս իմ և զընտիր [ընտ]իրսն զուգեաց, զոր լաւն էր, զամենայն հատոյց։ Եւ ես

իբրև տե[սի], եթէ Նաթան քեռորդին իմ զբանս իմ այլայլեաց,
227բ [խնայ]||եցի յինչս իմ, զի մի կորիցէ։

Խաւսել սկսա և ասեմ ցՆաթան. Որդեակ իմ, յինչս իմ մի՛ մերձենար, զի գրեալ է Սողոմոն իմաստունն յառակսն և ասացեալ, թէ ձեռք, որ ոչ է վաստակեալ, ակն մի՛ խնայեսցէ։

Եւ այս ասացեալ առաջի արքային իմոյ, զի երթեալ պատմեցի ես նմա։ Յայնժամ ասէ արքայ ցՆաթան[1]։ Մինչև Հայր քո Խիկար կենդանի է, յինչս նորա մի մերձենար։

Եւ յայնժամ Նաթան՝ քեռորդին իմ, բարկացաւ յոյժ և չոգաւ ի դուռն արքունի և չար ի սրտի իւրում խորհէր և գրեաց թուղթ այսպէս. «Ես՝ Խիկար, դպրապետ Սինաքերեմայ՝ արքայի Ասորեստանի և Նինուէի, պարսից արքայի՝ Փարաւոնի, ողջոյն։ Յորժամ հրովարտակս առ քեզ հասանի, փութով առցես զզօրս քո և հասցես յառաջ իմ յԱսորեստանիս, և զթագաւորութիւնս տաց քեզ առանց կռուի և պատերազմի»։

Եւ դարձեալ գրեաց միւս այլ թուղթ առ Հայրն իւր Խիկար. «Ի Սենէքարիմայ արքայէ ողջոյն առ Խիկար դպրապետ և իմաստուն։ Ընթեռնուլ հրովարտակիս իմոյ, գումարեսցես զզօրս իմ զամենայն և յորժամ մերձեցայց ես առ քեզ, կարգե[ս]ցես ճակատեսցես զօրս, որպէս այն եկեսցեն ի պատերազմ, [քանզի] դեսպան[2] եկն ի փարաւոնէ առ իս, թէ եկ ի պատերազմ, որ զիր[ս] տեսանեմք»։ Եւ ետ բերել զթուղթն ի հաւատարիմս թագաւ[որին]։ Եւ կացուցին զնայ առաջի իմ, և ինքն Նաթան կայր առ[աջի] արքայի, և զզօրքն ամենայն խնդրէին ի տունս իւրեանց գնալ։ [Յ]որժամ արձակեցան զօրքն ամենայն յիւրաքանչիւր իւր տունս, [յայ]նժամ յառաջ կացեալ Նաթան, ասէ ցարքայն. Արքայ [յաւի]տեան կաց, ես եմ աղ կերեալ ի տան քո, քաւ լիցի արքա[յ դա]ւել, կամ տե-
228ա սանել զչարիս ի տան քո և ոչ ծածկեց||ից, զի Խեկար Հայր իմ, զոր առաքեցեր ի Հանգիստ և ի պատիւ, ոչ արար ըստ պատուոյ արքայիդ, ոչ եղև ի կողմ հրամանաց քոց։

Եւ էր տուեալ զթուղթն ի բարէկամս թագաւորին և պատուէր տուեալ նմայ, եթէ հարցանիցէ թագաւորն զքեզ, ասասցես թագաւորին պատասխանի, թէ յանցաւորաց ճանապարհորդաց բռնութեամբ առաք զթուղթս զայս։

---

1 Ձեռագրում՝ ցԱդան:

2 Ձեռագրում՝ դեստան:

Յայնժամ յառաջ կոչեցեալ Նաղան յայրն, որ զթուղթն էր տուեալ, և եդիր զթուղթն առաջի արքային։

Եւ առեալ Նաղան, եցոյց զթուղթն, զոր կնքեալն էր մատանաւ հայրն իւրոյ Խիկարայ եւ եբաց առ ի կարդալ։ Եւ իբրև լուաւ զայս արքայ, դարձեալ ասէ ցնա, որ զթուղթն ունէր. Ո՞վ ետ ի քեզ զթուղթս զայս։ Եւ նայ զինչ որ Նաղան իւր խրատ էր տուէր, ասաց թագաւորին։ Յայնժամ թագաւորն. Զի՞նչ մեղայ ես Խիկարայ, ո՛վ աստուածք, զի այսպէս կամեցաւ առնել ընդ իս չարիս փոխանակ բարոյ իմոյ։ Խաւսել սկսաւ Նաղան և ասէ. Մի՛ տրտմիր, տէր իմ արքայ, այլ երթեսցուք ի դաշտն Արծէրունի, որպես և գրեալ է ի հրովարտակիս յայսմիկ և գիտասցուք և տեսցուք, թէ այդպէս է և ապայ՝ զինչ և հրամայեսցես լինի։

Եւ առեալ Նաղանայ քեռորդոյ իմոյ զՍինէքարիմ արքայն, եկն եգիտ զիս և զզօրսն իմ, որ [ընդ]իս էին։

Եւ իբրև տեսի զարքայ, կարգեցի ճակատեցի [զզօրսն] իմ ի դէմ նորա ի պատերազմ։

Եւ իբրև ետես զայն արք[այ, տրտ]մեցաւ։ Խաւսել սկսաւ Նաղան և ասէ ցարքայ. Մի՛ երկն[չիր], տէր իմ արքայ, այլ երթ դու ի տուն քո, և ես ածից զԽ[իկար] հայր իմ առաջի քոյ Ասէ արքայ ցՆաղան. Թէ դու [ածես] զԽեկար առաջի իմ,
228բ պարգևս մեծամեծս տաց [քեզ և] ‖ ի վերայ դրան իմոյ հաւատարիմս կացուցից զքեզ, զի միայմիտ և բարեկամ գտար ինձ։

Եւ դարձաւ արքայ ի տուն իւր։

Եւ Նաղան քեռորդին իմ եկն առ իս և ասէ. Հրաման տուր զօրացդ, զի երթիցեն ի տունս իւրեանց, և դու եկն առ իս, զի ի միասին ուրախ եղէց։ Եւ իբրև եկի առաջի արքային, յայնժամ ասէ ցիս արքայն. Դու, Խիկար՝ դպրայպետ Ասորեստանի և Նինուէի, ես[1] հրամայեցի քեզ ի պատիւ և ի մեծութիւն, և դու դարձար ի մենջ և եղեր ի կողմն թշնամեաց մերոց։ Եւ ետ զթուղթն ի ձեռս իմ, զոր էր Նաղան նմանեցուցեալ ձեռնայգրի իմոյ։ Եւ իբրև կարդացի, ես՝ Խիկար, լուծան ամենայն աղիք իմ, և լեզու իմ իբրև զմագաղաթ գալարեցաւ։ Խնդրէի բան իմաստութեան և ոչ գտանէի ի սրտի իմում և ոչ կարացի ամենևին տալ պատասխանի։

---

[1] Ձեռագրում՝ և:

Յայնժամ խօսել սկսաւ Նադան քեռորդին իմ և ասէ անօրէնն, զոր սնուցի ես, և ասէ ցիս. Ի բաց գնայ յերեսաց արքայից, ալևոր զառանցեալ և աղճատեալ, եսոուր զձեռս քո ի կոճեղս և զոտս քո յերկայթս:

Յայնժամ արքա դարձուց զեր[ե]սս իւրոյ յինէն և ասէ ցԱբուսմակ ընկեր իմ. Տար [եսպ]ան զԽիկար և հեռացոյ զգլուխ իւր ի նմանէ իբրև կանկունս Ճ: Եւ ասեմ ցարքայ. Արքայ, յաւիտեան կաց, [թէ]և կամեցար սպանանել զիս և բանից իմոց ոչ անս[աց]եր, այլ ես յանձն իմ գիտեմ, զի ոչինչ մեղայ: Արքայ, այժմ հրամայեաց, զի ի դրան իմումս անցեն զմարմինս իմ, սպանցեն և տարցեն ի թաղումն:

229ա ‖ Եւ ասէ արքայ ցԱբուսմագ. Երթ սպան զԽիկար առ դրան իւր:

Եւ ես՝ Խիկար, առաքեցի առ Աբեստան կին իմ և ասեմ. Հան ընդ առաջ իմ կուսանս Ռ, զի զգեստին հանդերձս տըրտականս և կոծ եղեալ լացցեն դառնայպէս և ելցեն ընդ առաջ իմ, զի զլալիսն աչօք իմովք տեսից:

Եւ Աբեստան կին իմ յոյժ իմաստուն էր, արար վաղվաղակի, զոր ինչ առաքեցի առ նայ: Արար հաց և ընթրիս և ել ընդ առաջ նոցայ և եմուծ առաջի իմ զնոսայ ի տուն իմ: Եւ մտի ես ուտել հաց ընդ նոսայ: Եւ Աբեստան կին իմ ծառայէր զնոսայ և աղաչէր ըմբել գինի, և ըմբեցին գինի և արբեցան: Յայնժամ խաւսել սկսայ ես՝ Խիկար, և ասեմ ցԱբուսմաք ընկեր իմ. Հայեաց յաստուած և յիշեայ զայն, զի զքեզ մատեաց գլխով քո հայր Սենեքարիմայ արքայի և ետ զքեզ ի ձեռս իմ սպանանել զքեզ: Եւ գիտացի, զի չէիր ինչ մեղուցեալ, ոչ սպանի [զք]եզ, այլ պահեցի մինչև ինքն արքայ խնդիր արար քեզ, և առի [տ]արայ զքեզ առաջի նորայ, և պարգևս մեծայմեծս ետ ինձ: [Ար]դ, դու պահեայ զիս և հատոյ զերախտիսն ի մի սպանանե[լ], զի մի՛ չար լինի քեզ: Եւ իմ ծառայ մի, որում անուն էր Ս[եփար] և յոյժ նման է ինձ և է ի բանդի, զի մահայպարտ է: [Հրոմայ]եայ ծառայից քոց, զի հանցեն և սպանցեն զնայ, [հեռաց]ուցեն զգլուխ նորայ ի նմանէ իբրև կանկունս Ճ: [Եւ Աբու]սմաք լուաւ ինձ և գթացաւ ի վերայ իմ և առ զհան[դերձըս], և տարան ի բանդն և ագուցին Սեփարայ ծառային [իմ, որ]
229բ ‖արկեալ էր իմ ի բանդն: Եւ ծառայք նորայ հանին և սպանին զՍեփարայ ծառայ իմ: Եւ ել համբաւս այս ի քաղաքս և ի գեաւղս և ի գաւառս Ասորեստանի և Նինուէի, թէ Խիկար, դպրայպետ և իմաստունն մեռաւ:

Եւ յարեան Աբեսմագ և Աբեստան կին իմ, փորեցին և արարին ինձ տուն գետնայփոր և եդին առ իս հաց և ջուր։ Եւ չոգան պատմեցին Սենեքարիմայ տեառն իմոյ, թէ Խիկար մեռաւ։ Յայնժամ լուան ամենեքեան առհասարակ, և բնակիչքն Ասորեստանի և Նինուէի ցրուեցան։ Եւ յորժամ լուաւ[1] փարաւոն արքայ վասն Խիկարայ, թէ մեռաւ, յոյժ ուրախ եղև։ Յայնժամ փարաւոն արքայ ետ գրել հրովարտակս և առաքեաց առ Սենեքարիմ. «Ի փարաւոնէ արքայէ ողջոյն Սինայքարիմայ արքայի։ Այլ զայս ծանուցանեմ քեզ, կամիմ շինել ապարանս մէջ ընդ երկինս և ընդ երկիր։ Տես այր մի իմաստուն և ճարտար և առաքէ այսր, զի եկեալ շինեսցէ և վասն այլ ամենայն բանի հարցայքննութեան, զոր ինչ և հարցից, պատասխանի առնէ, ապայ թէ անփոյթ առնես և ոչ առաքես, ժողովեալ և տուր բերել զհարկն Ասորեստանի և Նինուէի զմեր կա[յս]»։

Եւ յորժամ լուաւ զհրովարտակն, և ընթերցան առաջի ամեն[եց]ուն, և ասէ ցնոսայ. Ով է ի ձէնջ կարող է երթալ յԵգիպտոս [առն]էր պատասխանի փարաւոնի։

Եւ պատասխանի տուեալ զաւր[ացն ա]սեն ցարքայն. Դու գիտես, արքայ, զի իրք, որ ի յայդ ի Նմանէ, [Խիկար] երթայր և կատարէր, և այժմ Նադան քեռորդի նորա [գիտէ] զդպրութիւն նորայ, նայ երթայ և պատասխանի առնէ [փարաւ]ոնի։ Եւ իբրև լուաւ զայս Նադան, ի ձայն բարձր աղա-
230ա ղակ || եաց և ասէ. Զայդ իրս դիքն ոչ կարեն վճարել, իսկ ի մարդէ ո՞յ իցէ կարող վճարել զբանս զայդ։

Եւ իբրև լուաւ զայս արքայ, յոյժ տրտմեցաւ, յարեաւ էջ յաթոռո՛յ իւրմէ և նստաւ ի վերայ մոխրոյ։ Քուրձ զգեցաւ և այսպէս ասէր. Աւաղ զքեզ Խիկար, դպրապետ և իմաստուն, զի խաւս մարդկան կուրուսի զքեզ։ Ոյ ով տար զքեզ ի ժամու յայսմիկ, ընդ ձոյլ ոսկոյ կշռէի զքեզ և գնէի։

Եւ յորժամ լուաւ զայս յԱփուսմակ, ասէ ցարքայն. Որ զբանս տեառն իւրոյ արհամարհէ, մահապարտ է։ Դու զԽեկար հրամայեցեր սպանանել, և նայ դէռևս կենդանի է։ Յայնժամ խաւսել սկսաւ արքայ և ասէ. Խաւեսաց Աբուսմակ ծառայ իմ, բարի և հաւատարիմ, ո՛չ մեղար, այլ բազում բարեաց առիթ գտար, զի եթէ զԽիկար կենդանի ցուցես ինձ, բազում քանքարս և ծերանիս ագուցից քեզ։

[1] Գրիչն այս անհրաժեշտ բառը վրիպել է։

*Եւ ի նմին ժամու, իբրև սլանալ հողմոյ, եկն առ իս։ Եւ բացին զդուռն գետնափորին։ Ելի ես և եկի առաջի արքային տեառն իմոյ և անգեալ ի վերա երեսաց իմոց. երկիր պագի նմայ։ Եւ զգլխոյ իմոյ թաւալեալ էին, և մարմին իմ ապականեալ ի հող[ոյ], և ըղնկունք իմ աճեցեալ իբրև զարծուի։*

*Եւ յորժամ ետես [զ]իս արքայ, ելաց ի վերա իմ և ամաչէր հայել[1] յերեսս իմ։ Եւ ասէ ցիս. Ես քեզ ինչ ոչ մեղայ, այլ Նադան քեզ որդ[եգիր], զոր սնուցեալ էիր։ Եւ ասեմ. Տէր իմ արքայ, որովհետև տե[սի զեր]եսս քո, տրտմու յիս ոչինչ է, այլ ուրախութիւն։ Եւ ասէ արքայ. [Խիկ]ար, երթ ի տուն քո և դարմանայ զանձն քո յաւուրս [քառաս]ուն։*

*Յայնժամ գնացի տուն իմ, և դարձաւ սիրտ [ի յ]իս և եկի առաջի արքային։ Խաւսել սկսաւ արքայ և [ասէ]. Խիկար, լուեալ է քո, եթէ եգիպտացիքն ինչ յղեցին [առ մեզ]։*

230բ ‖ *Եւ ասեմ ցարքայն. Իբրև լուան, եթէ ես մեռայ և զտեղի իմ չէ լից ոք, վասն այնորիկ փախեան ամենեքեան ի զաւռետ և վասն որոյ առաքեաց առ քեզ փարաւոն արքայ։ Հոգս մի՛ լիցի քեզ, զի ես երթայց առաջի փարաւոնի և պատասխանի տաց նմայ և զհարկն եգիպտացոցն բերից քեզ։*

*Եւ իբրև լուաւ զայս արքայ, յոյժ ուրախ եղև և պարգևս մեծայմեծս ետ ինձ և զիս և զԱբուսմագ ընկեր իմ բազմեցուց ընդ իւր։*

*Եւ ի լինել առաւօտուն, առաքեցի առ Աբեստան կին իմ և ասեմ. Հրաման տուր բերել Բ ձագս արծուոյ և տուր մանել պարան Բ յերկայն և հրաման տուր հիւսանցն, զի տաշեսցեն և յօրինեսցեն կու[պ]այս Բ փայտեղէնս և առ քեզ մանկունս տարեղէնս և ստընդիացի[2] կանայս Բ, որ ուսուցանեն զմանկունս և այսպէս ասեն. Կաւ, ծեփ, աղիւս յաւերայք հանեք, ճարտարքս պարապ են։ Եւ ա[պ]այ, զամենայն, զոր ինչ պատուիրեցի, արար[3] վաղվաղակի, զի քաջ իմաստուն էր։*

*Եւ հրաման ե[տ] արքայ, և առի զաւրս իմ, որ ընդ իս, և գնացի։ Եւ իբր[եւ] հասի ես յօթևանսն առաջինսն, հրաման ետու զաւ[րաց] բանակել։*

*Եւ հանի զմանկունսն և պնդեցի ի վերայ [արծ]ուացն և արկի առասանս ընդ ոտս նոցայ։ Թռա[ն արծու]ին և վերացան ի յերկինս, և սկսան մանկունսն, որ պ[ատուիրեալ] էր զնոսայ։*

---

[1] *Ձեռագրում այս բառը կրկնված է։*

[2] *Ձեռագրում՝* ընընդիացի:

[3] *Ձեռագրում՝* առայ:

Եւ իբրև հասի ես յԵգիպտոս, չոգայ [առ դուռ]ն փարաւոնի[1] և ասեմ. Յիմացուցէք արք արքայ[ին], թէ զայրն, զոր խնդրեցեր ի Սենեքարիմայ արքա[յէն, արդ] առաքեաց։

231ա Եւ արքայն փարաւոն հրաման ետ, և ես ասեմ. ‖ Բերեալ եմ ճարտարք, որ շինեն դարպաս յօդս։ Եւ ասէ փարաւոն. Զի՞նչ պէտք են ճարտարացն ի պէտս դարպասին։ Եւ ես ասի. Բերել տուր կաւ, ծեփ, աղիւս։ Եւ նոքա բերին։

Եւ գնացի կապեցի զԲ տղայն ի վերա Բ արծուց ձագին և թռուցի յօդն։ Եւ տղայքն աղաղակելով կանչէին, թէ բերէք կաւ, ծեփ և աղիւս բերէք, որ շինիմք դարպաս։ Եւ ոչ ոք կարէր հանել ինչ ի վեր։ Եւ ես առի գաւազան և ծեծեցի զօրքն փարաւոնի։ Եւ նոքա փախեան և անկան ի դարպասն փարաւոնի։ Եւ ելեալ փարաւոն, ետես զձագս արծուոց և զձայն տղայոցն և զարմացաւ յոյժ։ Եւ եմուտ ի դարպասն և ասէ իւր մտին, թէ սա շատ իմաստուն է քան զԽիկար։ Եւ ոչ գիտէր, թէ Խիկար է։ Եւ ասէ թագաւորն. Ստոյքն ասա ինձ թէ ով ես դու։ Եւ ես ասի, թէ Խիկարն եմ։ Եւ ասէ փարաւոն. Ով թշուառական, կենդանացա՞ր։

Եւ ասէ փարաւոն. Ով Խիկար, զինչ որ ասեմ կատարեայ։ Եւ ասէ. Զի՞նչ է ան սիւնն ի վերա սնի[2], մայրք ԲԺնի վերա մայրից, անիւք Լ ի վերա անւից, սուրհանդակ եր[կուք՝], մինն՝ սև և մին՝ սպիտակ։ Ասէ Խիկար. Սիւնն տարին է, ԲԺն մայրքն ամիսք տարւոյն, Լ անիւքն աւուրք ա[մսոյ]ն են, Բ սուրհանդակքն՝ տիւ և գիշերն։

Եւ փարա[ւոն] ասէ. Մանեա ինձ պարան յաւազէ։

Եւ երթալ ծա[կեցի] զորմն պատին դէմ արեգական, որ տանէր ոլոր, [ոլոր] ծագն ի ներս։ Եւ ես կանչէի, թէ կծկեցէք շուտ[ով]։

231բ ‖ Եւ զահի հարեալ փարաւոն, ապուշ մնայր։

Եւ յայնժամ փարաւոն պատուեաց զիս և ետ ինձ բազում խլաթս և զհարկ թագաւորին իմոյ։

Եւ ողջունեցի զփարաւոն և ելեալ գնացի առ թագաւորն իմ Սինեքարիմ և անկայ առ ոտս նորայ և համբուրեցի։ Յայնժամ ուրախացաւ արքայն, յորժամ և ասէ. Խիկար, զի՞նչ խնդրես յինէն, որ տաց քեզ։ Եւ ես ասեմ. Իմ խնդիրքն այն է ի քէն, որ զՆաթան զքեռորդին իմ, որ է ինձ որդեգիր և աշա-

---

[1] Հավանաբար պետք է լինի արքայից:

*կերտ է, տայս ի չիս, զի այլ ուսումն կայ պակաս, որ զայլն այլ ուսուցանեմ, որ լինի կատարեալ։ Զառաջին խրատն իմ ոչ պահեաց ի մտի, զոր ուսուցի քաղցրութեամբ, հիմի ուսուցանեմ դառնութեամբ։*

*Եւ ասէ թագաւորն. Զինչ որ քո կամքն է, զայն արայ։*

*Եւ ես առեալ զնաթան երկաթի կապանօք, տարա ի տունս իմ և եդի ի պարանոց նորա Շ լիտր երկաթս և յանձնեցի զնա ի Բելիար ծառայն իմ և ետու թուխթ և թանաք և ասեմ. Յելանելն իմ և ի մտանելն իմ, զինչ որ ասնեմ, զամէն գրեալ Նաթանայ։*

*Նախ և առաջին զարկի Ռ բիր ի թիկունս և ասէ թէ.*

*1. Մարդոյ, որ ականջն չլսէ, ի թիկունս ծեծելով լսեցուցանել պարտ է։*

*Հաց և ջուր կշռով տայի, որ ո՛չ մեռանէր և ո՛չ ապրէր։*

*2. Որդեակ Նաթան, յաթոռ փառաց նստուցի զքեզ, և դու [յա]թոռոյ իմոյ ընկեցեր և կործանեցեր զիս։*

*Խաւսեցաւ [Նաթան] և ասէ. Զի՞ ոխացար ընդ քեռորդոյ քում։*

*Եւ ես ասեմ.*

*3. Որդեակ, եղեր ինձ որպէս կարիճ, որ եհար զասեղն։ [Եւ աս]եղին խաթոցն չար է, քան զքոյդ։ Դարձեալ ե[հար] զթաթ ուղտուն, և նա հարեալ զթաթն ի վերա [կարճ]ին և սատակեաց զնա։*

232ա *Եւ դարձեալ եղար որպէս || վայրենացեալ եզն, որ զտիրոջն արկցէ զվարքն և վիրաւորի իւր ոտքն։*

*4. Որդեակ, եղեր որպէս այծն, որ ուտէ զտորունն*[1]*, և ես կենդանութեանս ուտեմ զքեզ, թող յետոյ հանեն զտակն քո և ներկեն զմորթս իմ։*

*5. Որդեակ, եղեր ինձ այն, որ ձգեաց նետ յերկինս, թէպէտ ոչ կարաց հասուցանել, զանօրէնութիւն շահեցաւ։ Եւ դարձաւ նետն ի գլուխն իւր։ Նոյնպէս և դու կամեցար սպանանել զիս, այլ անմեղութիւն իմ ապրեցոյց զիս։*

*6. Որդեակ, եղեր ինձ որպէս այրն այն, որ դողայր ի ցրտոյն և այլումն բերեալ պաղ ջուր, լնոյր ի վերա նորա։*

*Դու նոյնպէս կարծէիր զտեղի նորա լնում, բայց*[2] *իցէ ագի խոզին Թ կանգուն երկայն, զտեղի ձիոյն ոչ կարէ լնուլ։*

---

[1] *Ձեռագրում՝* զպարիւնն։

[2] *Ձեռագրում՝* բաց։

7. Որդեակ, եղեր ինձ առչն, որ հանդիպեցաւ իշոյ միոյ[1] և ասէ. Ողջոյն քեզ։ Ասէ էշն. Այդ ողջոյնդ ի յիմ տիրոջն պարանոցն, որ զիս արձակեաց ի մորէն, որ քեզ հանդիպեցայ և տեսի զքո գեշ երեստ[2] չար։

8. Որդեակ, եղեր ինձ որոգայթ, որ թաղեալ կայր յաղբիսն։ Եւ եկ ճնճղուկն ասէ. Զի՞նչ գործես։ Ասէ ակնատն. Ա[ղօ]թս առնեմ առ աստուած։ Ասէ ճրնճղուկն. Զի՞նչ է ի բերանդ։ Ասէ ակնատն. Քաղցելոց հացիկ է։ Եւ վազեաց ճրնճըղուկն առնուլ զհացն յա[կնա]տէն, և անկաւ ակնատ ի վիզ ճրնճղկին։ Եւ [ասէ] ճրնճղուկն. Քաղցելոց հացն այդ է, ապա
232բ ա[յդ]||պէս լսէ աստուած աղօթից քոց։

9. Որդեակ, եղեր որպէս շունն, որ եմուտ ի հնոցն բրտին և յորժամ տաքցաւ, և սկսաւ հաչել յերես բրտին։

10. Որդեակ, եղեր դու որպէս զան ագահ շուն, որ ունէ հաց մի ի բերանն և երթայր յեզր գետոյն։ Եւ տես շուն մի այլ ի մէջ գետոյն և հաց մի բերանն և ձգեաց զիւր հացն ի բերանոյն և անկաւ ի ջուրն, զի առցէ զայնոր հացն, այլ ոչ շուն եգիտ և ոչ՝ հաց։ Եւ զիւր հացն շուն մի այլ առեալ գնաց։ Ինքն խեղդեցաւ ի ջուրն և զրկեցաւ ի յիւր հացէն։

Նոյնպէս եղար և դու. զիմ հացն խլեցիր և զրկեցար ի քո հացէդ։

Ասէ Նաթան. Մեղա քեզ, հայր, այլ չգործեմ զինչ գործեցի, մի՛ չարչարեր զիս և մի՛ հատուցաներ չար փոխանակ չարի։

Ասէ Խիկար.

11. Ծառ մի բուսեալ էր յեզր գետոյն և յորժամ հասանէր պտուղն, թափէր ի գետն և կորընչէր։ Եւ յորժամ մարդն եկեալ պտուղ խնդրէր և ոչ գտանէր։ Բ և Գ տարի զայս արար և ոչ շահեցաւ ի պտղոյն։ [Յե]տոյ կտրեաց զծառն և ընկէց ի ջուրն [և] ասէ. Այսչափ երախտեացս մինչև հիմա [զի՞նչ ես] արել, որ այլ համբերեմ նա զի՞նչ տի առ[նես]։

Արժան ես այդ չարչարանացդ։ Ոչ կայ [հնար] քեզ ազատիլ ի ձեռաց իմոց, մինչև մե[ռցիս]։

Ինչ մարդ բարոյն չար հատուցանէ [որպէ]ս Նաթան, պիտի կորընչի աստ և ի հանդերձեալն, ամէն։

---

1 Ձեռագրում՝ իմոյ:

2 Ձեռագրում՝ երերեստ:

# ԽՕՍՔ ԻՄԱՍՏԱՍԻՐԱՑ
# ԵՒ ԽՐԱՏՔ ՀԱՍԱՐԱԿԱՑ
## (ՏԱՐԲԵՐԱԿ Լ)

*Այս բնագիրը միջնադարյան, թերևս հայկական հողի վրա ծագած մի երկ է, որ երբեմն ընդօրինակվել է առանձին, տարբեր խորագրերով, բայց մտել է Խիկարի զրույցի խրատականքի մեջ և դիտվել իբրև նրա մի հատվածը։*

*Զրույցի հայկական խմբագրության համարյա բոլոր տարբերակներն առավել կամ պակաս չափով ներծուլել են այս աղբյուրը։*

*Մենք այն հրատարակում ենք զրույցի բնագրից անկախ ընդօրինակությունների հիման վրա։*

*Ընդգրկում է 14 միավոր։ Համառոտագրում ենք* L *տառանիշով։*

*Բնագրի համար հիմք է ծառայել* $L_1$*-ը (Մատենադարանի ձեռագիր № 4724)։*

*Բնագրի հետ համեմատվել են զրույցի բոլոր տարբերակների զուգահեռները և արտահայտվել տողատակերում։*

*Ուղղումներ թույլ են տրված միայն* L *խմբի ընթերցումներով։*

B *տարբերակի զուգահեռները կազմում են չափազանց մեծ թիվ, գրեթե ծածկում* L *բնագիրը, ուստի չկրկնելու համար և ընդունելով, որ Խիկարի զրույցին անհարազատ է, չենք տվել* AB *տարբերակի մեջ։*

*Զրույցի ընթերցումներն արտահայտում ենք տարբերակներում կիրառված միևնույն համառոտագրություններով։*

*Բնագրի աղբյուրները և խրատների համադրական աղյուսակը տես գրքի վերջում (աղյուսակ IX)։*

$L_{14}$*-ն ունի հավելյալ խրատներ։ Տեղադրել ենք բուն շարքի վերջում, տարբերել աստղանիշով (*)։ Նախ տրված է բնագրի, ապա՝ փակագծի մեջ, հավելյալ խրատը պարունակող օրինակի* ($L_{14}$) *հերթական համարը։*

*Խրատների տարընթերցվածները տալիս ենք յուրաքանչյուր միավորից հետո, ինչպես* AB *բնագրում։*

## ԽՕՍՔ ԻՄԱՍՏԱՍԻՐԱՑ ԵՒ ԽՐԱՏՔ ՀԱՍԱՐԱԿԱՑ

*1. Որդեակ, նախ ի լեզուէ քումմէ երկիցես, որպէս յօտար թշնամւոյ, զի ոչ գիտես յորում ժամու ածէ ի վերայ քո չարիս։*

1. $L_{14}$ *իբրեւ ի* փխ *որպէս,* $D_{1-5}$ չիք՝ *նախ,* $L_{13}$ $B_{3-5,12,19}$ *երկիր,* $L_{4,9,11}$ $D_6$ *զգուշացիր* ($L_9$ *զգուշ կացէր)* փխ *երկիցես,* $L_{4,9-12}$ $B_{1-24}$ *գիտես թէ,* $B_{1-24}$ *յորժամ* ($B_9$ *յորում ժամու,* $B_{12,18,19}$ *երբ),* $D_5$ *յորժամու,* $B_{18}$ *զի զու,* $B_{1-24}$ $D_{1-6}$ *որպէս յօտարէ երկիցես* ($B_{4,5,18}$ *երկիցես որպէս յօտար թշնամւոյ,* $D_{1-6}$ *երկընչիցես),* $E_{1-6}$ *որդեակ ի լեզւէ քումմէ վախեցիր քան զաւտար թշնամոյն զի ոչ գիտես թէ յորժամ զայթակղեցուցանէ զքեզ լեզու անմիտ և արբեցողի որպէս նետ ի լարս աղեղան զայլ ոք ոչ կարէ հարկանել այլ հանապազ ըզգըլուխս ծեծէ* ($E_2$ *է ի չար* փխ *ի լարս, զայլս քո,* $E_{4,5}$ *նետ է),* Fa,b *որդեակ ի լեզուէ քումմէ վախեցիր քան զօտար թշնամւոյ զի այլ ոք ոչ կարէ հարկանել զքեզ եթէ ոչ զնա* (Fb *երկնչիր* փխ *վախեցիր, այնչափ վնասել* փխ *հարկանել, նա* փխ *զնա),* $L_7$ *և զգոյշ լեր յանպատաշաճ խաւսից զի լեզու անմտին որպէս նետ ի քիմս աղեղան է այլ զգլուխ թեև զայլ ոք ոչ հարկանէ այլ զգլուխ իւր ծեծէ* փխ *զի ոչ-չարիս,* $L_{14}$ *թէ յորում աւուր ածէ չար ի վերայ քո* փխ *յորում-չարիս։*

*2. Որդեակ, լեզու անմտի և արբեցողի որպէս նետս ի քիմս աղեղան, թէև զայլ ոք ոչ հարկանէ, այլ զգլուխ իւր հանապազ ծեծէ։*

2. $B_{1-24}$ $D_{1-6}$ $L_2$ *անմտին և արբեցողին* ($B_3$ *անմտի և արբեցողի),* $B_{1-24}$ $D_{1-24}$ չիք՝ *նետս,* $B_{1-24}$ $D_{1-6}$ *զքիմս աղան է* փխ *ի քիմս աղեղան թէև* ($B_{18}$ *աւղան* փխ *աղեղան,* $B_{4,5}$ *զքիմք,* $B_{18}$ *ի քիմս),* $B_{1-24}$ $D_{1-6}$ *կարէ հարկանել,* $L_4$ *և* փխ *թէև, ոչ կարէ,* $L_{4,5,9-12}$ չիք՝ *հանապազ,* $B_{18}$ *զգլխովն,* $L_8$ *ծիծէ* փխ *ծեծէ,* $L_{14}$ *ի լեզուանոյ և յանմտէ և յարբեցողէ փախիր զի որպէս նետք ի քիմս աղեղան են և զայլ ոք ոչ կարեն հարկանել այլ հանապազ զգլուխս իւրեանց ծեծեն* փխ *լեզու-ծեծէ,* E խմբում խրատը ձուլվել է նախորդին, $L_7$-ում՝ նույնպես:

*3. Որդեակ, լաւագոյն է թշնամութիւն ունել ընդ առն իմաստնոյ, քան թէ ընդ առն անմտի և լեզուայնոյ բարեկամութիւն։*

3. $L_{9-12}$ $B_{1-24}$ $E_{1-6}$ Fa,b *լաւ է քեզ* ($L_{9-12}$ $B_{4,5}$ Fa $E_{1-6}$ *լաւագոյն,* Fb չիք՝ *քեզ*), $B_{1-24}$ $E_{1-6}$ Fa,b չիք՝ *ունել,* $L_7$ *լաւագոյն է ունէք,* $L_8$ չիք՝ *ընդ,* $B_{1-24}$ $E_{1-6}$ Fa,b *սիրելութիւն ընդ առն անմտի և լրբի* ($B_{2,6-8,10,12,15,19}$ *զբարեկամութիւն,* $E_2$ Fa,b չիք՝ *և լրբի,* $E_{1,3-5}$ *անմիտ մարդոյ*) փխ *թէ-բարեկամութիւն,* $L_{4,9-12}$ *սիրելութիւն* փխ *բարեկամութիւն* $L_5$ *սիրայիութիւն* փխ *բարեկամութիւն* $L_{9,11}$ չիք՝ *առն* (II), $L_7$ *քան թէ սիրելութիւն ընդ առն անմտի լեզուայնոյ և բարկացողի* փխ *քան թէ-բարեկամութիւն։*

*4. Որդեակ, զայր անմիտ և արբեցող մի՛ առաքեր պատգամաւոր, զի ուզելովն քեզ բարիս ոչ հանդիպի, այլ բազում չարիս ածէ ի վերայ քո անմտութեամբն իւրով։*

4. $B_{13}$ *և բարկացող,* $L_4$ *քան զբարիս* փխ *քեզ բարիս,* $B_{1-24}$ *պատգամաւոր մի յուղարկեր և բարէխօս քանզի ոչ կամենա զբարիս գործել այլ բազում չարիս ածէ ի վերայ քո* ($B_{6,7,12,19}$ *զուգեր* փխ *յուղարկեր,* $B_9$ *այլ գչար և ածէ ի վերա քո բազում չարիս,* $B_{18}$ *կամէ,* $B_{12,19}$ *կարէ նա* փխ *կամենա*) փխ *մի-իւրով,* $D_{1-6}$ *պատգամաւոր մի ուղարկեր կամ բարէխօս թէ ոչ բազում չարիս ածէ ի վերա քո անպիտան խօսիւք* փխ *մի-իւրով,* $E_{1-6}$ Fa *ի բան մի զրկեր զի թէ ուզես այլ բազում չարիս ածէ ի վերա քո* (Fa *և թէ կուզես որ բազում չարիս ածէ ի վերա քո ուղարկեա*) փխ *մի-իւրով,* Fb *ի գործ ինչ մի առաքեր զի բազում չարիս ածէ ի վերայ քո* փխ *մի-իւրով։*

*5. Որդեակ, այր անմիտ և արբեցող լաւ է քեզ թշնամի, քան սիրելի։*

*Եւ ի խորհրդոց քոց հեռի կացո զայր անմիտ։*

5. $B_{1-24}$ *լաւ է նա* ($B_9$ չիք՝ *նա*), $B_{1-24}$ *քան թէ,* $L_{4,9,11}$ *կացցէ,* $L_9$ չիք՝ *զայր անմիտ,* $B_6$ *լաւ է քեզ թշնամի սիրելի քան թէ բարեկամ արբեցող և անմիտ* փխ *այր-սիրելի,* $B_7$ *լաւ է քեզ թշնամութիւն առն անմտի և արբեցողի քան թէ սիրելի և խորհրդակից լինել ընդ նմա* փխ *լաւ է քեզ-անմիտ,* $B_{1-24}$ *արա զնա* փխ *կացո զայր անմիտ,* $L_4$ չիք՝ *զայր անմիտ։*

*6. Որդեակ, անմտին խրատն այնպէս է, որպէս փոշի ցանես ի վերայ հողմոյ, կամ ի վերայ յարուցեալ գետոյ։*

6. $L_{9,11}$ *ի հողմ* փխ *ի վերայ հողմոյ,* $B_{1-24}$ *եթէ անմիտին խրատ տաս նմա* փխ *անմտին խրատն,* $B_3$ *այսպէս թուի* փխ *այնպէս է որպէս,* $L_7$ *թէ զանմիտն խրատես* փխ *որդեակ անմտին խրատն,* $B_{1-24}$ չիք՝ *ի վերայ հողմոյ,* $B_{18}$ *որպէս ցանես ի վերա յարուցեալ գետոյն ալիւր* փխ *որպէս-գետոյ,* $B_{12,19}$ *ելման* փխ *յարուցեալ,* $D_{1-6}$ *յորժամ անմտին խրատ տաս համա-*

րեա թէ փոշի ցանեցեր ի վերա յարուցեալ գետոյ, $E_{1-6}$ թէ անմըտին խրատ տաս այնպէս է քո խրատն որպէս թէ ոք փոշի ցանէ ի վերայ գնացման գետոյ ($E_{1,3}$ եւման), $Fa,b$ անմիտ մարդոյ խրատ տալն այնպէս է որպէս թէ ոք փոշի ցանէ ի գնացման գետոյ։

*7. Որդեակ, չարն իմաստնոյն և գիտնակին որպէս փաթերակ գայ, իսկ անմիտն յամենայն ժամ չարիս բերէ անձին իւրում։*

7. $E_{1-6}$ չիք՝ և գիտնակին, $L_{2,3,4,7,9-13}$ գիտնականին փխ գիտնակին, $L_7$ չիք՝ որդեակ, $L_{5,7,9,10,12,13}$ $E_{1-6}$ գայ ի ժամանակի, չար ուգէ փխ չարիս բերէ, $L_{4,9,11}$ չիք՝ անձին իւրում։

*8. Որդեակ, զայր լեզուային և ամբարտաւան մի՛ համարձակեցուցաներ ի տուն քո, զի մի և դու ի գործոց նորա ամօթով լիցիս։*

8. $L_{14}$ $B_{1-24}$ $D_{1-6}$ ամբարհաւաճ, $E_{1-6}$ չար անմիտ և լեզուանի և ամբարհաւաճ մարդ ի տուն քո մի տանիր, $L_7$ ընդ առն անըզգամի և լեզուայնոյ մի յարեհար, $E_{1-6}$ չիք՝ մի և դու, $D_{1-1}$ ամօթ կրեսցես։

*9. Որդեակ, եթէ վայելեցես զամենայն կեանս աշխարհիս, զօր մահուան քո մի՛ մոռանար, այլ հանապազ ի միտ կալ, թէ մեռանելոց եմ։*

9. $B_{1-24}$ $D_{1-5}$ վայելեսցես ի բարութեան ($B_{18}$ ի բարութենէ, $B_{12,19}$ վայելեսցես զամենայն բարութիւնս ի), $D_{1-6}$ կեանս քո, $L_4$ վասն մահու որդեակ, աշխարհիս սախըն, $B_6$ աշխարհիս ապա, $B_{1-24}$ այլ յիշեա հանապազ ($B_{2,3,6,8,10,12,15,19}$ չիք՝ այլ յիշեա հանապազ) փխ այլ-եմ, $D_{1-6}$ ի միտ կալ թէ մեռանելոց եմ, $E_{1-6}$ $Fa,b$ որդեակ թէ լինիս տէր աշխարհիս զմահ քո մի մոռանար յամենայն ժամ ($E_{2,4,5}$ $Fa,b$ չիք՝ յամենայն ժամ, $Fb$ մոռանար և որչափ մեծութեան հասանիս այնքան ի խոնարհութեան կալ զանձն քո) փխ որդեակ-մեռանելոց եմ, $L_7$ բարութիւն փխ կեանս, $L_{14}$ զմահ քո մի մոռանար փխ զօր-մեռանելոց եմ։

*10. Որդեակ, նստելով առ գերեզմանի ընկերի քո, յիշեսցես անդ և ասասցես ի մտի քում, թէ և՛ ինձ պատրաստ է այս։ Եւ արտասուեա վասն մեղաց քոց։*

10. $L_{4,11}$ տեսցես և յիշեսցես և ասիցես, $L_9$ տեսցես փխ յիշեսցես անդ և ասասցես, $L_{4,8,9,11}$ և բազմութիւն ստացուածոց քոց փխ վասն մեղաց քոց, $A_5$ $B_{1-24}$ որդեակ նայելով նայեաց ի գերեզմանս ընկերի քո և զմահ քո յիշեա և արտասուեա ($A_5$ $B_3$ և դու, $B_{9,17}$ նայեսցես, $B_{18}$ հայեա, $A_5$ նայեա), $D_{1-6}$ որդեակ հայելով հայեսցես ի գերեզման ընկերին քո և յիշեսցես զի և դու նման նմա լինելոց ես, $L_{14}$ յորժամ հայիս ի գերեզմանս ընկերի քո զմահ քո յիշեա և ատեա զբազմութիւն ստացուածոց քոց փխ նստելով-քոց։

2. Անխորագիր

Սկիզբ՝ [Ես՝] *Մխիթար, դպիր Սեննեքարիմ արքայի, բատացայ ինձ ծառայ...։*

*Հռոմի Լևոնյան վարժարանի ձեռագիր № 36 (103), Աղոթագիրք, 1728 թվից առաջ, էջ 63ա—68ա։*

*(Տես Ցուցակ Հայերէն ձեռագրաց Հռոմի Հայոց Հիւքանոցի ի ս. Վլաս և Լևոնեան Հայ վարժարանի, կազմեց Հ. Ներսէս Վ. Ակինեան, Վիեննա, 1961, էջ 68)։*

3. Խաւք եւ խրատք եւ իմաստութիւն Խիկար իմաստնոյ

Սկիզբ՝ *Յամս Սենիքարիմայ Նինուէի և Ասորեստանեաց՝ Ես Խիկարս դպիր էի Սենիքարիմայ արքայի. Կ. կին արարի եւ Կ. ապարանս շինեցի...*

Վերջ՝ *Եւ այս էր խրատն զոր ուսուց Նայ քեռորդոյն իւրոյ Խիկարն։ Եւ այս[պիսի] ինչ էր բանք պիտանի եւ խրայտական, զայս գրեցի ի թղտիս եւ զանպիտան ոչ գրեցի, զի լսողացդ դիւրվի եւ որ հոգէոր խրատն ոչ ընդունի, զմարմնայորս տեսանէ եւ արասցէ նայ հոգոյն և մարմնոյն շահ լինի։*

*Կիպրոսի հայերեն ձեռագիր № 12 (55), ժողովածու, ԺԵ դար, էջ 166ա—176բ։*

*(Տես Ցուցակ Հայերէն ձեռագրաց Նիկոսիայի ի Կիպրոս, կազմեց Հ. Ներսէս Վ. Ակինեան, Վիեննա, 1961, էջ 46)։*

4. Պատմութիւն եւ խօսք Խիկարայ իմաստասիրի

Սկիզբ՝ *Յամի Սենեքերիմայ արքայի Ասորեստանեայց...*

*Սեբաստիայի Ս. Նշան վանքի ձեռագիր № 230, ժողովածու, 1628 թ., էջ 332—354։*

*(Տես Ցուցակ Հայերէն ձեռագրաց Ս. Նշան վանուց ի Սեբաստիա, կազմեց Թորգոմ Արքեպիսկ. Գուշակեան, Վիեննա, 1961, էջ 118)։*

5. Խրատ Խիկարայ իմաստնոյ

*Թավրիզի ձեռագիր № 18, ժողովածու, ԺԸ դար, էջ 187բ—195ա։*

*(Տես Ցուցակ Հայերէն ձեռագրաց Թավրիզի, կազմեց Հրաչեայ Աճառեան, Վիեննա, 1910, էջ 88—89)։*

6. Խրատք Խիկարայ

*Նկարագրության մեջ չի նշված լրիվ վերնագիրը։ Թվում է շարքի մեջ, այսպես. «Սուրբ գրքից կտորներ՝ գրաբար կամ աշխարհաբար թարգմանությամբ, Խրատք Խիկարայ, Ջինու Մաչին քաղաքներն և այլն»։*

*Թավրիզի ձեռագիր № 46, ժողովածու, 1880 թ.*

*(Տես Հ. Աճառյանի ցուցակ, էջ 110)։*

7. Պատմութիւն Խիկարայ

Սկիզբ՝ *Յաւուրս Սենէքերիմայ արքային Ասորեստանի, ես Խիկարս դպրապետ էի նորա, 60 կին առի և 60 ապարան շի[նեցի],— Պահպանվել է միայն այս երկտողը։ Հաջորդ թուղթն ընկած է։*

*Արմաշի վանքի ձեռագիր № 199, Գիրք հարցմանց, 1642 թ., էջ 117բ։*

*(Տես Հ. Թոփճեան, Ցուցակ ձեռագրաց Արմաշի վանքին, Վենետիկ, 1962, էջ 382)։*

8. Պատմութիւն և խրատք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ և ի միտ առնուլ ամենայն մարդոյ վասն շահի և աւգտութեան

Սկիզբ՝ *Յամի Սենիքարիմայ արքայի Ասորեստանեայց...*

Վերջ՝ *Եւ որ կատարէ զխրատս զայս, նա իմաստուն եղիցի և փառաւոր ի մէջ մարդկան։*

*Երուսաղեմի Ս. Հակոբյանց վանքի ձեռագիր № 473, էջ 164ա—173բ։*

*(Տես Մայր ցուցակ ձեռագրաց Սրբոց Յակոբեանց, հտ. 4, կազմեց Ն. Պողարեան, Երուսաղէմ, 1956, էջ 209)։*

9. Պատմութիւն և խրատք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ և ի միտ առնուլ ամենայն մարդոյ վասն շահի և աւգտութեան

Սկիզբ՝ *Յամին Սենեքերիմայ արքայի Ասորեստանեայց և Նինուէի, ես՝ Խիկար, դպիր Սենեքերիմայ արքայի։*

*Վիեննայի Մխիթարյան մատենադարանի ձեռագիր № 976, ժողովածու, 1613—1623 թ., էջ 158ա—201բ։*

*(Տես Ցուցակ հայերէն ձեռագրաց Մխիթարեան մատենադարանին ի Վիեննա, կազմեց Հ. Ոսկեան, 1963, էջ 562, հտ. Բ)։*

*10.* **Պատմութիւն և խրատք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ, ի միտ առնուլ ամենայն մարդոց վասն շահի և ազատութեան**

**Սկիզբ՝** *Յամի Սենեքարիմ արքայի Ասորեստանեայց և Նինուէի ես՝ Խիկար, դպիր Սենեքերիմ արքայի։*

**Վերջ՝** *Եւ յորժամ նայիս ի գեղեցկութիւն ծառոյն, հաշակես ի պտղոյն դառնութեան և տրտմութեամբ բաց դարձուցանես զերեսս քո ի նմանէ։*

*Վիեննայի Մխիթարյան մատենադարանի ձեռագիր № 977, ժողովածու, 17—18 դ., էջ 75ա—96բ։*

*(Տես Հ. Ոսկյանի ցուցակ, էջ 563)։*

*11.* **Խրատք և իմաստութիւն ասացեալ է Խիկարայ**

*Մի հին տպագրության թերի օրինակ, որ կցվել է ձեռագրին։*

*Վիեննայի Մխիթարյան մատենադարանի ձեռագիր № 524։*

*(Տես Հ. Տաշյանի ցուցակ, էջ 996)։*

*12.* **Խօսք խրատ Խիկարայ իմաստնոյ, զոր ետ քրոջ որդւոյն իւրոյ Նաթանայ**

*Սկզբից թերի է, մուտք չունի։*

**Սկիզբ՝** *Որդեակ, թէ լսես խօսք ի դուռն թագաւորաց և իշխանաց կամ մեծամեծաց, պահեա և մեռո ընա ի սրտի քում։*

**Վերջ՝** *ինչ մարդ որ բարոյն չար հատուցանէ իբրև զնաթան, պիտի կորնչի աստ և ի հանդերձեալն։*

*Վենետիկի Մխիթարյան մատենադարանի ձեռագիր № 240, ժողովածու, ԺԵ—ԺԶ դ. էջ 170ա—175ա։*

*(Տես Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, յօրինեց Հ. Բարսեղ Սարգիսեան, հտ. 2, Վենետիկ, 1924)։*

*13.* **Անխորագիր**

**Սկիզբ՝** *...ումեք ի վեր հանիցես։ Չկապանքն կնքեալ մի արձակեր և զարձակեալն մի կապեսցես։*

**Վերջ՝** *և որ փորէ խորխորատ, ինքն անկանի ի նմա, և կատարի բարին ի բարի և չարն ի չար։ Յայս վայր կատարեցաւ Խիկարն ի բարին, և Քրիստոսի մարդասիրին փառք յաւիտեանս, ամէն։*

*Վենետիկի Մխիթարյան մատենադարանի ձեռագիր № 263, ժողովածու, 1628 թ., էջ 5ա—24բ։*

*(Տես Բ. Սարգիսյանի ցուցակ, հտ. 2, էջ 831)։*

**14. Խօսք և խրատ Խիկարայ իմաստնոյ, զոր ետ քրոջ որդւոյն իւրոյ Նաթանայ**

*Մուտք չունի։*

Սկիզբ՝ *Որդեակ, թէ լսես խօսք ի դուռն թագաւորաց և իշխանաց կամ մեծամեծաց, պահեա և մեռո զնա ի սրտի քում։*

Վերջ՝ *ինչ մարդ, որ բարոյն չար հատուցանէ, իբրև զՆաթան, պիտի կորնչի աստ և ի հանդերձեալն։*

*Վենետիկի Մխիթարյան մատենադարանի ձեռագիր № 277, ժողովածու, 17-րդ դար, էջ 55ա—72բ։*

*(Տես Բ. Սարգիսյանի ցուցակ, հտ. 2, էջ 936)։*

**15. Խրատք իմաստութեան Խիկարայ իմաստասիրի, զոր խրատեաց սովաւ իմաստունք զորդիս և բարեկամս իւրեանց**

Սկիզբ՝ *Յամս թագաւորութեանն Սենեքերիմա Նինուէի յԱսորոց ես՝ Խիկարս, դպիր էի Սենեքերիմա արքային...*

Վերջ՝ *Մինչև ցայս վայր կատարեցաւ Խիկարս ի փառս Քրիստոսի աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

*Վենետիկի Մխիթարյան մատենադարանի ձեռագիր № 283, ժողովածու, 1601 թ., էջ 462բ—476բ։*

*(Տես Բ. Սարգիսյանի Ցուցակ, էջ 994—995)։*

**16. Պատմութիւն և խօսք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ և ի միտ առնել ամենայն մարդոյ, վասն շահի և աւգտութեան**

Սկիզբ՝ *Յամի Սենեքերիմ արքայի Ասորեստանեաց և Նինուէի ես՝ Խիկար, դպիր Սենեքերիմ արքայի...*

Վերջ՝ *Յայնժամ ասէ Խիկար. Որ բարի առնէ բարոյ հանդիպի և որ փորէ խորխորատ ընկերին՝ անձամբն իւր լնու, որ սիրէ զչար ատելի բազմացն է և որ զհետ երթայ բարեաց՝ ժառանգէ զնա աստուած։*

*Վենետիկի Մխիթարյան մատենադարանի ձեռագիր № 289, ժողովածու, 1595 թ., էջ 137ա—173ա։*

*(Տես Բ. Սարգիսյանի ցուցակ, հտ. 2, էջ 1034)։*

17. Խրատք խիկարայ ասացեալ, խրատ եւ ողջէգիր Նադանայ և ասաց

Սկիզբ՝ *Որդեակ, թէ լսես խօսք ի տուն թագաւորաց և իշխանաց և մեծամեծաց, պահեա և մեռեա զնա ի սրտի քում...*

Վերջ՝ *Եւ ես ասեմ. Որդեակ, որ բարի առնէ, բարի գտանէ և որ այլոց խորխորատ փորէ, խորխորատն ինքն անկանէ ի նմայ։ Կատարի բարին ի բարի և չարն ի չար։ Մինչև ցայս վայր կատարեցաւ խիկար։*

*Վենետիկի Մխիթարյան մատենադարանի ձեռագիր № 317, ժողովածու, 1696 թ., էջ 152բ—170բ։*

*(Տես Բ. Սարգիսյանի ցուցակ, էջ 1305)։*

18. Խօսք խիկարայ իմաստնոյ, ասացեալ խրատական բանք

Սկիզբ՝ *Յամս Սենեքերիմայ, Նինուէի և Ասորեստանեաց արքայի, ես՝ խիկար, դպիր էի Սենեքերիմայ արքային...*

*Երուսաղեմի Ս. Հակոբյանց վանքի ձեռագիր № 542, Հին կտակարան, 1656 թ., էջ 371ա—379ա։*

*(Տես Ն. Պողարյանի ցուցակ, հտ. 5, էջ 78)։*

19. Պատմութիւն և խօսք խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ և ի միտ առնուլ ամենայն մարդոյ վասն օգտութեան

Սկիզբ՝ *Յամի Սենեքարիմայ արքայի Ասորեստանեայց...*

Վերջ՝ *և որ զհետ երթա բարեաց՝ ժառանգէ զնա։*

*Երուսաղեմի Ս. Հակոբյանց վանքի ձեռագիր № 598, ժողովածու, 1699—1711 թ., էջ 85ա—98ա։*

*(Տես Ն. Պողարյանի ցուցակ, հտ. 5, էջ 78)։*

20. Պատմութիւն և խօսք խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ և ի միտ առնու[լ] ամենայն մարդոյ, վասն շահի և օգտութեան

*Երուսաղեմի Ս. Հակոբյանց վանքի ձեռագիր № 642, էջ 121—146։*

*(Տես Ն. Պողարյանի ցուցակ, հտ. 5, էջ 220)։*

*21.* Խաւսք և իմաստութիւն ասացեալ Խիկարի իմաստասիրի, զոր խրատին որդիք մարդկան և ի միտ առնուն

*Բնագիրն ընդօրինակված է Աստվածաշնչի մեջ, բայց թե որտեղ է տեղակալված, ցուցակից չի իմացվում. Հավանաբար Աստվածաշնչի գրքերից հետո։*

*Ունի փոքրիկ հիշատակագրություն՝ Մինչև ցայս վայր կատարեցաւ Խիկարս։ Գրեցաւ և խրատքս և պատմութիւնս Խիկարա[յ] իմաստութիւն ի թվին Հայոց ՋՃԿԷ (—1518), յուլիս ամսոյ ի ԺԲ (=12)։*

*Անկյուրիայի Կարմիր վանքի ձեռագիր № 44, Աստվածաշունչ, 1518 թ.։*

*(Տես Ցուցակ ձեռագրաց Անկիւրիո Կարմիր վանուց և շրջակայից, կազմեց Բաբգէն կաթողիկոս Կյուլեսերեան, Անթիլիաս—Լիբանան, 1957, էջ 274)։*

*22.* Պատմութիւն և խրատ իմաստնոյն Խիկարայ

*Անկյուրիայի Կարմիր վանքի ձեռագիր № 112, Աստվածաշունչ և այլք, 1621 թ., էջ 421—444։*

*(Տես Բ. Կյուլեսերյանի ցուցակ, էջ 573)։*

*23.* Պատմութիւն Խիկարայ դպրապետի [Աս]որեստանի, իմաստուն և խոհեմ ճարտարապետի, արարեալ առ Նաթան քեռորդին իւր, զոր պարտ է ամենայն քրիստոնէից ուսուցանել զզաւակ իւր

*Անկյուրիայի Կարմիր վանքի ձեռագիր № 281, ժողովածու, 1760 թ., էջ 394—431։*

*(Տես Բ. Կյուլեսերյանի ցուցակ, էջ 1210)։*

*24.* Խիկար

*Ցուցակում չի տրված ուրիշ այլ տեղեկություն, միայն փակագծի մեջ ավելացված է՝* Լուսանցքի վրա նշանակված գրչեն։

*Անկյուրիայի Կարմիր վանքի ձեռագիր № 291, Խրատք վարուց, էջ 107—110։*

*(Տես Բ. Կյուլեսերյանի ցուցակ, էջ 1236)։*

*25.* Խրատ Խիկարայ, զոր ասաց Նադանայ (Նաթանայ) քեռորդւոյն իւրոյ

*Բեռլինի արքայական գրադարանի ձեռագիր № 83, էջ 1—26ա։*

(*Տես* Die Handschriften-Verzeichnisse der königlichen Bibliothek zu Berlin. Zehnter Band. Verzeichniss der Armenischen Handschriften von Dr. N. Karamianz. Berlin, 1888, *էջ 65*)։

26. Խրատք Խիկարայ կամ զառանցանաց?

*Նշված է Ցուցակ ձեռագիր մատենից վերծանութեան թանգարանից յՕրթագիւղ ձեռագրում։ (Կ. Պոլիս)։ Ցուցակը գտնվում է Բեռլինի կայսերական գրադարանում։ Քարամյանի ցուցակում կրում է 99 համարը։*

(*Տե՛ս* Karamianz. Verzeichniss, *էջ 79*)։

27. Անխորագիր

*Սկզբից թերի է։ Բնագիրն առհասարակ եղծված է։*

*Վրաստանի ձեռագրերի ինստիտուտի հայերեն ձեռագիր № 228, էջ 1ա—27ա։*

*(Տես Ս. Լալաֆարյան. Ցուցակ հայերեն ձեռագրաց Վրաստանի ԳԱ Կ. Կեկելիձեի անվան ձեռագրերի ինստիտուտի (անտիպ), էջ 1329)։*

28. Խրատք Խիկարայ իմաստնոյ, զոր պարտ է զի ամենայն ճարք այսպէս խրատէն զորդիս և վարդապէտք զաշակերտեալսն:

Սկիզբ՝ *Որդեակ, եթէ լսես բան ինչ ի դրան արքունի, մեռոյ զնա և թագոյ ի սրտի քում...*

Վերջ՝ *Ասէ արմաւենին. թող զիս յայսմ ամի և ի միւսում ամ...* (ընդհատվում է):

*Բնագիրն հավանաբար ընդօրինակված է Մաշտոցի անվան մատենադարանի № 2961* (A1) *ձեռագրից։*

*Լենինգրադի Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների ինստիտուտի ձեռագիր №* A—43*։*

*Ցանկը սրանով չի սպառվում։ Անշուշտ դուրս են մնում մեր կողմից չնկատված կամ ձեռագրացուցակներ չունեցող հավաքածուների առանձին օրինակներ։ Այսպես, մի նամակով ամերիկահայ գիտնական Հ. Քյուրդյանը տեղեկացնում է, որ իր հավաքածուի մեջ կան Խիկարի ընդօրինակություններ, որոնցից հնագույնը 1525 թվականի գրչություն է՝* Պատմութիւն և խօսք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ և ի միտ առնուլ ամենայն մարդոյ վ[ա]ս[ն] շահի եւ աւգտութեան, *գրված Ալեքսանդրի Վարքից հետո Մարգարա Արճիշեցի կողմից, Խառաբաստում և մանրանկարված Գրիգոր Աղթամարցի կաթողիկոսի ձեռքով*[1]*, ինչպես նաև՝ մի այլ ձեռագիր 1682 թվականի գրչությամբ և այլն։*

---

[1] *Մի հոդվածում Հ. Քյուրդյանը նույն ձեռագրի գրչության ուրիշ տարեթիվ է նշում՝ 1526 (Տես Հանդէս ամսօրեայ, 1967, 10—12, էջ 424)։*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


*Խիկարի զրույցը և նրա աղբյուրները* . . . . . . . . . . 7
Повесть о Хикаре и ее источники . . . . . . . . . 53
La legende de Khikar et ses sources . . . . . . . . 62


### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ԽՕՍՔ ԽԻԿԱՐԱՅ ԻՄԱՍՏԱՍԻՐԻ

(տարբերակ AB)


*Պատմութիւն և խօսք Խիկարայ իմաստասիրի, զոր պարտ է իմանալ և ի միտ առնուլ ամենայն մարդոյ, վասն շահի և օգտութեան* . . . . . 75
*Խրատք Խիկարայ իմաստնոյ, զոր պարտ է գի ամենայն հարք այսպէս խրատեն զորդիս և վարդապետք զաշակերտեալսն* . . . . . . 77
*Այլ խրատք Նադանայ քուեր որդոյն իւրոյ, զոր ետ Խիկար* . . . . 119
*Պատառիկներ* . . . . . . . . . . . . . 125


### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ԽՐԱՏ ԽԻԿԱՐԱՅ ԻՄԱՍՏՆՈՅ

(տարբերակ C)


*Պատմութիւն և խրատ Խիկարայ իմաստնոյ* . . . . . . . 137
*Խօսք և խրատ և իմաստութիւն Խիկարայ. խրատն այս է Խիկարայ, զոր ուսոյց Նադանայ* . . . . . . . . . . . 140
*Հարցումն թագաւորաց որդւոց և պատասխանիք Խիկարայ* . . . . 152


### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ԽՐԱՏՔ ԻՄԱՍՏՆՈՅՆ ԽԻԿԱՐԱՅ

(տարբերակ D)


*Պատմութիւն և խրատք իմաստնոյն Խիկարայ* . . . . . . . 177


### ԽՐԱՏՔ ՊԻՏԱՆԻՔ ԵՒ ՕԳՏԱԿԱՐՔ, ԶՈՐ ԱՍԱՑԵԱԼ Է ԽԻԿԱՐԱՅ ԻՄԱՍՏՆՈՅ

(տարբերակ EF)


*Խրատք պիտանիք և օգտակարք, զոր ասացեալ է Խիկարայ իմաստնոյ* . 221


### ԽԱՒՍՔ ԽԻԿԱՐԻ՝ ԴՊՐԱՅՊԵՏԻ ԵՒ ԻՄԱՍՏՆԱՅՍԻՐԻ ՍԵՆԵՔԱՐԻՄԱՅ ԱՐՔԱՅԻ ԱՍՈՐԵՍՏԱՆԻ ԵՒ ՆԻՆՈՒԷԻ

(տարբերակ G)


*Խաւսք Խիկարի՝ դպրայպետի և իմաստնայսիրի Սենեքարիմայ արքայի Ասորեստանի և Նինուէի* . . . . . . . . 247

## ԽՕՍՔ ԻՄԱՍՏԱՍԻՐԱՑ ԵՒ ԽՐԱՏՔ ՀԱՍԱՐԱԿԱՑ

(տարբերակ L)

*Խօսք իմաստասիրաց և խրատք հասարակաց* . . . . . . 271

## ԱԼԻՄ ԽԻԿԱՐՆ ՍՈՅԼԱՏԻԿԻ ՆԱՍԱՀԱԹ

(Հայ թուրքերեն խմբագրություն)

*Ալիմ խիկարն սոյլատիկի նասահաթ* . . . . . . . . 303

## ՈՒՍԼՈՒ ԽԻԿԱՐՆԻՆԿ ՍՈԶՈՒ ԷՍԻ ԱԽԸԼԸ

(Հայ ղփչաղերեն խմբագրություն)

*Ուսլու խիկարնինկ սոզու էսի ախըլը։ Այդքանըյ տայ օկուղու քի օկուդլան-կայլար ատամ օղլանլարը։ Տայ աղայ օղլունայ օկուդ պէրկայ տայ էսի-նայ ալկայլար* . . . . . . . . . . 325

## ԱՂՅՈՒՍԱԿՆԵՐ, ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

*Աղյուսակներ* . . . . . . . . . . . 337
*Աղբյուրներ* . . . . . . . . . . . 352

Տպագրվում է Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր Մաշտոցի անվան հին ձեռագրերի ինստիտուտի «Մատենադարանի» գիտական խորհրդի որոշմամբ

*Պատասխանատու խմբագիր՝* Գ. Վ. Աբգարյան
*Հրատ. խմբագիր՝* Ժ. Մ. Աղոնց
*Նկարչական ձևավորումը՝* Ն. Հ. Խանզադյանի
*Տեխ. խմբագիր՝* Մ. Ա. Կափլանյան
*Սրբագրիչ՝* Ա. Ս. Մաթևոսյան

*ՎՖ 03313, Հրատ. 2844, Պատվեր 904, Տպաքանակ 1000*

*Հանձնված է արտադրության 10/III 1968 թ., ստորագրված է տպագրության 17/I 1969 թ., տպագրական 22,75 մամ., հրատ. 15,6 մամ., թուղթ № 1, $60\times90^{1}/_{16}$։ Գինը 1 ռ. 18 կ.։*

*Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչության էջմիածնի տպարան*

# ՆԿԱՏՎԱԾ ՎՐԻՊԱԿՆԵՐ

| Էջ | Տող | Տպված է | Պետք է կարդալ |
|---|---|---|---|
| 55 | 1 ն. | стр. 8—16. | стр. 10—18 |
| 61 | 10 վ. | 4. Сложенная о Хикаре армянская народная сказка. | տողը չկարդալ |
| 221 | 1 վ. | ԽԻԿԱՐԱՅ ԻՄԱՍՏՆՈՅ ԽՐԱՏՔ ԳԻՏԱՆԻՔ ԵՎ ՕԳՏԱԿԱՐՔ, ՋՈՐ ԱՍԱՑԵԱԼ Ի | ԽՐԱՏՔ ԳԻՏԱՆԻՔ ԵՎ ՕԳՏԱԿԱՐՔ ՋՈՐ ԱՍԱՑԵԱԼ Է ԽԻԿԱՐԱՅ ԻՄԱՍՏՆՈՅ |
| 259 | 20 վ. | առաջի քու | առաջի քո։ |
| 263 | 2 վ. | Բժնի | Բժ-ն ի |

«МАТЕНАДАРАН»
ИНСТИТУТ ДРЕВНИХ РУКОПИСЕЙ ИМ. М. МАШТОЦА
ПРИ СОВЕТЕ МИНИСТРОВ АРМЯНСКОЙ ССР

А. А. МАРТИРОСЯН

# ИСТОРИЯ И ПОУЧЕНИЯ ХИКАРА ПРЕМУДРОГО

## КНИГА II

ИЗДАТЕЛЬСТВО АН АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1972

«Մ Ա Տ Ե Ն Ա Դ Ա Ր Ա Ն»
ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ
ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

Ա. Ա. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ԽՐԱՏՔ ԽԻԿԱՐԱՅ ԻՄԱՍՏՆՈՅ

Գ Ի Ր Ք Բ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1972

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Խիկարի զրույցը բանասիրության մեջ . . . . . . . . 7
2. Զրույցի սահմանային կազմը . . . . . . . . . . 35
   *(Զրույցի շերտերը և հնագույն բնագիրը) . . . . . . . —*
   *ա. Խոսք իմաստասիրաց . . . . . . . . —*
   *բ. Չորս բանք . . . . . . . . 55*
   *գ. Խրատանի . . . . . . . . 63*
   *դ. Սուրբ Գիրք . . . . . . . . 69*
   *ե. Գրչական և խմբագրական փոփոխություններ . . . 71*
3. Հնագույն բնագրերի հարաբերությունը . . . . . . . . 80
4. Զրույցի մուտքը հայ մատենագրություն . . . . . . . . 85
   *ա. Թարգմանության ժամանակը . . . . . . . —*
   *բ. Թարգմանության սկզբնաղբյուրը . . . . . . 101*
5. Զրույցի հայրենիքը . . . . . . . . . . . . . 114
6. Նախամայրը և թեման . . . . . . . . . . . 129
7. Սլավոնական խմբագրություն . . . . . . . . . . 153
8. Ղփչաղական խմբագրություն . . . . . . . . . . 189
9. Թուրքական խմբագրություն . . . . . . . . . . 196
10. Վրացական խմբագրություն . . . . . . . . . . 202
11. Խիկարի զրույցը հայ մատենագրության մեջ . . . . . . . 209
12. Резюме . . . . . . . . . . . . . . . 236
13. Համառոտագրություններ . . . . . . . . . . 267
14. Անձնանունների ցանկ . . . . . . . . . . . . . 269

*Խիկարի (Ախիկար) զրույցը միջազգային ճանաչում ունեցող երկ է։ Այն համարվում է Մերձավոր Արևելքի հնագույն քաղաքակրթության գեղարվեստական հազվագյուտ և բացառիկ հուշարձաններից մեկը։*

*Խիկարի բնագրից բավական ընդարձակ հատվածներ են պահպանվել Էլեֆանտինի հրեական համայնքի պապիրուսներում (մ. թ. ա. 5-րդ դար)։*

*Զրույցը բանավոր և գրավոր ուղիներով փոխանցվել է տարբեր ժողովուրդների գրականություններ և հարատևել այսօր։*

*Հայկական խմբագրության բնագիրը գալիս է մ. թ. 5-րդ դարից և իր ամբողջությամբ ու վաղեմությամբ գիտության համար մեծ հետաքրքրություն է ներկայացնում։*

*Գրքի առաջին հատորում (Գիրք Ա) հրատարակված են Խիկարի հայկական խմբագրությունը՝ վեց տարբերակներով, հայ-ղփչաղական, հայ-թուրքական խմբագրությունները և նրանց հետ սերտորեն առնչվող «Խօսք իմաստասիրաց և խրատք հասարակաց» բնագիրը։*

*Այս հատորը (Գիրք Բ) ուսումնասիրություն է, որը հենվում է հայկական խմբագրության գիտությանը մեծ մասամբ դեռ անծանոթ տվյալների վրա։ Գրքում քննվում են զրույցի ծագման, բնույթի, տարբեր խմբագրությունների առնչությունների, մատենագրական տարածարկման և այլ հարցեր, որոնք տեսական և չթուլացող հետաքրքրություն են առաջացրել միջազգային բանասիրության մեջ։*

---

Խմբագիր
Լ. Ս. ԽԱՉԻԿՅԱՆ

1—6—1

Եղբորս՝

ՌՈԲԵՐՏ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԻ

պայծառ հիշատակին

# 1. ԽԻԿԱՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԲԱՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Ինչ ճանապարհ է անցել բանասիրությունը Խիկարի շուրջ։ Այդ մասին խոսվում է Ա գրքում, բայց շատ հպանցիկ։ Փորձենք սակայն ավելի լայն չափով անդրադառնալ, որպեսզի գիրքը չմնա ընդհանուր շրջագծից դուրս։

1724 թ. Վատիկանի նշանավոր գրադարանապետ Ասեմանին առաջինը ուշադրություն դարձրեց Խիկարի զրույցին, նկատելով, որ Եզովպոսի կենսագրության երկրորդ մասի և զրույցի միջև կա մեծ նմանություն[1]։

1788 թ. հրապարակ եկավ Գալանի Հազար ու մեկ գիշերների շարունակությունը Շավի-Կազոտի հրատարակությամբ, որի երկրորդ հատորում ընդգրկված է նաև Խիկարի զրույցն իբրև Շեհերազադայի պատմած մի հեքիաթ[2]։

1880 թ. Գ. Հոֆմանը Տովբիթի գրքի մեջ ակնարկություններ տեսավ, որոնք հիշեցնում են զրույցը[3]։

Այսպես, Սուրբ գիրք, Հազար ու մեկ գիշերներ ու Եզովպոս,— ահա այն երեք մեծ առանցքները, որոնց շուրջ բանասիրությունն անհամար պտույտներ է գործել։

Բանասիրության հիմնական խնդիրն է որոշել զրույցի նախնականը և նրա հայրենիքը, ծագումը և բնույթը։ Այդ միևնույն է, թե զրույցն ինչ առնչություն ունի հնագույն աղբյուրների՝ Սուրբ գրքի, Հազար ու մեկ գիշերների և Եզովպոսի հետ։ Եվ առեղծվեցին բազմաթիվ տարամետ կարծիքներ։

---

[1] „Bibliotheca Orientalis Clementino-Vaticana", t. III, pars I, № 21, Roma, 1724, էջ 286։

[2] Nouveaux contes arabes ou supplément aux Mille et unę nuits etc., par l'Abbé C... Paris, 1788.

[3] Auszüge aus syrischen Akten persischer Märtyrer, übersetzt und durch Untersuchungen zur historischen Topographie erläutert von G. Hoffmann, Leipzig, 1880, էջ 182—183։ 1890 թվականին Հոֆմանից անկախ նույնը նկատեց նաև W. F. Kirly-ն (տե՛ս „A source of the Book of Tobit", —„Athenaeum", 1890, vol. 2, nov. 29, էջ 738—739)։

*Հոֆմանը գտնում է, որ զրույցը հյուսվել է ասորի քարոզիչների կողմից Տովբիթի ակնարկների հիման վրա, իբրև պարականոն, աստվածաշնչական գաղափարներ տարածելու համար, հենց Նինվեի մոտակայքում։ Ճիշտ է, կործանված Ասորեստանից դեռ մնացել էին հիշողություններ, բայց ոչ այնքան, որպեսզի կարողանային պատմություն քաղել։ Ասորեստանի թագավոր Սենեքերիմի և նրա իմաստուն խորհրդականի մասին զրույցը շնչավորվել է Սուրբ գրքից։*

*1888 թ. Հոֆմանին հետևում է Ա. Մյուլլերը, զրույցի մուտքը նախ դիտելով ոչ թե ասորական, այլ արաբական գրականության մեջ[4]։ Հենվելով անունների վրա, նա ենթադրում է, որ անցումը Սուրբ գրքից արաբական գրականություն կատարվել է պարսկական հրեաների միջոցով։*

*Բ. Մեյսները սակայն 1894 թվականին Խիկարի ավելի վաղ հետքեր է գտնում, քան գրվել է Տովբիթի գիրքը, բայց ընդունում է նրա հրեական ծագումը[5]։ Այդ կարծիքին է նաև Մ. Լիդզբարսկին[6]։ Երկրորդ անգամ հանդես գալով՝ Լիդզբարսկին ենթադրական է դարձնում իր վարկածը, տեղ տալով նաև արամեական և հունական սկզբնաղբյուրների հավանականությանը[7]։ Վերջապես, ավելի ուշ, չի համաձայնվում Ռ. Հարրիսի հետ և ընդունում, որ զրույցը ասորական ստեղծագործություն է[8]։*

*Զրույցի հրեական ծագումն են պաշտպանում Կրումբախերը[9], Դիլլոնը[10], Մուրը[11], որ լիակատար հավատ է տածում Տովբիթի խոսքերի նկատմամբ և հաստատում Տովբիթի և Աքայիքարոսի ազգակցությունը։*

---

[4] Zu den Märchen der Tausend und einen Nacht.—Beiträge zur Kunde der indo-germanischen Sprachen, herausgegeben von Dr. Adalbert Bezzenberger. 13 B. Vandenhoeck und Ruprecht's verlag, *1888, էջ 223—224։*

[5] „Zeitschrift der Deutschen Morgenländischen Gesellschaft", Leipzig, *1894, էջ 171—197։*

[6] *Նույն տեղում, էջ 671—675։*

[7] Ergänzungshefte zur Zeitschrift für Assyriologie. Semitische Studien, herausgegeben von Karl Bezold. Heft 6/7. Die neu-aramäischen Handschriften der Königlichen Bibliothek zu Berlin, in Auswahl herausgegeben übersetzt und erläutert von Mark Lidzbarski. Zweiter Teil. Weimar, *1895, էջ 3—4, բնագիրը՝ էջ 5—41։*

[8] „Theologische Literaturzeitung, Leipzig", *1899„ էջ 606—609։*

[9] *Karl Krumbacher*, Geschichte der byzantinischen Litteratur... München, *1897, էջ 897։*

[10] „The contemporary review", London, *1898, էջ 362—369։*

[11] „Revue des questions historiques", *1895*, t. *57, էջ 5—51։*

1895 թվականին Գ. Պոտանինը, փորձելով պարզել Թեոկտրիստի լեգենդի և Խիկարի սկզբնաղբյուրի առնչությունը, բերում է բազմաթիվ թուրք-մոնղոլական ավանդություններ և ցույց տալիս, որ իմաստուն թագավորի կամ իմաստուն խորհրդականի, պալատ կառուցելու, հորից դուրս գալու, հանելուկներ լուծելու և այլ մոտիվներ ընդհանրական են։ Հավանաբար լեգենդի հիմքում ընկած է եղել այդ մոտիվներից մեկը. թագավորը իր խորհրդականի հետ գնացել է աղջիկ բերելու, կամ որևէ այլ նպատակով և ճանապարհին աղետի ենթարկվել։

«Մեր կողմից արված համեմատությունները,—գրում է Պոտանինը,—բերում են մեզ այսպիսի եզրակացության. Սանահերիմի մասին զրույցը կազմվել է Կենտրոնական Ասիայում։ Այդ անվան առաջին մասում՝ Սանա մենք տեսնում ենք Օրդինյան անուններ՝ Ասենա, Սենա, Սնա, Շունա և այլն (=գայլ)»[12]։

1898 թվականին հրապարակ է գալիս անգլիացի երեք գիտնականների՝ Ռ. Հարրիսի, Ֆ. Կոնիբերի և Ա. Սմիթ Լևիսի «The story of Ahikar»[13] գիրքը։

Այս աշխատանքը մեծ դեր խաղաց զրույցի հետագա ուսումնասիրության գործում։

Առաջաբանը, որ ուղեկցում է բնագրերին (VII—LXXXIII), ստորագրված է Ռենդել Հարրիսի կողմից։ Նա բազմաթիվ զուգահեռներ տանելով զրույցի և Հին ու Նոր կտակարանների միջև, ենթադրում է, որ զրույցը հրեական ծագում ունի և նախնաբար գրվել է արամեերեն, որ այն Հիսուսի գրադարանի գրքերից մեկն է։

Այս վարկածը չեն ուզում ընդունել որոշ հեղինակներ։

Թ. Ռեյնախը գտնում է, որ զրույցը չէր կարող հրեական ծագում ունենալ, որովհետև նրա մեջ կան հեթանոսական տարրեր և որ այն սկզբնապես եղել է բաբելոնյան արևային առասպել[14]։

---

12 *Г. Потанин*, Акир повести и Акир легенды. Этнографическое обозрение, издание Этнографического отлела Имп. общества любителей естествознания, антропологии и этнографии, М., 1895, № 2, էջ 105—125, Գանձակեցու կազմած մոնղոլական լեզվի փոքրիկ բառացանկում այդ բառը կա՝ չինա («գայլ-չինա»)։ Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, Պատմություն հայոց, աշխատասիրությամբ Կ. Մելիք-Օհանջանյանի, Երևան, 1961, էջ 274։

13 „The story of Ahikar from the syriac, arabic, armenian, ethiopic, greek and slavonic versions". By F. C. Conybeare, J. Rendel Harris and Agnes Smith Lewis, London, 1898.

14 *Th. Reinach*, Un conte babylonien dans la littérature juive. Le roman d'Akhikar,—Revue des études juives, t. 38, 1899, էջ 1—13։

Պ. Մարկը նույնպես չի բաժանում Հարրիսի կարծիքը, բայց նա համաձայն չէ և Ռեյնախի արևային առասպելի հետ և գտնում է, որ Խիկարի զրույցը կազմվել է. շատ բաներ վերցնելով հնդկական աղբյուրներից[15]։ Դեռ վաղուց, 1859 թվականին զրույցին հրնդկական ծագում էր վերագրում Թ. Բենֆեյը, մեծ նմանություն տեսնելով հնդկական Նանդա թագավորի և նրա նախարար Շակաթալայի պատմության միջև։ Նա գտնում էր, որ զրույցը հնդիկներից անցել է արաբական գրականություն և ապա՝ փոխանցվել հույներին[16]։

Յ. Հալևին մերժելով Ռեյնախին, զրույցը համարում է հեղինակային գործ իր հավատամքն ուրացած հրեայի մասին, որ պատժվում է աստծուց հենց դրա համար։ Նա թույլ է տալիս նույնիսկ Տովբիթի գրքի և զրույցի միևնույն գրչին պատկանելու ենթադրությունը[17]։

1901 թվականին Ն. Դրոզդովը զրույցն համարում է աստվածաշնչական թեմա, որի մասին հիշողությունը Աստվածաշնչից անկախ հարատևել է տարբեր ժողովուրդների մոտ։ Նա փորձում է ցույց տալ, որ Խիկարը մտացածին չէ, այլ պատմական անձնավորություն, և զրույցը ծագել է ասորաբաբելական միջավայրում. «Այս վերջին ենթադրության օգտին է վկայում այն փաստը,— գրում է Դրոզդովը,—որ ժողովուրդը սովորաբար իր զրույցի համար նյութը փոխ է առնում իրեն շրջապատող միջավայրից, սեփական, ազգային կյանքից և իր երևակայության կերպարներին տալիս է տեղական, ազգային բնույթ»[18]։

1904 թվականին հոդվածաշարով հանդես է գալիս Պաուլ Ցեթթերը։ Նա գտնում է, որ զրույցը սկզբնապես գրավոր է եղել և պատկանել է հրեական գրականությանը։ Ցեթթերը սակայն ընդունում է, որ հրեական բնագրի աղբյուրը հեթանոսական բնույթ

---

[15] *P. Mark*, Die Achikarsage. Ein Versuch zur Gruppierung der Quellen,—Studien zur vergleichenden Literaturgeschichte, Berlin, 1902, էջ 407—411։

[16] *Th. Benfey*, Die Kluge Dirne,—Das Aussland, 1859, № 20, էջ 457—461։

[17] *J. Halévy*, Tobie et Akhiakar,—Revue sémitique d'épigraphie et d'histoire ancienne, 1900, էջ 23—77։

[18] *Н. Дроздов*, Сказания об Ахикаре или Акире Премудром и отношение их к Библии. „Труды Киевской духовной академии“, год X/П, книга V, май, Киев, 1901, էջ 81։

ունի և պետք է փնտրել Բաբելոնում, հավանաբար գրված արամեերեն[19]։

1905 թվականին Վ. Բուսեթը (Bousset) մեծ ուշադրություն է դարձնում գրույցի մեջ նկատվող հեթանոսական շերտի վրա և չի ընդունում հրեական ծագման վարկածը։ Որոշ անունների վերծանության մեջ տեսնելով պարսկական արմատներ և պաշտամունքային հետքեր, գտնում է, որ այն իր ճամփորդությունը սկսել է Պարսկաստանից, ընթացքի մեջ կորցնելով նաև Բաբելոնը[20]։

1909 թվականին Մոսկվայի Հնագիտական ընկերության Սլավոնական հանձնաժողովի առաջ Ա. Դ. Գրիգորևի զեկուցման առթիվ Օ. Ե. Կորշը իր ելույթի մեջ գտնում է, որ նախ անհրաժեշտ է փորձ անել պարզելու գրույցի ծագման ժամանակն ու միջավայրը։ «Ե՛վ լեզվի, և՛ մասնավորապես կենցաղի մեջ շատ բան մատնանշում են, որ պատմվածքը կազմավորվել է Միջագետքի շուրջ, ինչոր մի տեղ»[21],—նկատում է Կորշը։

Բանասիրության առաջին շրջանը փակվում է Ֆրանսուա Նոի (Nau)[22] և Ալեքսանդր Գրիգորևի[23] աշխատանքներով, ծավալուն մենագրություններ, որոնք շատ բաներով համընկնում են իրար։

Նոն կարճ գլուխների մեջ քննում է բազմաթիվ հարցեր և հաճախ տալիս ինքնատիպ լուծում։

Եզովպոսի և Լոխմանի մասին նա գրում է. «Եթե հնարավոր չէ հաստատել, որ Եզովպոսը արևելյան անձնավորություն է, որին սեփականել է Հունաստանը, գոնե հայտնի է, որ Եզովպոսի կենսագրությունը լրացվել է Ախիկարի պատմությամբ և որ Լոխմանը Եզովպոսի և Ախիկարի մի համակցություն է (combinaison)»։

Նա գտնում է, որ Ախիկարը նախորդել է Աստվածաշնչի այն գրքերին, որոնք որևէ բանով հիշեցնում են գրույցը։ Ժողովողի և Ախիկարի բնագրային նմանությունները գալիս են ոչ թե նրանից,

---

[19] *Paul Vetter*, Das Buch Tobias und die Achikar-Sage,—Theologische Quartalschrift, Tübingen, 1904, էջ 346—352 և 340—544։

[20] *W. Bousset*, Beiträge zur Achikarlegende,—Zeitschrift für die neutestamentliche Wissenschaft und die Kunde des Urchristentums, 1905, H. 2, էջ 180—193։

[21] „Древности. Труды Славянской комиссии Имп. московского археологического общества", т. V, М., 1911, էջ 36—37 (Протокол 104-го заседания Славянской комиссии... 13 апреля, 1909 года).

[22] *François Nau*, Histoire et sagesse d'Ahikar l'Assyrien, Paris, 1909.

[23] *А. Д. Григорьев*, Повесть об Акире Премудром, М., 1913.

որ Ախիկարի խմբագիրը եղել է հրեա և օգտվել ժողովրդի հրեական բնագրից, ինչպես կարծում է Ցեթթերը, այլ որ ժողովրդի խմբագիրը ծանոթ էր Ախիկարի խրատներին, «թերևս արամեերենով, չնայած հավանական է արամեերենից թարգմանված եբրայական օրինակի գոյությունը, որին մինչև այժմ չենք հանդիպել»[24]։

Բանասիրության մեջ իշխում է երկու հիմնական կարծիք։ «Ոմանք ենթադրում են, որ հեղինակը եղել է հեթանոս,—գրում է Նոն,—և նրա գործը ինչ-որ չափով միաստվածությանն է հանգեցվել որևէ հրեայի կողմից, որը և դարձել է պահպանված խմբագրությունների նախատիպը, իսկ ոմանք էլ ենթադրում են, որ մի հրեա հեղինակ դիտմամբ բնագրին տվել է բազմաստվածության բնույթ, որպեսզի այդ օգտագործի հեթանոսների (Centils) դավանափոխման համար»[25]։

Վերջապես ինքը՝ Նոն ենթադրում է, որ բնագիրը ստեղծվել է քաբելոնյան հրեայի կողմից։

Նոն քննում է և այլ հարցեր, որոնց վերապատումն ավելորդ է։ Նա առաջին անգամ ֆրանսերեն թարգմանությամբ հրատարակում է Զախաուի № 336 ասորական ձեռագրի օրինակը, որն ուղեկցվում է $S_1$, $S_2$ լավագույն բնագրերի, ինչպես նաև՝ այլ խմբագրությունների՝ արաբական, հայկական, սլավոնական, կարևոր դիտված ընթերցումներով։ Բերված են քաղվածքներ արամեական պապիրուսներից և որոշ դիտողություններ։ Այսպիսով Նոն առաջ է դնում բանասիրության նոր շրջան, բայց նա չէր կարող որևէ վճռական քայլ անել, որովհետև պապիրուսները դեռ չէին հրատարակված։

Ա. Գրիգորևի ուսումնասիրությունը նրա երկարատև աշխատանքի արդյունքն է (շուրջ 15 տարի)։ Գիրքը լույս է տեսել 1913 թվականին, բայց մնում է առաջին շրջանի մեջ։ Նրան ծանոթ ամենաուշ գրված ուսումնասիրությունը Նոյի աշխատանքն է (1909 թ.), այն էլ վերջին պահին[26]։

Արամեական պապիրուսների հայտնաբերման մասին Գրիգորևը լսում է Միլլերից և ծանոթ է պապիրուսներին այնքան, որքան հնարավորություն է տալիս Նոյի աշխատանքը։ Զախաուի 1911

---

[24] F. Nau, Histoire et sagesse d'Ahikar l'Assyrien, էջ 111։

[25] Նույն տեղում, էջ 117։

[26] Գրիգորևը գրում է. «1909 թվականին, երբ արդեն տպագրել էի տարբեր խմբագրությունների բնագրերը և պատրաստվում էի տպագրել ուսումնասիրությունը, իմացա Ֆրանսիա Նոյի գրքի հրապարակ գալու մասին» (էջ 38)։

*թվականի հրատարակությունը և նրա շուրջ ստեղծված գրականությունը Գրիգորևին մնում է անհայտ։*

*Այս ծավալուն երկը (բնագրի հետ միասին՝ 808 մեծադիր էջ) իբրև ամբողջ հարցի պատմությունն ամփոփող մի աշխատանք, անգնահատելի է։ Այստեղ տրված է բանասիրական բարդ ընթացքի բծախնդիր վերապատմությունը, որի կրկնելը դառնում է ավելորդ*[27]*։*

*Հարցերը քննվում են այսպիսի հաջորդականությամբ. «Պատմվածքի ուսումնասիրության պատմության տեսություն», «Պատմվածքի ծագումը», «Ախիկարի մասին պատմվածքի արամեական խմբագրությունը», «Ասորական խմբագրությունը», «Արաբական խմբագրությունը», «Հայկական խմբագրությունը», «Ախիկարի մասին պատմվածքը հույն գրականության մեջ», «Պատմվածքի սլավոնական խմբագրությունը», «Պատմվածքի ռումինական խմբագրությունը»։*

*Առաջին գլխում հաջորդաբար ներկայացված են Խիկարի շուրջ բանասիրական աշխատանքները Ասեմանիից մինչև Նո (1724—1909)։ Վրիպումները չնչին են և աներևույթ*[28]*։ Երկրորդ գլուխը մասամբ նույնպես հարցի պատմություն է։ Շարադրանքն ընթանում է այսպիսի խորագրերի տակ. «Պատմվածքի ծագման հարցի բարդությունը», «Պատմվածքի արաբական խմբագրության առաջնության մասին կարծիքը», «Կելլերի փաստարկներն հօգուտ պատմվածքի ծագման Եզովպոսի կենսագրությունից» , «Մեյսների փաստարկներն հօգուտ Եզովպոսի առաջնության պատմվածքի գրավոր շարադրանքից» և այլն։*

*Նախապես Գրիգորևը զգուշացնում է. «Չնայած այդ ժամանակից ապացուցված է, որ արաբական խմբագրությունը ծագել է ասորականից և հայտնագործվել է պատմվածքի արամեական խմբագրությունը, այնուամենայնիվ և այժմ հնարավոր է պատմվածքի կամ կենսագրության առաջնության մասին վեճը»*[29]*։*

*Մեզ թվում է հենց դրա համար, որ արաբական խմբագրությունը գալիս է ասորականից և հայտնագործվել են արամեական պապիրուսները, վեճը այլևս հնարավոր չէ։ Այն մարել է ավելի վաղ՝*

---

[27] *Որոշ ուսումնասիրություններ, որ հնարավոր չի եղել ձեռքի տակ ունենալ, մեզ ծանոթ են Գրիգորևի միջոցով։*

[28] *Ն. Դուրնովոն այդ գլուխը համարելով «համարյա սպառիչ» իր գրախոսության մեջ անում է որոշ լրացումներ (տե՛ս* *Н. Дурново,* А. Д. Григорьев. Повесть об Акире Премудром. Исследование и тексты, М., 1913, *էջ 17)։*

[29] *А. Григорьев*, Повесть об Акире Премудром, *էջ 44։*

*ասորական խմբագրության հետ ծանոթությունից հետո։ Ֆրանսուա Նոն, նկատի ունենալով Եզովպոսի կենսագրության մեջ Խիկարի հատվածները, գրում է. «Բոլորի կողմից ընդունված է, որ դրանք չեն պատկանում Եզովպոսին և ոչ ոք չի ժխտում, որ Ախիկարինն են»[30]։ Գրիգորևի կողմից այդ խնդրի վերարծարծումը ավելորդ մտահոգություն է։*

*Գրիգորևը մերժում է զրույցի հրեական ծագման վարկածը. «Ես գտնում եմ, պատմվածքի կազմելու կամ վերամշակելու գործում հրեական մասնակցության մասին առաջ քաշած փաստարկները չեն հիմնավորված,—գրում է նա,—և կարծում եմ, որ Ախիկարի մասին պատմվածքը ասորաբաբելական հեթանոսի ստեղծագործություն է»[31]։*

*Գրիգորևը նկատի ունի բոլոր խմբագրություններում պահպանված բազմաստվածության հետքերը և կենցաղային այնպիսի մանրուքներ, որոնք կարող են հատուկ լինել բաբելական կյանքին։*

*«Մեզ հայտնի հին խմբագրությունների բնագրերում չկա ոչինչ այնպիսին, որ լինելով սկզբնաղբյուրի մեջ, կարող է հակասել իմ կողմից արված հետևությանը պատմվածքի հին և զուտ հեթանոսական ծագման մասին, Ասորաբաբելոնիայում»[32]։*

*Բայց կա այդպիսին։ Ուշադրության է արժանի միայն առաջին փաստարկը, իսկ կենցաղային մանրամասներն ընդհանուր տեղի են և կարող են հավասարապես լինել և՛ ուրիշ երկրներում։*

*Գրիգորևը որոշում է բնագրի ստեղծման ժամանակը՝ «հավանապես շուրջ 674 թվականին, Քրիստոսի ծննդից առաջ»։*

*Երկու և կես հազարամյակից ավելի անցյալ ունեցող աղբյուրի համար ծննդյան այդպիսի թվական սահմանելը մի փոքր տարօրինակ է։*

*Գրիգորևի համար հայկական խմբագրության հեթանոսական շերտը մնում է չմեկնված։*

*Հալևին զրույցը համարում էր Ասորեստանում վերամշակված հրեական բնագիր։ Նրան հիմք էր տալիս հայ խմբագրության մեջ առկա Բելշիմ աստվածությունը։ Գրիգորևը չի ուզում համաձայնել. «Բայց այդ անունը,—գրում է նա,—գտնվում է միայն հայկական խմբագրության մեջ և չկա ասորական ու արաբական խմբագրություններում։ Դրանից կարելի է օգտվել հայկական խմբագրության*

---

[30] *F. Nau*, Histoire et sagesse d'Ahikar l'Assyrien, *էջ 127։*

[31] *А. Григорьев*, Повесть об Акире Премудром, *էջ 102։*

[32] *Նույն տեղում, էջ 103։*

բնագրի կամ նախօրինակի մասին դիտողությունների, բայց ոչ մի դեպքում՝ պատմվածքի նախասկզբնական տեսքը որոշելու համար»[33]։

Սակայն քիչ անց Գրիգորևը հնարավոր է համարում և այդ. «Մնում է անպարզ հեթանոսական աստվածների հիշատակված անունները մտել են միայն հայկական խմբագրության նախօրինակում, եղել են միայն նրա բնագրում, թե գալիս են նույնիսկ նախամայր օրինակից»[34]։

Եվ վերջապես՝ «Երեք հեթանոսական աստվածների անունները (Բելշիմ, Շիմիլ, Շամին) մեծ նշանակություն ունեն, բայց դա լիովին գնահատել կհաջողվի միայն այն դեպքում, երբ կպարզվի պատմվածքի մեջ նրանց ներմուծման ժամանակը (ընկել են արդյոք դրանք հայկական պատրաստի խմբագրության մեջ, թե գտնվելիս են եղել արդեն նրա նախօրինակում), ինչպես և հատկապես ինչ աստվածություններ են պահված այդ անունների տակ»[35]։

Հաջորդ գլուխներում Գրիգորևը քննում է տարբեր խմբագրությունների բնագրային առնչությունները, նրանց սերումը և այլ շատ հարցեր։

Այս աշխատանքը արձագանք գտավ բանասիրության մեջ։ Գրախոսություններով հանդես են գալիս Ե. Կարսկին[36], Ն. Դուրնովոն[37], Վ. Իստրինը[38], իսկ Ա. Նազարևսկին տալիս է նրա պարզ ու համա-

---

33 *А. Григорьев*, Повесть об Акире Премудром, էջ 100։

34 Նույն տեղում, էջ 104։

35 Նույն տեղում, էջ 284։

36 *Е. Ф. Карский, А. Д. Григорьев*, Повесть об Акире Премудром, исследование и тексты, М., 1913. *Его же*, Повесть об Акире Премудром как художественное произведение, Варшава, 1913 (տե՛ս „Русский филологический вестник". Учебно-педагогический журнал, издаваемый под редакцией Е. Ф. Карского, т. XIX, вып. 2-й, № 2, Варшава, 1913, էջ 517—519)։ Գնահատում է Գրիգորևի 15-ամյա աշխատանքի արդյունքը, նշում, որ ռուսական բնագիրը հրատարակված է չափազանց բարեխիղճ, պահպանելով հնագրական բոլոր մանրամասնությունները, բայց քանի որ դա պատմա-գրականագիտական և ոչ թե հնագրական (палеографический) հրատարակություն է, ապա լավ կլիներ ներկայացնել ժամանակակից տառաձևերով, ինչպես Արևմուտքի գիտնականներն իրենց պատմա-գրականագիտական երկերում նույն բնագրերն հրատարակում են սովորական հունական տառաձևերով։

37 *Н. Н. Дурново*, А. Д. Григорьев. Повесть об Акире Премудром, Исследование и тексты (отдельный оттиск из Известий Отделения русского языка и словесности Имп. ак. наук, т. XX, кн. 4, 1915).

38 *В. Истрин*, А. Д. Григорьев. Повесть об Акире Премудром, Исследование и тексты, 1913. Журнал Министерства народного просвещения. Новая серия, часть I, Петербург, 1914, էջ 333—365։

*ռոտ վերաշարադրանքը, իր կողմից անելով փոքրիկ միջամտություններ*[39]։

*Մենք տեսանք, որ Գրիգորևը գրույցի ծագման հարցը քննելիս, իր ենթադրությունը հենում էր տարբեր խմբագրություններում պահպանված գիցաբանական որոշ հետքերի վրա։ Այսպես.*

*ա) Երբ Սենեքերիմն առաջարկում է Նաթանին լուծելու փարավոնի խնդիրները, նա շփոթված ասում է, որ աստվածներն անգամ դա չեն կարող անել, ուր մնաց մարդիկ։*

*բ) Փարավոնի և նրա նախարարների զգեստավորմանը Ախիկարը պատասխանում է. Նման ես դու Բել աստծուն, իսկ քո նախարարները նրա քրմերին։*

*գ) Մարդիկ տեսնելով, որ Ախիկարը տանջում է մի կատվի, բողոքում են փարավոնին, որ իրենց աստվածներին անարգում է։*

*դ) Փարավոնն Ախիկարի համար մաղթում է աստվածների օրհնությունը։*

*ե) Անունների մեջ հաճախ հանդիպում է* ճարքու *մասնիկը, որ հիշեցնում է հեթանոսական աստվածություն։*

*Դուրնովոն բերելով այս կետերը, գրում է, որ դրանք հիմք չեն տալիս բնագրի հեթանոսական ծագումը հաստատելու համար և ժխտում է նույն հաջորդականությամբ։*

*Հետևենք նրա առարկություններին.*

**Փաստարկ ա.** *Բայց և հին հրեական լեզվում աստվածությունը ներկայացնելու համար սովորաբար գործածվում է հոգնակի ձև, հետևաբար ինքնին* **աստվածներ** *բառի գործածումը չի խոսում ընդդեմ հրեական ծագման։*

**Փաստարկ բ.** *Ախիկարը փարավոնին կարող էր համեմատել Բելի հետ, չլինելով Բելի երկրպագու, որովհետև շարունակության մեջ նա ինքը խոսում է «երկնքի աստծո» հանդեպ Բելի անզորության մասին, իսկ այդպես հրեաները կարող էին աստծուն անվանել։*

**Փաստարկ գ.** *Չի վկայում հեղինակի հեթանոսության մասին, այնքան որքան այստեղ երևում է եգիպտական պաշտամունքի նկատմամբ նրա ժխտական վերաբերմունքը։*

**Փաստարկ դ.** *Փարավոնը հեթանոս է ներկայացված, որ համապատասխան է նախորդին։*

**Փաստարկ ե.** *Չգիտես ինչու հրեան կամ արամեացին, որ*

---

[39] *А. А. Назаревский*, Повесть об Акире Премудром в исследовании А. Д. Григорьева, Киев, 1915 (оттиск из чтений в историческом обществе Нестора-летописца, кн. XXV, вып. I, *էջ 3—35*)։

կկամենար մշակել Ասորեստանի իշխան Ախիկարի մասին գրույցը, պետք է խուսափեր անուններից, որոնց կազմի մեջ հեթանոսական աստվածների անվանումներ կան։ Աստվածաշնչում այդպիսի անուններ, չնայած շատ հազվագյուտ, կրում են նույնիսկ բնաշխարհիկ հրեաները. Մարդոքեյ, Զորաբաբել։ Դանիելի գրքում Նաբուգոդոնոսորի արքունիքում հրեաները կրում են նաև բաբելոնյան անուններ, վերջապես, բաբելոնյան անունները, որոնց կազմի մեջ են մտնում հեթանոսական աստվածների անվանաձևերը, հանդիպում են էլեֆանտինյան հրեաների մոտ 5-րդ դարի վերջում, Քրիստոսի ծննդից առաջ, չնայած այդ հրեաները ճանաչում են միայն Յահվեին[40]։

Ինչպես տեսնում ենք, այս նրբամտորեն առաջ մղած առարկություններից հետո Գրիգորևի ասորաբաբելական վարկածը հիմնազուրկ է դառնում։

Վ. Իստրինը գնահատում է Գրիգորևի աշխատանքը, բայց և անում այսպիսի բնորոշ դիտողություն.

«Հեղինակի անսովոր մանրակրկիտությունը, որը բաց չի թողնում հուշարձանի ոչ մի մանրագույն առանձնահատկություն, հաճախ անելով նուրբ հոգեբանական դիտողություններ, հենվելով թվերի վրա, ինչպես ամեն մի վիճակագիր, այդ ամենը քննարկվող գիրքը ընթերցելու համար դարձնում են հոգնեցուցիչ։ Կարելի է վստահ լինել, որ միայն մի քանիսն այն կկարդան մինչև վերջ»[41]։

Բացի այդ, թվային մեխանիկական հաշվարկումները Գրիգորևի մոտ դրված են խմբագրությունների ծագումը կամ ազգակցությունը որոշելու հիմքում։ Բերենք պատահական մի օրինակ.

«Հայերենը հետևում է արաբերենին 116 դեպքերում (դրափոխություններում. մեծ՝ 1 անգամ, փոքր՝ 2 անգամ, բացթողումներում. մեծ՝ 6, փոքր՝ 10 անգամ, լրացումներում՝ 61 անգամ, տարբերություններում. մեծ՝ 24 անգամ, փոքր՝ 12)։

Հայերենը հետևում է ասորական $S_2$-ին 189 դեպքում (դրափոխություններում. մեծ՝ 4, փոքր՝ 6, բացթողումներում. մեծ՝ 11, փոքր՝ 13, լրացումներում՝ 99, տարբերություններում. մեծ՝ 47, փոքր՝ 9)։

113 դեպքերում չի կարելի որոշել, որ բնագրին է մոտ եղել հին հայկական խմբագրությունը (դրափոխություններում. մեծ՝ 1,

---

[40] *Н. Дурново*. А. Д. Григорьев. Повесть об Акире Премудром (рецензия), էջ 24։

[41] *В. Истрин*, А. Д. Григорьев. Повесть об Акире Премудром (рецензия), էջ 336։

փոքր՝ 1, բացթողումներում. մեծ՝ 2, փոքր՝ 6, լրացումներում՝ 20, տարբերություններում. մեծ՝ 48, փոքր՝ 35)»[42]։

Այնուհետև հեղինակը եզրակացություններ է անում։

Նման մեթոդով է քննում նաև մյուս խմբագրությունները։ Իհարկե դա չի կարող գիտական լինել[43]. նմանություններ, տարբերություններ, բացթողումներ, դրափոխություններ և այլն, որոնք թերևս պատահական են, մանավանդ բոլոր խմբագրություններում ձեռագրերը գալիս են համեմատաբար ուշ շրջանից, իսկ նա օգտվում է թարգմանություններից։ Գրիչները և ապա՝ թարգմանիչները կարող էին բնագրերի տեքսն այնքան փոխել, որ և պայմանավորեր նմանություններն ու տարբերությունները։

«Մենք բավականաչափ հիմք ունենք բացատրելու բազմաթիվ անճշտություններն ու անախրոնիզմները,— գրում է Նոն։— Այլ կերպ ասած, պահպանված ձեռագրերը կազմում են մի կեղծ գրականություն, բայց այդ կեղծ բնույթը գուցե բնագրերին է թելադրվել առաջին դարերի ասորի թարգմանչի, կամ գրիչների կողմից, որոնք իրար են հաջորդել առաջին դարերից մինչև 15-րդ դարը, որտեղից արդեն սկսվում են մեր ձեռագրերը»[44]։

Մի հարց ևս։ Գիրքը հղացվել է զրույցի սլավոնական խմբագրության մասին հատուկ աշխատանք գրելու պահանջից։ Այդ մասին խոսում է ինքը՝ հեղինակը։ Չնայած դրան, երկի ընդհանուր ծավալի մեջ շատ քիչ տեղ է հատկացվում սլավոնական խմբագրությանը (189 էջ)։

Գրիգորևը քննում է միայն սլավոնական մեկ տարբերակ, որը հնագույնն է և չգիտես ինչու անտեսում երկրորդ ու երրորդ տարբերակները։ Այդպես իհարկե բնագրագիտական քննությունը մնում է թերի[45]։

Մենք կարծես Խիկարի շուրջ բանասիրության առաջին շրջանի եզրագծին ենք հասնում։

Այստեղ հիմնականում խոսվեց այն վարկածների մասին, ո-

---

[42] *А. Григорьев*, Повесть об Акире Премудром, էջ 268։

[43] Ն. Պուրնովոն նույնպես այդ թվաբանական մեթոդը չի համարում ճիշտ (էջ 13—14)։

[44] *F. Nau*, Histoire et sagesse d'Ahikar l'Assyrien, էջ 117։

[45] Այդ առթիվ դժգոհություն է հայտնում Իստրինը։ Նրան համաձայն է Պուրնովոն։ Իստրինը գրում է. «Եթե Ակիրի մասին զրույցը պահպանվեր մեծ քանակությամբ ընդօրինակություններով, ապա միայն նրանց խմբավորումը ուսումնասիրողի համար դժվարություն կներկայացներ» (էջ 334)։ Բայց Ակիրի մասին զրույցը պահպանված է մեծ քանակությամբ սլավոնական ընդօրինակություններով, և պետք էր այդ դժվարությունը տանել։

րոնց հիմքում ընկած է Տովբիթի գրքի և գրույցի առնչությունը։ Բոլոր դեպքերում, երբ նրանց մեջ ընդունվում է ուղղակի կամ անուղղակի կապ, Եզովպոսի կենսագրության հատվածը համարվում է հետոմուտ (Լիցքարսկի, Մարկ), կամ գրույցի հունական բնագրի քմահաճ վերափոխումն (Ցեթթեր)։

Զրույցի և Եզովպոսի առաջնության հարցը կարելի է ասել մարեց, երբ Հոֆմանը կապ տեսավ գրույցի և Տովբիթի գրքի միջև, իսկ արաբական սկզբնաղբյուրի հարցը՝ երբ հայտնի դարձավ ասորական բնագիրը։ Այդ խնդիրները կապվում էին միմյանց հետ, որովհետև բանասիրությանը ծանոթ էր միայն Հազար ու մեկ գիշերների արաբական հեքիաթը և Պլանուդեսի կողմից ավանդված Եզովպոսի կենսագրության երկրորդ մասը։ Այն հեղինակները, որ առաջնություն են տալիս արաբական բնագրին և առհասարակ մերժում են Եզովպոսի պատմականությունը (Ցյունդել, Վագեներ, Վելսկեր, Ռոտ, Գրաուերտ, Ագուր, Լանդսբերգեր) չգիտեն ասորական սկզբնաղբյուրի գոյության մասին։ Այդպես և՝ որ պաշտպանում են Եզովպոսի առաջնության իրավունքը Խիկարի դեմ[46]։

Սկզբում գրույցը արաբական հեքիաթ էին համարում և ռուս բանասիրության մեջ Ն. Պոլևոյը[47], Ֆ. Բուսլաևը[48], Ա. Վեսելովսկին[49], Ե. Բարսովը[50], բուլղար պատմաբան Կ. Իրեչեկը[51] և ուրիշները։

Այս ամբողջ ընթացքում արծարծվել են բազմաթիվ հարցեր. գրույցի գրավոր և բանավոր ուղիները, տարբեր խմբագրությունների (ասորական, արաբական, հայկական, հունական, սլավոնական, ռումինական, եթովպական և այլն) ծագումը և հարաբերությունը, գրույցի առանձին մասերի բաղադրումը, նախասկզբնա-

[46] Տե՛ս *Otto Keller*, Untersuchungen über die Geschichte der griechischen Fabel,—Besonderer Abdruck aus dem vierten Supplementband der Jahrbücher für classische Philologie, Leipzig, **1862, էջ 309—418։**

[47] *Н. Полевой*, Древний русский перевод арабской сказки. Московский телеграф, **№ 11, 1825, էջ 227—235։**

[48] *Ф. Буслаев*, Учебные руководства для военно-учебных заведений. Историческая хрестоматия церковно-славянского и древнерусского языков..., М., **1861, սյուն 668—680։**

[49] *А. Веселовский*, Новые отношения Муромской легенды о Петре и Февронии и сага о Рагнаре Лодброне. Журнал Министерства народного просвещения, часть C/IV, **1871, էջ 100 և 120—122։**

[50] *Е. Барсов*, Акир Премудрый во вновь открытом сербском списке XVI в., Чтения в Имп. обществе истории и древностей российских при Московском университете, кн. 3, **1886, էջ 3—7։**

[51] *К. Иречек*, История болгар, Одесса, **1878, էջ 563։**

*կան ընթերցումները, զրույցի հետքերը ասորական, հույն, արաբական, հայ և սլավոնական գրականությունների մեջ, զրույցի պատմականությունը և այլն։*

*1911 թվականին հրապարակ է գալիս է. Զախաուի գիրքը[52]։ Նա հրատարակում է էլեֆանտինում հայտնաբերված հրեական համայնքի արամեերեն պապիրուսները գիտական բարեխղճությամբ։ Ախիկարի պատառիկները տեղակայված են գրքի XX—XXIII էջերում։ Նույն թվականին պապիրուսները հրատարակում է նաև Արթուր Ունգնադը[53]։*

*Սկսվում է Խիկարի շուրջ բանասիրության երկրորդ շրջանը։*

*Խնդիրը մնում է նույնը. որտեղից է գալիս զրույցը և ինչ վաղեմություն ունի, բայց փոխվում է բանասիրության ոլորտը։ Այժմ գիտնականները զբաղվում են հիմնականում պապիրուսների քննությամբ և խնդիրը փորձում են լուծել պապիրուսների միջոցով։*

*Զախաուի գրքի առթիվ հանդես են գալիս Թ. Նյոլդեքեն[54], Մ. Լիցբարսկին[55], Ռ. Սմենդը[56], է. Մեյերը[57] և ուրիշներ։ Նրանք անդրադառնալով ընդհանրապես Զախաուի հրատարակությանը, կանգ են առնում նաև Խիկարի բնագրի վրա։ Թ. Նյոլդեքեն այդ հարցը քննում է մի անգամ ևս, ընդարձակ հոդվածով, որ ավելի հանգամանալից բնույթ ունի[58]։*

*Այս աշխատանքների մեջ կա զարմանալի համաձայնություն։ Բոլոր հետազոտողները պնդում են, որ զրույցը չի կարող հրեական ծագում ունենալ, չնայած հրեական համայնքում պապիրուսների հայտնագործումը խոսում է հակառակ վարկածի օգտին։ Դա թերևս գերմանական բանասիրության մեջ ինչ-որ տրամադրության արձագանք է, որ անհարիր է գիտությանը։*

---

52 *E. Sachau,* Aramaische Papyrus und Ostraka aus einer jüdischen Militärkolonie zu Elephantine, Leipzig, 1911, էջ XX—XXIII, *տախտակ 40—50։*

53 *A. Ungnad,* Aramaische Papyri aus Elephantine. Kleine Ausgabe unter Zugrundelegung von E. Sachaus Erstausgabe, Leipzig, *1911, էջ 62—82։*

54 „Literarisches Zentralblatt", *№ 47, 1911, սյունակ 1503—1507։*

55 „Deutsche Literaturzeitung", *№ 47, 1911։*

56 „Theologische Literaturzeitung", *№ 13, 1912։*

57 *E. Meyer,* Der Papyrusfund von Elephantine. Dokumente einer jüdischen Gemeinde aus der Perserzeit und das älteste erhaltene Buch der Weltliteratur, Leipzig, *1912, էջ 102—128։*

58 *Th. Nöldeke,* Untersuchungen zum Achiqar—Roman, Abhandlungen der Königlichen Gesellschaft der Wissenschaften zu Göttingen philologisch historische Klasse, neue Folge, Bd. XIV, N. 4, Berlin, *1913, էջ 3—63։*

*Այս ընդհանուր մթնոլորտից դուրս է Ֆրանսուա Նոի աշխատանքը։ Հոդվածը գրված է 1911 թվականին[59], դարձյալ Զախաուի հրատարակությունից հետո։ Հեղինակը ծանոթ է նաև բուն պապիրուսներին։*

*Նոն, ի տարբերություն մյուս բանասերների, նկատում է, որ պապիրուսներն ավելի երկարաբան են, քան ասորական հետագա խմբագրությունը։ «Պետք է նկատել,— գրում է նա,— որ պապիրուսները, ձայն տալով բոլոր դերակատարներին և ստիպելով հաճախ կրկնել նույն դարձվածքներն ու խոսքերը, ասորականի կրկնակի ծավալն ունեն և, կարելի է ենթադրել, որ նույն բանն էին ներկայացնում նաև չպահպանված հատվածները»[60]։*

*Նոն ենթադրում է, որ պապիրուսների խմբագիրը եղել է հրեա. «Նրան կարող ենք էլոիստ կոչել, որովհետև նա միայն այդ անունն է օգտագործում»[61], բայց շատ էլ վստահ չէ իր կարծիքի վրա և փնտրում է համաձայնության եզրեր. «Եթե նույնիսկ միանանք Զախաուին և նրան (Ախիկարի հեղինակին—Ա. Մ.) հեթանոս համարենք, դրանից մեր ընդհանուր դրույթը չի տուժի,— գրում է Նոն,— այլ նույնիսկ թույլ կտա կանխապես բացատրելու, թե ինչու այդ հեղինակին, որին հեթանոս ենք համարում, չէր կարող Տովբիթը նշել, բայց այդ դեպքում մեզ կմնար բացատրելու, թե ինչու հեթանոսությունը, որ այնքան ակնառու է Ասուանի վավերագրերում, Ախիկարի մոտ ոչ մի հետք չի թողել, բացատրելու նաև՝ մոնոթեիստական սաղմոսի (48 տախտակ, սյուն II) ներկայությունը։ Մենք նախընտրում ենք մոնոթեիստական մեկնությունը»[62]։*

*Նոն գտնում է, որ պապիրուսները ստեղծվել են Եգիպտոսից դուրս և Եգիպտոս բերվել հավանաբար 480—440 թվականներին, Բեհիսթունի արձանագրության թարգմանական օրինակի հետ միաժամանակ։*

*«Բնագրի լեզուն անկասկած եղել է արամեերենը,— գրում է Նոն,— մանավանդ եթե ընդունենք, որ հեղինակը հրեա է։ Հնարավոր չէ, որ նա օգտագործած լիներ սեպագիրը և ասորեստանյան լեզուն, երբ իր ձեռքին ուներ փյունիկյան այբուբենի պես կատարյալ տառեր»[63]։*

---

[59] *F. Nau*, Ahikar et les papyrus d'Elephantine.—Revue Biblique Internationale, 1912, Octobre, *էջ 68—79*։

[60] *Նույն տեղում, էջ 71*։

[61] *Նույն տեղում, էջ 74*։

[62] *Նույն տեղում*։

[63] *Նույն տեղում, էջ 75*։

Նոն պապիրուսների և մեզ հասած հետագա խմբագրության միջև որևէ առնչություն չի տեսնում և զրույցի համար ընդունում է երկու հեղինակ։

«Ախիկարի զրույցը խմբագրվել է իրարից անկախ երկու հեղինակների կողմից, մեկը՝ էլիֆատ մի հրեա, որ ստեղծել է պապիրուսները և մի ուրիշ հեղինակ (արդյո՞ք նա հեթանոս արամեական էր), որ ստեղծել է արևելյան խմբագրությունները»[64]։

Այս վարկածը հավանաբար նրա մոտ ծագել է երկու տարամետ կարծիքներն համերաշխելու մտահոգությունից։

1913 թվականին լույս է տեսնում Ա. Դուրնովոյի գիրքը[65]։ Դա գիտական բարձր մակարդակով գրված աշխատանք է։ Գիրքն ունի երկու բաժին. բնագրեր և ուսումնասիրություն։ Նա հրատարակում է արամեական պապիրուսները ռուսերեն թարգմանությամբ, օգտվելով Զախաուի բնագրից, բերում է նաև Ունգնադի, Նյոլդեքեի և Լիցբարսկու առաջարկած կարևոր ընթերցումները (3—19)։ Այնուհետև՝ երկու սլավոնական բնագրեր. Սոլովեցկյան վանքի № 46 և Բելգրադի ազգային գրադարանի № 828 ձեռագրերից (20—44)։

Ուսումնասիրությունն ընդգրկված է երեք գլուխների մեջ. 1. Պատմվածքի ուսումնասիրման պատմությունից, 2. Պատմվածքի ծագման հարցի շուրջ, 3. Պատմվածքի սլավոնական թարգմանությունը։

Ինչպես տեսնում ենք, առաջին գլուխը հարցի պատմություն է, որ ընդգրկում է 1911 թվականից, այսինքն Զախաուի հրատարակությունից հետո ընկած շրջանը։ Մինչ այդ եղած գրականությանը նա չի անդրադառնում, նկատի ունենալով, որ այն քննված է Ա. Գրիգորևի կողմից։

Ե՞րբ և որտե՞ղ կարող էր ծագել Ախիկարի գրքի էլեֆանտինյան պապիրուսներով ներկայացվող խմբագրությունը։ Դուրնովոն փորձում է պատասխանել այս հարցին։ Նա բերում է երկու հնարավորություն.

1. Մի կողմից այն հանգամանքը, որ գրքի հերոսը հանդես է գալիս իբրև Ասորեստանի իշխան, գործողությունը տեղի է ունենում Ասորեստանում և բոլոր գործող անձինք ասորեստանցիներ են և կրում են ասորեստանյան կամ բաբելոնյան անուններ, կարող է հանգեցնել գրքի ասորաբաբելական ծագման մտքին։

---

[64] „Revue Biblique internationale", էջ 76—77։

[65] *Н. Дурново*, К истории Повести об Акире (Материалы исследования по старинной литературе), М., 1915.

*2. Մյուս կողմից հիմքեր կան Ախիկարի և նրա էլեֆանտինյան խմբագրության համար հրեական ծագում ենթադրելու։*

*ա) Պատառիկները պահպանվել են էլեֆանտինյան հրեաների մոտ, գրված նույն արևմտա-արամեական բարբառով, որով խոսել են հրեաները 5-րդ դարում մեր թվագրությունից առաջ։*

*բ) Ախիկարի անվան միակ հիշատակությունը մինչքրիստոնեական շրջանում հանդիպում ենք Տովբիթի հրեական գրքում, որի հեղինակն Ախիկարին համարում է հրեա։*

*գ) Ախիկարի գրքի գրական ձևը հիշեցնում է մի քանի բիբլիական գրքերի (Տովբիթի գիրքը, Ագուրի և Լեմուելի թագավորների խրատականքը Առակաց գրքում և այլն)։ Նկատելի է համապատասխանություններ Ախիկարի և Բիբլիայում տեղ գտած Սիրաքի խրատների միջև։*

*Հաջորդ տողերում Դուրնովոն ցույց է տալիս, որ չկան այնպիսի անառարկելի հիմքեր, որպեսզի հնարավոր լիներ կանգնել մեկ կամ մյուս վարկածի վրա։*

*Մերժելով Զախաուի, Նյոլդեքեի, Սմենդի, Մեյերի և Լիցբարսկու հպանցիկ արված դիտողությունները և գտնելով, որ «որևէ լուրջ նկատառում հօգուտ այս կամ այն կարծիքի հետազոտողներից և ոչ մեկը չի բերում»*[66], *Դուրնովոն գրում է. «Այդպիսով Ախիկարի էլեֆանտինյան գրքի հրեական ծագման խնդիրը իմ կարծիքով մնում է բաց»*[67]։

*Դուրնովոյին հայտնի չէ էլեֆանտինյան պատառիկների մասին նոր ուսումնասիրությունը։*

*Հետագա խմբագրությունների նախասկզբնական բնագրի առթիվ Դուրնովոն այսպիսի դիտողություն է անում.*

*«Եթե նախնական համարենք այն սկիզբը, որ ունեն* S1, S2, Sach *№ 162 և սլավոնական բնագրերը, ապա խմբագիրն ավելի շուտ հրեա է։ Ախիկարը աղոթելիս՝ դիմում է միակ աստծուն։ Աստված, որի հետ Եգիպտոսում Ախիկարը համեմատում է Սենեքերիմին, այդ դեպքում ինքը՝ Յահվեն է։ Աստվածները, որոնց մասին խոսում է Նադանը =* Elohim։ *Խմբագրի վերաբերմունքը մյուս աստվածների նկատմամբ բացասական է, չնայած նա ընդունում է Բելի և մյուս աստվածների գոյությունը, բայց նրանց երկնքի աստծո հանդեպ անզոր է համարում։ Ե՛վ ձևով, և՛ բովանդակությամբ գիրքը բավական մեծ համապատասխանություն է*

---

[66] *Н. Дурново,* К истории Повести об Акире, *էջ 55-56։*

[67] *Նույն տեղում, էջ 64։*

դրսևորում բիբլիական գրական հուշարձանների հետ։ Հրեաներից աստվածներին նրա անցումը լիովին հնարավոր է։

Եթե ընդունենք այն սկիզբը, որը մոտ է հայկականին, Ախիկարը աղոթում է մի քանի աստվածների, ապա գրքի խմբագիրը հազիվ թե հրեա լիներ, այլ ավելի շուտ՝ արամեացի, կամ քաղդեացի, կամ, նույնիսկ՝ փյունիկեցի։ Բայց այդպիսի ենթադրության դեպքում փարավոնի զգեստավորման դրվագի մեջ Ախիկարի համեմատության միտքը այնքան էլ պարզ չի ստացվում։ Կարելի է մտածել, թե Երկնքի աստվածը, որի հետ Ախիկարը համեմատում է Սենեքերիմին, բաբելոնյան աստված Անուն է, որը աստվածների շարքի մեջ առաջին տեղն է գրավում, բարձր է և՛ Մարդուկից, և՛ Նաբուից, և՛ Սինից, և՛ Շամաշից։ Այդ դեպքում Բելը նույնպես բաբելոնյան աստված է՝ Բել-Մարդուկ, լուսինն ու արևը նույնպես աստվածներ են։ Բայց բաբելացիների մոտ Մարդուկն այնպիսի մեծ հարգանք է վայելում, որ տարօրինակ կլիներ նրան Անուի հանդեպ ներկայացնել այդպիսի անօգնական դրության մեջ, չնայած Անուն բարձր է։ Ուստի այդ դրվագում Ախիկարի համեմատության մեջ ավելի հարմար է տեսնել երկու պաշտամունքների արտացոլում. մեկը՝ ըստ երևույթին բաբելոնյան Բելի, Շամաշի, Սինի և էլի ինչ-որ աստծո երկրպագությամբ և մյուսը՝ Երկնքի աստծո պաշտամունքի նախընտրությամբ, ընդ որում վերջին պաշտամունքին խմբագիրը տալիս է բացահայտ նախապատվություն։ Եթե այդպես է, ապա Երկնքի աստվածը Ախիկարի համեմատության մեջ կարող է նույնացվել Բելշիմի հետ, որը հիշվում է գրքի սկզբում, և նրա խմբագիրը բաբելացի չէ»[68]։

Ինչպես տեսնում ենք, այստեղ ևս հարցը մնում է անորոշ («եթե... եթե»)։ Կա նաև մի ուրիշ երև։ Որոշ բնագրերում Sa, Sm, S3, Cr) սկիզբն այլ է։ Ախիկարը դիմում է նախ՝ աստվածներին, ապա՝ միակ աստծուն։ Իսկ ինչպե՞ս վարվել այս դեպքում։

Բացի այդ։ Հայկական տարբերակում չկա Բելշիմի բացահայտ նախընտրություն մյուս աստվածների նկատմամբ։ Սկզբից թվում է երեք աստվածների անուններ, իսկ համեմատության ժամանակ Բելշիմին հակադրում է դից (աստրեինում Բելին՝ Երկնքի տիրոջ հետ, որ է Բելշիմ), այնպես որ Երկնքի աստվածը, եթե արտահայտում է միաստվածության գաղափար, չի կարող նույնացվել Բելշիմի հետ, և շփոթը բոլորովին էլ պարզված չէ։

Նկատենք նաև, որ բնագրերի մեջ ճիշտ չէ գտնել երկու պաշ-

[68] *Н. Дурново*, К истории Повести об Акире, էջ 87–88։

տամունքների արտացոլում և պապիրուսների ու հետագա խմբագրությունների ծագման հարցերը հեռացնել իրարից։ Մենք առիթ կունենանք այդ խնդրին անդրադառնալու։

Գրքի վերջին ընդարձակ գլուխը նվիրված է գրույցի սլավոնական թարգմանության հնագույն և հետագա տարբերակների համեմատությանը։ Դրանով փորձ է արվում լրացնել Գրիգորևի աշխատության թերին։

Այս երկով ավարտվում է Խիկարի ուսումնասիրության, եթե կարելի է ասել, դասական շրջանը։ Այնուհետև առանձին դեպքերում բանասերները վերադարձել են այդ թեմային, շոշափելով մասնակի հարցեր, կամ տալով միայն ընդհանուր տեղեկություններ[69]։

**1916** թվականին Պերետցը հրատարակում է սլավոնական հետագա խմբագրության մի օրինակ, փոքրիկ առաջաբանով, որտեղ միտք է հայտնում, որ պետք է գրույցն ուսումնասիրել ռուս գրականության ներքին կապակցությունների մեջ. «Գրիգորևի և Դուրնովոյի աշխատանքները,—գրում է նա,—բոլորովին էլ Ախիկարի ուսումնասիրության վերջը չեն, այլ միայն մեծ կամ փոքր չափով ելակետեր են տրվում, որտեղից հարկ կլիներ ապագա հետազոտողներին դուրս գալու, քանի դեռ նրանք ռուս հին գրականության մեջ այդ հետաքրքիր հուշարձանի ճակատագրի մասին չեն գա ինքնուրույն եզրահանգումների»[70]։

Պերետցի այս պահանջը դեռևս մնում է անկատար։

**1920** թվականին Ֆրանսուա Նոն բնագրով և ֆրանսերեն թարգմանությամբ հրատարակում է Խիկարի ասորական մի քանի ընդօրինակություններ, իսկ վերջում՝ ծանոթագրություններով և քաղվածաբար ներկայացնում պապիրուսները։ Այստեղ նա այն միտքն է հայտնում, որ պապիրուսները թարգմանություն են. «Մեզ թվում է, որ դրանք լոկ թարգմանություններ են, ինչպես նույն ժողովածուում տեղ գտած Բիհիսթունի արձանագրությունը, ոչ միայն՝ որովհետև լեզուն մյուս փաստաթղթերի համեմատությամբ թվում է «թարգմանական արամեերեն է», ինչպես ասում է Բոնիոնը, այլ մանավանդ՝ որովհետև Ախիկարի արամեերենում, ինչպես և այն արամեերենում, որով թարգմանված է Բիհիսթունի արձանագրու-

---

[69] Տե՛ս օրինակ *И. М. Волков*, Арамейские документы иудейской колонии в Элефантине V века до р. Х., М., **1913**, էջ **63—68**։

[70] *В. Н. Перетц*, К истории текста „Повести об Акире Премудром», Птг., **1913**, էջ **1—7**։

*թյունը, հատուկ անուններին հաճախ հետևում է մի ավելորդ բառ՝ իր անունը, որը ներմուծված պետք է լինի բոլոր դեպքերում ստրըկամիտ թարգմանչի կողմից: Հայր Շեյլը նշեց, որ այդ ավելորդ բառը եղել է նաև Բիհիսթունի արձանագրության պարսկական բնագրում (ինչպես ասորական տարբերակում), բայց այն խորթ է սեմիտական հանճարին»*[71]:

*Ինչպես գիտենք, դեռ 1911 թվականին Նոն գտնում էր, որ «բնագրի լեզուն անկասկած արամեերենն է եղել»: Այժմ նա, հրաժարվելով այդ կարծիքից, ընդունում է պարսկերենը կամ ասորերենը*[72]*: Հեղինակի մասին այս անգամ չի խոսում (հրեա է թե ոչ), բայց արդեն այդ հարցն էլ դուրս է գալիս հենց իր կողմից հրեությունը պաշտպանող փաստարկով՝ «եթե ընդունենք, որ հեղինակը հրեա է, հնարավոր չէ, որ նա օգտագործած լիներ սեպագիրը և ասորական լեզուն, երբ իր ձեռքի տակ ուներ փյունիկյան այբուբենի պես կատարյալ տառեր»*[73]:

*Նույն թվականին ռուսերեն հրատարակվում են Խիկարի և Լոքմանի բնագրերը*[74] *Ի. Կրաչկովսկու առաջաբանով, որն ունի որոշ գրականագիտական ուղղվածություն:*

*Կրաչկովսկին այսպես է բնութագրում զրույցը. «Հավանաբար ոչ այնքան բուն սյուժեն, հասարակ և ոչ բարդ, որքան բիբլիական ոճը և կենցաղային իմաստությունը, միջին մարդու պահանջներին համապատասխան, որը չի ձգտում բարձրանալ իր առօրյա կյանքի մակարդակից, համաշխարհային փառք բերեցին այս ստեղծագործությանը:*

*Դա եղել է ոչ միայն գրքային ուսուցողական երկ,—շարունակում է Կրաչկովսկին,—այդտեղ մարդիկ, իրենց աշխարհայացքին հենարան գտնելով, ապրել են և ապրում են մինչև այսօր»*[75]:

*Դյուպոն Սոմմերը ազատ թարգմանությամբ գրական հանրագիտարանի մեջ հրատարակում է պապիրուսների խրատները և կարճ տեղեկություններ հաղորդում զրույցի մասին, որ «հսկայական հաջողություն է գտել ամբողջ արևելյան աշխարհում»*[76]:

---

[71] *F. Nau*, Documents relatifs à Ahikar (Extrait de la Revue de l'Orient chrétien, т. XXI), Paris, 1920, էջ 92—93:

[72] Նույն տեղում, էջ 94:

[73] „Revue Biblique internationale“, էջ 75:

[74] „Мудрость Хикара и басни Лукмана“, Птг., 1920:

[75] Նույն տեղում, էջ 7:

[76] „Histoire des littératures“ (Littératures anciennes orientales et orales). Encyclopédie de la pléiade, էջ 640—642:

1931 թվականին Ն. Դուրնովն, հենվելով Ռեշետարի կողմից հրատարակված Ակիրի գրույցի մի ընդօրինակության վրա, նոր եզրակացություններ է անում սլավոնական գրականության մեջ գրույցի հայտնվելու ուղիների մասին[77]։

Մ. Սպերանսկու[78] (1921) Վ. Իստրինի[79] (1932), Ա. Օրլովի[80] (1934) աշխատանքներն Ակիրի մասին չեն կրում հետազոտական բնույթ և ելնում են Գրիգորևի ու Դուրնովոյի տվյալներից։

Վերջին տասնամյակում գրույցի շուրջ նկատվում է ինչ-որ վերարթնացող հետաքրքրություն։

1960 թվականին ռուսերեն հրատարակվում է սարական գրական և բանահյուսական երկերի մի ժողովածու Ն. Պիգուլևսկայայի խմբագրությամբ և առաջաբանով։ Բնագրերն ասորերենից թարգմանել են Ա. Բելովան և Լ. Վիլսկերը։

Զրույցին ուղեկցող փոքրիկ առաջաբանը (մեկ և կես էջ) վերջանում է այս պարբերությամբ.

«Ժամանակակից ընթերցողի համար Ախիկար իմաստունի մասին պատմվածքը դարաշրջանի փայլուն և արժանահավատ հուշարձան է, որ ընդլայնում է մարդու մտահորիզոնը, հարստացնում միտքն ու զգացումը, պատճառում գեղարվեստական բավականություն»[81]։

1963 թվականին Սոֆիայում, սլավոնագետների հինգերորդ միջազգային կոնգրեսում, Խիկարի մասին զեկուցումով հանդես է գալիս Քիցիմիան[82]։ Դրան նախորդել է նույն թվականին նրա հրատարակած ուսումնասիրությունը[83]։

---

[77] *Н. Дурного*, Дубровницкий список повести об Акире (iz Dubrovaike proslosti. Zbornik. u čast M. Reššetara), Dubrovnik, 1931 рецензию см. „Труды института славяноведения Академии наук СССР", Л., 1932, էջ 462—463։

[78] *М. Сперанский*, К истории взаимоотношений русской и югославянских литератур. „Известия отд. русского языка и словесности Российской Академии наук", том. XXVI, 1921, էջ 195—196։

[79] *В. Истрин*, Очерк истории древнерусской литературы домосковского периода (XI—XIII вв.), Птг., 1922, էջ 95—98։

[80] *А. Орлов*, Переводные повести феодальной Руси и московского государства XII—XVII веков, Л., 1934, էջ 56—63։

[81] „От Ахикара до Джано", Л., 1960, էջ 10։

[82] *I. Chițimia*, „L'Histoire du sage Ahikar" dans les littératures slaves et la littérature roumaine et ses rapports avec le folklore., Romanoslavica IX, Referate și comunicări prezentate la cel de-al V-lea Congres internaţional al Slaviştilor (Sofia, 17—23, IX, 1963), Bucureşti 1963, էջ 413—426։

[83] *I. Chițimia*, Povestea lui Archirie filozoful, dans Cărțile populare in

*1964 թվականին Ժ. Դենին և Է. Տրիյարսկին հրատարակում են Խիկարի հայ-ղփչաղերեն բնագիրը[84]։ Հրատարակությունն ունի սոսկ լեզվագիտական բնույթ։*

*Խիկարի զրույցի շուրջ ծավալված բանասիրության մասին մեր ակնարկը իր ավարտին է հասնում։*

*Ինչպես տեսնում ենք, էլեֆանտինյան պապիրուսների քննությունը ևս զրույցի ծագման և բնույթի հարցերը լուծելու համար բավարար հիմքեր չի տալիս։*

* *
*

*Չնայած Խիկարը այնքան մեծ ճանաչում ունի, և զրույցն այնքան խոր հետքեր է թողել հայ մատենագրության մեջ, հայ բանասիրությունը երկար ժամանակ այդ բնագրի նկատմամբ մնացել է անհաղորդ։*

*Հավանաբար այստեղ դեր ունի հայ նոր գրականության մեծ հիմնադրի՝ Խաչատուր Աբովյանի գնահատականը։ «Վերքի» առաջաբանում կան այսպիսի տողեր.*

*«Ում հետ էլ որ խոսում էի, էն էրին թանխա տալիս, թե մեր ազգը ուսումնասեր չի, կարդալը նրա համար գին չունի, բայց ես տեսնում էի, որ էս մեր կարդալ չսիրող ազգը Ռոպենսոնի պատմությունը, Պղնձե քաղաքի հիմար գիրքը ձեռնե ձեռ էր ման ածում»[85]։*

*1708 թվականից ի վեր Խիկարի զրույցը տեղ է գտել Պղնձե քաղաքի պատմության գրքի մեջ, զրույցների շարքում։*

*«Աբովյանը հիմար որակում տալով այդ գրքին,—գրված է Աբովյանի երկերի ակադեմիական հրատարակության ծանոթագրություններում,—դրանով իր անվերապահ բացասական վերաբերմունքն է արտահայտում կրոնա-բարոյական բնույթի այդ*

---

[1]iteratura rominească, édition par les soins de I. C. Chițimia et Dan Simonescu, vol. 1, Bucarest, 1963.

[84] *Jean Deny*, Edward Tryjarski, Histoire du Sage Hikar, dans la version arméno kipțchak, Rocznik orientalistyczny, tom. XXVII, Warszawa, *1964, էջ 7—61։ Այս հրատարակության առթիվ Էդմոնդ Շուտցի գրախոսությունը տե՛ս* Acta Orient. Hung., t. XIX, 1966, *էջ 365—368։*

[85] **Խաչատուր Աբովյան,** *Երկերի լիակատար ժողովածու, հտ. Գ, Երևան, 1948, էջ 4։*

*գրույցների նկատմամբ, որոնք հիմնականում հանգում են աշխարհիկ կյանքի ժխտմանը հանուն հանդերձյալ կյանքի»[36]։*

*Ճիշտ չէ։ Այդ զրույցները հիմնականում չեն հանգում աշխարհիկ կյանքի ժխտմանը, այլ թերևս միջնադարից եկող ամենաաշխարհիկ երկերն են, ինչպես Խիկարի զրույցը, Աղջկան ու մանկան պատմությունը, Նուշիրվանի խրատները և այլն։*

*Աբովյանը մերժում է Պղնձե քաղաքի գիրքը պարզապես ելնելով նոր, ազգային գրականություն ստեղծելու անհրաժեշտությունից։*

*1874 թվականին Գաբրիել Այվազովսկին իր «Հազար ու մի առակավոր բանքի» մեջ փորձում է պարզել խիկարի ինքնությունը.*

*«Խիկար իմաստունը ոչ թէ Ասորեստանեայց Սենեքերիմ թագավորին ատենադպիրն է եղեր (ինչպես որ Պղնձե քաղաքին անհամ ու անժուր պատմության հեղինակը հնարեր է), հապա ինչպես մենք կը կարծենք Արծրունյաց Սենեքերիմ թագավորին օրեբուն, այսինքն՝ ասկից 850 տարիի չափ հառաջ, Հայաստանի մեջ անվանի եղած զվարճաբան առակախոս և ժողովրդական իմաստասեր էր»[37]։*

*Ինչպես տեսնում ենք, Այվազովսկին չի ուզում Խիկարի անունը կապել Պղնձե քաղաքի «անհամ ու անժուր» պատմության հետ, որը նրան վերաբերող միակ երկն է։ Այդ մոտեցումը դառնում է հասկանալի։*

*1888 թվականին Ն. Քարամյանցը իր ցուցակի մեջ նկարագրելով մի ընդօրինակություն, հավատ չի տածում Խիկարի մասին զրույցում հաղորդած տեղեկություններին, գտնելով, որ դրանք «իհարկե չունեն պատմական արժեք»։ «Նրա անձի և նրա բազմաթիվ առակների մասին դեռևս չկա որևէ ուսումնասիրություն»— գրում է Քարամյանցը։ Նրան հայտնի է միայն Գ. Այվազովսկու աշխատանքը[38]։*

*1893 թվականին Այվազովսկուն հետևում է Վ. Տեր-Մինասյանը։ Նա նույնպես գտնում է, որ Պղնձե քաղաքի պատմության հետ խիկարը որևէ կապ չունի։ Պղնձե քաղաքի հեղինակն այդ*

---

36 **Խաչատուր Աբովյան,** *Երկերի լիակատար ժողովածու, հտ. Գ, էջ 380։*

37 **Գ. Այվազովսկի,** *Հազար և մի առակավոր բանք ազգայինք և օտարք, Կ. Պոլիս, 1874, էջ ԺԱ։*

38 *N. Karamianz,* Die Handschriften-Verzeichnisse der Königlichen Bibliothek zu Berlin (Zehnter Band. Verzeichniß der armenischen Handschriften), Berlin, 1888, *էջ 65։*

*գրույցը հյուսել է «Եզովպոսի կենսագրության հետևելով, միայն անուններու փոփոխությամբ»*[89]։

*Խիկարի ապրած ժամանակի հարցում նա չի ուզում համաձայնվել Այվազովսկու հետ և, հավատալով ճառընտիրից մի վկայության, ենթադրում, որ Խիկարն ապրել է Զաքարիա հայրապետի օրոք, 860 թվականի շրջանում*[90]։

*Հայ բանասիրության մեջ Խիկարի շուրջ գիտական հետաքրքրություն է սկսվում 1898 թվականից, որ կապված է Կոնիբերի կողմից հայկական բնագրի հրատարակության հետ։*

*1898 թվականի հունիսին Կոնիբերը* «Folklor»*-ի մեջ ծանուցում է տալիս իր հրատարակության մասին։ Դա ոգևորում է Հ. Չրաքյանին, որը Ա. Ա. ստորագրությամբ մի փոքրիկ հոդվածով հանդես է գալիս «Բազմավեպում»*[91]*։ Չրաքյանը քաղվածաբար ներկայացնում է հայկական բնագիրը մի ձեռագրից, որը պատկանում է մեր* C *խմբին, հարմար առիթի թողնելով «նոր ամբողջական հրատարակությունը»։ Բայց այդպիսի առիթ այնպես էլ չեղավ։ Նրան կանխեց հավանաբար Կոնիբերի հրատարակությունը, որը նույնպես* C *բնագրախումբն է ներկայացնում, և Չրաքյանի օրինակը չէր կարող նոր բան տալ։*

*Չրաքյանը ծանոթ է Կունի, Մեյսների և Հոֆմանի աշխատանքներին։ Նա իր հոդվածը վերջացնում է այսպես.*

*«Աքիաքարու պատմությունը կարևոր ծանոթություններով պիտի ճոխացնե այսուհետև Տովբիթա նոր հրատարակությունքը։ Դարձյալ ինչպես հայտնի է, Խիկարու «իմաստությունը» համաձայն է Սողոմոնի Առակաց գրոց, կամ լավ ևս կօգտվի եբրայական բարոյականեն, որ Առակաց և Ժողովողի մեջ կը գտնվի, և ընթերցողք արդեն նկատած պիտի ըլլան Խիկարու և Հին կտակարանի առածից մեջ եղած նմանությունքը»*[92]*։*

*Դրանք Խիկարի մասին առաջին լուրջ տեղեկություններն են հայ բանասիրության մեջ։*

*1899 թվականին Հ. Տաշյանը «Հանդես ամսօրյա»-ում հրապարակում է մի ընդարձակ հոդվածաշար*[93]*, որ հետո՝ 1901 թվա-*

---

[89] **Վահան վարդապետ Տեր-Մինասյան,** *Անգիր դպրություն և առակք, Կ. Պոլիս, 1893, էջ ՋՂ—ՋԷ։*

[90] *Նույն տեղում, էջ ՋԸ—ՋԹ։*

[91] *«Բազմավեպ», 1898, էջ 488—492։*

[92] *Նույն տեղում, էջ 492։*

[93] *«Հանդես ամսօրյա», 1899, էջ 33—38, 74—79, 112—116, 129—33, 173—176։ 198—201, 236—238, 272—277, 295—299, 334—338, 372—377։*

կանին տպագրվում է առանձին[94]։ Առիթը դարձյալ Կոնիբերի, ավելի ճիշտ՝ երեք գիտնականների հրատարակությունն է։

Տաշյանը ներկայացնում է զրույցի շուրջ մինչ այդ եղած բանասիրությունը։ Նա ունի բավական հարուստ մատենագիտական տեղեկություններ[95]։ Տաշյանը հաճախ ընդմիջարկություններ ու դիտողություններ է անում տարբեր առիթներով և ամեն դեպքում փորձում է լինել հայկական խմբագրությունից։

«Խիկարա պատմությունն այնպես ինչպես առջևնիս ունինք ասորերեն, արաբերեն, հայերեն և այլն, կը ներկայանա իբրև սիրուն վեպ մը,— գրում է Տաշյանը,— բայց իր հիմնականը կրնար պատմական ըլլալ՝ գոնե չէականս»[96]։ Նա բաժանում է այն բանասերների կարծիքը, որոնք Խիկարին Եզովպոսի և Տովբիթի գրքի նկատմամբ առաջնություն են տալիս։

Տաշյանը, հետևելով Հարրիսին, ընդունում է զրույցի հրեական ծագում.

«Աքիկարու նախնականն ապահովապես Եբրայեցվոց արտաքին մատենագրության արգասիք մըն էր, այն բազմաթիվ նախաքրիստոնեական արտադրություններեն Հրեից, որոնց շատը կորսըված, բայց փոքր մաս մ՚ալ թեև հաճախ այլևայլ փոփոխությամբ՝ հասած է մեզի։ Ասոնց հետ Աքիկար ալ նույն նկարագիրն ուներ»[97]։

Տաշյանը Խիկարից և Սուրբ գրքից բերում է բազմաթիվ զուգահեռներ։ Նա հավանական է համարում Հարրիսի այն ենթադրությունը, որ Ախիկարի խրատները պետք է որ այբուբենի դասավորությունն ունենային, ինչպես Լամուելի կամ Բեն Սիրայի առածները. «Հավանական կ՚ըլլայ նախնականին միայն 22 առած ունենալն՝ սեմական այբուբենքի համեմատ,— գրում է Տաշյանը։— Այս կետը սուգիվ կարևոր է, բայց տակավին կարոտ անդրագույն հետազոտությանց, որոնք թերևս կարենան օր մը հնագույն նախնականին ձևը վերակազմել»[98]։

Այս առիթով մենք կարող ենք բերել շատ հետաքրքիր մի փաստ։ Հայ խմբագրության A տարբերակի առակավոր խրատները 22-ն են, սեմական այբուբենի թվին հավասար[99]։

---

[94] Հ. Տաշյան, Մատենագրական մանր ուսումնասիրություն, մասն Բ, Վիեննա, 1901, էջ 1—152։

[95] Մատենագիտական տեղեկություններ նա հաղորդում է դեռևս իր Ցուցակի մեջ (տե՛ս «Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց», Վիեննա, 1895, էջ 1097)։

[96] Հ. Տաշյան, Մատենագրական մանր ուսումնասիրություն, էջ 32։

[97] Նույն տեղում, էջ 99։

[98] Նույն տեղում, էջ 107։

[99] «Պատմութիւն եւ խրատք Խիկարայ իմաստնոյ», գիրք Ա, էջ 342։

*Տաշյանը, ընդունելով զրույցի հրեական ծագման վարկածը, նրա մեջ նկատվող հեթանոսական շերտը համարում է հետամուտ.*

*«Ըստ մեզ այս հեթանոսական նկարագիրն ավելի հետո զարգացած ըլլալու է, վեպի զարգացումն տվող գրչեն, դժվարավ բուն նախնականին մեջ։ Գոնե Տովբիթա հեղինակին Աքիկարի մասին ակնարկածներն ու ըրած գովությունքն (հմմտ ԺԱ 17, և ԺԴ 10) դժվարավ կը մեկնվին, եթե իր առջևն եղած գրության մեջ Աքիկար կռապաշտ հեթանոս մը ներկայացված ըլլար այնպես բացորոշ գույներով»*[100]։

*Անդրադառնալով հայ բնագրին, Տաշյանը փորձում է որոշել նրա թարգմանության ժամանակն ու սկզբնաղբյուրը և անում հետաքրքիր դիտողություններ, բայց չի ուզում վճռական խոսք անել, որովհետև չկա քիչ թե շատ անաղարտ բնագիր։*

*«Այս կետը զմեզ կը ստիպե ընդհատել մեր ուսումնասիրությունքն ալ՝ մինչև հնագույն և ընտրելագույն բնագրի մը յայտնըվիլն։ Առանց աոր շատ մը խնդիրներ, որ լուծման կը սպասեն, չեն կրնար նաև ձեռնարկվիլ՝ առանց ապարդյուն աշխատության, և ոչ հանված եզրակացությունք հաստատուն հիմ կրնան ունենալ»*[101]։

*Ուսումնասիրության վերջին էջերը (էջ 143—152) նվիրված են հայ-ղփչաղերեն խմբագրությանը։*

*Տաշյանը միանգամից Խիկարի շուրջ հայ բանասիրական միտքը բարձրացրեց միջազգային գիտության աստիճանին։*

*1899 թվականին նորից հանդես է գալիս Հ. Զրաքյանը «Իմաստուն Խիկարը և Տովբիթա գիրքը» հոդվածով*[102]։ *Զնայած դա, ինչպես ճիշտ նկատում է Գրիգորևը*[103], *էմանուել Կոսկենի ուսումնասիրության կարճ վերքաղություն է, բայց արժանի է ուշադրության։ Կոսկենը առանձին նշանակություն էր տալիս հայ խմբագրությանը իր արտահայտիչ հեթանոսական բնույթի շնորհիվ։*

*Զրաքյանը, հետևելով Կոսկենին, նկատում է, որ հայ խմբագրությունը «պահպաներ է բազմաստվածութեան գույնը», բայց «հայերեն հետնագույն օրինակներ ավրեր են քրիստոնյա խղճմըտությամբ մը,— գրում է նա,— և ավրեր են ամբողջովին ըստ վկայության պ. Կոնիբիրի և ոչ՝ մասամբ, ինչպես որ կ'ըսեն Խի-*

---

[100] Հ. Տաշյան, *Մատենագրական մանր ուսումնասիրությունք*, էջ 44—45։

[101] *Նույն տեղում, էջ 136—137*։

[102] *«Բազմավեպ», 1899, էջ 160—161, 354—358, 495—497*։

[103] *А. Григорьев*, Повесть об Акире Премудрóм, էջ 24։

կարու Պատմութեան այլ թարգմանութիւնք, աստին, արտքն և այլն»[104]։

Մեզ թվում է, դա ո՛չ Կոնիբերի, ո՛չ Չրաքյանի անձնական դիտողության վրա չի հենված։ Հայ հետագա տարբերակները, որքան էլ աղավաղ, այնուամենայնիվ հեթանոսության հետքեր շատ ավելի են պահպանել, քան մյուս բոլոր խմբագրությունները. աստին, արտքը և այլն։

Չրաքյանը խոստանում է անդրադառնալ այդ հարցերին. «Կրհուսանք հետզհետե լուսաբանել խնդիրս», բայց նրա խոստումը մնում է անկատար։

Զրույցի պատմականության առթիվ Չրաքյանը գրում է. «Իմաստուն Խիկարու պատմությունը ստուգիվ ինքյան շինծու, արևելյան հին վեպերու գրական հարմարում մը է, որով պատմական ստուգության և ոչ կտոր մը ունի մեջը»[105]։

Կոսկենն այդ տեսակետն արտահայտում է իր ուսումնասիրության Դ գլխում, ուր արևելյան ժողովուրդների բանահյուսությունից բերում է բազմաթիվ սյուժեներ և համեմատում զրույցի հետ[106]։

Սրանով, կարելի է ասել, սպառվեց հայ բանասիրության հետաքրքրությունը Խիկարի նկատմամբ։

1911 թվականին Մարգարը զրույցի թեմայով հեքիաթ է գրում, որտեղ Սենեքերիմը Ալթուն թագավորն է[107]։ Դա ինքնին վկայում է, որ վերաբերմունքը Պղնձե քաղաքի զրույցների նկատմամբ սկսում է փոխվել։ Իսկ բանասերների հետաքրքրությունը վերարթնացավ ավելի ուշ։

1966 թվականին Բ. Չուգասզյանը Պղնձե քաղաքի շարքից առանձին հրատարակում է Նուշիրվանի համեմատական բնագիրը[108]։ Առաջաբանում և ծանոթագրությունների մեջ հեղինակը քննում է բանասիրական հարցեր և դիտողություններ անում խրատականքի շուրջ։

1969 թվականին մեր կողմից հրատարակվում է «Պատմութիւն

[104] «Բազմավեպ», էջ 161։

[105] Նույն տեղում, էջ 355։

[106] Չրաքյանը բերում է ճեղքված երկանաքարը կարելու խնդիրը, որ առաջարկում է Եգիպտոսի Փարավոնը Խիկարին (էջ 499)։ Բայց զրույցի մեջ, գոնե մեզ ծանոթ օրինակներում այդպիսի խնդիր չկա։

[107] Մարգար, Խիկար իմաստուն (Պղնձե քաղաքի զրույցներից), Թիֆլիս, 1911 (արտատպված «Հասկեր»-ից)։

[108] «Խրատք Նուշիրուանի», աշխատասիրությամբ Բ. Լ. Չուգասզյանի, Երևան, 1966։

*եւ խրատք Խիկարայ իմաստնոյ» գիրքը (Գիրք Ա)*[109]*։ Այս աշխատանքին նախորդել են հոդվածներ, որոնք տարբեր ժամանակներում տպագրվել են «Բանբեր Մատենադարանի» տարեգրքում*[110]*։*

*Ասորական բնագրերը մյուս խմբագրությունների նկատմամբ դիտվում են համեմատաբար անաղարտ, որ ավելի շատ կարող են պատկերացում տալ նախնականի մասին, բայց, համենայն դեպս, մեզ հասել են ուշ շրջանից, անբավական են ու թերի։*

*«Հնարավոր է, որ լավագույնը գտնվի այլ խմբագրություններից մեկնումեկում և ոչ թե մեր՝ ասորական ձեռագրերում, որոնք նոր են և քիչ թե շատ տարբերվում են իրենց նախատիպից»*[111]*,— գրում է Նոն, որ համեմատությամբ ներկայացնում է ասորական բնագրերը։*

*Կարծում ենք հայկական խմբագրությունը հենց այն է, ինչ փնտրում էր Նոն։*

*Մեր աշխատանքը հենվում է «Պատմութիւն եւ խրատք Խիկարայ իմաստնոյ» Ա գրքում հրատարակված մինչ այդ անծանոթ հնագույն աղբյուրների վրա։*

*Պարզենք նախ աղբյուրների բնույթը։*

---

109 *«Պատմութիւն եւ խրատք Խիկարայ իմաստնոյ» (Հայկական խմբագրություն), գիրք Ա, աշխատասիրությամբ Ա. Ա. Մարտիրոսյանի, Երևան, 1969։*

110 *«Խրատք եւ իմաստութիւն Խիկարայ» զրույցի հայերեն թարգմանության հարցի շուրջը», «Բանբեր Մատենադարանի», № 5, 1960, էջ 77—95. «Խիկարի տեղն ու դերը հայ մատենագրության մեջ», «Բանբեր Մատենադարանի», № 8, 1967, 7—20, «Խիկարի զրույցի սլավոնական խմբագրության սկզբնաղբյուրը», «Բանբեր Մատենադարանի», № 9, 1969, էջ 23—47։ Առաջին հոդվածում որոշ կարծիքներ, ինչպես օրինակ, սլավոներենի հունարենից ծագելը և այլն մեր կողմից վերանայված են։*

111 *F. Nau,* Histoire et sagesse d'Ahikar l'Assyrien էջ 134։

## 2. ՋՐՈՒՅՑԻ ՍԱՀՄԱՆԱՅԻՆ ԿԱԶՄԸ

### (Զրույցի շերտերը և ճնագույն բնագիրը)

*Հրապարակի վրա է Խիկարի հայկական խմբագրությունն իր վեց տարբերակներով[1]։ Նրանք չեն ծածկում իրար և տարընթերցումների մի հարուստ աշխարհ են ներկայացնում։*

*Դանդաղ և զգուշավոր ձեռքերով պետք է մաքրել նրանց վրայից դարերի նստվածքը և փնտրել բուն շերտերը։ Դա նման է այն աշխատանքին, որ կատարում է բնախույզ մարդաբանը, ձեռքին ունենալով պատմական գործչի մի հին, պեղված գանգ։ Նա հաշվի է առնում ամեն մանրուք, չափում է ոսկրերի մեջ եղած համամասնությունները, նրանց ձևը, խոռոչների մեծությունը, փտածության աստիճանը, քննում նրա մասին եղած բոլոր տվյալները, հենվում մարդակազմության վրա և վերջապես՝ վերականգնում պատկերը։*

*Դա ճշմարիտ է, բայց ենթադրական։*

*Ինչ առնչություն ունեն տարբերակները միմյանց հետ, ինչպիսի ճանապարհ է անցել բնագիրը հայ մատենագրության մեջ, որոնք են նրա նախնական գծերը, ինչն է հարազատ կամ հետամուտ։*

*Ահա այս խնդիրներն են, որոնք սնում են մեր հետաքրքրությունը։*

### Ա. ԽՈՍՔ ԻՄԱՍՏԱՍԻՐԱՑ

*Տարբերակների մեջ կարելի է նկատել այնպիսի գծեր, որոնք բոլորի համար ընդհանուր են։*

*ա) Ամենուր Խիկարը դիմում է աստվածներին* աստուածք *կամ* չաստուածք *ձևով, որոշ դեպքերում գործածելով* կուռք, *որը երկրորդային տարընթերցում է։*

*[1] «Պատմութիւն եւ խրատք Խիկարայ իմաստնոյ» (Հայկական խմբագրություն), գիրք Ա, Երևան, 1969։*

*բ) Անունները տառադարձված են միակերպ, և եթե ոչ սակավ կան փոփոխված ձևեր, ապա, պարզապես, հետագա ստուգաբանության կամ այլագրության հետևանք են։*

*գ) Որոշ բնագրեր կամ բնագրային հատվածներ ծածկում են իրար։ Օրինակ* B *տարբերակը համեմատելի է* A-*ին,* E (F) *բնագրի մուտքը նույնն է* C-*ի հետ։*

*դ) Խրատականքի շարքերը մեծ շեղումներ են տալիս, բայց խրատներն առանձին ունեն բնագրային աղերս։*

*Բերենք* A *և ամենից ավելի հեռացող* G *տարբերակից մի երկու զուգահեռ։*

| A | G |
|---|---|
| *Որդեակ, ի մէջ երկուց կռվողաց մի՛ կանգնիր, զի մի ի զուր մեռցիս, կամ ձաղեսցիս, կամ պատուհասեսցիս, այլ փախի՛ր ի հեռի։* | *Որդեակ, ի մէջ երկուց կռվողաց մի՛ մտանիցես, զի մի ի զուր մեռցիս, կամ ձաղեսցիս և պատուհասեսցիս, փախի՛ր հեռի։* |
| *Որդեակ, մի՛ տար թոյլ ընկերին կոխել զոտս քո, զի մի համարձակիցի կոխել զպարանոց քո։* | *Որդեակ, մի՛ տար թոյլ ընկերին կոխել զոտն քո, զի մի համարձակիցի կոխել զպարանոցն։* |
| *Լաւ է անուն բարի, քան զտեսակ ցանկալի, զի գեղեցկութիւն ապականի, և անուն բարի մնա յաւիտեան։* | *Որդեակ, լաւ է անուն բարի, քան տեսակ ցանկալի, զի գեղեցկութիւն ապականի, և անուն բարի յաւիտեան մնա։* |

*Այստեղ տարընթերցվածներն ունեն սոսկ գրչական շեղումների բնույթ։*

*Այդպիսով* A, B, C, D, E(F) *նույնիսկ՝* G *բնագրի համար, որ վճռաբար հեռացել է մյուսներից, կազմելով առանձին խմբագրություն, պետք չէ ենթադրել երկրորդ աղբյուր։ Տարբերակներն առաջացել են հետագայում, հայ մատենագրության հողի վրա և, անշուշտ, ծագում են թարգմանական մեկ նախօրինակից։*

*Փորձենք մոտավոր գծերով վերականգնել նրա պատկերը։*

*Չորս մաս է բաղադրում զրույցի բնագիրը. մուտք, ուսուցող խրատներ, պատմություն և առակավոր կամ պատժիչ խրատներ։*

*Բնագրերում համեմատաբար ավելի շատ լրացումների ու փոփոխության է ենթարկվել խրատականքը։ Ժամանակն ու նախասիրություններն ավելացրել են նոր շերտեր, կամ սղել, խախտելով սահմանակցությունը։ Բոլոր խմբերի մեջ խրատների քանակը տատանվում է 85-ից 210-ի միջև, բայց քանի որ խրատները միաբնույթ չեն, ուստի այդ թիվը շատ ավելի մեծ է։*

*Զափազանց բարդ է տարբերակել բնագրային և հետամուտ խրատները, բայց և շատ կարևոր։ Դա նույն արժեքն ունի, ինչ որոշել որևէ առակի կամ օրենքի ինքնությունը։ Ամեն մի խրատ առանձին միավոր է, որ ապրել է իր զարգացումը, հաճախ ընկնելով գրական կամ բանահյուսական այլ ձևերի (առակ, առած, ասույթ) հիմքում։*

*Խրատականքի ներքին կառույցին և դասակարգմանն հետևելու համար բերենք մի աղյուսակ, որն արտահայտում է միայն տարբերակների* (A, B, C, D, E, G) *և ոչ թե ձեռագրական միավորների* ($A_1$, $A_2$, $A_3$ *կամ* $C_1$, $C_2$, $C_3$, $C_4$ *և այլն) հարաբերակցությունը, որ ներկայացված է առանձին աղյուսակներով (տե՛ս գիրք Ա, էջ 340—350)։*

**Ուսուցող խրատներ**

| A | B | C | D | E | G |
|---|---|---|---|---|---|
| 1a | 1 | 1a | 1 | 1 | 1 |
| 1b | 2 | 1b | 2 | 2 | 3 |
| 2 | 3 | 2 | 3 | 26 | 4 |
| 3 | | 4 | 26 | 111 | 5 |
| 4 | 4/5 | | 6/7 | 51 | 6 |
| 5 | 6 | 3 | 8 | 3 | 7 |
| 6 | 7 | | 9 | | 8 |
| 7 | | 5/6 | 16 | | 9 |
| 8 | 8 | 7 | 29 | 12 | 43 |
| 9 | 9 | 8 | 30 | 78 | |
| 10 | 10 | 9a | 32 | 58 | 51 |
| 11 | | 9c | 33 | | |
| 12 | | 11 | 34/132 | | |
| 13 | | | 35 | | |
| 14 | | 12 | 36 | | |
| 15 | | | 38 | | |
| 16 | 12 | | 39 | | |
| 17 | 13 | 10 | 40 | 112 | |
| 18 | 14/15 | 13 | 41 | | |
| 19 | 16 | | 42 | | |
| 20 | 17 | | 43 | 80 | |
| 21 | | | | | |
| 22 | 18 | | 45 | | |
| 23 | 19 | | 46 | | |
| 24 | 20 | | 47 | | 77 |
| 25 | 21 | 41 | 48 | | 99 |
| 26 | 22 | 15 | 50 | | 102 |
| 27 | 23 | 16/17 | 52 | | |
| 28a | 24 | | 53 | | |

| A | B | C | D | E | G |
|---|---|---|---|---|---|
| 28b | 25a | | 54 | | |
| 28c | | 18 | 55 | | |
| 28d | 25b | 18 | 57 | | 11 |
| 29 | 26 | | 58 | | 76 |
| 30 | 27 | 29/30 | 59 | | 26 |
| 31 | 28 | 31 | 60 | 7 | 28 |
| 32 | 29 | 32a | 62 | | |
| 33 | | 32b | 63 | 8 | 29 |
| 34 | 30 | 33 | 61 | | 30 |
| 35 | | 34 | | 9 | 31 |
| 36 | | | | | 33 |
| 37a | 31a | 21a | | | 17a |
| 37b | 31b | 21b | | | 17b |
| 38 | 32 | 36 | 168 | | 34 |
| 39 | 33 | 35 | 169 | | |
| 40 | | 37 | | | 35 |
| 41 | | | 64 | 10 | 36 |
| 42a | | | 65 | | 61 |
| 42b | | | 66 | | |
| 42c | 35 | | 72 | | 70 |
| 42d | | | 73 | 15 | 68 |
| 42e | 36 | | 74 | 16 | 69 |
| 42F | 37 | 45 | 68 | 13 | 63 |
| 42g | 38 | 44 | 77 | 79 | 66 |
| 42h | 39 | | 69 | | 65b |
| 42i | 40 | | 70 | | |
| 42j | 42 | | 75 | | |
| 42k | 43 | | 76 | | |
| 43 | 41 | | 79 | | 71 |
| 44 | 44 | 52 | 81 | 27b | |
| 45 | 45 | | 82 | | 37 |

| A | B | C | D | E | G |
|---|---|---|---|---|---|
| 46 | | | 84 | | 39 |
| 47 | | | 85/86 | | |
| 48 | | 40 | 87 | | 41 |
| 49 | | | 88 | | |
| 50 | | 42 | 107 | 11 | 42 |
| 51 | | | 108 | | 44 |
| 52 | | | 109 | | 53 |
| 53 | 46 | 55 | 112 | 28 | 54b |
| 54 | 47 | 56 | 114 | 29 | 55 |
| 55 | 48 | 23 | 21a/49 | 30 | 19/56 |
| 56 | | | 118 | | |
| 57 | | 25 | 119 | 31 | 21 |
| 58 | 49 | 26 | 120 | 32 | 22 |
| 59 | 50 | 27 | 121 | 33 | 23 |
| 60 | 51 | 43 | 123 | 34 | 24/25 |
| 61 | 52 | 73 | 124 | 35/36 | 91 |
| 62 | 53 | 58 | 126 | 37 | 52 |
| 63 | 54/55 | 59a | 110 | 38 | 58 |
| 64 | 56a | | | 39 | 59 |
| 65 | 56b | 14a/59b | 111 | 40 | 54a |
| 66 | 57 | | 127 | 41 | 60 |
| 67 | 58 | | 129 | 42 | 67 |
| 68 | 59 | 46 | 130 | | |
| 69 | 60 | | 131 | 44 | 10 |
| 70 | 61 | 60 | 133 | 45 | 32 |
| 71 | 62 | 73b | | 46 | |
| 72 | 63/64 | 47 | 134/135 | 47 | |
| 73 | 65 | 48 | 128 | | |
| 74 | 66 | | 136 | 48 | 97 |
| 75 | 67 | 49 | 216/136 | 49 | |
| 76 | 68 | 61 | 139 | 50 | 74 |
| 77 | 69 | | 140 | | |
| 78 | 70 | | 141 | 52 | |
| 79 | 71 | 62 | 143 | 53 | 73 |
| 80 | 71 | 63 | 142 | | 75 |
| 81 | 72 | | | 54 | 76 |
| 82 | 73 | 64 | | 55 | 77 |
| 83 | 74 | | 144 | | 45/46 |
| 84 | | | 145 | | 47 |
| 85a | 75a | 57a | 146 | | 48 |
| 85b | 75b | 57b | 147 | 56 | 49 |

| A | B | C | D | E | G |
|---|---|---|---|---|---|
| 86 | 77 | 19 | 148 | 57 | 13 |
| 87 | 78 | 20 | | | 14 |
| 88a | 79a | 21 | 149a | 59a | 16 |
| 88b | 79b | 22 | 149b | 59b | |
| 89 | 80 | 51 | 150 | 60 | |
| 90 | 81 | 65 | 164 | 61 | 79 |
| 91 | 82 | | 165 | 62 | |
| 92 | 83 | | 156 | | |
| 93 | 84 | 66 | 157 | 63 | 80 |
| 94 | 85 | 68 | 159 | 64 | 72 |
| 95 | | | 160 | | |
| 96 | 86 | | 166 | 65 | 85 |
| 97 | 87 | 70 | 162 | | 86 |
| 98a | 89b | 71a | 153a/185 | | 92 |
| 98b | 89a | 71b | 153b/185 | | 88 |
| 99a | 88a | | | | 94 |
| 99b | 88b | | 161 | | |
| 100 | 90 | | | | |
| 101 | 91 | 75 | 167 | | 96 |
| 102 | 92/93 | 75 | 172 173 174 | 66 | |
| 103a | | | | | |
| 103b | | | 175 | | |
| 104a | 94 | 76 | 176 | 25 | 98/107 |
| 104b | 95 | | 177 | | |
| 105 | 96 | 28/74b | 178 | 68 | |
| 106a | 97 | | 192 | 69 | 109 |
| 106b | | | 193 | | |
| 106c | 98 | | 194 | | |
| 107 | 99 | | 183/184 | 70 | |
| 108 | 112 | | 179 | 71 | |
| 109 | 100 | | 186 | | 20 |
| 110a | 101 | 77a | 22 | 72a | 114 |
| 110b | 102 | 77b | 23 | 72b | 115 |
| 111a | 104 | | 190 | | 116 |
| 111b | | | 191 | | |
| 112 | 105 | | | | |
| 113 | 106 | | 189 | | |
| 114a | 107 | | 25 | 73a | |
| 114b | 108 | | 25 | 73b | 117 |
| 114c | | | 195 | 75 | 118 |
| 115a | 109 | 84 | | 81 | |
| 115b | 110 | | | 74a | |
| 116 | 111 | | 197 | 74b | |
| 117 | 114 | | 198 | 76 | 120 |
| | 187 | | | | |
| 118 | 188 | | 200 | 77 | 120 |

| A | B | C | D | E | G |
|---|---|---|---|---|---|
| | 115 | | | 83 | |
| | 116 | | 14 | 83 | |
| | 117 | | | 84 | |
| | 118 | | | | |
| | 119 | | 11 | 85 | |
| | 120 | | 44 | 86 | |
| | 121 | | 20 | 88 | |
| | 122 | | 27 | 89 | |
| | 123 | | 28 | | |
| | 124 | | | | |
| | 125 | 80 | 10 | 90 | |
| | 126 | | | 91 | |
| | 127 | | | 92 | |
| | 128 | | 171 | | |
| | 129 | | 15 | | |
| | 130 | | 18 | 93 | |
| | 131 | | | 94 | |
| | 132 | | 155a | 95 | |
| | 133 | | | 96 | |
| | 134 | | | 96 | |
| | 135 | | 181/182 | 97 | |
| | 136 | | | | |
| | 137 | | 83 | | |
| | 138 | | | 98 | |
| | 139 | | | | |
| | 140 | | | | |
| | 141 | | | | |
| | 142 | | | | |
| | 143 | | | | |
| | 144 | | | | |
| | 145 | | | | |
| | 146 | | | | |
| | 147 | | | 99 | |
| | 148 | | 117 | 100 | |
| | 149 | | | | |
| | 150 | | | 102 | |
| | 151 | | | | |
| | 152 | | 80 | 102 | |
| | 153 | | | | |
| | 154 | | | 103 | |
| | 155 | | | 104 | |
| | 156 | | | | |
| | 157 | | | | |
| | 158 | | 56 | | |
| | 159 | | | 105 | |
| | 160 | | | | |
| | 161 | | | | |
| | 162 | | | | |
| | 163 | | | 105 | |
| | 164 | | 17 | | |
| | 165 | | | | |

| A | B | C | D | E | G |
|---|---|---|---|---|---|
| | 166 | | | | |
| | 167 | | | | |
| | 168 | | | | |
| | 169 | | | | |
| | 170 | | | | |
| | 171 | 81 | | 106 | |
| | 172 | | | | |
| | 173 | | | | |
| | 174 | | 12 / 174b | 107/108 | |
| | 175 | | | 109 | |
| | 176 | | | | |
| | 177 | | | | |
| | 178 | | 24 | | |
| | 179 | | | | |
| | 180 | | 37 | 110 | |
| | 181 | | 5 | | |
| | 182 | | | | |
| | 183 | | | | |
| | 184 | | | | |
| | 185 | | | | |
| | 186 | | | | |
| | 11 | 9b | 19 | | 18 |
| | 34 | | 71 | | |
| | 76 | | | | |
| | 113 | | | | |
| | | 14b | | | |
| | | 24 | | | |
| | | 38 | 51 | | |
| | | 39 | | | |
| | | 50 | | | |
| | | 53 | 125 | | |
| | | 54a | 115 | | |
| | | 54b | 116 | | |
| | | 57c | | | |
| | | 66a | 158 | | 81 |
| | | 67/69 | 106 | 19 | 84 |
| | | 72 | | | 89/90 |
| | | 41 | | | |
| | | 74a | | | |
| | | 78 | | | |
| | | 79 | | | |
| | | 82 | 132 | | |
| | | 83/85 | | | |
| | | 1c | | | 2 |
| | | | 13 | | |
| | | | 31 | | |
| | | | 67 | | |
| | | | 89 | | |

| A | B | C | D | E | G |
|---|---|---|---|---|---|
| | | | 90 | | |
| | | | 91 | | |
| | | | 92 | | |
| | | | 93 | | |
| | | | 94 | | |
| | | | 95 | | |
| | | | 96 | | |
| | | | 97 | | |
| | | | 98 | | |
| | | | 99 | | |
| | | | 100 | | |
| | | | 101 | | |
| | | | 102 | | |
| | | | 103 | | |
| | | | 104 | | |
| | | | 105 | | |
| | | | 113 | | |
| | | | 151 | | |
| | | | 152 | | |
| | | | 154 | | |
| | | | 155b | | |
| | | | 163 | | |
| | | | 170 | | |
| | | | 180 | | |
| | | | 187 | | 119 |
| | | | 188 | 22 | 101 |
| | | | 196 | | |
| | | | 199 | | |

| A | B | C | D | E | G |
|---|---|---|---|---|---|
| | | | | 4 | |
| | | | | 5 | |
| | | | | 6 | 15 |
| | | | | 14 | 64 |
| | | | | 17 | 78 |
| | | | | 18 | 83 |
| | | | | 20 | 100 |
| | | | | 21 | 100 |
| | | | | 23 | 103 |
| | | | | 24 | 104 |
| | | | | 27 | |
| | | | | 43 | |
| | | | | 67 | |
| | | | | 82 | |
| | | | | 87 | |
| | | | | | 27 |
| | | | | | 50 |
| | | | | | 57 |
| | | | | | 65a |
| | | | | | 82 |
| | | | | | 87 |
| | | | | | 93 |
| | | | | | 95 |
| | | | | | 105 |
| | | | | | 106 |
| | | | | | 108 |
| | | | | | 110 |
| | | | | | 111 |
| | | | | | 112 |
| | | | | | 113 |
| | | | | | 121 |

Առակավոր կամ պատմիչ խրատներ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1 | 1 | 1 | 1 | 1 | 1 |
| 2 | 2 | 2 | 2 | 2 | 2 |
| 3 | 3 | 8 | 4/5 | 3a | 3a |
| 4 | 4 | 9 | 6 | 4 | 4 |
| 5 | 5 | 10 | 7 | 5 | 5 |
| 6a | 7 | 12bc | 8 | 6b | 6b |
| 6b | 8 | | 9 | | |
| 7 | 6 | | 10 | 7 | 7 |
| 8 | 9 | 15 | 11 | 8 | 8 |
| 9 | | | 12 | | |
| 10a | | | 13 | | |
| 10b | | 11 | 14 | | |
| 10c | | | 15 | | |
| 10d | | 18 | 16 | 9 | 9 |
| 11a | | 23 | 24 | | |
| 11b | 10 | | 25 | | |
| 12 | 11 | 6 | 26 | | |
| 13a | 12 | 14a | 27 | | 38 |
| 13b | 13 | 14c | 28a | | |
| 13c | 14 | 14b | 28b | | |
| 14 | 15 | | 29 | | |
| 15 | 16 | 12a | 30 | | |
| 16 | | 13 | 31 | | |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 17 | 17 | 19 | 32 | | |
| 18 | | 20 | 33 | | |
| 19a | | | 34 | | |
| 19b | 18 | | 17 | | |
| 19c | 19a | | 18 | | |
| 19d | | | 20 | | |
| 19e | 21 | 4 | 21 | | |
| 20 | 22 | 24 | 36 | 11 | 11 |
| 21 | 23 | 16 | 37 | | |
| 22 | 24 | 25 | 39 | | 40 |
| 23 | 25 | 26 | 41 | | |
| | 20 | | | | |
| | 19b | 3 | | | |
| | | 5 | | | |
| | | 7 | 3 | | |
| | | 17 | 35 | 6a | 6a |
| | | 21 | | | |
| | | 22 | 23 | | |
| | | | 19 | | |
| | | | 22 | | |
| | | | 38 | | |
| | | | 40 | | |
| | | | | 3b | 3b |
| | | | | 10 | 10 |

*Աղյուսակում խրատաշարերը բերված են A բնագրի համեմատությամբ։ Հպանցիկ հայացքով նույնիսկ կարելի է նկատել, թե որքան խաթարված են շարքերը, պահպանելով ազգակցության չնչին հետքեր միայն։*

*A տարբերակն ավարտվում է 118-րդ խրատով։ Այնուհետև գալիս են մյուս բնագրերում նրա շարքի մեջ իրենց զուգահեռը չունեցող խրատները։*

*Դրանք ոչ թե անմիջապես շարունակում են A տարբերակի ավարտված շարքը, այլ մեծ մասամբ տեղադրված են մինչև A-ի վերջին խրատը։ Այսպես, D բնագրի 210-րդ խրատը համընկնում է A-ի 118-րդին։*

*Այդպես է և B բնագիրը, որը ձգում է շարքը մինչև 186 խրատ և եզրափակում՝ 187-ով։ B-ի և A-ի վերջին խրատները նույնպես զուգահեռ են, բայց վերջին, A-ի 118-րդ խրատին համապատասխանում է B-ի 187-րդը։*

*Արդյոք B-ն նույնպես ներառված է A-ի ծավալի մեջ։*

*Նախ քննենք A և B տարբերակների հարաբերությունը։*

*Ինչպես ասվեց բոլոր բնագրերը ծագում են մեկ մայր օրինակից, բայց համեմատելի են միայն առաջին և երկրորդ տարբերակները (A և B)։*

*Հենց դա էլ հիմք է տվել, որպեսզի ներկայացնենք միասին, իբրև մեկ բնագիր։ A-ն և B-ն ուղղակի առանձին խմբեր են և ոչ՝ նույնիսկ, տարբերակ։ Ճիշտ է, յուրաքանչյուրն ունի ինքնահատուկ ընթերցումներ, սակայն դա նրանց բնույթը չի փոխում։*

*Բայց ինչ են թելադրում շեղումներն ու տարընթերցումները։ Բերենք մի երկու համեմատություն։*

**A**

*Որդեակ, զոր* ($A_{2,4}$ *որ*) *քեզ չար թուի* ($A_1$ *չարութիւն*), *ընկերին* ($A_2$+*քո*, $A_4$+*քում*) *մի առներ, այլ զոր ինչ սիրես* ($A_3$ *կամիս փխ. սիրես*), *թե արասցեն* ($A_{3,4}$+*քեզ*) *բարեկամք քո, արա և դու ամենեցուն, զի յամենայնէ բարի գտցես։*

**B**

*Որդեակ, որ ինչ չար թուի, ընկերին քո մի առնել* ($B_{2-24}$ *չիք՝ որ ինչ-առնել*)։ *Զոր ինչ կամիս, թե արասցեն քեզ բարեկամք քո* ($B_{2-24}$ *մարդիկք փխ. բարեկամք*, $B_{4,5}$ *մարդիկք բարեկամք քոց փխ. բարեկամք քո*), *արա և դու ամենեցուն, զի յամենայնէ* ($B_{2-24}$ *յաստուծոյ փխ. յամենայնէ*) *բարի գըտցես* ($B_{2-24}$ *գտցես և յաւելցին ամք կենաց քոց*)։

*Այստեղ A և B տարբերակների մեջ բոլոր ընթերցումները բացատրելի են։ Խրատն ունի երկու անկախ միավոր. ա) Զոր քեզ*

չար թուի, ընկերին քո մի առներ, բ) Զոր ինչ սիրես, թէ արասցեն բարեկամք քո, արա և դու ամենեցուն, զի յամենայնէ բարի գտցես:

*Առաջին հատվածը* B *խմբում ընկել է, բայց այն պահպանված է* $B_1$ *օրինակի մեջ։* Որ ինչ-զոր, առնել-առներ *տարընթերցումները գրչական բնույթ ունեն, իսկ* որ, *ինչպես նաև՝* ընկերին քո *ձևերը կան* A *խմբում* ($A_{2,4}$)*։* $A_1$ *ձեռագրի* չարութիւն *ընթերցվածի համար պետք չէ հիմքեր փնտրել, որովհետև այն թյուրառեսության հետևանք է։* Չար, թուի *բառերը* $A_1$ *ձեռագրի նախագաղափար օրինակում գրված են եղել միասին՝* չարթուի: *Գրիչը կարծել է, թե այն համառոտված է և բաց է արել՝* չարութիւն:

*Երկրորդ հատվածում* A *բնագրի* սիրես *ընթերցման դիմաց* B *խումբն ամենուր ունի՝* կամիս *(կամիցիս, կամիցես, կամեսցիս)։* A-*ի մի ձեռագրում գտնում ենք նրա նմանակը՝* սիրես ($A_3$)*։ Թերևս հենց այս ընթերցումն է ավելի ճիշտ, որ* A *խմբում պահպանվել է մի օրինակով, իսկ* B *խմբում՝ լրիվ։*

$B_{2-24}$-*ի* յաստուծոյ *փոխանակ* յամենայնէ *ընթերցվածը երկրորդային է, քրիստոնեացման հետևանք և նախնաբար եղել է* յամենայնէ, *քանի որ այդ ձևը իբրև վերապրուկ գտնում ենք* $B_1$-*ի մոտ։* Եւ յաւելցին ամք կենաց քոց *հետագա պարզ հավելագրություն է։*

Թէ արասցեն (քեզ) բարեկամք քո B-*ում՝* բարեկամք *փոխարինվել է* մարդիկք *ընթերցումով։ Այստեղ* $B_1$-*ը նույնպես համերաշխում է* A-*ին՝* բարեկամք: *Բայց շատ հետաքրքիր է* $B_3$ *և* $B_4$ *ձեռագրերի ընթերցվածը՝* թէ արասցեն քեզ մարդիկք բարեկամք քոց: *Պահպանված են երկու ընթերցումներն էլ։ Ընդունելով նորը* (մարդիկք) *իբրև վերապրուկ մնացել է և նախկինը, բայց որպեսզի համերաշխվեն, տրվել է իմաստային այլ երանգ՝* որ առնեն մարդիկ քո բարեկամներին: Բարեկամք *պետք է դառնար* բարեկամաց, *բայց փոփոխությունը մնացել է կես ճանապարհին։ Հենց դա էլ ինքնին ցույց է տալիս, որ այդ երկու բառերից մեկը հետմուտ է։ Հետմուտ է* մարդիկք *ձևը, որովհետև* A *խմբի նույն ընթերցվածը պահպանվել է* $B_1$-*ի մոտ։*

*Եթե նախորդ ընթերցումները միայն փոխադարձ առնչություն են թելադրում, ապա այս վերջինը* B-*ն կախման մեջ է դնում* A-*ից։*

*Մեկ այլ օրինակ.* Որդեակ, պահեա զհայր քո և զմայր քո, զի ի հասանել որդոց քոց խնդասցես:

*Այսպես է* A *բնագիրը։ Բայց այդ խմբի օրինակներից մեկն ունի տարբեր ընթերցում՝* Որդեակ, պատվեա զհայր քո և զմայր, զի հասանել որդոց քոց պատվիս ի նոցանէ ($A_5$)*։*

A5-*ում* պանեա *բառը փոխվելով* պատվես, *անհրաժեշտաբար իր հետ բերել է այլ փոփոխություն՝* զի ճասանել որդոց քոց պատվիս ի ճոցանէ:

*Առաջին դեպքում խրատը հորդորում է պահել, խնամել ծնողներին, որպեսզի ինքն էլ իր որդիներով խնդա, որպեսզի նրանք էլ պահեն իրեն։ Երկրորդ դեպքում՝ պատվել, հարգել նրանց, որպեսզի որդիներն էլ հարգեն իրեն։* B *բնագիրը հեռանել է* A5-*ին, սակայն այդքան հետևողականորեն չի խմբագրված։ Առաջին ընթերցումը փոխվել է, ինչպես* A5-*ի մոտ՝* պատվես, *իսկ երկրորդը՝ ոչ։ Դա արդեն ցույց է տալիս, որ նախնական է* պանեա:

*Բնորոշ է* B19-*ի տարընթերցվածը։ Այն պահպանել է երկու ձևերն էլ.* Որդեակ, պատվեա զհայր քո և զմայր, զի ի ճասանել որդոց քոց խնդասցիս և դու ի ճոցանէ պատուիս:

*Այստեղ ևս շատ անհարիր իրար կողքի են նորն ու վերապրուկը։ Ավելորդ է՝* և դու ի ճոցանէ պատուիս:

*Մի այլ օրինակ.* Թողէ անզգամն զանօրէնութիւն իւր և անմիտն զգռնասցի (A—*94*)։

B *տարբերակը բոլոր ձեռագրերում* զգռնասցի-*ի դիմաց ունի* զգնացս իւր, *իսկ* B2-*ը տալիս է՝* զգռնասցի կամ զգնացս իւր թողցէ: *Այստեղ ևս փորձ է արված համերաշխելու երկու ընթերցումները։ Տեսնում ենք, թե երկրորդը՝* կամ զգնացս իւր թողցէ, *որքան թույլ է հարակցվում։*

Եւ ամենայն ազգն օտար է յամենայն բարի գործոց *(*A—*102)։* B *խմբի բոլոր ձեռագրերում՝* ի բարի գործոց, *իսկ* B3-*ն այնպես է, ինչպես* A-*ն՝* յամենայն բարի գործոց *և այլն։*

*Այս օրինակները թելադրում են ընդունելու, որ* B-*ն երկրորդային է և ծագել է* A-*ից։* B-*ն պետք է համարել* A-*ի տարբերակը։ Բայց չենք կարող պնդել, որ եթե* B-*ն* A-*ի տարբերակն է, ապա* B-*ի ամեն մի շեղում պետք է դիտել հետամուտ։ Հետագա որևէ տարբերակ հաճախ շատ ավելի ճիշտ ընթերցումներ է պարունակում, քան նրան նախորդող հին բնագրեր։*

*Դիտենք մի ուրիշ հանգամանք։* B-*ի և* A-*ի շարքերը մինչև 118-րդ խրատը զուգահեռ են, բայց* B-*ն ունի որոշ բացթողումներ։ Այսպես, 32—37 խրատներից* B-*ն չունի 33, 35 և 36-ը, բայց զուգամիտվում է* A-*ին 29, 30, 31 հերթակարգով, կամ 53—58 խրատների միջև չկան 56, 57-ը, բայց գնում է* A-*ի հետ 46, 47, 48, 49 հաջորդականությամբ և այլն։ Դա պարզապես նշանակում է, որ* B-*ն միևնույն շարքից ուղղակի դուրս է հանել խրատներ։ Հակա-*

*ռակն անկարելի է, որովհետև դրանք առկա են և օտար խմբագրություններում։ Ինչպես տեսնում ենք, նորից B-ն է շեղումներ տալիս։ Բայց դա դեռևս որոշիչ չէ, որովհետև այս կամ այն կերպ միջամտության հետքեր կարելի է գտնել և A բնագրի մեջ։*

*Այդպես ուրեմն, հարցը մնում է առկախ։ Հետամո՞ւտ են A-ի հավելյալ խրատները, թե՞ համառոտել է A-ն, իսկ նրա տարբերակը (B) շարքն հաղորդում է հարազատությամբ։*

*Այստեղ կարող է վճռաբար օգնել մի շատ կարևոր համադրություն։ Հայ ձեռագրերում ոչ սակավ հանդիպում ենք բնագրի, որը լիովին ծածկում է B-ի ձգվող խրատաշարը։*

*Բնագիրն արտահայտում ենք L տառանիշով։*

| L | B |
| --- | --- |
| *1. Որդեակ, նախ ի լեզուէ քումմէ երկիցես, որպէս յաւտար թշնամւոյ, զի ոչ գիտես յորում ժամու ածէ ի վերայ քո չարիս։* | *115. Որդեակ, նախ ի լեզուէ քումմէ որպէս յօտարէ երկիցես, զի ոչ գիտես, թէ յորժամ ածէ ի վերայ քո չարիս։* |
| *2. Որդեակ, լեզու անմտի և արբեցողի որպէս նետս ի քիմս աղեղան, թէև զայլ ոք ոչ հարկանէ, այլ զգլուխ իւր հանապազ ծեծէ։* | *116. Որդեակ, լեզու անմտին և արբեցողին որպէս զքիմս աղեղան է։ Զայլ ոք ոչ կարէ հարկանել, այլ հանապազ զգլուխ իւր ծեծէ։* |
| *3. Որդեակ, լաւագոյն է թշնամութիւն ունել ընդ առն իմաստնոյ, քան թէ ընդ առն անմտի և յեղուալնոյ բարեկամութիւն։* | *117. Որդեակ, լաւ է քեզ թշնամութիւն ընդ առն իմաստնոյ, քան սիրելութիւն ընդ առն անմտի և լրբի։* |
| *4. Որդեակ, զայր անմիտ և արբեցող մի առաքեր պատգամաւոր, զի ուզելովն քեզ բարիս ոչ հանդիպի, այլ բազում չարիս ածէ ի վերայ քո անմտութեամբ իւրով։* | *119. Որդեակ, զայր անմիտ և արբեցող պատգամաւոր մի՛ յուղարկեր և բարեխօս, քանզի ոչ կամենայ զբարիս գործել, այլ բազում չարիս ածէ ի վերայ քո։* |
| *5. Որդեակ, այր անմիտ և արբեցող լաւ է քեզ թշնամի, քան սիրելի։ Եւ ի խորհրդոց քոց հեռի կացո զայր անմիտ։* | *118. Որդեակ, այր անմիտ և արբեցող լաւ է նա քեզ թշնամի, քան թէ սիրելի, և ի խորհրդոց քոց հեռի արա զնա։* |

*Այս բնագիրը* որդեակ-*ով սկսվող խրատականք է, որոշ ընդօրինակություններից մեջ կրում է* **Խօսք իմաստասիրաց և խրատք հասարակաց** *խորագիրը, լրիվ ծածկում է B-ին և ունի ավելի մեծ ծավալ։*

*Խիկարի զրույցն է փոխառել* **Խոսքից**, *թե* **Խոսքը** *պոկվելով զրույցից բազմացել է առանձին ընդօրինակություններով։ Դա միևնույն հարցն է. B-ի հավելյալ շարքը հետամուտ է, թե հարազատ։*

*Զրույցի և* **Խոսք իմաստասիրացի** *բնագրային աղերսը քննելու համար բերենք համապատասխանությունների մի աղյուսակ։*

*Աղյուսակում արտահայտված են զրույցի բոլոր տարբերակները և* A *տարբերակի մեջ ծանոթ այն միավորները, որոնց մեջ* **Խոսքին** *զուգահեռ խրատներ կան* ($A_3$, $A_5$), *իսկ* $A_4$*-ի միայն 60-րդ խրատն է համաձայնում* **Խոսքի** *43-րդի հետ։*

| L | B | D | E | $A_5$ | $A_3$ |
|---|---|---|---|---|---|
| 1 | 115 | 4 | 83 | | |
| 2 | 116 | 14 | 83 | | |
| 3 | 117 | | 84 | | |
| 4 | 119 | 11 | 85 | | |
| 5 | 118 | | | | |
| 6 | 120 | 44 | 86 | | |
| 7 | | | 87 | | |
| 8 | 121 | 20 | 88 | | |
| 9 | 122 | 27 | 89 | 1 | |
| 10 | 123 | 28 | | 2 | |
| 11 | 124 | | | 3 | |
| 12 | | | | | |
| 13 | 125/126 | 10 | 90/91 | 4/5 | |
| 14 | | | | | |
| 15 | | | | | |
| 16 | | | | | |
| 17 | 127 | | 92 | | 10 |
| 18 | 128 | 171 | | 6 | |
| 19 | 129 | 15 | | | |
| 20 | 130 | 18 | 93 | 7 | |
| 21 | 131 | | 94 | 8 | |
| 22 | 132 | 155 | 95 | | |
| 23 | 133 | | 96 | 9 | |
| 24 | 134 | | 96 | 10 | |
| 25 | 135 | 181/2 | 97 | | |
| 26 | 136 | | | | |
| 27 | 137 | 83 | | | |
| 28 | 138 | | 98 | 11 | |
| 29 | 139 | | | | |
| 30 | | | | | |
| 31 | 139 | | | 12 | |
| 32 | 140 | | | | |
| 33 | 140 | | | | |
| 34 | 141 | 78 | | 13 | |
| 35 | 142 | | | 14 | |
| 36 | 143 | | | 15 | |
| 37 | 144 | | | | |
| 38 | 144 | | | | |
| 39 | 145 | | | | |
| 40 | 145 | | | | |
| 41 | 146 | | | | |
| 42 | 147 | | 99 | | |
| 43 | 148 | 117 | 100 | 84 | |
| 44 | 149 | | | | |
| 45 | 150 | | 101 | | |
| 46 | 151 | | | | |
| 47 | 152 | 80 | 102 | | |
| 48 | 152 | | | | |
| 49 | 153 | | | | |
| 50 | 154 | | 103 | 16 | 11 |
| 51 | 155 | | 104 | 17 | |
| 52 | | | | | |
| 53 | | | | | |
| 54 | 156 | | | 18 | |
| 55 | 157 | | | | |
| 56 | 158 | 56 | | 19 | |
| 57 | 159 | | 105 | | 4 |
| 58 | | | | | |
| 59 | 160 | | | | |
| 60 | 161 | | | | |
| 61 | 162 | | | | |
| 62 | 163 | | 105 | | 4 |
| 63 | 164 | 17 | | | |
| 64 | 164 | 17 | | | |
| 65 | 165 | | | | |
| 66 | 166 | | | | |
| 67 | 167 | | | | |
| 68 | 168 | | | | |
| 69 | 169 | | | 20 | |
| 70 | 170 | | | 21 | |
| 71 | 171 | | 106 | 22 | 5 |
| 72 | 172 | | | 23 | |
| 73 | 173 | | | | |

| L | B | D | E | $A_5$ | $A_3$ |
|---|---|---|---|---|---|
| 74 | 174 | 12 | 107/8 | | 6/7 |
| 75 | 175 | | 109 | | 8 |
| 76 | 176 | | | | |
| 77 | 177 | | | | |
| 78 | | | | | |
| 79 | 178 | 24 | | | |
| 80 | 178 | 24 | | | |
| 81 | 179 | | | | |
| 82 | 180 | 37 | 110 | | 9 |
| 83 | 181 | 5 | | | |
| 84 | 182 | | | | |
| 85 | 182 | | | | |
| 86 | 183 | | | | |
| 87 | 184/5,6 | | | | |
| 88 | | | | | |

*Աղյուսակը պարզորոշ արտահայտում է Խիկարի և* **Խոսքի** *(L) հարաբերակցության պատկերը։*

*1. Խիկարի մեջ չկա այնպիսի խրատ, որ* **Խոսքը** *(L) չունենա։ Բայց Խիկարի ոչ մի բնագիր լրիվ չի ընդգրկում խրատների այն ամբողջությունը, որ առկա է L-ի մոտ։*

*Տարբերակներից դուրս մնացող խրատները L բնագրի մեջ իրենց տեղում են և օրգանապես կապված շարքի հետ։ Այսպես.*

*«Որդեակ, ի գինարբուս մի քաջանար, զի զբաղումս կորոյս գինին (14)։*

*Որդեակ, հաւասար է գինին կենդանութեան մարդկան, եթէ արբցեն զնա չափով (15)։*

*Որդեակ, չեն ինչ կեանք կարոտելոյն ի գինոյ, զի նա հաստատեալ է յուրախութիւն մարդկան։*

*Ցնծութիւն սրտի և ուրախութիւն անձին գինի, որ ըմպիցի ի ժամուց բաւական։*

*Դառնութիւն հոգւոյ գինի, որ շատ ըմպիցի, զի կասեցուցանէ զոյժն և զնէ վէրս, կորուսանէ զխելս և մերժէ զերկիւղն աստուծոյ, թուլացուցանէ զմարմինն և բթեցուցանէ զմիտս, տանի զահ ի սրտաց և զամօթ յերեսաց» (16)։*

*Այս շարքին նախորդում է հարաբնույթ մի խրատ (13), որ չունի B-ն։*

*«Որդեակ, արար աստուած զգինին վասն ուրախութեան, բայց ի տեղիս տեղիս լավ է զլեղին ըմպել քան զգինին, վասն զի է ժամանակ, որ փառաւոր առնէ զգինին զորդիս մարդկան, և երբեմն ծաղր և ամօթալից կացուցանէ»։*

*Հասկանալի է, որ նրանք իրար շարունակում են։*

*Իրենց տեղում են* **Խոսքի** *մյուս խրատները (12, 30, 52, 53, 58, 78, 88), որոնք Խիկարի մոտ չունեն զուգահեռներ։*

*Այդպես,* Խոսքը (L) *եղել է Խիկարի զրույցից անկախ և նրա խրատականքի աղբյուրներից մեկն է։*

*2. Իր ծավալով* L-*ին ամենից ավելի մոտ է* B-*ն, գրեթե ծածկում է նրան, իսկ* C, D, E *տարբերակներն անհամեմատ նոսր են և անկանոն։ Այդ նշանակում է, որ* B-*ն ոչ թե դիմել է պատահական փոխառությունների, այլ, ուղղակի,* Խոսքը *համակցել իրեն։ Եվ դրանով է* B-*ն տարբերակվում* A-*ից։*

*Որքան էլ հաջող և նրբորեն է կատարվել միացումը, կարերը տեսանելի են։ Անհարազատ շարքը մտել է* B-*ի 114 և 115-րդ խրատների միջև (73 խրատ), որով 115-րդը դարձել է 187 և եզրափակել շարքը։ Որ 114 և 187-րդ խրատները հաջորդել են միմյանց, ցույց է տալիս նրանց բնույթը։*

*«Որդեակ, ամբարտաւան մարդիկ հեռանան ի բարեկամութենէ մարդկան և ի սիրոյ և առնուն անարգանս անձին և մեկուսին յընկերաց, նոյնպէս խոզամիտք և ագահք (114)։*

*Որդեակ, խոնարհութիւն մայր է խաղաղութեան և բնակարան ողորմութեան և ողջունի» (187)։*

*Առաջին խրատը ուղղված է ամբարտավանության և ագահության դեմ, երկրորդը՝ բնականաբար հորդորում է խոնարհ լինել և ողորմած։*

A *տարբերակի մեջ խրատներն հենց այդպես էլ հաջորդում են իրար, որը հիշեցնում է* B-*ի նախնական տեսքը։* B *տարբերակի 114 և 187-րդ խրատներին համապատասխանում է* A-*ի 117 և 118-րդը, իսկ նրանց միջև եղած տարածությունը լցվել է* L-*ից փոխառված շարքով։*

L-*ի և զրույցի (*Խիկարի*) առնչության բնույթը բավական պարզ արտահայտում են բնագրային ընթերցումները։ Փոխանցումը* Խոսքից (L) *Խիկարին որոշակի հետքեր է թողել։ Առաջին խրատի մեջ* L-*ը տալիս է.* զի ոչ գիտես յորում ժամու ածէ ի վերայ քո չարիս, BD *խումբը՝* յորժամ *փոխանակ* յորում ժամու, *բայց որ նախնական է* յորում ժամու *ցույց է տալիս* B *խմբի մեջ պահպանված վերապրուկը։* $B_9$-*ը նման է* L-*ին՝* յորում ժամու, *իսկ անցման հետքերը տեսնում ենք* $D_5$-*ի մոտ՝* յորժամու: *Այդպես՝* յորում ժամու, յորժամու, յորժամ:

L *բնագիրն ունի* պահեա զանձն քո ի զեղխութենէ մեղաց, $B_{1-24}$-*ը՝* յարբեցութենէ *փոխանակ* զեղխութենէ մեղաց, *բայց* $B_{14}$-*ի մոտ անսպասելի հանդիպում ենք* յարբեցութենէ և ի զեղխութենէ մեղաց: $B_{14}$-*ը ոչ միայն տալիս է իր խմբին հատուկ ընթերցումը,*

այլև պահպանել է նախնական L բնագրից եկող ընթերցումը իբրև վերապրուկ և ապա՝ նույն խրատի մեջ L-ի՝ ունիս հոգալ վասն երկրաւորացն և երկնաւորացն ընթերցումի դիմաց $B_{1-24}$-ը տալիս է՝ ոչ լինին առ քեզ հոգք երկնաւորաց կամ երկրաւորաց, իսկ $B_{14}$-ը պահպանել է L-ի ընթերցումը նույնությամբ։

81-րդ խրատի պղծալից առնէ արտահայտությունը բացակայում է B-ի մոտ, բայց մնացել է առանձին օրինակներում ($B_{4, 5, 14, 18}$)։ Այդպես և 82-րդ խրատի մեջ L-ը ունի՝ մինչև դիպեցայ, $B_{1-24}$ $A_3$ $E_{1-5}$, $E_{2B}$ հանդիպեցայ, իսկ $B_{14}$-ի մոտ այնպես, ինչպես L-ը։ Այդ խրատի մեջ $B_{14}$-ն ունի նաև մի ուրիշ հետաքրքիր և ավելի արտահայտիչ վերապրուկ։ B խումբը տալիս է հանդիպեցայ թշնամոյ, որ արձակի, իսկ L-ը՝ հանդիպեցայ թշնամոյ սրաքափեալ: $B_{14}$-ը պահպանել է վերջին ընթերցումը աղավաղ՝ սրրքափեալ:

Հետաքրքիր է L-ի մի այլ ընթերցված՝ մատնութիւն յերկուս դէմս սահմանի: Սահմանի, որպես ավելի գրաբարյան ձև, հետագայում լավ չի ըմբռնվել, որի հետևանքով $B_{4, 5}$-ը վերցրել է մի ուրիշ բառ՝ բաժանի, պահպանելով նախկինը։ Մատնելութիւն յերկու դէմս բաժանի սահմանի, $B_9$-ը նույն մտահոգությամբ ավելացրել է՝ ունի (ունի և սահմանի): Այսպես, երկու դեպքում էլ իբրև վերապրուկ մնացել է սահմանի բառը, բայց այլ ձեռագրերում արդեն դուրս ընկել։ $B_{12}$-ը տալիս է միայն բաժանի, իսկ $B_{1-5}$-ը՝ ունի:

Այս ամբողջ ընթացքը ցույց է տալիս, որ նախնական է L-ը։

Վերջապես գրչագրական այն փաստը, որ ձեռագրերում հանդիպում ենք խոսքի անկախ ընդօրինակությունների, որոնք ունեն ընդհանուր սկիզբ և վերջ և նույն քանակի խրատներ, ինքնին շատ բան են ասում։ Մեր ձեռքի տակ եղած և ոչ մի ընդօրինակություն վերնագրի մեջ, կամ որևէ այլ կերպ չի նշում, թե գալիս է Խիկարից։ Իսկ խիկարյան բուն խրատականքը, լրիվ կամ հատվածաբար, երբ գրույցից անկախ է ընդօրինակվում, անպայման ցույց է տրվում աղբյուրը։

Վերադառնանք աղյուսակին։ Ինչպես տեսնում ենք Խիկարի բնագրերում խոսքը մուտք է գործել առանձին կղզյակներով։ Դա հենց ինքնին թելադրում է, որ Խիկարն է դիմում խոսքին, որովհետև խոսքի համապատասխան խրատները հեռու են ընկած, իսկ Խիկարի մոտ ավելի սեղմ, ինչպես օրինակ $A_3$-ը քաղվածաբար

*վերցրել է 57, 62, 71, 74, 75, 82 խրատները և տեղադրել ուղղակի հաջորդությամբ՝ 4-ից 9-ը։ Նույնը և մյուս բոլոր դեպքերում, բացառությամբ* D *խմբի։ Փոխառված շարքը խախտվում է նաև* $A_5$*-ի մոտ մեկ խրատով (84)։ Դա սակայն բացատրելի է։* $A_4$ *և* $A_5$ *ձեռագրերը չափազանց նման են իրար և ունեն գրչագրական ազգակցություն։* $A_4$*-ը* Խոսքից *միայն մի փոխառություն ունի՝ 60-րդ խրատը, որը հենց համընկնում է* $A_5$*-ի 84-րդին։ Հասկանալի է, որ այն վաղօրոք անցել է երկու ձեռագրերի համար ընդհանուր մի աղբյուրից և կապ չունի* $A_5$*-ի փոխառված շարքի հետ։ Այդպիսով դիտողությունը մնում է ճիշտ* $A_5$*-ի համար ևս։*

D*-ի խմբագիրը օգտվել է այլ սկզբունքով։ Նա խրատներն ազատորեն ցրել է իր բնագրի մեջ։*

*Խիկարի տարբեր բնագրախմբերի փոխառությունները իրենց քանակով և տեղադրությամբ չեն ծածկում իրար, նրանք հեռու են և անզուգամետ։ Դա թույլ է տալիս մտածելու, որ զրույցի տարբերակները և նրանց մեջ ընդգրկված մասնակի ձեռագրեր իրարից անկախ են դիմել մեկ ընդհանուր աղբյուրի։*

*Շատ պարզ օրինակ է դարձյալ* $A_5$*-ը։ Խիկարի հայկական, ինչպես նաև՝ օտար բոլոր խմբագրություններում շարքն սկսվում է միևնույն խրատով.* Որդեակ, եթէ լսես բան ինչ ի դրան արքունի, մեռո զնա և թաղո ի սրտի քում, զի մի ումեք ասիցես, *բայց* $A_5$ *ձեռագրի մեջ այդ խրատը 24-րդն է, որից հետո ձեռագիրը զուգահեռ է նույն խմբի միավորների հետ։ 1—23 խրատները փոխառված են* Խոսքից: *Հետաքրքիր է, որ եթե անտեսենք այդ շարքը, ապա 84-րդ խրատը իր տեղով ևս կհամընկնի* $A_4$*-ի նույն խրատին։* $A_5$*-ում օտարամուտ խրատները չափազանց պարզունակ են համակցվել շարքին։*

C*-ն փոխառել է միայն երկու խրատ՝ 80 և 81-րդ, իսկ* E*-ն՝ քսանինը, տեղադրելով շարքի վերջում,* G*-ն և ոչ մի խրատ չի փոխառել։*

*Փոխառությունները* Խոսքից *կարող են լինել կամ ուղղակի, կամ միջնորդաբար,* B *տարբերակի օգնությամբ, որովհետև* B*-ն մեծ մասամբ ընդգրկել է* Խոսքը *և կարող էր այնուհետև աղբյուր դառնալ ազգակից բնագրերի համար։*

B*-ն սակայն չի եղել* Խոսքի *միակ փոխանցողը։*

*ա)* E *տարբերակի 87-րդ խրատը փոխառված է, բայց դուրս է մնում* B*-ի շարքից։*

*բ) Եթե բոլոր փոխառությունները* B*-ից անցնեին Խիկարի*



4—864

*ձեռագրախմբերը, ապա չէր կարող այդքան մեծ տարբերություն լինել նրանց տեղադրման և դասակարգման մեջ, որովհետև գրիչը կամ խմբագիրը թերևս իրեն թույլ կտար ազատ վարվելու օտար աղբյուրի հետ, իսկ* B-*ն ձեռքի տակ ունենալիս՝ նա պարզապես կարող էր ընդօրինակել։*

*գ)* B-*ից դուրս Խիկարի մյուս բնագրերում և, նույնիսկ, հաճախ* B-*ի առանձին օրինակների մեջ պատահում են ընթերցումներ, որոնք չկան* B-*ի մոտ և ուղղակի գալիս են* L-*ից։*

*Պարզ սահմանել խրատների անցման ուղիները հնարավոր չէ, որովհետև փոխառություններ կատարվել են ոչ միաժամանակ, ուրեմն ոչ միևնույն վիճակն ունեցող աղբյուրից, եթե թեկուզ բոլորի համար ուղղակի աղբյուր է եղել* L-*ը, բայց ոչ* L-*ի հեղինակային բնագիրը, կամ մի օրինակ, այլ ընթերցումներով արդեն իրարից տարբերակվող ձեռագրեր։ Բայց մոտավոր ձևով կարելի է որոշել փոխանցումների ընթացքը, որոնք ունեն ընդհանուր գծեր.*

*ա) Լայն խմբերով կամ կղզյակներով փոխառությունները, որոնք մեծ մասամբ վերաբերում են տարբերակներին և ոչ թե առանձին ձեռագրերի, կատարվել են ուղղակի* Խօսfից:

*բ) Առանձին ձեռագրերի մեջ պատահող խրատները գալիս են կամ* Խօսfից, *կամ* B *տարբերակից, ինչպես օրինակ* A5-*ի փոխառությունն ուղղակի կապ ունի* B-*ի հետ։*

*գ) Որոշ գրիչներ ձեռքի տակ են ունեցել մի օրինակ, ապա բնագիրը ուղղել կամ լրացրել են մի այլ խմբի օրինակով։ Այդպիսով բնագրի մեջ մտել են կրկնակ շերտեր։*

*դ) Մի անգամ որ կատարվել է փոխառություն, այնուհետև յուրաքանչյուր տարբերակ իր մեջ առանձին փոփոխություններ է կրել, որով և հեռացել նախնական աղբյուրից, կամ միմյանցից, կորցնելով անցած ճանապարհի հետքերը։*

*Այդ ամենը որոշ չափով նշում են Խիկարի տարբերակների առաջացման ուղիները։*

Խօսfի *ընդօրինակությունները խորագրված են տարբեր ձևերով, որոնք կազմում են ընթերցումների երեք խումբ.*

*ա)* Խօսf իմաստասիրական առ ծառայս և մեռձաւորս քագաւորաց, զի ուսցին սովաւ և իմաստնասցին ($L_{4,9}$), Խաւսf իմաստնայսիրական առ ատաւրս և մեռձաւորս թագաւորաց, զի յուսանին սովաւ և իմաստնասցին ($L_{11}$)։

*բ)* Խաւսf իմաստասիրականf և խրատf ճասարակաց որդւոց մարդկան ($L_{12}$), Խրատf իմաստասիրականf և խրատf ճասարակ մարդկանց ($L_{10}$), Խօսf իմաստասիրական և խրատ ($L_{13}$):

գ) **Խոսք իմաստասիրաց և խրատ հասարակաց** (Լ1, 3, 5, 8)։

*Առաջին խումբն հուշում է, որ բնագիրն իմաստասիրական խոսք է և խրատ թագավորներին ու նրանց մերձավորներին, երկրորդը՝ դարձյալ իմաստասիրական խոսք, բայց խրատ բոլորին, երրորդը՝ իմաստասիրաց խոսք է, խոսք քաղված տարբեր իմաստուններից և խրատ՝ բոլորին։*

*Նախընտրելի է, անշուշտ, առաջին խումբը։ Իսկապես դրանք թագավորի մերձավորներին, ծառաներին և հենց իրեն՝ թագավորին ուղղված խրատներ են. «Այր անմիտ յորժամ գայ յանդիմանութիւն առաջի թագաւորաց...» (19), «Յորժամ տեսանես զքեզ յաչս թագաւորաց փառաւոր և սիրեցեալ...» (23), «Յորժամ արհամարհեսցիս յաչս թագաւորաց...» (24), «Թագաւոր բարէմիտ կանգնէ զաշխարհս և իշխան քաղցրաբարոյ սիրելի է զօրաց իւրոց» (37), «Թագաւոր ամբարտաւան և մեղսասէր» (38), «Իշխան ագահ և զեղխ...» (39), «Այր անմիտ կարծէ ի սրտի իւրում, թէ յորժամ տեսանեմ ի թագաւորաց և յիշխանաց յորոգայթս նեղութեան...» (41), «...մեծարի յարկս թագաւորաց, նոյնպէս և այր իմաստուն պատուի ի դրունս թագաւորաց» (51), «Այր իմաստուն և հանճարեղ յորժամ անարգի յարկս թագաւորաց...» (52) և այլն։*

*Դա միայն ուղղակի հիշատակություններն են, բայց այլ դեպքերում էլ հեղինակը միշտ նկատի ունի բարձրաշխարհիկ մարդուն։ «Զանմիտն տանուտէր մի դներ» (86), «Իրաւարար դատաւոր լեր» (87), «Ի պատերազմն առանց խորհրդոյ մի յաւժարի» (88), «Այր անբարիշտ ընթանայ յանգս ճանապարհաց և պատրաստէ զզէնս իւր ի հեղուլ զարիւն...» (46), «Այր ծոյլ և ամբարհաւաճ որչափ և փառաւորի և ընդունի զմեծութիւն...» (36), «Ծառայ, որ երկմիտ է տեառն իւրոյ, թէպէտ և սիրէ զքեզ...» (27)։*

*Հասկանալի է, ով տանուտեր է կարգում, ունի դատելու իրավունք, կարող է հոժարել պատերազմի, զինվառ թշնամանում է մարդկանց, մեծություն է ընդունում և ունի երկմիտ ծառա, պետք է որ ուժ և իրավունք ունենար։ Եվ եթե խոսք կա այլ խավերի մասին, ապա՝ նույն դասային դիրքերից։ Այսպես, զգուշացնում է որդուն, որ աղքատներին չարհամարհի. «Որդեակ, մի՛ երբեք ասիցես աղքատին, թէ դու չար ինչ ոչ կարես առնել, զի բազում չարախօսութիւնք յանարգ մարդոյն ելանեն, զի չարքն առնեն զչարն և ոչ՝ լաւաբարոյքն» (25)։*

**Խոսքը** *միաբնույթ է։ Այն հյուսված է հիմնականում երկու հարցի շուրջ. չչարաշահել կինն ու գինին և ունենալ իշխանավո-*

*րին կամ պալատականին վայել վարքագիծ։ Բոլոր խրատների մեջ զգացվում է միևնույն նպատակայնությունը և ոճը։ Մեկը մյուսի հետ կապված են թեմատիկ մեծ աղերսով և լրացնում կամ շարունակում են իրար։ Խրատները հաճախ ընդարձակ են և երկարաբան, բոլորովին անհարիր ժողովրդական ոճին։ Բերենք թեկուզ մի օրինակ. «Որդեակ, եթէ կամիս իմաստուն (լինել և պատուիլ յաստուծոյ և ի թագաւորաց) կոչիլ ի մարդկանէ և փառաւոր երևիլ և սիրեցեալ յաստուծոյ, արհամարհեա նախ զցանկութիւն մարմնոյ և մի՛ յօժարիր ի գինէմոլ արբեցութիւնս, զի բազմադիմի գայթակղեցուցանեն կին և գինի զմարդ և յօժարեն ի գործս չարեաց, հեռանան յիմաստութենէ և անկանին ի բազում խօսս, յայտնեն զխօսս թագաւորաց և խօսին սնափառութեամբ և զխորհուրդս ընկերաց ոչ պահեն, այլ ցրուեն ի բազում տեղիս, յիմաստութենէ թափին և պաշտպանութենէ աստուծոյ թուլանան, զզատաստանս աղքատաց, որբոց և այրեաց ստուգութեամբ ոչ դատին, զանձինս իւրեանց ի մահ վարեն և ոչ կարեն զգուշանալ, այլ մերկանդամ լինին առաջի թագաւորաց և ամօթալից առաջի ամենեցուն։*

*Զայս ամենայն արբեցութիւն և զեղխ պոռնկութիւն զարթուցանեն ի վերայ իմաստնոց» (68)։*

*Դա արդեն ոչ թե խրատ է, այլ քարոզ։*

*Բնագիրն հագեցված է նաև քրիստոնեական բարեպաշտության ոգով։ Ընդօրինակություններից մեկը խորագրված է՝* Ի յայսուստ խրատ ճոզնոր: *Դա պատահական չէ։ Թեկապես նրանք ունեն նաև հոգևոր բնույթ։ «Որդեակ,—հորդորում է խրատներից մեկը,—մի փոխանակեսցես զգործն աստուծոյ ընդ աշխարհիս, զի այս անցանէ և այն յաւիտեան մնայ» (32), «Որդեակ, զցանկութիւն աշխարհիս և զմեծութիւն արհամարհեա, զի թէ բարի էր, կարող էր աստուածութիւն հաղորդակից առնել զինքն բնութեան կենցաղոյս» (33) և այլն։*

*Խորագրային երկրորդ խումբը ճիշտ ընթերցում պահպանել է մասամբ՝* Խօսք իմաստասիրական, *իսկ երրորդը՝ ընդհանուր խմբագրության է ենթարկվել։*

*Միջնադարյան ձեռագրերում հաճախ ենք հանդիպում* Բանք իմաստասիրաց, ի բանից իմաստասիրաց, խրատ իմաստնոց, բանք խրատականք ասացեալ իմաստնոց, խրատ իմաստասիրաց ասացեալ *և նման բնագրերի, որոնք քաղվածքներ են առանձին իմաստուններից և ինքնուրույն կամ թարգմանաբար ունեն բազմաթիվ ընդօրինակություններ, իսկ ճառեր, խրատներ, քարոզներ գրվում*

էին **ճառարակաց** կամ **բնաւից** համար, ինչպես, օրինակ, Շնորհալու **Թուղթ ընդհանրական**, Հովհաննես Երզնկացու **Խրատք ճառարակաց քրիստոնէից** երկերը և այլն։

Ահա հենց այս խորագրերի առնմանությամբ խմբագրվել է՝ **Խոսք իմաստասիրաց և խրատք ճառարակաց**:

Վերնագրային երեք խմբերի միջև պարզ նկատելի է անցումը։ **Առ ծառայս (ատարս) և մեծատունս թագաւորաց** սղվել է հետագայում, որովհետև թագավորության վերացմամբ մնում է անհասցե։

Որոշակի ասել **Խոսք իմաստասիրացը** թարգմանական է, թե ինքնուրույն, հնարավոր չէ։ Բնագրային տվյալներ չկան։ Բայց նկատենք, որ հեղինակը ծանոթ է Խիկարի գրույցին և օգտվել է ազատ վերքաղումներով։

Կա նույնիսկ ուղղակի փաստ։ Խրատներից մեկը («Որդեակ, անմտին խրատն այնպէս է, որպէս փոշի ցանես ի վերայ հողմոյ, կամ ի վերայ յարուցեալ գետոյ») քաղված է գրույցից, և որ կարևոր է, ոչ թե խրատաշարից, այլ պատմությունից։

Նույն խրատներն հետագայում փոխանցվել են Խիկարին, պահպանելով նախօրինակը, և առաջացել է կրկնություն։ Այդպես անխտրաբար կարող էին հավելագրել գրիչները միայն։ Ահա թե ինչու Խիկարի մոտ հաճախ գտնում ենք միաբնույթ խրատներ, բայց **Խոսքն** այդպիսի օրինակ չի տալիս։

Այսպես, սկզբում Խիկարի գրույցը աղբյուր է ծառայել **Խոսքի** համար, իսկ հետո՝ **Խոսքն** է լրացրել գրույցի խրատաշարը։

Խոսքի հեղինակը ծանոթ է գրույցին, բայց դա չի կարող հիմք տալ ընդունելու որ երկը թարգմանական չէ։ Ծանոթությունը հնարավոր էր առանց հայերենի էլ, օտար որևէ խմբագրությամբ։ Բայց **Խոսքը** գրված է անխառն, դասական գրաբարով և շոշափում է այնպիսի խնդիրներ, որոնք հարազատ են մեր մատենագրությանը։ Թերևս դա որոշ նախադրյալ է ենթադրելու, որ այն ստեղծվել է Հայ հողի վրա։

**Խոսքի** մեզ հայտնի ամենահին ձեռագիրը կրում է 1611 թվականը, 17-րդ դար, սակայն ընդօրինակության հանդիպում ենք և մեր Մատենադարանի № 5229 ձեռագրում, որը թվական չունի, և հնագրական ամենազգույշ տվյալներով եթե ոչ 11, ապա անպատճառ 12-րդ դարի է։

Այդ բնագիրը մյուսների նկատմամբ բավական մեծ տարբերություններ է տալիս, բայց այնպիսի տարբերություններ, որոնք հա-

*ճախ նախընտրելի չեն և ենթադրում են խաթարված օրինակ։ 41-րդ խրատից հետո համապատասխանությունը չքանում է և գալիս է խրատների նոր շարք, որ L-ին հատուկ չէ, իսկ, առհասարակ, բնագիրը թույլ է տալիս բացթողումներ։ Այդ նշանակում է, որ արդեն 12-րդ դարում* Խոսքի *ընդօրինակությունները հեռացել են իրենց նախնական աղբյուրից, կորելով բավական ճանապարհ։*

*Դա մեզ որոշ հիմք է տալիս* Խոսքի *ծագումը ենթադրելու 12-րդ դարից ավելի վաղ։*

*Հեղինակը փաստորեն կատարել է արքունական պատվեր։ Դրանք խրատներ են, ուղղված թագավորի որդուն կամ մերձավորին և ելնում են ուղղակի թագավորության փաստից։ Թերևս ենթադրել Արշակունյաց հարստության վերջին շրջանը, 5-րդ դար և ոչ՝ Բագրատունիների իշխանությունը, որովհետև երկի լեզուն, ինչպես տեսնենք, ունի դասական բնույթ և չի աղարտված արաբական միջամտություններով, որը հատուկ է Բագրատունյաց շրջանին։*

*Խրատներից մեկն այսպես է. «Որդեակ, այր անմիտ կարծէ ի սրտի իւրում, թէ յորժամ տեսանէ ի թագաւորաց և յիշխանաց յորոգայթս նեղութեան, շնորհս ինչ յաւելու յինքն և ոչ իմանայ, թէ թշնամիք նոցա նեղեն զաշխարհս, և ինքն այլ կորուստ մատնի ընդ նոսա»։*

*Արդյոք սա որևէ բան չի հուշում այն շրջանի մասին, երբ նախարարներն իրենք նետեցին իրենց թագավորին* յորոգայթս նեղութեան, *թեպետ նախազգուշացումը լիովին կարող է վերաբերել և հետագա ժամանակներին։*

*Ամեն դեպքում նկատենք, որ այստեղ և ուրիշ այլ խրատներում արտահայտված է քաղաքական բարձր գիտակցություն։*

*Այդ աղբյուրի հետ, սակայն, Խիկարը առնչվել է շատ ավելի ուշ։ Ձեռագրերից ամենահինը, որ փոխառություններ ունի, 1571 թվականի ընդօրինակություն է և պատկանում է* B *խմբին (*$B_7$*, ձեռագիր № 4290)։ Այնուհետև գրեթե բոլոր ընդօրինակությունները իրենց մեջ փոխառություն են պարունակում, բացառությամբ* $A_2$ *ձեռագրի, որ հարազատորեն պահել է* A *խմբի նկարագիրը։*

*Խիկարի զրույցը պարունակող ամենահին ձեռագրերը՝* $A_1$*-ը և* G*-ն 14-րդ դարի են (*$A_1$*-ը 1321 թիվ, իսկ* G*-ն՝ 1347)։ Ենթադրելի է, որ այդ երկու ձեռագրերն էլ* Խոսքից *և ոչ մի փոխառություն չունեն։ Իսկ հետագայում էլ, մինչև 17-րդ դարի վերջերը,* Խոսքն *իր անկախ բնագրի նշանակությունը չի կորցրել, չնայած ավելի հաճախ ընդօրինակվել է Խիկարին միակից քան առանձին։*

*17-րդ դարում երբեմն, նույնիսկ, զրույցի հետ միևնույն ձեռագրում ընդօրինակվել է նաև* **Խոսքը** *(ձեռագիր № 6708, 1635 թիվ, ձեռագիր № 45, 1642 թիվ և այլն), և գրիչները չեն նկատել։*

*Այսպես,* **Խոսքը** *Խիկար չէ։ Պետք է հետամուտ համարել* B-*ի հավելյալ շարքը և բոլոր այն խրատները, որոնք* **Խոսքի** *հետ զուգահեռ են։*

**Խոսքը** *հայ մատենագրության մեջ հայտնի է 12-րդ դարից առաջ և առնչվել է Խիկարի հետ 16-րդ դարից ոչ շուտ։*

## Բ. ՉՈՐՍ ԲԱՆՔ

*Զրույցի երրորդ տարբերակը վերջից ունի թվերով արտահայտվող խրատներ. «Չորս իրք զմարդոյն աչաց լոյսն շատացնէ. նախ՝ ի վերայ ծաղկանց հայիլն, երկրորդ՝ բոկիկ զկանաչն կոխել, երրորդ՝ ի հետ ջրին ի վեր գնալ, չորրորդ՝ զիւր բարեկամն տեսնուլ։ Դարձեալ չորս իրք զմարդն գիրացնէ և առողջ պահէ» և այլն։*

*Խրատականքի այս ձևը չափազանց տարածված է հին Արևելքում և գալիս է գերադասվող թվի նախնական պատկերացումից։*

*Երբ միտքը նոր էր թևածում վերացականության բնագավառը, թերևս մարդու առաջին ընդհանրացումը թիվն էր։ Թվի մեջ արդեն կա քանակի, միատեսակ և հակադիր երևույթները կամ իրերը ընդգրկելու ըմբռնում, որը պայմանականությունից անազատ մարդը վերագրում է հենց թվին։ Այն դառնում է նախապատճառ և ստանում սրբազան արժեք։*

*Այսպես, շատ երևույթներ արտահայտվում են չորսով. չորս ծագերը, հենման չորս կետերը, մարդու չորս վերջույթները, չորս անկյունները, նյութի չորս տարրերը և այլն, և չորսը դառնում է ոչ թե հաշվային սովորական միավոր, այլ ինքնակա մի արժեք, որով պայմանավորվում է երևույթը։ Թիվը բռնում է էության տեղը։*

*Հին ժողովուրդների մոտ բարձր զարգացման էր հասել աստղագիտությունը, որի հետ կապված են տոմարը, քրմական իմաստությունն ու գուշակությունները, իսկ ժամանակի միավորներն արտահայտվում են թվի միավորներով, և այդպես իրար են փոխարինում թիվն ու ժամանակը։ Որոշ թվեր, որոնք խորհրդանշում են երկնային մարմինների շարժումը, դառնում են սրբազան, բախտորոշ, բարի կամ չարագուշակ։ 13-ն այսօր էլ անցանկալի է և տհաճ, ինչպես ճանապարհն հատող սև կատուն։ Աստվածային*

*եռյակ էությունը (Հայրը, Որդին և Սուրբ Հոգին), վեցօրյա արարչագործությունը և յոթերորդ օրվա հանգիստը, հոգու քառասնօրյա ճամփորդությունը սրբազան երեքի, յոթի, քառասունի աստվածաշընչական արտահայտություններ են և նախնաբար կային, ինչպես չորսով ուրվագծվող խաչը խաչելությունից առաջ։*

*Ոչ միայն տոմարը, քանակը, այլև պատկերներն ու ըմբռնումները փորձում էին արտահայտել կամ կարգավորել թվի միջոցով։ Սայաթ Նովան ևս սիրում էր չորսը. «Չորս տարեկան էրեխի պես յարըս խրատել է ուզում»[2], «Չուրս գլխանի ռաշի վըրեն աջալըն դըրիլ է թամքըն»[3], «Հենց գիտիմ թէ չուրս տարի է քաղաքս քարվան չի մտնի»[4], «Չուրս բոլորքըն ծաղիկներ ին, ճամփին փիանդազ ըլիլով»[5], «Բոյեմետ չուրս մատն ավելի լցվել է դոշըտ ու թիկունքըտ»[6]։*

*Ստեփանոս Լեհացին* Մետաֆիզիկայի *իր թարգմանության լուսանցքներում թվակարգի է ենթարկում ըմբռնումները. «Մին ըստ բանի, այսինքն ըստ տրամաբանութեան, չորս կերպիւ ասի, այս է թուով, տեսակաւ, սեռիւ և համեմատութեամբ», «Հակակայից չորս են տեսակք», «Կարողութիւն չորս կերպիւ ասի», «Անկարութիւն ևս Դ կերպիւ ասի», «Որակն չորս կերպիւ ասի», «Սահման կամ եզր չորս կերպիւ ասի», «Կիրք կամ կրումն Դ կերպիւ ասին», «Պակասութիւն ի կողմանէ պատեհութեան ունելոյ չորս կերպիւ ասի», «Պակասութիւն ի կողմանէ բացասութեան չորս կերպիւ ասի»[7] և այլն։*

*Ինչպես կարելի է նկատել, չորսն այստեղ հաճախ ոչ թե ըմբռնման դրսևորումների կամ հատկության թիվն է, այլ կանխորոշ սահմանը։ Ահա հենց այդպես էլ թվագրվում են խրատները, հիմքում մեծ մասամբ չորսը պահելով. «Չորս ազգ մարդոյ չէ պարտ մեղադրել. ա) թագաւորի, որ սպանանէ զմեղապարտն բ) և հիւանդին, որ զպահքն չպահէ գ) և անգիտացն վասն ճէհել խօսիցն դ) և գլտողն որդորողաց չարեաց։*

*Չորս իրօք հաստատի թագաւորութիւն ա) նախ՝ որ ոչ շտապի*

---

[2] Սայաթ Նովա, *Հայերեն, վրացերեն, ադրբեջաներեն խաղերի ժողովածու, կազմեց, խմբագրեց և ծանոթագրեց Մորուս Հասրաթյան, Երևան 1963, էջ 60։*

[3] *Նույն տեղում, էջ 61։*

[4] *Նույն տեղում, էջ 60։*

[5] *Նույն տեղում, էջ 71։*

[6] *Նույն տեղում, էջ 45։*

[7] *Ձեռագիր № 2049, էջ 90բ, 94ա, 96բ, 98ա, 99բ, 103բ, 105ա—107բ։*

*ի բանն, բ) զարժանաւորքն օժտէ, գ) որ խոնարհամիտ լինի, դ) որ զերդումն հաստատ պահէ։*

*Չորս իրաց լինի բարեպաշտութիւն. ա) որ լինի աւէլ սուրբ, բ) և լինի ինքն սուրբ գ) և ունենայ միրտ սուրբ դ) և սիրելիք սուրբ։*

*Չորս իրաց դարձեալ լինի բարեպաշտութիւն. ա) ի ժամանակի խաղաղութեան, բ) շատանալ ընչիցն, գ) և առողջ կենալն, դ) և հոգ չունենալն»*[8]*։*

*Թվարկվող հատկությունները շատ են պայմանական և հեշտությամբ կարելի է շարունակել, բայց նախասահմանը չորսն է։ Վերջին, բարեպաշտության մասին, խրատը կրկնվում է. «չորս իրաց լինի բարեպաշտութիւն», «չորս իրաց դարձեալ լինի բարեպաշտութիւն» կարելի էր թերևս միակցել «ութ իրաց լինի բարեպաշտութիւն», բայց կխախտվեր թվի սահմանայնությունը։*

*Բացի հայերենից թվերով արտահայտված խրատներ կան նաև ասորական և արաբական խմբագրություններում։ Դիտելով այդ, Ռ. Հարրիսը ուղղակի առնչություններ է տեսնում Աստվածաշնչի և Խիկարի զրույցի միջև*[9]*։*

*Ճիշտ է, հրեական գրականության մեջ խրատականքի այդ ձևը շատ է սիրված։ Դրա համար օրինակներ է տալիս Առակաց՝ գիրքը. «Վեց են, զոր ատէ տէր և յեւթներորդէն հրաժարէ հոգին. Աչք թըշնամանող, լեզու անիրաւ, ձեռք, որ հեղու զարիւն անպարտ, սիրտ, որ նիւթէ զխորհուրդս չարութեան, ոտք, որ ընթանան զչարիս և որ բորբոքէ զատութիւն անիրաւ վկայութեամբ (Զ, 17—19)»։*

*«Երեք են, զոր անհնար է ինձ իմանալ և զչորրորդն ոչ ճանաչեմ... (Լ,18)», «Երիւք շարժի երկիր և չորրորդին ոչ կարէ հանդարտել (Լ,21—22)», «երեք են որ պարծ շրջին և չորրորդն գեղեցիկ ճեմի (Լ,29)» և այլն։*

*Այս խրատներն ունեն բնորոշ ձև՝* երեք են և չորրորդն, վեց են և յեւթներորդն *և ոչ թէ՝* երեք են, չորս են, յոթ են, *չնայած նման օրինակ ևս կարելի է բերել, եթե իհարկե հետագա փոփոխություն չեն*[10]*։*

*Այսպիսի ձևի հանդիպում ենք էլեֆանտինյան բնագրի մեջ, որը թերևս հրեական ազդեցության հետևանք է (53 պապիրուս,*

---

[8] *«Խրատք իմաստասիրաց ասացեալ», Ձեռագիր № 2291, էջ 55ար։*

[9] „The story of Ahikar“, *էջ* LVIII։

[10] *Տե՛ս «Առակք Սողոմոնի», Լ, 24։*

*տող 14), բայց հետագա խմբագրություններում (ասորական, արաբական և հայկական) նրանց թափանցման ուղիները տարբեր են։*

*Արաբական և ասորական խմբագրություններում կա միայն թվով արտահայտված երկու խրատ.*

| *Ասորական* | *Արաբական* |
|---|---|
| *Որդյակ, չորս բան կա, որի դեպքում ոչ մի թագավոր չի կարող կանգուն մնալ. խորհրդատուի թերությունը, հիմար կառավարումը, չար մտքերը և հպատակների ճնշումը։* | *Չորս բան կա, որի դեպքում ո՛չ թագավորը, ո՛չ նրա բանակը չեն կարող կանգուն մնալ. վեզիրի դժվարանալը, հիմար կառավարումը, չարակամությունը և հպատակների ճնշումը։* |
| *Որդյակ, չորս մարդ չի կարող թագուն մնալ. իմաստունը, հիմարը, հարուստը և աղքատը։* | *Եվ չորս բան կա, որ չի թաքցվի. խելքը, հիմարությունը, հարստությունը և աղքատությունը։* |

*Ինչպես տեսնում ենք, դրանք նույնն են։ Ասորական օրինակն հայտնի է Դիլլոնի թարգմանությամբ, որի հիմքում ընկած է Քեմբրիջի բնագիրը, Հարրիսը քաղվածք է բերում նույնպես Քեմբրիջի բնագրից, բայց հենց իր հրատարակության մեջ այդ հատվածը չկա։ Հատվածը չի հանդիպում և ասորական այլ բնագրերում։ Կամ Հարրիսը սղել է իր թարգմանության մեջ, կամ Դիլլոնն է հավելագրել արաբական բնագրերից։ Եթե այդպես է, օրինակը դառնում է ավելի մասնակի։*

*Նույն տիպի խրատներ հետագա շրջանի հայ ձեռագրերում հազվադեպ չեն։*

*«Չորս իրք զթագաւորութիւն կործէ և թապլեցնէ. որ թագաւորն ծիծաղի և թլահէ զմարդիկք և սէր դնէ հետ չմարդկաց և խալֆաթ առնէ հետ չար կանանց և չարագործաց և մեղապարտացն համբերէ։*

*Չորս ցեղ պատճառ կործանի թագաւորութիւն. նախ ի պակասութենէ խելաց և անգիտութենէ. բ. յագահութենէ և ի կաշառառու լինելուն, գ. շնացող լինի և բղջախոհ, դ. ըռիշտութենէն և կծնի լինելուն։ Եւ այս քան զամենայն ատելի է աչս ծառայից իւրոց և ըռամկաց։*

*Չորս իրք է, որ զթագաւորութիւն տապալէ. ա. յորժամ երես հանէ զիւր զօրքն. բ. անհոգ կենայ ի չարկամացն. գ. անհամբերել չարագործացն. դ. ի զրկել զիւր ժողովուրդն»*[11]*։*

*Այս խրատները հանված են մի շարքից, որը միատարր չէ և*

[11] *«Խրատք իմաստասիրաց ասացեալ», ձեռագիր № 2291, էջ 57—58բ։*

ու՝ լրիվ ազգային։ Հավաքողը հիմք է ընդունել Թվերի սկզբունքը և քաղել հարազատ կամ օտար աղբյուրներից։ Շարքն ունի երկու տարբերակ՝ **Խրատք իմաստասիրաց ասացեալ** և **Բանք խրատականք ասացեալ իմաստնոց**: Առաջին տարբերակը սակայն ավելի նախնական է և քիչ աղարտված, այն № 2291 ձեռագրում ընդգրկում է 67 խրատ, չորս բանքով։ Հետաքրքիր է սակայն, որ 21-րդ խրատից հետո կազմողը ծանոթագրում է՝ **Զայս ի պարսից գտի և գրեցի**: Նշանակում է, որ հաջորդում են պարսից խրատներ։

Մյուս տարբերակի մեջ այդպիսի նշում չկա, և խրատների դասակարգումն այլ է[12]։

Թե որքան է կազմում պարսից տարրը, հնարավոր չէ զատորոշել, բայց հասկանալի է, որ այն կա։

Մի ուրիշ բնագրում բոլորովին այլ կապակցության մեջ դարձյալ հուշում է, որ խրատը քաղված է պարսկերենից։ **Պարսից առակս է՝ գաղտնի մեղքն լաւ է, քան զյայտնի առաքինութիւնն**[13]:

Օրինակներ կարելի է բերել ոչ միայն երկրորդաբար, այլև բուն իսկ պարսից աղբյուրներից.

«Այն մասին, որ չորս բան պահպանում են պետությունը. կրոնի պահելը, լավ և իմաստուն վեզիր ունենալը, օրենքները սրբորեն պահպանելը և լավ զորք ունենալը։

Այն մասին, որ չորս բան հնարավոր է միայն չորս բանով. թագավորել կարելի է միայն համեստությամբ, թշնամուն ոչնչացնել միայն բարեկամությամբ և նպատակին հասնել միայն համբերությամբ։

Այն մասին, որ չորս բան հնարավոր չէ առանց չորս բանի. երկիր առանց քաղաքականության, վեզիր առանց հավատարմության, զորք առանց կարգապահության, հպատակներ առանց ղեկավարության։

Այն մասին, որ չորս բան վնաս բերէ թագավորին. էմիրների անբանությունը, վեզիրների դավաճանությունը, ատորադասների անբարտավանությունը և նմանների նախանձը» և այլն[14]։

---

[12] «Բանք խրատականք ասացեալ իմաստնոց», ձեռագիր № 8699, էջ 41բ—47բ։

[13] «Բանք Սողոմոնի խրատական վասն յուսմանց ի բաղում օգտակարութիւն մարդկային բնութեան», ձեռագիր № 8699, էջ 5ա։

[14] Մատենադարանի արաբատառ ձեռագրերի ֆոնդ, ձեռագիր № 565, էջ 1բ—2բ, 4ա. Նույն ֆոնդի № 568 ձեռագիրը պարունակում է բնագրի տարբերակը՝ **Նվեր վեզիրներին**: Գրված է Հիջրայի 1242 թվականին, Միրզա Մահմադ Ալի պարսիկ քարձրաստիճան վեզիրի պատվերով, Աբբասի «կոտրած գրչով»։ Տե՛ս նաև Տաշքենդի ձեռագիր № № 2067, 2068, 2069, 2070, 2071, 2072, 2073,

*Պարսկերեն այս բնագիրը կոչվում է* **Նվեր թագավորներին** *(որոշ տարբերակներում՝* **Նվեր վեզիրներին**), *կազմողը կամ հեղինակն անհայտ է։ Վերագրվում է խոջա Աբդուլլահ Անսարին (1005—1088)։ Ունի չորս բանքով 40 խրատ։ Մուտքում ասված է, որ դրանք իմաստունները ընտրել են հների գրքերից*[15]*։*

*Այսպես, չորս բանքերի համար հարկ չկա փնտրելու եբրայական սկզբնաղբյուր։ Շատ հնարավոր է, որ զրույցի արաբական խմբագրության մեջ խրատները թափանցել են հետագայում բուն իսկ արաբ կամ պարսից գրականությունից, որտեղ գտնում ենք ավելի մոտ և հարազատ ձևեր։*

*Վերադառնանք հայերեն բնագրին։ Չորս բանքերով հատվածը հայ խմբագրության մեջ անփութորեն մատնում է իրեն։ Այն միակցվել է աննուրբ թելերով։ Խրատաշարի վերջին բառերը հնչում են՝* **Որդեակ Նաթան, ի միտ առ զխրատս և մի՛ մոռանար:** *Դա ավարտն է։ Այնուհետև գալիս է չորս բանքերի հատվածը.* **Հարցումն թագաւորաց որդւոց և պատասխանիք Խիկարայ, Յուտայ և Բաղիայն հարցան ի Խիկարն, և ասէ Խիկար ի Նաթան. Զորս իրք զմարդոյ աչաց լոյսն շատացնէ...** *Միայն մի ձեռագիր (C3, № 713) կապ ստեղծելու համար ունի այլ ընթերցված՝* **Որդեակ Նաթան, ի միտ առ զխրատս և մի մոռանար զհարցումն թագաւորաց:**

*Թագավորի որդիները՝ Հուտան և Բաղիան հարցնում են Խիկարին, և Խիկարը պատասխանում է Նաթանին։ Կապակցությունը բռնազբոսիկ է։ Հարցնում են թագավորի որդիները, իսկ նա պատասխանում է Նաթանին։ Անհարիր բնույթը պարզ է դառնում մի հետաքրքիր օրինակով։ Նույն բնագրի մեջ առաջադրված է նոր հարցում.* **Հարցին ի Խիկար, խաւսին, թէ երկիրս ինչ կայ քաղցր, պատասխանի ասէ՝ Ամօթ երեսացն...**

*Նկատվում է ինչ-որ անտեղի ճապաղում։ Ավելորդ է հնչում* **խաւսին (Հարցին ի Խիկար, խաւսին)**, *բայց դա վրիպակն է այլ, ճիշտ ընթերցվածի, որ պահպանված է №№ 2669, 6712 և Կոնիբերի օգտագործած մի ձեռագրում։ Ոչ թէ* **հարցին ի Խիկար, խաւսին,** *այլ՝* **հարցին Պիտարխաւսին,** *այն է՝* **Պյութագորասին:** *Այդպես, Պի-*

---

(„Собрание восточных рукописей АН Узбекской ССР", том III, Ташкент, *1955, էջ 121—124), ՍՍՀՄ ԳԱ Ասիայի ժողովուրդների ինստիտուտի ձեռ. № 927* („Персидские и таджикские рукописи института Народов Азии АН СССР", часть I, М., *1964, էջ 106)* *և* Bodl ***№№ 1466, 1241, 45 ձեռագրերը։ Այս բնագրի մասին մեզ տեղեկացրել է արևելագետ Հ. Փափազյանը։***

[15] ***Մատենադարանի արաբատառ ձեռագրերի ֆոնդ, ձեռագիր № 565, էջ 2ա։***

տարխաւսին *բռնի ստուգաբանվել է* Խիկար խաւսին *և բնագիրը վերագրվել նրան։ Կա և երրորդ ընթերցումը՝* հարցին Պիղատո-սին, թէ երկիր ինչ կայ քաղցր[16].

*Այդ հատվածը միակցվել է Խիկարի զրույցին հետագայում, հայ խմբագրության մեջ և չի եղել նրա նախօրինակում։* Պիտառ-խաւսին *կարող էր ստուգաբանվել* Խիկար խաւսին *հայերենի պայմաններում միայն։*

*Բայց հետևենք փոխանցման ուղիներին։*

*Ձեռագրերում շատ հաճախ զրույցին հաջորդում կամ նախորդում են չորս բանքով բնագրեր։ Այսպես, ձեռագիր № 2147 (A₄)-ի բնագրից հետո գալիս է «Աւելումն և պակասումն. Զորս է, որ զսիրտըն բանա և սրտհեշտացնէ. ուսնիլ գիտութիւն, հարկիք յաւագաց, տեսանել զաշխարհի ա[ր]մնցնին և տեսանել զոր սիրէ» և այլն (էջ 213բ—215ա), № 1865 ձեռագրում զրույցին անմիջապես հաջորդում է՝ «Խրատք իմաստասիրացն. չորս իրք է, խրատէ այս սիրելի եղբայր և գրակարդաց, լաւ իմացիր և յուսիր, զի յոյժ պիտանացոյ է. (Զորս) իրք ամենայն մարդկան վատ է. ճըճգոհալն, հեկռով խաւսիլն, ի սիրտ ելնելն, շլատութիւնն» և այլն (էջ 99աբ)։ Այդպես և № 679 ձեռագրում, բայց այստեղ նույն բնագիրն է, ինչ C-ի հատվածը։*

| *Ձեռ. № 679* | C |
| --- | --- |
| Խրատ թագաւորաց, խիստ պիտանի և գեղեցիկ | Հարցումն թագաւորաց որդւոց և պատասխանիք Խիկարայ: Յուտայ և Բադիայն հարցան ի Խիկարն, և ասէ Խիկար ի Նաթան |
| *Զորս իրք կայ, որ զմարդոյն աչաց լուսն շատացնէ. Նախ՝ ի վերա ծաղկանց հայիլն, երկրորդ՝ բոկիկ զկանանչն կոխելն, երրորդ՝ ի հետ ջրին ի վեր գնալն, չորրորդ՝ զիւր բարեկամն բարով տեսանելն։* | *Զորս իրք զմարդոյն աչաց լոյսն շատացնէ։ Նախ՝ ի վերայ ծաղկանց հայիլն, երկրորդ՝ բոկիկ զկանանչն կոխել, երրորդ՝ ի հետ ջրին ի վեր գնալ, չորրորդ՝ զիւր բարեկամն տեսնուլ։* |
| *Դարձեալ չորս իրքն զմարդն զիրացնէ և առողջ պահէ. Նախ՝ վուշ հագնիլն, երկրորդ՝ հանց բան լսել, որ իւրն դուր գայ, երրորդ՝ ի տանէ սիրտն առողջ լինի, չորրորդ՝ զհեռաւորն բարով տեսանէ։* | *Դարձեալ չորս իրք զմարդն զիրացնէ և առողջ պահէ. Նախ՝ վուշ հագնիլն, երկրորդ՝ լսել բան հանց, որ իւրն դուր գայ, երրորդ ի տանէ սիրտն առողջ լինայ, չորրորդ՝ զհեռաւորն բարով տեսանէ։* |

[16] *Ձեռագիր № 3260, էջ 287ա։*

| | |
|---|---|
| *Դարձեալ չորս իրք կայ, որ զմարդոյն հարկիքն աւելացնէ. նախ՝ ամէնն բարի խօսելն, երկրորդ՝ խոնարհ կենալն, երրորդ՝ պակաս կենալն, չորրորդ՝ ամաչէ ի մեծէ և ի փոքրէ։* | *Դարձեալ Դ իրք են, որ զմարդոյն հարկիքն աւելցնէ. Նախ՝ ամէն բարի խօսելն, երկրորդ՝ խոնարհ կենալն, երրորդ՝ պակաս խօսելն և չորրորդ՝ ամաչէ ի մեծէ և ի փոքրէ։* |
| *Դարձեալ չորս իրք են, որ զմարդոյն երեսին ջուրն տանեն։ Նախ՝ սիրոյ տեռութիւնն շատ խօսելն, երկրորդ՝ ամէն բան ի սրտի ներս առնուլն, երրորդ՝ զոր ոչ գիտենայ, պարծենայ թէ գիտեմ, չորրորդ՝ ստախօսութիւնն։* | *Դարձեալ չորս իրք են, որ զմարդոյն երեսին ջուրն տանի. Նախ՝ ի սիրոյ տիռութիւնն շատախօսիլ, երկրորդ՝ ամէն բան ի սրտի ներս առնուլն, երրորդ՝ զոր չգիտենայ, պարծենայ թէ գիտեմ, չորրորդ՝ ստախօսութիւն։* |
| *Հարցին ի Խիկար և ասեն, թէ զինչ կայ երկիրս քաղցր։ Պատասխանի ետ և ասէ։ Ամօթ երեսացն։ Որ ամօթ ունի քաղցր է նա, զի ամենայն չարիք ի լրբութենէ ծնանի։ Քրիստոսի փառք յաւիտեանս ամէն (208բ—209բ)։* | *Հարցին ի Խիկար, խօսին թէ երկիրս ինչ կայ քաղցր։ Պատասխանի ասէ. Ամօթ երեսացն։ Որ ամօթ ունի քաղցր է նա, զի ամենայն չարիք ի լրբութենէ ծնանի։* |

*Բնագրերն ունեն սոսկ ընթերցվածային տարբերություն, մի բան, որ կա նաև C խմբի առանձին ընդօրինակություններում։*

*№ 679 ձեռագրի չորս բանքը բաժանվում է Խիկարի զրույցից պարբերությամբ միայն և արդեն վերագրվել է Խիկարին։ Դա դեռ չի արտահայտված վերնագրում, բայց այստեղ ևս* Հարցին ի Պիտարխաուին *վերընթերնվել է՝* Հարցին ի Խիկար և ասեն:

*Որևէ գրչի դժվար չէր ունենալ № 679 ձեռագիրը, կամ նման մի օրինակ, որպեսզի այն մուծեր բուն զրույցի մեջ։*

*Հարրիսը գրում է. «Թագավորի որդիների անունները նշված են՝ Հուդան և Բաղիան, և այստեղ մենք կարող ենք լույս սփռել խորհըրդավոր Իթիելի և Ուքաղի վրա, որոնց մասին խոսվում է L առակում, և որոնց Ագուրն ուղղում է իր պատգամները։ Ակնհայտ է, որ նրանք երկու հետաքրքրասեր երիտասարդներ են և հավանաբար թագավորի որդիները, որոնք ծառայում են այն նպատակին, որպեսզի կարողանան ի հայտ բերել իմաստունի խելքը։ Այդ լույսի տակ մենք կարող ենք ազատվել շփոթությունից, որ ստեղծել են հին և նոր թարգմանիչներն ու մեկնիչները այս հատվածում»*[17]*։*

*Համեմատությունն ինքնին հետաքրքիր է, բայց Հարրիսը դրանով կամուրջ է գցում Ագուրի և Խիկարի միջև։*

---

[17] „The story of Ahikar“, էջ LV—LVI։

*«Ազուրն ինքը,—գրում է նա,—մի տեսակ Խիկարի կրկնակն է, և նրանց վերցրած նյութերը կարող են միասին դասակարգվել։ Ուստի հավանական է, որ Խիկարի առկա խմբագրությունները ներկայանում են շատ ավելի ընդարձակ հավաքածուներից քաղված կտորներով։*

*Աստվածաշնչի առակների հետ այդպիսի հավաքածուների ունեցած արենակցությունը կասկածի տեղիք տալ չի կարող»*[18]։

*Այդ ամենը թերևս կարող է վերաբերել հայ ձեռագրերում պահպանված հատվածին և ոչ թե Խիկարին, որի հետ այն առնչվել է պատահաբար և ոչ շատ վաղ։*

*Հատվածը սակայն հիմքեր չի տալիս ենթադրելու, որ Խիկարը և Աստվածաշունչը (Առակաց գիրքը) ունեն ընդհանուր աղբյուրներ, և նրանց վերցրած նյութերը* կարող են միասին դասակարգվել[19]:

## Գ. ԽՐԱՏԱՆԻ

Տղայութիւն մինչ յերիտասարդութիւն,—*այսպես է սկսվում մի բնագիր, որ ձեռագրերում ունի ոչ սակավ ընդօրինակություններ։ Բնագիրն առաջին անգամ հրատարակվել է 1847 թվականին «Բազմավեպում», առանց խորագրի*[20]*։ Հրատարակչի ձեռքին եղել է վերջից կիսով չափ թերի մի աղբյուր։ Այնուհետև 1966 թվականին «Խրատ Նուշիրուանի» հավելվածում հրատարակվում է երկրորդ անգամ, դարձյալ թերի, ավելացվում է երեք խրատ։ Հիմք է ծառայել Մատենադարանի № 8076 ձեռագիրը*[21]*։*

*Բնագիրն ընդօրինակություններում անխորագիր է, կամ ունի այլազան խորագրեր. «Խրատ իմաստասիրաց վասն խնդրողացն»,*

---

[18] „The story of Ahikar“, *էջ* LVI։

[19] *Տաշյանը նույնպես համաձայն չէ Հարրիսի հետ, գտնելով որ այդ հատվածը բնագրային չէ։*

*«Մենք այս կտորին մեծ նշանակություն չենք տար,—գրում է նա,—անոր համար, որ հայտնապես հետսամուտ է. նաև միայն լիովին ռամիկ և աղավաղ լեզուն ասոր ապացույց է, վասն զի թեև Խիկարի արդի հայերենին մեջ ալ ռամկաբանությունք չեն պակսիր (որոնք նույնպես ուշ ժամանակի արդյունք են ըստ մեզ, բուն թարգմանությունը շատ ընտիր և առույգ լեզու մ'ունի, ինչպես կը վկայե նաև արդի բնագրին մեծ մասը), բայց այսչափ աղավաղություն այլուր չի գտնվիր»։ Տաշյանը այն համարում է «արաբական բնագրե մը փոխանցված» («Մատ. մանր. ուսումն.», Բ, էջ 86)։*

[20] *«Բազմավեպ», 1847, էջ 198—200։*

[21] *«Խրատք Նուշիրուանի», աշխատասիրությամբ Բ. Լ. Չուգասզյանի, էջ 144—151։*

*«Բանք Սողոմոնի խրատական վասն յուսմանց ի բազում օգտակարութեան մարդկային բնութեան», իսկ Մաշտոցի անվան Մատենադարանի № 8076 ձեռագրում՝ «Ի պարսից բառէն թգր մի անցւ Յակոբ վարդապետի յօրինակէն»։*

*Սակայն հենց № 8076 ձեռագրի նյութերի դասակարգումից երևում է, որ այդ տողերը չեն առնչվում* Տղայութիւն մինչ յերիտասարդութիւն *ամբողջ շարքին և այդտեղ են ընկած վրիպումով, կամ վերաբերում են առաջին մեկ-երկու խրատների։*

*Ձեռագիրը մանրապատումների ժողովածու է, բավական խառը և անկանոն, այսպես՝* Թագաւորի սպանիչը *խորագրի տակ բուն գրույցից հետո («Կամէին իշխանքն սպանանել զթագաւորն իւրեանց։ Մին մարդ նոցա առակաբան ասաց...») գալիս է մի փոքրիկ բնագիր, որը ոչ մի կապ չունի խորագրի հետ. «Շաքարեղէգն թէ Ռ գէշ ջուր աղբով լինի ի բոլորն նա քաղցր կու փոխէ, և օձն զամենայն քաղցր և բարի իրք յիւր վատ թոյնքն փոխէ։ Նշանակէ զչար մարդ և զբարի մարդ։*

*Մի լծեր զեզն ընդ իշոյ, եզն որոճող է, էշն՝ ոչ։ Նշանակէ եզն զիմաստուն քահանայ յեկեղեցի և էշ՝ զտգէտն։ Մի տուր զիմաստին կարգն տգէտին։ Դարձեալ եզն է հոգին, որ իմաստուն և էշ՝ մարմինն ցանկասէր և զազրագործ» (62բ—63ա)։*

*Բնագիրը նախորդից բաժանվում է միայն պարբերությամբ և սկզբնատողով։*

*Նույնը և հաջորդ խորագիրը։* Սուրբ աստված *վերտառությամբ ներկայացվում է տարասեռ նյութերի մի շարք։ Առաջինը պատարագի հոգևոր երգից մի հատված է հայատառ պարսկերեն, երկրորդը՝ Մահմեդի և խալիֆաների ընտանեկան ճյուղագրություն, երրորդը՝ խրատ։ Նյութեր, որոնք նույնպես բաժանվում են իրարից միայն պարբերությամբ և սկզբնատառով, իսկ խորագիրը վերաբերում է պատարագի երգին,* Սուրբ աստված-Փաքի խուդա: *Ինչպես տեսնում ենք դա պատահական է, և մի խորագրից մինչև մյուսը կարող են լինել բազմաթիվ նյութեր։*

Տղայութիւն մինչ յերիտասարդութիւն *շարքը նույնպես միասեռ չէ։ Այստեղ կարելի է գտնել ոչ միայն խրատ, առակ, առած, այլև նույնիսկ՝ աղոթք՝* Հայր մերը *հայատառ պարսկերեն՝* փի-[դ]արի ման քի բար ասմանի: Փաքաստ ու նամի թու *(65աբ) և դարձյալ բաժանվում են իրարից այնպես, ինչպես մեր բերած օրինակի մեջ, պարբերությամբ և սկզբնատառով։*

*Այդ երկու շարքերի միջև տարբերությունն այնքան է, որքան յուրաքանչյուր միավորի։*

*Խրատաշարը միանգամից չի կազմվել։ Սկզբում եղել է առանձին նյութերի մի խումբ, առանց խորագրի։ «Բազմավեպում» այն ներկայացված է* Հին ազգային առակներ *սեփական վերտառությամբ, իսկ երկրորդ հրատարակության խորագիրը նույնպես անհարազատ է։*

*Երկու բնագրերն էլ չեն ավարտված, ոչ թե թերի են, այլ խմորման մեջ։ «Բազմավեպը» վերջանում է 74-րդ խրատով.* Հարկևորին հարկիf տուր վասն իւր հարկեցն: Անհարկևորին հարկիf տուր վասն fո հարկեցդ: *№ 8076 ձեռագրում, որը երկրորդ տպագրության հիմքն է, բնագրին միացել է ևս երեք խրատ և մի աղոթք, իսկ № 8699 և Վենետիկի № 1294 ձեռագրերում շարունակվում են խրատներ, որոնք № 8076 ձեռագրում ընկած են* Սուրբ ասացված *բնագրից հետո, բայց հապավվել են* Հայր մերը, Սուրբ ասացվածը *և նրան հաջորդող* բ, դ, է *նյութերը, որոնք առավել անհարիր են։*

*Այդ նշանակում է, որ № 8076-ում բնագրի սահմանակցությունը դեռ պարզ չէ։*

*Նյութերը գալիս են տարբեր աղբյուրներից, երբեմն և օտար։ «Պարսիկ առակս է,—հուշում է խրատներից մեկը,—գաղտնի մեղքն լաւ է, քան զյայտնի առաքինութիւնն», իսկ մի ուրիշ խրատ սկսվում է այսպես. «Գիտելի է, զի ասեն ոմանք պարսիկք»։*

*Եթե ամբողջ բնագիրը թարգմանված լիներ, կամ հեղինակը՝ պարսիկ, ապա բոլորովին հարկ չկար մի մասնակի դեպքում հիշելու՝* պարսիկ առակս է: Պարսիկ առակս է, *ապա մյուսները պարզ է, որ պարսիկ առակներ չեն։ Այդպես կարող է ասել միայն ոչ պարսիկը, որը բարեխղճորեն նշում է օտար աղբյուրից իր փոխառությունը։ Դրանք անկախ մանրապատումներ են, ինչպես* Սուրբ ասացված *պայմանական շարքի* է *գրույցը՝* Պարսիկն ասէ. Ալիբուսինայն տղայ մի փայտէ շինեաց, *բայց սա հետո դուրս է մղվել իր տարասեռ բնույթի շնորհիվ։*

*Այս անհեղինակ կամ ժողովրդականացած նյութերին հարակցվել է նաև մի ձգվող շարք, որի աղբյուրն աներկբա Սիրաքն է.*

| *Ձեռագիր № 8699* | *Սիրաք* |
|---|---|
| *քաղցրախաւս մարդն բազում բարեկամս առնէ, և լեզու քաղցր ի բազմաց յաճախ առնէ գովութիւն (90)։* | *Քաղցրախօս մարդ բազում բարեկամս առնէ, և լեզու քաղցր ի բազմաց յաճախ առնու գովութիւն (Զ—5)։* |
| *Որդեակ, բազումք եղիցին բարեկամք քո, բայց ի հազարաց եղիցի քեզ մի խորհրդակից (91)։* | *Որդեակ, բազումք եղիցին բարեկամք քո, բայց ի հազարաց եղիցի քեզ մի խորհրդակից (Զ—6)։* |

| | |
|---|---|
| *Եթէ զոք ի հանճարեղաց գտցես, առէպ կանխեա առ նա (94)։* | *Եթէ զոք ի հանճարեղաց գտցես, առէպ կանխեա առ նա (Զ—36)։* |
| *Աւտարաց առաջի զաղտնի գործ մի՛ գործեր, զի զպատահումն քո ի նոցանէ ոչ գիտես (106)։* | *Օտարաց առաջի զգաղտնի գործ մի՛ գործեր, զի զպատահումն քո ի նոցանէ ոչ գիտես (Ը—21)[22]։* |

*Սիրաքի հավելումն ունեն արդեն մեր № 8699 և Վենետիկի № 1294 ձեռագրերը։ Դրանով էլ ավարտվում է բնագրի կազմավորումը, ավելի ճիշտ՝ ընդհատվում, ընդունելով բոլորովին այլ խորագիր՝* Բանք Սողոմոնի, խրատական վասն յուսմանց ի բազում օգտակարութիւն մարդկային բնութեան: *Դա անշուշտ տեղի է ունեցել Սիրաքի հատվածները միակցելուց հետո և նրա ազդեցությամբ, շփոթելով Սիրաքը Սողոմոնի հետ[23]։*

*Այդպիսով, կարծում ենք խորագիրը չի կարող վերաբերել* Տղայութիւն մինչ յերիտասարդութիւն *ամբողջ շարքին[24]։*

---

[22] *Զոհրաբյանի հրատարակությունը իր տարընթերցումներով շատ է հեռանում Բագրատունու (1860) օրինակից։*

[23] *Շփոթում է նույնիսկ Բարսեղ Սարգսյանը։ Նկարագրելով Վենետիկի օրինակը գրում է. «Թղ. 80 բ Կհարին ստուգիվ Սողոմոնի առակներն. «Որդեակ բազումք եղիցին բարեկամք քո, բայց ի հազարաց եղիցին քեզ մի խորհրդակից» և այլն դասական լեզվով» (էջ 765)։ Եթե Աստվածաշնչի մեծ գիտակ բանասերը կարող էր սխալվել, ապա դա շատ ավելի հասկանալի է որևէ գրչի կողմից։*

[24] *Մաշտոցի անվան Մատենադարանի № 8076 ձեռագրում խորագրի հապավումը՝* **Թգրմիանցւ** *ճիշտ է կարդալ՝* **Թագաւոր** մի անցաւ, *բայց տրամաբանական է՝* թարգմանեցաւ, *ինչպես վարվում է Բ. Զուգասզյանը։ Մառը նույն հիշատակությունը վկայաբերում է իր Վենետիկյան մի ձեռագրի նկարագրության մեջ, դարձյալ՝* թարգմանեցաւ (*Н. Марр,* Сборник притч Вардана, часть I, СПб., 1899, *էջ 68*)։

*Բայց որովհետև ձեռագիրը մեզ անհաս է, չգիտենք հիշատակագրությունը նախորդում է* Տղայութիւն մինչ յերիտասարդութիւն *շարքին, թե վերաբերում է այլ բնագրի, ինչպես նաև՝* թարգմանեցաւ *Մառը վերականգնել է հապավումից, թե այն կա բառի լրիվ գրությամբ։ Վենետիկյան ընդօրինակությունը շատ բան կարող է պարզել։ Այնուամենայնիվ զարմանալի է, ինչպես է № 8076 ձեռագրի գրիչը հապավելիս* թրգմնցւ *շփոթել* թգրմիանցւ*-ի հետ, այսինքն՝ մի բառը մի ամբողջ նախադասության, մանավանդ ձեռագրի միևնույն էջի վրա նա* թագավոր *ճիշտ է հապավում (թգր)։*

*№ 8076 ձեռագրում այդ տողերը հետևում են առակների կամ զրույցների, որոնք վերաբերում են թագավորներին՝ «Կամէին իշխանքն սպանանել զթագաւորն իւրեանց» (62բ), «Թագաւոր մի ունէր գեղեցիկ այգի», (63ա), որին անմիջապես հաջորդում է՝ «Թագաւոր մի անցաւ» (63ա)։*

*Թերևս ենթադրել, որ դա մի աղավաղ հատված է և դարձյալ առնչվում է թագավորի մասին ինչ-որ զրույցի հետ, որ քաղված է* ի պարսից բառէն: *Սակայն մենք կարող էինք շատ ավելի հիմք ունենալ, եթե* Յակոբ վարդապետի յօրինակէն *նախադասությունը ընկած լիներ* թգրմիանցւ *հապավումից առաջ։*

Բնագիրը մի տեսակ խրատանի է, ինքնաբերաբար ժողովված մանրապատումներից և ազգային հողի վրա, որը հետո ստացել է խորագիր, ուստի և՝ վերջ։

Խրատանիից բավական շատ փոխառություններ ունի Խիկարի չորրորդ (D) տարբերակը։

| Խ ի կ ա ր | Խ ր ա տ ա ն ի |
|---|---|
| 1(89) Որդեակ, քիչ ուտելն մարմնոյն շահ է, և սակաւ խօսելն հոգոյն շահ է, զի քիչ ուտելովն մարդն ոչ ախտանայ, բայց շատ և յաւելի ուտելովն հազարք մեռանին։ | 23. Քիչ ուտելն մարմնոյն շահ է և սակաւ խօսելն՝ հոգւոյն շահ է։ Քիչ ուտելովն մարդոյն չերմն չի բռնէ, այլ շատ ուտելովն հազար մեռանի։ |
| 2(90) Որդեակ, խօսքն զինչ ճոհար է, ի սատաֆի մէջն դիր և յամէն տեղ մի ցրուեր։ | 51. Բարի խաւսքն զինչ ճոհար է, ի սատաֆի մէջն դիր, մի ամէն տեղ ցրուել, այլ ի սառաֆ տար։ |
| 3(91) Որդեակ, եթե ժ բան բարի գիտես, զհինգն խօսէ և զԵ պահէ։ | 9. Թէ տասն խաւսք բարի գիտես, դու զինն խաւսեա և զմէկն պահէ։ |
| 4(92) Որդեակ, լեզուն հարցաւ գըլխոյն, թէ հալդ ինչ է. Ասաց, թէ՝ Քանի դու լուռ կաս, նա ես խիստ հանգիստ եմ։ | |
| 5(93) Որդեակ, որչափ որ քիչ զրուցես, այնչափ հարկիս առնուս ի մարդկանէ։ | |
| 6(94) Որդեակ զոտքդ ի կաւն դնէս, ի փշոյ պատրաստ կացիր, զձեռքդ ի ծակն տանիս, ի յօձու պատրաստ կացիր։ | 41. Զոտդ ի կաւն դնես, ի փշոյ պատրաստ կացիր, կձեռդ ի ծակն կու տանիս, ի յօձու խածանելու պատրաստ կացիր։ |
| 7(95) Որդեակ, յամենայն մարդ խօսք մի վստահանայր և զծածուկս քո մի յայտներ ումեք։ | |
| 8(96) Որդեակ, ընկեր հետ աղեկին եղիր, որ աղեկութիւնդ յաւելնայ։ | 60. Քո ընկերն քան զքեզ իմաստուն ու լաւ պիտի, որ խելքդ և իմաստութիւնդ յաւելնայ։ |
| 9(97) Որդեակ, ով ոք զբարեկամին բարի խրատն ատէ, արժանի է, որ թըշնամին ի վերայ նորայ խնդայ։ | 67. Ով զբարեկամի զբարի խրատն ատէ, արժանի է, որ թշնամին ի վերա նորա խնդայ։ |

| | |
|---|---|
| 9(98) Որդեակ, հետ վատին քիչ նիստ, թէ ոչ՝ քան զամէնն որ աղեկ ես, նա վատ զու դառնաս։ | 59. Հետ վատին քիչ նիստ, թէ չէ, քան զքեզ ամէն աղէկ ես, վատ կու դառնաս։ |
| 10(99) Որդեակ, տես զարեգակն, թէ որչափ պայծառ է, բայց փոքր մի ամպ, որ ի դէմն գայ, կու մթնեցնէ զինքն։ Այդպես և վատ մարդն զաղէկն կու խանգարէ։ | 59. Արեգակն, որ քան զամենայն արարածս ի բարձր է, փոքր մի յամպ ի դէմ կանգնի, բոլորն կու խաւարի։ |
| 11(100) Որդեակ, ով մօտ ի լուսինն նստի, երեսն նման լուսոյ պայծառանայ, և ով մօտ ի սև պոստուկն նստի, նորա նման լինենայ։ | 68. Ով մատ լուսինն նստի, երեսն նման լուսնի պայծառանայ, ով որ մոտ սեպակի (սև պուտուկի—Ա. Մ.) **նստի, երեսն նման նմա լինի։** |
| 12(101) Որդեակ, Հարկաւորին Հարկիս արա, վասն իւր Հարկիցն, և անՀարկուն Հարկիս արա, վասն քո Հարկիցդ։ | 76. Հարկաւորին Հարկիք տուր, վասն իւր Հարկեցն, անՀարկուն Հարկիք տուր, վասն քո Հարկեցն։ |
| 13(102) Որդեակ, ինքեան գիտակն աստուածաճանաչ է և իմաստուն։ | 53. Ինքեան գիտակն աստուածաճանաչ և իմաստուն է։ |
| 14(103) Որդեակ, եթէ սաէ ոսկին, թէ ես Հնդիստանի եմ, ինչ շահ է իւր ասելն, վասնզի մաՀաքն կու ճանաչէ զինքն։ | 34. Թէ ոսկին սաէ. Ես Հնդստան եմ, ինչ Համար է, մաՀակն կու ճանաչէ։ |
| 15(104) Որդեակ, որ լսէ և ոչ առնէ՝ մէկ աչօքն կոյր է, և որ ոչ կամի լսել և ոչ առնել՝ երկու աչօքն կոյր է, իսկ որ լսէ և առնէ, երկու աչօքն ի լոյս է։ | 80. Որ լսէ և ոչ առնէ՝ մէկ աչքն կոյր է, և որ ոչ լսէ և ոչ առնէ՝ երկու աչաւքըն կոյր է, որ լսէ և առնէ՝ երկու աչօքն ի լոյս է։ |
| 16(105) Որդեակ, կին, թուր, ձի ոչ են Հաւատալի։ Ջրունն բոէ, և զկին անզգամ՝ ոչ։ Ձի շունն ոչ մոռանայ զերախտիս մարդոյ, իսկ կին, թուր, ձի ոչ ճանաչեն զտէր իւրեանց։ | 16. Նարինճ ու թուրինճն ի վերա սարին ով տեսել և զաւձու զլուխն ի ճնճղկի բունն ով տեսաւ։ Այս զարմանալի բան, որ կասեմ. կին, թուր, ձի ու ֆաթար ով է տեսել։ Ջրունն բռէ զկինն մի բռել։ Էր ասեմ քեզ, էնոր Համար, որ շունն բաֆայ պաՀէ, և կինն և թուր և ձին ոչ պաՀեն։ |

Պետք է նկատել, որ Խիկարի բնագրում քաղվածքներ են արված ավելի ընդարձակ և մի փոքր տարբեր Հավաքածուից։ 4,5 և 7-րդ խրատները, թեպետ չենք Հանդիպում խրատանիի մեջ, բայց նրանից են սերում։

*Խիկարի հայկական խմբագրության փոխառությունների հաջորդ մեծ աղբյուրը Աստվածաշունչն է.* Առակք Սողոմոնի, Իմաստութիւն Յեսուայ որդւոյ Սիրաքայ, Տովբիթի *գրքերը և* Նոր Կտակարանը:

*Բայց այստեղ դժվար է որոշել երբ են արված փոխառությունները. կային թարգմանության նախօրինակում, թե հետամուտ են։*

*Սուրբ գրքի հետ զրույցի հարաբերակցությունը բազմակի ձևեր ունի.*

*ա. խրատներ, որոնք ընդհանուր են, գալիս են նախասկզբնական օրինակից և աղոտված հարց է. որն է աղբյուրը, Խիկարը, թե Սուրբ գիրքը։ Այստեղ բանասերի ձեռքին չափազանց քիչ փաստեր կան, և թերևս հնարավոր է միայն հայեցողական ենթադրություններ անել։*

*բ. խրատներ, որոնք ուղղակի Սուրբ գրքից անցել են Խիկարին, հայերեն թարգմանությունից առաջ։*

*Հոֆմանի դիտողությունից հետո, դա բավականաչափ քննված է բանասերների կողմից։ Ֆ. Նոն բերում է Սուրբ գրքի և Խիկարի առնչությունների մի ընդարձակ աղյուսակ*[25]*։ Այդպիսի աղյուսակ ունի և Ա. Գրիգորևը*[26]*։*

*Հասկանալի է, որ հետագայում հայկական հողի վրա Սուրբ գրքից կատարված փոխառությունները պետք է փնտրել այդ աղյուսակներից դուրս։*

*Ահա այդպիսի խրատների մի քանի զուգահեռներ.*

| *Ս. Գիրք* | *Խիկար* |
| --- | --- |
| *Մի՛ գնար մէն ընդ առն բարկացողի և մի՛ կագիր ընդ նմա, զի յաչս նորա թեթև թուի արիւն։* (*Սիրաք, Ը—19*) | *Որդեակ, մի՛ գնար մէն ընդ առն բարկացողի և մի՛ կարգիր* (D$_1$—*113 կագիր*) *ընդ նմայ, զի յաչս նորա թեթև թվի արիւն քո։* (A$_4$—*58*, A$_5$—*82*, D$_1$—*113*) |
| *Որդեակ, թէ գլուխ իցես բազմաց, մի՛ հպարտանար ի վերա նոցա, լեր դու իբրև զմի ի նոցանէ և հանապազ խնամեա զնոսա, և նոքա զանձինս իւրեանց ի մահ դիցեն ի վերա քո։ Եւ զպարգեւս խոստման քո մի՛ պակասե-* | *Որդեակ, եթէ գլուխ իցես բազմաց, մի՛ հպարտանար ի վերա նոցա։ Լեր դու իբրև զմի ի նոցանէ և հանապազ խնամեա զնոսա, և նոքա զանձինս իւրեանց և զմահ դիցեն ի վերա քո։ Եւ զպարգեւս խոստմանց քոց մի՛ դարձուցաներ ի նո-* |

25 *François Nau*, Histoire et sagesse d'Ahikar l'Assyrien, **էջ 301—304։**

26 *А. Д. Григорьев,* Повесть об Акире Премудром, Приложения, **էջ 280—283։**

| | |
|---|---|
| *ցուցանէր ի նոցանէ, հոգ տար նոցա ի սեղանս և զուրախութիւն նոցա քեզ համարեա։* | *ցանէ, հոգ տար նոցա ի սեղանս և զուրախութիւն նոցա քեզ համարեա։* |
| *(Սիրաք, ԼԲ, 1—3)* | ($A_4$—*131*a, $A_5$—*148*a) |
| *Տրտմութեան մի՛ տար զանձն քո և ի խորհուրդս մի՛ նեղեր զքեզ։ Կեանք մարդոյ ուրախութիւն սրտի։* | *Տրտմութեան մի՛ տար զանձն քո և ի խորհուրդս մի՛ նեղեր զքեզ։ Կեանք մարդոյ ուրախութիւն սրտին է։* |
| *(Սիրաք, Լ—21)* | ($A_4$—*131*b, $A_5$—*184*b) |
| *Ընդ առն լեզուանոյ մի կռուիր, զի ի **վերայ հրոյ փայտ դիզես։*** | *Որդեակ, ընդ առն լեզուանոյ մի կռուիլ, զի այնպէս է, որպէս թէ ի վերայ հրոյ փայտ դիզես։* |
| *(Սիրաք, Ը—4)* | ($D_1$—*196*) |
| *Լաւ են հարուածք բարեկամի, քան զկամակոր համբոյրս թշնամոյ։* | *Որդեակ, լաւ է վէրս բարեկամին, քան զհամբոյրս թշնամոյն։* |
| *(Առակ, Իէ, 5—6)* | (D—*67*) |

*Այս խրատները մուծվել են հետագայում, որովհետև՝*

*1. A տարբերակը ներկայացնող հինգ օրինակներից* ($A_{1-5}$) *ունեն միայն երկուսը* ($A_{4,5}$)*, որոնք ամենայն հավանականությամբ գալիս են մեկ աղբյուրից։ Երկու ձեռագրերում էլ կա միևնույն սխալ ընթերցումը՝* **կարգիր** *փխ.* **կազիր**: *Առհասարակ* $A_4$ *և* $A_5$ *օրինակներն ունեն գրչական բացահայտ ազգակցություն։*

*2. Ինչպես համեմատությունից պարզ է, խրատները Սիրաքի գրքին առնչվում են ոչ թե սոսկ թեմայով, այլ նույնն են նրա հետ, ուրեմն փոխառված են Սիրաքի հայերեն թարգմանության օրինակից։*

*Թերևս ենթադրել, որ թարգմանիչը տեսնելով նույն խրատը այլևս հարկ չի համարել նորից թարգմանելու, այլ տեղադրել է արդեն պատրաստի Սիրաքի օրինակը, մանավանդ Աստվածաշնչից հաճույքով էին ձևեր և արտահայտություններ փոխառում։ Բայց այս դեպքում դա ճիշտ չէ, որովհետև Սիրաքը վաղուց հետե չի մտել կանոնական գրքերի մեջ և հայերենում ունի տարբեր թարգմանություններ ու խմբագրություններ։ Մեզ հետաքրքրող խրատները գալիս են Զոհրաբյանի օրինակից, որը եթե մի այլ թարգմանություն չէ, ապա անպայման պարզեցված խմբագրություն է, ժողովրդականացված օրինակ։*

*3. Բնագրային մի կարևոր հանգամանք։* $A_4$*-ի մեջ 131* a *և* b *խրատները մուծվել են բավական ապաշնորհ ձևով և մատնում են իրենց։*

A *խմբի բոլոր ձեռագրերի շարքը վերջանում է այսպես.* Արդ, որ առնէ զայս ամենայն, եղիցի իմաստուն և փառավոր,—*այսինքն, ով կատարե այս բոլոր խրատները կլինի իմաստուն և փառավոր։*

*Հասկանալի է, որ դա ավարտն է, բայց հենց այդ նախադասությունից հետո են A₁-ում գալիս Սիրաքի ԼԲ 1—3 և Լ 21—22 խրատները։ Դա ամենաբնորոշ ձևով մատնում է դրանց հետամուտ բնույթը։ A₅-ի գրիչն այս հանգամանքը նկատել է և նույն նախադասությունը բոլորովին դուրս թողել։*

*Սուրբ գրքից փոխառությունները դրանով չի ավարտվում։ Նրա ազդեցությունը նկատելի է ոչ միայն խրատների վրա, այլև պատմողական մասում, առհասարակ ոճերի ու արտահայտչական ձևերի մեջ, որից լիաբար օգտվել է հայ թարգմանիչը։*

*Սիրաքը, Սողոմոնը և Խիկարը խրատականքի մեջ ունեն ժանրային շատ մեծ հարազատություն և անսպասելի չէ, որ որոշ բնագրերում գրիչը Խիկարի անունը շփոթում է Սիրաքի հետ, իսկ այլ տեղերում ուղղակի վկայակոչում Սողոմոնին։*

*Սրանով մենք սպառում ենք փոխառությունների հարցը, որոնք կատարվել են հայերեն թարգմանության մեջ և չեն վերաբերում նախօրինակին։*

*Հայ խմբագրության համար փոխառության հիմնական աղբյուր են ծառայել* Խօսք իմաստասիրաց և խրատք հասարակաց *բնագիրը,* Չորս բանքը, Հարց և պատասխանիքը, Խրատանին *և* Սուրբ գիրքը:

### Ե. ԳՐՉԱԿԱՆ ԵՎ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Փոխառությունների ուղին սակայն միակը չէ խրատականքը հարստացնելու համար։ Հայ թարգմանության մեջ երևան են եկել նոր խրատներ նաև եթե կարելի է ասել՝ ինքնաճմամբ, բուն որևէ խրատ կիսելով կամ վերաձևվելով։ Նոր ընթերցումների շերտի տակ ծածկվել է խրատի նախնական պատկերը, և դարձյալ հեռացել բնօրինակից։*

*Հետևենք այժմ այդ ընթացքին։*

*Բնագրում ընդօրինակությունների ժամանակ տեղի են ունենում ակամա փոփոխություններ։ Ամենաուշադիր գրիչն անգամ թույլ է տալիս վրիպումներ և պատահական չէ, որ գրեթե բոլոր հիշատակարաններում կրկնվում է միևնույն խնդրանքը՝* Սխալանացս անմեղադիր լերուք: *Իսկ հաջորդ ընդօրինակողները նկա-*

տում են իրենց ձեռքի տակ եղած բնագրի վրիպումը և փորձում ուղղել կամ վերծանել անընթեռնելի մի բառ կամ աղավաղում, որոնք հաճախ դառնում են կամայական և բնագրից ավելի հեռանում։ Այսպես. մարդկան բառը $A_2$-ի գրչի համար դժվարընթեռնելի է եղել և նա վերծանել է՝ մեր և կեանս, դառնիճր G բնագրում դարձել է դառն ինչ, աղբ ի պարտիզի (A) գրիչը ենթադրելով որ աղվել է ւր մասնիկը, դարձրել է աղբիւր պարտիզի, մանավանդ փոփոխությունը անիմաստ չէ (C)։ E խմբի 80-րդ խրատն այսպես է. Որդեակ, լաւ է ստանալ ձի սմբակեղ և էշ ստուարոլոք, քան զծառայ փախչող և ստախօս: E-ն հիմք է ծառայել Fa-ի համար, որտեղ թույլ է տրվում վրիպակ՝ սմակել փխ. սմբակեղ, իսկ Fb-ն ծագում է Fa-ից։ Այնտեղ տեսնելով, որ սմակել իմաստ չունի փոխարինում են ծոյլ և պղերգ բառերով, իսկ ստուարոլոք սխալ ընթերցվելով՝ Fab-ում դարձել է ըստ վարուք:

Այդպիսի ակամա ճշգրտումները հաճախ վերաիմաստավորում, կամ առաջացնում են նոր խրատներ։

Որդեակ, քննեա զբանն ի սրտի քում և ապա՝ ի վեր հանիցես, զի թէ փոխես զբանն՝ քաղցր լինի (C 47)։ Ճիշտ ձևն է՝ ծաղր լինիս, բայց որևէ տեղ գրիչը շփոթել է։ Ամբողջ C տարբերակում քաղցր է, փոխանակ ծաղր: Դա իմաստ չի տալիս և $C_3$-ի կամ նրա օրինակի գրիչը փորձել է ելք գտնել. Որդեակ, քննեա զբանն ի սրտի քում և ապա՝ ի վեր հան զնա, զի թէ փոխես զբանն և ընտրես զբարին, քաղցր լինիս: Ստացվել է նոր խրատ։

Որդեակ, լաւ է քեզ, թէ գողացեն զինչս քո, քան թէ գողութիւն գտցեն ի վերայ քո (A 90)։ B խմբում կատարվել է մի բառի լրացում՝ զամենայն (զինչս քո զամենայն), իսկ $B_8$-ում արդեն ստացել է նոր իմաստ. Որդեակ, լաւ է թէ գողացեն զինչս քո զամենայն, քան թէ գտցեն մի գողութիւն առ քեզ:

A խմբում այն միտքն է, որ ավելի լավ է քեզանից գողանան, քան թե գողություն գտնեն քո մոտ, իսկ B-ում՝ ավելի լավ է քո ամբողջ ունեցվածքի դիմաց քեզ մոտ մի գողություն էլ չգտնեն։ Իսկ Fb-ի մեջ վերաճել է այսպես. Մի՛ գողանար զինչս մարդկանց, զի մի գուցէ աստ մահու մեռանիցիս և անդ յանշէջ հուրն այրիցիս (Fb 46)։

Մի այլ օրինակ, $A_1$-ում 12-րդ խրատն այսպես է. Որդեակ, թէ տեսանիցես զթշնամին քո գլորեալ, մի՛ ծաղր առներ զնա, զի թէ կանգնի, հատուցանէ քեզ:

Հատուցանէ քեզ անորոշ է, և դա թույլ է տալիս տարբեր մեկնություններ.

*այստեղ այդպես չէ, որովհետև հետագա տարբերակներում նույն ձևերը տեղի են տվել։*

*Համադրենք հնագույն և հետագա բնագրերից մի քանի օրինակ.*

| $A_{1,6}$ | $C, D_1$ |
|---|---|
| *Որդեակ, ընդ* **անէրկեղի** *ի ճանապարհ մի երթիցես (*$A_1$ *գնար* **փխ.** *երթիցես)։* | *Որդեակ, ընդ* **անէրկիւղի** (D **անէրկիւղն**) *ի ճանապարհ մի երթար։* |
| $A_2 B_1$ | $C_1$ |
| *Ես՝ Խիկար, դպիր Սենեքարիմայ արքայի* **Ասորեստանեայց** *և Նինուեի։* | *Ես՝ Խիկարս, դպրապետ Սենեքերիմայ արքային Նինուէի և* **Ասորեստանի**: |
| $A_2 B_1$ | $C_1$ |
| *Եւ յորժամ* **մեծ գայցես**, *ճակատեսցես զզօրաց իմ։* | *Եւ իբրև* **տեսցես**, *ճակատեսցես ընդդէմ իմ։* |

G

*Եւ յորժամ* **մերձեցայց ես** *առ քեզ, կարգեսցես ճակատեսցես։*

*և այլն։ Առանձնապես հետաքրքիր է վերջին օրինակը։ «Շատ անգամ հետին հայերենը գործ է ածում մի բայ, որի տեղ մեսրոպյանը մի ամբողջ ասացվածք ունի, ինչպես՝ պատասխանի տալ կամ առնել՝ փխ. պատասխանել, աղօթս առնել, աղօթս մատուցանել՝ փխ. աղօթել, զհետ երթալ՝ փխ. հետևել, երկիր պագանել, երկրպագութիւն առնուլ փխ. երկրպագել»*[26]*։*

*Այդպես է և* **մեծ գայցես**, *որը կարելի է արտահայտել մեկ բառով՝ մերձեսցես։ G բնագրում արդեն այդ ձևը օտարոտի է և գրիչը պահպանելով արմատը իմաստափոխել է՝* **մերձեցայց ես** *փխ.* **մեծ գայցես**: *Թվում է, թե ենթարկել է յուրահատուկ ստուգաբանության և ուղղել «սխալը»։ Ինչպես հայտնի է G-ն A*$_1$*-ից իր գրչությամբ միայն քառորդ դարով է ավելի ուշ։ Նշանակում է, որ այդ ձևը նախնական է, պահպանվել է A խմբում և փոփոխություն կրել G-ի մեջ, իսկ C-ն ուղղակի տվել է այլ ընթերցում՝* **տեսցես** *դարձյալ հրաժարվելով* **մեծ գայցես** *հնագույն ձևից։*

*Բայց նախնական շատ բառաձևեր և արտահայտություններ պահպանվել են, կամ հարատևել հետագա օրինակներում, նույնիսկ E խմբի մեջ, որը հասկանալի է։*

26 **Հ. Աճառյան,** *Հայոց լեզվի պատմություն, Բ մաս, էջ 88։*

*Այդպիսով այդ ձևերը ոչ թե միջամտվել են, այլ նախորդել։*

*Բայց, այնուամենայնիվ, ինչո՞ւ մինչև 11-րդ դարը խիկարի անվան ոչ մի հիշատակություն չկա, իսկ 11-րդ դարից հետո հիշվում է միայն բնագրից անջատ։*

*Ինչպես հայտնի է քրիստոնեական միջնադարում իմաստության միակ ակունքը Սուրբ գիրքն է, որը ընդունվում է իբրև բացարձակ հեղինակություն։ Սուրբ գրքից դուրս այլ իմաստունների անուններ հիշելը թերևս այնքան էլ պատշաճ չէր.* Ըստ յողուածոյ առասպելաբանութեանն, ոչինչ ընդ վայր ասացեալ է բան իմաստնոյն, որպէս և ասաց ոմն ի ճնումն, Քանզի ասաց ոմն յիմաստնոց, եւ այլ ոմն թէ *արտահայտությունների տակ խիկարն է պահված, Հերմեսը, թե մի այլ ոք, միևնույն է, անունը չի տրվում, որովհետև Սուրբ գրքի կամ քրիստոնեական եկեղեցու կողմից ճանաչված որևէ հեղինակություն չէ։*

*Դա շատ ավելի պարզ է վկայում մի բնորոշ օրինակ։ Թովմա Արծրունին գրում է. «Որպէս և Դաւիթ ասէ՝ Պատրաստեցայ եւ ոչ խռովեցայ. եւ այլ ոմն յարտաքին իմաստնոց ասէ. Ընդ աներկիւղի ի ճանապարհ մի երթայցես։ Այլ ճշմարտագոյնք են Սողոմոնեանքն, զի ասէ. Վայ միումն, յորժամ գլորիցէ, ո՞ յարուցանիցէ զնա»[27]։*

*Արծրունին միաժամանակ վկայաբերում է երեք հեղինակի.* Դավիթ, այլ ոմն, Սողոմոն: *Առաջին և երրորդ հեղինակների անունը նա տալիս է ազատորեն, որովհետև գալիս են Սուրբ գրքից, բայց երկրորդը մնում է* այլ ոմն, *որովհետև արտաքին իմաստուն է («այլ ոմն յարտաքին իմաստնոց»), բայց հենց այդ* այլ ոմնը *խիկարն է, որից Արծրունին քաղել է բառացի։* Որդեակ, ընդ աներկիւղն ի ճանապարհ մի գնար *(A₆ երթիցես փխ. գնար)* և ընդ անզգամին հաց մի ուտեր,—*հուշում է 11-րդ խրատը։*

*Այդպիսով հայ մատենագիրները ծանոթ են եղել խիկարին, բայց խուսափել են նրա անունը տալուց իբրև արտաքին իմաստուն։ Նա մեծ հեղինակություն է վայելել և լայն տարածում գտել բանավոր ճանապարհով, մինչև որ դարել է հասարակ անուն և հոմանիշվել իմաստուն բառին, ապա մտել մատենագրություն («խելքն ծով է ու խիկար») բուն աղբյուրից, գրավոր զրույցից անկախ։*

*Ահա թե ինչու հայ մատենագրության մեջ խիկարի անունը հիշվում է շատ ավելի ուշ, 11-րդ դարում և քաղված է գեղջուկ բերանից։*

---

[27] *«Թովմայի վրդ. Արծրունւոյ Պատմութիւն տանն Արծրունեաց», Պետերբուրգ, 1887, դպր. Գ, գլ. Ի, էջ 228։*

*Այսպես, բնագրի լեզուն ինչպես և մատենագրական տեղեկությունները մեզ թույլ են տալիս ուղղակի պնդելու, որ զրույցի թարգմանությունը պետք է փնտրել 5-րդ դարի սահմաններից ոչ հեռու։*

*Այժմ տեսնենք, թե ինչ աղբյուրից է ծագել այն։*

### Բ. ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅԱՆ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐԸ

*Հարրիսը փորձում է ճշտել ասորերեն, հունարեն և հայերեն բնագրերի առնչությունները.*

*«Հայերեն բնագրի մասին,—գրում է նա,—պարոն Կոնիբերը հաղորդում է, որ քննած զրույցի հնագույն ձեռերի մեջ հայերենը ասորերենի հետ մեծ համաձայնություն ունի, բայց նկատվում են նաև հունարենի ազդեցության որոշ նշաններ»[28]։*

*Հետևելով Հարրիսին, Տաշյանը գտնում է, որ հայ խմբագրության հիմքում կարող են ընկած լինել միայն ասորերենը և հունարենը, որովհետև «մյուսներն անոնցմե առաջ եկած են», բայց որովհետև հույն բնագիրը կորած է, իսկ նրանից ածանցված սլավոներենը համեմատության եզրեր չունի հայերենի հետ, ապա «եթե չենք ուզեր բոլորովին տարբեր հույն բնագիր մը ենթադրել, որ կորսված ըլլա, կը մնա միայն ասորականը»[29]։*

*Մի այլ տեղ նա արտահայտվում է բավական որոշակի. «Հայերենը թեև անկախ օրինակ մը կը ներկայացնե, համենայն դեպս թարգմանություն է հավանորեն կորսված ասորի օրինակի մը»[30]։*

*Բայց նա պարզ ենթադրությունից այն կողմ չի անցնում։*

*«Ապագային թողուլ կըստիպվինք նույնիսկ այն էական խնդիրը, թե ինչ բնագրե թարգմանված էր նախնական հայերենը»,—վերջապես գրում է Տաշյանը[31]։*

*Նյոլդեքեն նույնպես հայերենի թարգմանության սկզբնաղբյուրի մասին իր դիտողությունները հենում է Հարրիսի և Կոնիբերի վրա։ Նա ցավում է, որ կարող է օգտվել միայն անգլերեն թարգմանությունից։*

*«Հայերենը,— գրում է նա,— անկասկած ունի ուղղակի ասորական սկզբնաղբյուր։ Այն նորամուծություններով բավական հե-*

---

28 „The Story of Ahikar", էջ LXXXI:

29 *«Մատեն. մանր ուսումն.», մասն Բ, էջ 137։*

30 *Նույն տեղում, էջ 109։*

31 *Նույն տեղում, էջ 136—137։*

ռացել է իր նախօրինակից և միաժամանակ պահպանել նախնականին վերաբերող որոշ գծեր, որոնք ջնջվել են ասորերենում»[32]։

Ասորական թարգմանություն են ընդունում և ուրիշ բանասերներ[33]։

Ցեթթերն արտահայտում է այլ կարծիք։ Նա սկզբում չի ժխտում, որ հայերենը կարող է թարգմանված լինել ասորերենից, բայց հետո տեսնելով բնագրի մեջ որոշ արաբաբանություն, ենթադրում է, որ դա պետք է տեղի ունենար 10-րդ դարից հետո, 11—12-րդ դարերում և ընդունում է արաբական սկզբնաղբյուր։

Վաղ շրջանի հայ մատենագրության մեջ Խիկարի հետքերը Ցեթթերը գտնում է, որ կարող էին ուղղակի նրանից չգալ։

Այսպես. ասորական, արաբական թե՞ հունական։

Արաբերենի վարկածը թույլ է։ Ցեթթերը իր եզրակացությունը հենում է անունների տառադարձության (Խիկար, Աբուսմաք), ինչպես նաև՝ բնագիր սպրդած արաբական մի բառի (նայիպ) վրա։ Բայց դա որևէ բան չի կարող ասել։

Հարրիսը, բերելով Ախիկարի հայկական հորջորջումը, նկատում է, որ այն «բացարձակապես չի համաձայնվում նշված որևէ ձևի, ոչ էլ՝ հայկական Տովբիթում տառադարձված ’Αχιάχαρος-ի հետ»[34], իսկ Ցեթթերը ծագեցնում է ուղղակի արաբերենից։ Բայց դա նախասկզբնական Ախիկարն է ա ձայնավորի անկումով։ Այն կարող էր տեղի ունենալ հենց ասորական սկզբնաղբյուրում, եթե այդպիսին ընդունենք հայերենի համար։ Ասորական $S_1$, $S_2$, $S_3$ և Cr ձեռագրերը տալիս են Ախիկար ձևը, իսկ $S_4$-ը՝ (Զախաուի № 162) Խիկար։ Ուրեմն դա հնարավոր է արաբերենից բոլորովին անկախ։ Հենց այդպես էլ կարծում է Ն. Դուրնովոն. «Արդեն արաբական, հայկական, սլավոնական խմբագրությունների ասորական նախօրինակում այն (Խիկարի անունը — Ա. Մ.) եղել է Higar, որը վկայվում է մի քանի ասորական ընդօրինակություններով»[35]։ Բայց և կարող էր վերաձևվել բուն հայերենում[36]։

Խիկարի ընկերոջ անունը նույնպես դժվար է արտածել արա-

---

[32] Untersuchungen zum Achigar—Roman von Th. Nöldeke, Berlin, 1913, էջ 58—59։

[33] *Տե՛ս F. Nau*, Histoire et sagesse d'Ahikar l'Assyrien, Paris. 1909, էջ 93, 116։

[34] „The Story of Ahikar", էջ XXVII։

[35] *Николай Дурново*, Материалы и исследования по старинной литературе, I, К истории повести сб Акире, М., 1915, էջ 73, տե՛ս նաև՝ *А. Грагорьев*, Повесть об Акире Премудром, էջ 311։

[36] Չնայած հայերենի մեջ բառասկզբի ձայնավորի պահպանումը բնական է, նույնիսկ փոխառությունների դեպքում այն վերանում է, ինչպես պարսից Նայիպը

բերենից։ Արաբերենում հնչում է Ibn Samikh, ասորերենում Yabusemakh, ինչպես նաև՝ Nabusemakh (S₃)։ Վերջին ձևը ճիշտ է և նախնական, վկայվում է պապիրուսներով։ Հայերենում Աբուսմաք ավելի մոտ է արաբերենին և շատ չի հեռանում ասորական երկրորդային ընթերցումներից, բայց մի դեպքում (Ձեռ. № 3081), որ անծանոթ է Ցեթթերին, համերաշխ է նախասկզբնականի հետ՝ Նաբուսեմաք: Դրանով արդեն ամեն ինչ պարզ է։ Աբուսմաք պետք է դիտել հետագա շեղում, որ ընդհանրացել է, թերևս, արաբերենի ազդեցությամբ՝ նաբու անծանոթ սկիզբը գրիչների կողմից փոխարինվելով աբու ձևով (հմմտ. Աբու Բեքր, Աբու Մահարի, Աբու Սամիք)։

Վերջապես զրույցի մեջ նայիպ բառի առկայությունը դարձյալ որևէ հիմք չի տալիս[37]։ Այն գտնում ենք միայն Կոնիբերի հրատարակության մեջ (նույնն է C-ի հետ), որ եղել է Ցեթթերի ձեռքի տակ։ Արքան վրդովված Խիկարի կարծեցյալ դավաճանությունից, Աբուսմաքին հրամայում է պատժել նրան.

«Եւ արքայն դարձուց զերեսս իւր յինէն և ասէ ցԱբուսմաք նայիպին իւրոյ, թէ տար սպանանեա զանօրէն Խիկարդ և հեռացոյ զգլուխ դորա իբրև կանգունս Ճ»։

Մյուս տարբերակներում այսպես է. AB «Խօսեցաւ արքայն ցԱբուսմաք ընկերն իմ և ասէ. Տար սպան զԽիկարդ և հեռացո զգլուխ դորա ի դմանէ իբրև կանգունս Ճ»։

D «Եւ արքայն դարձոյց զերեսս իւր յինէն և ասաց ցԱբուսմաք վազիրն իւր, թէ տար սպանեա զանօրէն Խիկարդ»։

G «Յայնժամ արքայ դարձուց զեր[ե]սս իւրոյ յինէն և ասէ ցԱբուսմակ ընկեր իմ. Տար [սպ]ան զԽիկար և հեռացո զգլուխ իւր ի նմանէ իբրև կանգունս Ճ»։

---

դարձել է Անանիա, բայց և նույն հայերենում որոշ բառբառներ միտվում են բառասկզբի ձայնավորից հրաժարման։ Ճամշադինում ավելուկին ասում են վիլուկ, անալիին՝ լանի, նախ՝ դրափոխելով բաղաձայնները՝ անալի-ալանի, իսկ ապա՝ կորցնելով բառասկզբի ձայնավորը՝ լանի: Դա ցույց է տալիս, որ սղումը կատարվել է ավելի ուշ։

Փոփոխությունը կարող էր լինել նաև Խեկ, Հայկ համապատեղության հարազատ ձևի առնմանությամբ, որ վկայվում է Խեկար, Հիկար (Հայկար) ձևերով։

[37] Ցեթթերը, հենվելով այդ բառի վրա, ավելի մեծ եզրակացություններ է հանում։ Նա գտնում է, որ նայիպ եկել է արաբերենից. իսկ այժմյան արաբական բնագրում այն չկա, այլ կա Sayyaf։ Ասորերենը բոլորովին չունի, ուստի արաբերենը եկել է անմիջապես եբրայերենից, որտեղ nasib է, որը կարող էր տալ najip ձևը։

Ֆ. Նաու Ցեթթերի հետ համաձայն չէ, գտնելով որ բառը կարող էր նախօրինակի մեջ չլինել, բայց մուծվել հետագայում (տե՛ս F. Nau, Histoire, էջ 80)։

E «Եւ աղաչեցի զԹագաւորն, Թէ տուր զիս ի յԱնբուսմաք ($E_{4,5}$ յԱբուսմակ) զօրապետն, որ տանի զիս յիմ դուռն գլխատէ և զգլուխն իմ Ճ կանկուն ի մարմնոյս հեռի Թաղէ»։

Տարբերակներն ունեն չորս ընԹերցում՝ նայիպին իւրոյ (C) վազիրն իւր (D), ընկերն իմ (A,B,G), զօրապետն (E)։

Ընկերն իմ տալիս են այն տարբերակները, որոնք ունեն հնագույն ձեռագրեր ($A_1$,G)։

Աբուսմաքն այլուր ևս հանդես է գալիս իբրև Խիկարի ընկերը. Եւ ասեմ զԱբուսմաք ընկերն իմ (A,B,G), եկն Աբուսմաք ընկերն իմ ($B_{7,8,10}$), Պարգևեա Աբուսմաքայ ընկերի իմոյ և կենսատուի (A,B), Յայնժամ Աբուսմաք ընկերն իմ, շնորհեա զայն Աբուսմաքայ ընկերին իմոյ (D)։

Այդպես է նույնիսկ C բնագրի մեջ։ Յայնժամ Աբուսմաք ընկերն իմ և Աբեստան կինն իմ, իբրև լուաւ զայս Աբուսմաքն, ընկեր իմ, Աբուսմաքայ ընկերին իմոյ և այլն։

Այս ընԹերցումը հաստատվում է ասորական խմբագրությամբ և էլեֆանտինյան պապիրուսներով։ Որ բնագրային է, պետք չէ կասկածել։

Տարընթերցվածներ տալիս են բացառապես այնտեղ, երբ առաջին անգամ է հիշվում Նաբուսեմաքի անունը։ Թագավորը դիմում է նրան իբրև պաշտոնյա և ոչ թե իբրև Խիկարի ընկեր։ Հենց դա էլ նկատվել է հետագա գրիչների և խմբագիրների կողմից, որոնք փորձել են ճշտել «սխալը»։ Այդտեղից ընթերցումների բազմազանություն, որ տարբեր ենթադրությունների բնույթ ունի։ Մի դեպքում նա պետք է, որ նայիպ լիներ կամ վեզիր (նայիպ և վեզիր ձևերն առկա են միևնույն կապակցության մեջ։ Գրիչը ձեռքի տակ ունեցել է ձեռագիր, որտեղ եղել է նայիպ, կամ ընդհակառակը և ինքը փոխել վեզիր, իր համար ավելի ընտանի ձևով), մի այլ դեպքում, արաբական խմբագրության մեջ՝ դահճապետ, քանի որ նա մահապատիժ է իրականացնում (նկատենք, որ այն չի համապատասխանում հայերենին), իսկ E տարբերակի շատ ավելի հետագա ընթերցումը՝ զորապետ, հենված է թյուրըմբռնման վրա։ Աբուսմաքը զորքով է տանում Խիկարին գլխատելու։ Զորք բառը, որ գրաբարում նշանակում է նաև մարդկանց խումբ կամ բազմություն, չի հասկացվել, այլ ընդունվել է պարզապես իր սովորական իմաստով։ Եթե նա գնում է զորքով, բնականաբար պետք է որ զորապետ լիներ։

Վերջապես մի այլ հանգամանք։ Ինչպես տեսանք հայ մատե-

նագրությանը Խիկարն անձնագրվել է անժխտելիորեն ավելի վաղ, քան արաբական պարսը իր փչակից դուրս կգար։ Նայիպ կամ վեզիր բառերն ուղղակի երկրորդային են, հետագա ազդեցության արդյունք[38], մուտք են գործել երբ արաբներն արդեն դադարել էին իրենց նիզերով մեր բերդերի դարպասները բախել, բայց հետո շատ բառեր նրանց արձակած նետերի պես եկան մխրճվեցին մեր լեզվի մեջ։

Սլավոներենով միջնորդված բնագիրը, որ ենթադրում է հունական սկզբնաղբյուր, նույնպես չէր կարող հայերենի թարգմանության հիմք լինել, որովհետև այդպիսի բնագիր չի եղել, իսկ սլավոներենն ունի բոլորովին այլ աղբյուր։ Մենք առիթ կունենանք այդ հարցին անդրադառնալու։

Մնում է միայն ասորերենը։

Ասորական խմբագրությունը վաղուց հետե դիտում էին իբրև հայերենի սկզբնաղբյուր, բայց որովհետև Տաշյանը և այլ բանասերներ ձեռքի տակ չունեին հայերեն անխառն կամ ավելի մաքուր բնագիր, չէին փորձում վճռաբար պնդել այդ վարկածի վրա։

Այժմ մենք ունենք Խիկարի հայկական խմբագրությունը հնագույն տարբերակներով, և կարելի է ավելի հաստատ խոսք ասել։

Հայ բնագրի ասորական թարգմանությունը հուշում են այն բացահայտ առնչություններն ու նմանությունները, որ գոյություն ունեն ասորական բնագրերի և մեր խմբագրության հնագույն և հաճախ էլ հետագա օրինակների միջև։

Բերենք մի քանի համեմատություններ։

Կոնիբերի բնագրում ($C_4$) $S_2$-ի 8-րդին համընկնող խրատը. «ցածոյ զաչս քո...», շարքից հեռու է ընկած և բոլորովին այլ տեսք ունի.

«Որդեակ, ցածոյ զաչս քո և կակղացոյ զբարբառ բերանոյ քո և նայեաց ընդ ակամբ քո, զի մի երևեսցիս մարդկան անզգամ, զի եթէ աղաղակաւ տաճար շինէր, էշն ամէն աւր է դարպաս շինէր և չարտախ» ($C_4$—45)։

Այստեղ ոչ միայն գռեհկացած է լեզուն և հեռու գրաբարից, այլև խրատը թերի է։ Բացակայում է ուղտի մասին եղած հատվա-

---

[38] Այդ բառը շատ անգամ գործածված է մեր միջնադարյան զրույցներում և այլուր (տե՛ս «Էջեր հայ միջնադարյան գեղարվեստական արձակից», խմբագրությամբ և առաջաբանով՝ Կ. Մելիք-Օհանջանյանի, Երևան, 1957, էջ 59, 60)։

ծր։ Տպագրերի մեջ ինչ-որ մի հետք է մնացել. «Թէ ի սաստիկ զօրութենէ եգին վարի լուծն, նա (լուն)[39] ի պարանոցէն ոչ ելանէր»։

Տաշյանը նկատում է, որ լուն «անհնար» ընթերցումի փոխարեն պետք է լիներ ուղտու բառը, ասորականին համապատասխան։ $A_1$ և G բնագրերով այդ ենթադրությունը ճշտվում է. «Որդեակ, ցածո զաչս քո և կակղացո զբարբառ քո և նայեաց ընդ ակամբ քո և մի երևեսցիս մարդկան անզգամ, զի թէ աղաղակաւ տուն շինէր, էշն յաւուրս տասն ապարանս շինէր և եթէ ի սաստիկ զօրութենէ եգինքըն վարէին, լուծ ի յուղտո պարանոցէ ոչ պակասէր երբեք» ($A_1$–4)։

Այդպիսի ընթերցում տալիս են և B,D տարբերակները (նույնպես անհայտ Տաշյանին), որոնց մեջ սակայն խրատը երկատված է, իսկ ասորականում և մեր նախընտրելի բնագրերում՝ միասնական։ Երկու հատվածները տրամաբանորեն միևնույն միտքն են արտահայտում և միասնական պետք է լինեին նախնականի մեջ։

Ութերորդ խրատը. «Որդեակ, հեղցես զգինի յարդարոց և մի ըմբեսցես զնայ ընդ անօրէնս և ընդ ան[զգ]ամս...» Կոնիբերի բնագրում ($C_4$), ինչպես նաև $A_1$-ում, առհասարակ բոլոր օրինակներում յարդարոց ընթերցումը չկա և հնչում է այլ կերպ. «Հեղցես զգինի քո և մի ըմբեսցես ընդ անօրէնս և ընդ անզգամս...» ($A_1$—6)։

Այստեղ կա իմաստային նրբերանգ։ Ըստ երկրորդ ընթերցվածի արտահայտվում է այն միտքը, թե ավելի լավ է թափել գինին, քան թե խմել անզգամների և անօրենների հետ, իսկ ըստ G օրինակի՝ ավելի լավ է թափել գինին արդարների վրա, քան թե խմել անզգամների հետ։

Արդարներ պետք է հասկանալ մեռած մարդկանց, որոնց շիրիմներին ըստ վաղեմի հեթանոսական սովորության գինի էին ձոնում։ Այդ ծիսական ավանդույթը հարատևում է այսօր։ Մեռածի գերեզմանին, կամ հոգեհացը ուտելիս՝ թափում են գինու առաջին բաժակը ի պատիվ նրա։

Եթե երկրորդ ընթերցումը ասորական և հայկական բնագրերի առնչությունը թողնում է չլուծված, ապա G-ն բնագիրն անմիջապես կախման մեջ է դնում ասորականի հետ, ուր որոշակի ասված է. «Որդեակ, լավ է թափես գինին արդարների գերեզմանին, քան թե խմես այն չար մարդկանց հետ»։

Հինգերորդ խրատն հուշում է. «Որդեակ, լաւ է մարդո իմաստնոյ քարինս կրել, քան ընդ առն անմտի և յիմարի ըմպել գինի»

[39] Այս տարընթերցվածը մեր ձեռքի տակ եղած տպագրերում չկա, վերցված է Տաշյանից (տե՛ս «Մատ. մանր. ուսումն.», Բ, էջ 117)։

(A₁—5)։ G-ի մոտ այլ է. «Որդեակ, լաւ է ընդ իմաստնոյ քարինս կրել, քան ընդ յիմարի և անզգամի խմել գինի» (G—7)։

Առաջին դեպքում՝ իմաստուն մարդը լավ է քար կրի, քան գինի խմի անմտի հետ, երկրորդ դեպքում՝ իմաստունի հետ քար կրելն ավելի լավ է, քան հիմարի հետ գինի խմելը։

Այդ ընթերցումը պահպանել են նաև B,C,E տարբերակները և $D_{1,3}$-ը, իսկ A խմբի մեջ՝ $A_5$-ը իբրև վերապրուկ։ E տարբերակը, բնականաբար և տպագրերը (Fab), որոնք ծագել են E-ից, տալիս են այլ շեղում՝ ոչ թե խմել գինի, այլ ուտել և ըմպել։

Ասորական բնագրում խրատը բառ առ բառ համընկնում է G-ին։ Այսպիսով, որքան գնում ենք դեպի նախնականը, այնքան համապատասխանությունններն ավելի են հայկականի և ասորականի միջև։

Նկատելի է և մի ուրիշ հանգամանք։ Շատ դեպքերում տպագրերը (Fab), կամ E տարբերակը պահպանում են ավելի ճիշտ ընթերցված, քան թեկուզ Կոնիբերի բնագիրը, և դա մատնում է E-ի ազգակցությունը G-ի հետ։ Այսպես.

«Որդեակ, լաւ է կոյր աչօք, քան կոյր մտօք, զի կուրն արագ ուսանի զերթևեկ ճանապարհին, իսկ կուրն մտօք թողու զղորդ ճանապար[հ] և երթայ ընդ կամայկորն» (G—63)։ Կոնիբերի բնագիրը ($C_4$) վերջում շեղվում է՝ բառ կամս իւր, որն իմաստ չունի, իսկ G-ի ընթերցվածը և՛ ճիշտ է և՛ համընկնում է ասորականին։ $A_1$-ը (A խումբը), մյուս տարբերակները և տպագրերը պահպանել են ճիշտ ձևը։

Այնուհետև, G-ում առկա. «Որդեակ, ի պարտեզ թագաւորաց մի մտանէր և (ընդ) կնոջ դատաւորաց մի խօսիր» խրատը բացակայում է $A_1$ (A)-ի, ինչպես նաև մյուս տարբերակների և Կոնիբերի մոտ, բայց պահպանվել է տպագրերում (Fab) հետևյալ տեսքով. «Որդեակ, ի յապարանս թագաւորաց մի մտանիր և ընդ կնոջ դատաւորի մի խօսիր»։ Այս խրատի թարգմանական շրջանից գալն աներկբա է, որովհետև ունի և ասորական բնագիրը. «Որդյակ, իշխանների պարտեզները մի մտիր և մի մերձեցիր իշխանների դստրերին»։ Ճիշտ է, խրատը կա տպագրերում, սակայն ինչպես տեսնում ենք, այստեղ ևս հնագույնն ավելի մոտ է ասորականին և ենթադրվում է նրանից սերված։

Բերենք այլ կարգի մի բնորոշ օրինակ։

Կոնիբերի բնագրում պատժիչ խրատներից մեկն այսպես է. «Ոչիլ հացի եկեր զմարմին թագաւորի, բայց ինքն ումեք ոչ էր

ազուտ և ոչ պիտանի, այլ անպէտ և վատ»։ Ուղղակի համանալի չէ։

Ասորերենում գտնում ենք հազիվ հիշեցնող մի բան. «Որպէս ստիճ ցորենոյ, որ ուտէ զշտեմարանս թագաւորաց» և այլն։

Այս երկու խրատների միջև ինչ-որ նմանություն կա, բայց որևէ առնչություն չի կարելի տեսնել։ Հայերենում հացի ոջիլն ուտում է թագավորի մարմինը, որը ոչինչ չասող անմիտ բան է, իսկ ասորերենում ցորենի ստիճը փչացնում է թագավորի շտեմարանները։

Կոնիբերի բնագրի աղավաղումն այնքան մեծ է, որ որևէ հիմք չի տալիս ենթադրելու, թե հայերենը գալիս է ասորական աղբյուրից, սակայն նույն խրատը մեր A₁-ում հնչում է այլ կերպ.

«Որդեակ, եղեր ինձ որպէս ոջիլ հացի, որ եկեր զշտեմարանս թագաւորաց և ինքն ումեք ոչ է օգուտ և պիտանի»։

Այստեղ արդեն երևան է գալիս բնագրի լիակատար առնչությունն ասորականի հետ։ Դա միաժամանակ արտահայտիչ օրինակ է, թե որքան կարող է աղավաղվել բնագիրն, անցնելով գրչությունից գրչություն։

Այսպիսով, բոլոր այն դեպքերում, երբ ենթադրվում է ճիշտ ընթերցված, լինի դա հնագույն ձեռագիր օրինակների (A₁,G), որևէ այլ աղբյուրի, Կոնիբերի բնագրի թե տպագրերի մեջ, գրեթե անպայման համապատասխան է ասորականի հետ։

Կարելի է դեռ շատ այդպիսի զուգահեռներ բերել, բայց մեզ թվում է այսքանն էլ բավական է համոզվելու, որ հայ բնագիրն իրենից ներկայացնում է ասորականի թարգմանություն։

Բայց ինչ աղբյուրից, դժվար է որոշակի պատասխան տալ, որովհետև չկա, կամ դեռ չի կազմված ասորական խմբագրության համեմատական օրինակ։ Հայտնի չէ, թե ձեռագիր աղբյուրները ինչ բնագրային առնչություն ունեն միմյանց հետ։ Նրանք մանում են պարզապես մի խմբի մեջ, թե կազմում տարբերակներ։ Հարրիսը առաջնություն է տալիս S₂ օրինակին, իսկ Նոն՝ S₃։ Հայ խմբագրությունը, սակայն, ավելի հակամետ է S₂-ին՝ շարքերի հաջորդականությամբ և ընթերցումներով։

Բերենք ասորական S₂, S₃ և հայկական A₁, G բնագրերի համադրական աղյուսակը։ Որպես հիմք ընդունում ենք ասորական S₂-ը։

| S₂ | S₃ | A₁ | G |
|---|---|---|---|
| 1 | 1 | 1 | 1 |
| 2 | 2 | | 2 |
| 3 | 3 | 1 | 3 |
| 4 | 7 | 2 | 4 |
| 5 | 8 | 35 | 31 |
| 6 | 9 | 3 | 5 |
| 7 | 10 | 4 | 6 |
| 8 | 11 | 5 | 7 |
| 9 | 12/13 | 6 | 8 |
| 10 | 14 | 7 | |
| 11 | 15 | 7 | 9 |
| 12 | 18 | 9 | |
| 13 | 21 | 10 | 51 |
| 14 | 22 | | 18 |
| 15 | 23 | 11 | |
| 16 | 24 | 12 | |
| 17 | 25 | 14 | |
| 18 | 26 | 15 | 95 |
| 19 | 27 | 16 | |
| 20 | 28 | 17 | |
| 21 | 31 | 18 | |
| 22 | 32 | 19 | |
| 23 | 33/34 | 20 | |
| 24 | 35 | 23 | |
| 25 | 36 | 24 | 77 |
| 26 | 37 | 26 | 102 |
| 27 | 38 | 27 | |
| 28 | 39a | 28 | |
| 29 | 39b | 28 | |
| 30 | 41a | 28 | |
| 31 | 41b | | |
| 32 | 42 | 38 | 34 |
| 33 | 43 | 40 | 35 |
| 34 | 44 | 97 | 86 |
| 35 | 45 | | |
| 36 | 46 | 46 | 39 |
| 37 | 47 | 47 | 40 |
| 38 | 48 | 50 | 42 |
| 39 | 49 | 51 | |
| 40 | 50 | 52 | 53 |
| 41 | 52 | 53 | 54 |
| 42 | 53 | 54 | 55 |
| 43 | 54 | 83 | 45/46 |
| 44 | 56 | 85b | 49 |
| 45 | 57 | | 50 |
| 46 | 58 | 65 | 54 |
| 47 | 61 | 42dF | 63 |
| 48 | 63/64 | 42 | 45/66 |
| 49 | 65/66 | 67 | 67 |
| 50 | 67/68 | 42b/68 | 68/69,70 |
| 51 | 69 | 73 | |
| 52 | 70 | 72a | |
| 53 | 71 | | 97 |
| 54 | 72a | 74 | |
| 55 | 73/74 | 77 | |
| 56 | 75 | | 78 |
| 57 | 76 | | |
| 58 | 77 | 44 | |
| 59 | 78a | 91 | |
| 60 | 78b | 93 | 80 |
| 61 | 79 | 94 | 72 |
| 62 | 80 | 95 | |
| 63 | 81 | | 81 |
| 64 | 82 | 55 | 82 |
| 65 | 83 | | 83 |
| 66 | 86 | 34 | 30 |
| 67 | 87 | | 84 |
| 68 | 88 | | |
| 69 | 89 | | |
| 70 | 90 | | |
| 71 | 91 | | |
| 72 | 92 | | |
| 73 | 93 | 96 | 85 |
| 74 | 94 | 37 | 17 |
| | 4 | | |
| | 5 | 42q | 66 |
| | 6 | | |
| | 16 | 89 | |
| | 17 | | |
| | 19 | | |
| | 20 | | |
| | 29 | | |
| | 30 | | |
| | 40 | 28d | |
| | 51 | | |
| | 55 | 85a | 48 |
| | 59 | | |
| | 60 | 62 | 52 |
| | 62 | 72b | |
| | 84 | | |
| | 85 | | |
| | | 8 | |
| | | 13 | |
| | | 22 | |
| | | 25 | |
| | | 29 | |
| | | 30 | |

| $S_2$ | $S_3$ | $A_1$ | G |
|---|---|---|---|
| | | 31 | |
| | | 32 | |
| | | 33 | |
| | | 36 | |
| | | 39 | |
| | | 41 | |
| | | 43 | |
| | | 45 | |
| | | 48 | |
| | | 49 | |
| | | 56 | |
| | | 57 | |
| | | 58 | |
| | | 59 | |
| | | 60 | |
| | | 61 | |
| | | 63 | |
| | | 66 | |
| | | 69 | |
| | | 70 | |
| | | 71 | |
| | | 75 | |
| | | 76 | |
| | | 78 | |
| | | 79 | |
| | | 80 | |
| | | 81 | |
| | | 82 | |

| $S_2$ | $S_3$ | $A_1$ | G |
|---|---|---|---|
| | | 84 | |
| | | 86 | |
| | | 87 | |
| | | 88 | |
| | | 90 | |
| | | 92 | |
| | | 98 | |
| | | 99 | |
| | | 100 | |
| | | 101 | |
| | | 102 | |
| | | 103 | |
| | | 104 | |
| | | 105 | |
| | | 106 | |
| | | 107 | |
| | | 108 | |
| | | 109 | |
| | | 110 | |
| | | 111 | |
| | | 112 | |
| | | 113 | |
| | | 114 | |
| | | 115 | |
| | | 116 | |
| | | 117 | |
| | | 118 | |

*Հայկական G-ի, մինչև 9-րդ խրատը, շարքը գնում է ուղղակի հաջորդականությամբ սարական $S_2$-ի նկատմամբ։ Ընդմիջարկված է միայն 5-րդ խրատը, որը հայերենում ևս կա, բայց հեռու է ընկած ($A_1$—35, G—31), թերևս խախտվել է հայերենը, բայց ամեն դեպքում այդտեղ նկատելի են ինչ-որ օրինաչափության հետքեր, շարքից հեռացել է միաժամանակ և՛ $A_1$-ի և՛ G-ի միևնույն խրատը։ Այնուհետև G-ի շարքն անկանոն է, բացթողումներով և խաթարված։*

*Այդպես չէ $A_1$-ը։ Այն հնարավոր պահպանվածությամբ, հաճախ ավելի քիչ շեղումներով քան $S_3$-ը, համընկնում է $S_2$-ին։*

*Իսկ երկու բնագրերը ($A_1$,G) գրեթե ծածկում են $S_2$-ի շարքը։*

*$S_3$-ի որոշ խրատներ, որոնք հավելյալ են $S_2$-ի նկատմամբ, զուգահեռներ ունեն հայ խմբագրության մեջ։ Այդ նշանակում է, որ $S_3$-ի հավելյալ խրատները բնագրային են $S_2$-ի և $S_3$-ի ընդհանուր օրինակի համար, և հայ խմբագրությունը թարգմանություն է $S_2$-ին նախորդած ավելի լրիվ մի աղբյուրի։*

Ուշագրավ է ոչ միայն այդ, այլև հայկական և $S_2$ բնագրերի մեծ նմանությունը մանրամասների մեջ։

G տարբերակում Խիկարին երիտասարդ ժամանակ հայտնում են, որ ինքը ժառանգ չի ունենալու. «Մինչդեռ ես տղա էի, հրաման եղև ինձ, թէ որդի քեզ չէ հրամայեած յաստուծոյ լինելոյ»։

Այդ ընթերցումը չունեն A,B,C,D հայկական տարբերակները, ինչպես նաև՝ արաբական Սալահանիի և Սմիթի բնագրերը (Sa, Sm), բայց առկա է ասորական $S_1$, $S_2$, $S_3$, $S_4$, Gr և սլավոնական աղբյուրներում, որտեղ ասվում է նրան, թե որդի չի ունենալու, բայց ե՞րբ՝ չկա։ Միայն ասորական $S_2$-ը համապատասխանում է լիովին։ Այլուր նա գուշակությունը լսում է երազի մեջ, իսկ հայկական G և ասորական $S_2$-ում՝ տղա ժամանակ (մինչդեռ ես տղա էի)։

Պետք է ընդունել, որ դա նախնական է, որովհետև թելադրված է հայ հնագույն բնագրով, և հավաստում է $S_2$-ը։

Մի այլ օրինակ։ Արմավենու առակը բնագրերում այսպես է.

$A_1$

Որդեակ, եղեր որպէս զարմաւենին, որ բուսեալ էր յափն գետոյն, և պտուղ նորա ի գետն անկանէր։ Եկն տէր ծառոյն կտրել զնա։ Ասէ արմաւենին. Թող զիս յայսմ ամի և ի միւսում ամին բերից պտուղ։ Ասէ տէրն. Դու ի ժամանակդ չես բերել ինձ պտուղ և այժմ, որ կտրել կամիմ, զիա՞րդ պիտանացիս։

$S_2$

Որդի, դու ինձ եղար այն արմավենու նման, որ կանգնած էր գետի ափին (Nau՝ և ամբողջ պտուղը լցնում էր գետի մեջ, էջ 251) և երբ նրա տերը եկավ կտրելու, ասաց. Թող ինձ այս տարի և ես քեզ կտամ եղջյուր։
Եվ նրա տերը պատասխանեց նրան. Դու ինձ չկարողացար տալ ինչ քոնն է, ինչպես կարող ես տալ ինչ քոնը չէ։

$S_3$

Որդիս, դու ինձ համար եղար ինչպես այն արմավենին, որը գտնվում էր ճանապարհի եզրին և որից երբեք պտուղ չէին քաղել։ Նրա տերը գալիս է և ուզում է կտրել։ Արմավենին ասում է. Ինձ մի տարի ևս թող և ես քեզ քրքումի պտուղ կբերեմ։
Տերն ասում է. Ողորմելի, դու չկարողացար տալ քո պտուղը, ինչպես պետք է կարողանաս ուրիշի պտուղ տալ։

Sa, Sm

Օ, իմ որդի, դու նմանվեցիր այն ծառին (Nau՝ արմավենուն), որը գտնվում էր ջրի ափին, բայց պտուղ չէր տալիս և երբ նրա տերն ուզեց կտրել նրան, նա ասաց. Փոխադրիր ինձ այլ տեղ և եթե պտուղ չտամ՝ նոր կտրիր։ Եվ տերն ասաց նրան. Եթե դու ջրի ափին պտուղ չես տալիս, ապա ինչպես կարող ես պտուղ տալ եթե այլ տեղում լինես։

Տաշյանը և պտուղ նորա ի գետն անկանէր նախադասությունը առնում է փակագծերի մեջ և ծանոթագրում. «Միայն հայերենն

ունի փակագծյալս, զոր ջնջելու է, վասն զի անհարմար է և ամբողջովին իմաստն ալ կխանգարեն»[40]։

Ճիշտ է, որ իմաստը խանգարում է։ Արմավենին պտուղ չի բերում, բայց քիչ հետո ասված է, որ պտուղը ջուրն է լցվում։

Նախադասությունը միայն հայերենը չէ, որ ունի, այլ նաև ասորական S₂-ը, բայց չկա Հարրիսի անգլերեն թարգմանության մեջ, որից օգտվել է Տաշյանը։ Հարրիսը նույնպես մտածել է, որ ջնջելու է և ջնջել է։ Այդ տողերը կան Nau-ի մոտ և ռուսերեն թարգմանությամբ։

Սակայն ամենևին էլ ջնջելու չէ։

Առակը մեր բերած օրինակներում շատ է այլազան։ Ամենուր և պտուղ նորա ի գետն անկանէր ավելորդ է, բայց այն չի սպրդել, այլ եղել է հայերենի և S₂-ի նախամայր բնագրում, այլապես միայն մի տեղ կարտահայտվեր։ Եվ ապա՝ դա հուշում է, որ առակը որքան էլ այժմ տարբերվում է, մի ժամանակ պետք է որ ունենար ընդհանուր գծեր, ուր այդ բառերն ավելորդ չհնչեին։ Այստեղ դարձյալ օգնության է գալիս G բնագիրը.

«Ծառ մի բուսեալ էր յեզր գետոյն, և յորժամ հասանէր պտուղն, թափէր ի գետն և կորնչէր։ Եւ յորժամ մարդն եկեալ պտուղ խնդրէր և ոչ գտանէր։ Բ և Գ տարի զայս արար և ոչ շահեցաւ ի պտղոյն։ [Յե]տոյ կտրեաց զծառն և ընկեց ի ջուրն և ասէ. Այսչափ երախտեացս մինչև հիմա (զինչ ես) արել, որ այլ համբերեմ նա զինչ տի առ[նես]»։

Սա հենց այն կամուրջն է, որ միացնում է A₁ և S₂-ը։ Եւ յորժամ հասանէր պտուղն, թափէր ի գետն և կորնչէր լիակատար իմաստ ունի, իսկ մյուս բոլոր բնագրերում և ասորական S₂-ում դարձել է վերապրուկ։

G-ին շատ ավելի մոտ է նաև ավետարանական անպտուղ թզենու առակը.

«Թզենի մի էր ուրումն տնկեալ յայգւոջ իւրում, եւ եկն խնդրել պտուղ ի նմանէ և ոչ եգիտ։ Ասէ ցայգեգործն. Ահա երեք ամք են յորմէհետէ գամ խնդրել պտուղ ի թզենւոջդ և ոչ գտանեմ, արդ կտրեա զդա. ընդէ՞ր և զերկիրդ խափանէ։ Նա պատասխանի ետ և ասէ. Տէր, թող զդա այս ամ ևս, մինչև շուրջ զդովաւ բրեցից և արկից աղբ։ Թերևս արասցէ պտուղ, ապա թէ ոչ՝ յամէ ևս հատցես զդա» (Ղուկ. ժԳ, 6—10)։

Այստեղ խոսք չկա պտուղը գետը թափելու մասին, բայց շա-

40 «Մատ. մանր. ուսումն.», էջ 96։

րունակության մեջ ունի զուգահեռ ընթերցում։ Երկու բնագրերում էլ տերը համբերում է երեք տարի և ապա՝ որոշում կտրել։ Բացի այդ, տերը գալիս է և պտուղ չի գտնում։ Արտահայտությունները համընկնում են նույնիսկ գրեթե բառացի՝ «եւ յորժամ մարդն եկեալ պտուղ խնդրէր և ոչ գտանէր» (G), «եւ եկն խնդրել պտուղ ի նմանէ և ոչ եգիտ» (Ղուկ.), իսկ մյուս օրինակներում տերը գալիս է, որ կտրի։ Այնուհետև թզենու առակը ի՞նչ-որ կերպ համարեցված է ավետարանական բնագրի ոգուն, բայց ոչ մի բանով նման չէ կամ չի հիշեցնում $S_2$, $S_3$-ի և արաբական ընթերցումներին։

Ասորական $S_2$-ում պահպանված վերապրուկը G-ի մեջ իր տեղումն է։ Նշանակում է նախնական ձևն ավելի պահել է G-ն, և հենց նույն G-ն ունի բնորոշ ընթերցում, որ զուգահեռ է Ղուկասի թզենու առակին։ Ուրեմն դրանց միջև պետք է տեսնել անմիջական ազգակցություն, որպես հետագա շեղումներ մեկ մայր օրինակից։ Թզենու առակը մտնում է այդ շարքի մեջ։

Պետք չէ ենթադրել, որ G-ի խմբագիրը, կամ գրիչը ենթարկվել է Սուրբ գրքի ազդեցությանը և առակը վերաձևել նրա համաձայն։ Այդ դեպքում կցնցվեին ուրիշ տարբերություններ ևս։ Մեկում ծառ է, մյուսում՝ թզենի (Ղուկ.), թզենին տնկված է այգու մեջ, իսկ ծառը (կամ արմավենին) գետի ափին և վերջապես՝ Յորժամ հասանէր պտուղն, թափէր ի գետն և կորընչէր նախադասությունը, որ հաստատվում է $S_2$-ով, թզենու առակը չունի, ուր նույնպես կարող էր տեղին հնչել։

Սուրբ գրքում սակայն առակի շեղումները բացատրելի են։ Թզենին տնկված է այգու մեջ, որպեսզի այգեպան ունենա, նոր գործող անձ, որն արտահայտում է զիջման և համբերատարության գաղափարը, Ավետարանին համաձայն։ Այստեղ նկատվում է ինչ-որ գրքային վերամշակում։ Տերը կարող էր անմիջապես հաղորդակցվել ծառի հետ, ինչպես մյուս օրինակներում։ Միջնորդը թուլացնում է առակի ուժեղն։

Սուրբ գրքի աղբյուրը անշուշտ զրույցն է։

Առակի մի ուրիշ ընթերցում ևս միտվում է $S_2$-ին և հեռանում $S_3$-ից։ $S_3$-ի մեջ արմավենին բուսել է ճանապարհի, իսկ հայերենի և $S_2$-ի ընթերցմամբ՝ գետի եզրին և այլն։

Օրինակները կարելի է շարունակել, բայց այսքանն էլ բավարար է։

## 5. ՋՐՈՒՅՑԻ ՀԱՅՐԵՆԻՔԸ

Ասորական $S_2$ և հնագույն պատառիկի ($S_1$), Ջախաուի № 162 ձեռագրի ($S_4$), ինչպես նաև՝ սլավոնական բոլոր բնագրերի միջև կա մի ընդհանրություն. Խիկարը զավակ չունի և դիմում է միակ աստծուն։ Աստված նրան մերժում է և խորհուրդ տալիս որդեգրել Նաթանին։

Մի այլ խումբ. Սալհանիի և Սմիթի արաբական բնագրերը (Sa, Sm), Ջախաուի № 336 ձեռագիրը ($S_3$) և Գրաֆենի օրինակը (Gr) ունեն բոլորովին տարբեր ընթերցում։ Խիկարը նախ դիմում է աստվածներին, որոնք անպատասխան են թողնում նրա աղերսը, ապա միակ և գերագույն աստծուն, որ նախապես կուռքերին (աստվածներին) դիմելու համար պատժում է և երկրորդաբար խորհուրդ տալիս որդեգրել Նաթանին։

Փորձենք քննել այդ ընթերցումները։

Առաջին խումբ. Որդի ունենալու համար Խիկարը դիմում է աստծուն և աստված մերժում է նրան։

Դա քրիստոնեական գրականության տարածված մոտիվ է, բայց նման լուծումն աննախադեպ։ Սրբերի մասին եղած զրույցների, հեքիաթների, վարքերի ու վկայաբանությունների մեջ քրիստոնյա աստվածն ամենաբարին է և չի կարող անտեսել զրկվածի աղոթքն ու աղերսը։

Բերենք մի քանի օրինակ.

«Այր մի էր մեծատուն և իշխան ի քաղաքի մի և ունէր անչափ գանձ, ոսկի և մարգարիտ անգին և պատուական ակունք, որ չկայր յայն աշխարհն քան զնա մեծատուն։ Եւ ինքն ծերացեալ էր և զաւակ ոչ ունէր և հանապազ աղաչէր զաստուած վասն զաւակի։ Եւ ետուր նմա աստուած եւ նմա որդի աննման և գեղեցիկ»[1]:

«Այր մի էր ի քաղաքն Ըստամպօլ, մեծատուն յոյժ և իշխան մեծ և հրամանատու բազում գաւառի. և էր անուն նորա Եփրեմիա-

[1] «Պատմութիւն աղջկան և մանկան և հարցմունք նոցա ընդ միմեանս», «Գիրք պատմութեան որ կոչի Պղնձէ քաղաք և բանք խրատականք և օգտակարք», Կ. Պոլիս, 1792, էջ 135։

*նոս և կնոջն՝ Աննա։ Եւ էր Եփրեմիանոս մեծ սիրելի ի յաչս թագաւորին իւրոյ։ Սոքա էին հասեալ ի մերձ ծերութեան և ոչ ունէին զաւակ ի վերայ երկրի, որ ժառանգէր զինչս նոցա և էին կարի տրտում և անմխիթար վասն ժառանգութեան։ Տիւ և գիշեր հանապազ աղաչէին զաստուած վասն զաւակի։ Եւ յաւուր միում կինն՝ Աննա բազում աղախնեօք և ծառայիւք գնաց ի մեծ յեկեղեցին ի սուրբն Սոփիայ և կայր յաղօթս առ տէր և բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին և ամենայն սրբոցն հայցէր ի Քրիստոսէ ժառանգ բարի։ Եւ յետ աղօթիցն բազում ողորմութիւնս առնէր աղքատաց և կարօտելոց և քահանայիցն ամենեցուն և ելեալ գնայր ի տուն իւր։ Եւ ի գնալն ի ճանապարհին հանդիպեցաւ մին աղքատ խեղճ և ողորմելի և ասաց. Տիկին, տուր ինձ ողորմութիւն ի քո մէկ որդւոյդ արևուն։ Եւ տիկինն հիացեալ ի միտս իւր ասաց թէ. Վայ ինձ, զի ես անժառանգ եմ, և դայ ինձ երանի տայ վասն որդւոյ։ Արտասուեաց և ելաց և հանեալ ետուր նմա ողորմութիւն և չանց գնաց ի տուն իւր։ Եւ ի գիշերին յայնմիկ երեկ ի տեսլեանն մին ծեր և աւետեաց զԱննայ և ասաց.* Կին դու, ահա կատարեցաւ խնդրուածք քո առաջի աստուծոյ»[2]:

*«Էր քահանայ ոմն՝ մեծազգի և մեծատուն, զարգացեալ ամենայն առաքինութեամբ, անուն նորա Ստեփաննոս։ Եւ էր յոյժ պարկեշտ և ամօթխած, աղքատասէր և ողորմած, հիւրընկալ և մարդասէր, առատաձեռն և ամենաբաշխ, քաղցելոց կերակրիչ և մերկացելոց զգեցուցիչ և յայլ ամենայն բարեգործութիւնս ժիր և արի։ Նաև ի պաշտօնս աստուծոյ և ժամակարգութիւնս սրբոյ եկեղեցւոյ անձանձիր աղօթասէր, և զի կին նորա ամուլ էր և ոչ ծնանէր, վասն որոյ միշտ հայցէր տալ նմա պտուղ օրհնութեան և ժառանգ սեփհական։* Իսկ որ զկամս երկիւղածաց առնէ, տէր լուաւ աղօթից նորա և ետ նոցա արու զաւակ»[3]:

*«Մայր նորա սուրբ և ի սուրբ նախնեաց, հանդերձ այլովք առաքինութեամբ պտղաբերեաց բարեպաշտութեամբ զբարի շառաւեղն ի բարի արմատոյ, քանզի տենչայր մանկան արուի և* յաղագս այնորիկ մաղթանս մատուցանէր այնքանեաց մեծաց բարեաց տուողին աստուծոյ, այլ և հանդիպէր բաղձանացն»[4]:

---

*[2] «Վարք և պատմութիւն Ալեքսիանոսի ճգնաւորի», «Գիրք պատմութեան, որ կոչի Պղնձէ քաղաք», էջ 164։*

*[3] «Պատմութիւն տէր Յուսկան և որդւոյ նորին Ստեփաննոսին», նույն տեղում, էջ 184։*

*[4] «Պատմութիւն վարուց սրբոյն Գրիգորի Աստուածաբանի», «Վարք և վկայաբանութիւնք սրբոց», հտ. Ա, Վենետիկ, 1874, էջ 286։*

*Այս օրինակների մեջ զարմանալի նմանություն կա Խիկարի զրույցի մուտքի հետ, բայց միայն լուծումը այլ է. Ով մաղթանս* մատուցէր այլն ճանդիպէր բաղձանացն, *իսկ Խիկարը մերժվում է։*

*Բացի այդ, Խիկարը դիմում է աստծուն ոչ քրիստոնեաբար.*

*«Այն ժամանակ ես մի բագին կառուցեցի ամբողջովին փայտից, հուր վառեցի այնտեղ, դրեցի մսի լավագույն պատառ և ապա ասացի» (S2)։*

*«Այն ժամանակ ես մի մեծ բագին կառուցեցի, աղոթք մատուցեցի և ասացի» (S3)։*

*Եվ վերջապես, հենց բնագրի մեջ էլ հեթանոսական պաշտամունքի հետքեր կան։*

*Սենեքերիմ թագավորը Նաթանին տալիս է փարավոնի նամակը, ուր առաջարկված է երկնքում տաճար կառուցելու խնդիրը։ Նաթանը կարդում է և սարսափած ասում. «Աստվածներն անգամ չեն կարող այդպիսի բան անել, թող թե մարդիկ»։*

*Խիկարը եգիպտական թագավորին նմանեցնում է բաբելոնյան աստված Բելի հետ. «Դու նման ես Բել աստծուն, իսկ քո իշխանները՝ նրա քրմերին» (75)։*

*Խրատներից մեկն այսպես է. «Իմ որդի, եթե դու որևէ բան գտնես կուռքերի առաջ, տուր նրանց բաժինը նրանց»։ Հարրիսը՝ բնագրի հրատարակիչը, ծանոթագրում է. «Այս նախադասությունը քրիստոնեական կամ մուսուլմանական ծագում ունենալ չի կարող»*[5]*։*

*Ինչպես տեսնում ենք, աստված, որ մերժում է Խիկարի զավակ ունենալու խնդրանքը S1, S2 և S4 բնագրերում բացահայտորեն քրիստոնյա չէ։*

*Կամ* աստվածներ *հոգնակի ձևը ողվել է հետագայում՝ քրիստոնեացման նպատակով, կամ նախնական է և նկատի ունի մի այլ աստծու։ Դա տանում է եբրայական պաշտամունքը։*

*Այս խնդրի մեջ պահված է բնագրի ծագման գաղտնիքը. եբրայական է այն, թե ասորաբաբելական։*

*Բանասիրությունն այստեղ վիթխարի ջանքեր է գործադրել (Մեյսներ, Հարրիս, Լիցբարսկի, Դիլլոն, Հալեվի, Նո, Ֆեթթեր, Նյոլդեքե, Գրիգորև, Դուրնովո), բայց հարցը մնացել է անպարզ։*

*Մեկնության համար հիմք են ծառայում երեք հանգամանք. Էլեֆանտինյան պապիրուսները, որոնք գտնվել են հրեական համայնքում, Տովբիթի գրքի հետ զրույցի առնչությունը և բնագրի պաշտամունքային միջավայրը։*

---

[5] „The story of Ahikar", *էջ 66։*

Մենք անխուսափելիորեն կանգնել ենք հենց այս վերջին կետին, որ ամեն գծով կապվում է հայերենի հետ։

Անիկարի կողմից աստծուն դիմելու ձևի և Նիկարի մերժման մեջ ոչինչ չի հակասում ամենահզոր և միակալ Յահվեին։

Էլեֆանտինյան պապիրուսներում աստվածությունն արտահայտվում է հոգնակի ձևով՝ աստվածներ, բայց դա էլ շատ բան չի ասում, այդպես է նաև Սուրբ գրքի մեջ, որի տակ հրեաները հասկանում են միակ աստծուն։

Չի հակասում, նույնիսկ, բազմաստվածության տարրերի առկայությունը, որը հրեական կյանքի մեջ հարակցվում էր միակ աստծո պաշտամունքի հետ։

Տեսնենք հայ խմբագրությունը։

G բնագրի մեջ Խիկարը բացին է չինում, զոհ է մատուցում և դիմում աստվածներին. «Ով տեարք իմ աստուածք. Բէլշիմ և Միրշահմին, Էշարիշէ և Իշեմիշահ, եթէ հրամայեցէք արու որդի, զի մի անժառանգ մնացից»։

CE-ի ընթերցումը մի փոքր այլ է. «Ով տեարք իմ և չաստուածք իմ. Բելշիմ և Շիմիլ և Շահմին, հրամայեցէք և տուք ինձ արու զաւակ, քանզի ահա Խիկար կենդանի մեռանի»։

A,B,D տարբերակներում բացակայում են աստվածների անունները, իսկ աստուածներ տրված է չաստուածներ ձևով։

Ամենուր (G,C,E և A,B,D) աստվածները և աստված ($B_{14}$) մերժում են նրա խնդրանքը և խորհուրդ տալիս որդեգրելու Նաթանին։

Հայ բոլոր բնագրերի նախօրինակում եղել է այնպես, ինչպես G-ի մեջ, եթե ոչ՝ անհանդուրժողաբար տրամադրված քրիստոնյա խմբագիրն ինքը չէր թույլ տա աստված ձևից (ինչպես ասորական $S_1$, $S_2$, $S_4$ բնագրերում է) ստանալու աստվածներ, որից հետո խորշելով գրեր չաստվածներ, կամ երբեք չէր սղի աստվածներից մերժվելուց հետո միակ աստծուն ապավինելու հատվածը (ինչպես Sa, Sm, $S^3$, Gr բնագրերում)։

Չաստվածներ ձևն ինքնին ցույց է տալիս խմբագրի տրամադրությունը, որ իբրև քրիստոնյա բնագիրը ցանկացել է մեղմել, արտահայտելով իր վերաբերմունքը։ Աստվածներ հանդիպում ենք B խմբի № 3526 ($B_4$) ձեռագրում. մտի առաջի աստուածոցն փոխանակ՝ մտի առաջի չաստուածոցն, ով տեարf իմ և աստուածf փոխանակ՝ ով տեարf իմ և չաստուածf: Այդպես չժխտված ձևով մնացել է պատահաբար։ $B_5$-ը ուղղակի ազգակից է $B_4$-ին և թերևս իրարից են ընդօրինակված, բայց այստեղ դարձյալ խմբագրված է չաստվածներ:

*B₁₄-ում արդեն ուղղակի* **աստված** *է, և խմբագիրը ստիպված է եղել բնագրի մեջ ուղղումներ մտցնել, որոնք մատնում են իրենց։ Բերենք այդ հատվածը մի այլ համասեռ բնագրի հետ.*

B₁ *(ձեռ. № 45)*

*Եւ զմտաւ ածեալ մտի առաջի չաստուածոցն և արկի խունկս և մատուցի զոհս և ընծայս բազումս և աղաչէի այսպէս ասելով. Ով տեարք իմ չաստուածք, տուք ինձ զաւակ արու, զի մի անժառանգ մնացից. և թէ տացէք ինձ զաւակս որ թէ յօրն Ժ քանքար բաշխեսցէ, ոչ կարէ սպառել զինչս իմ։*

*Յայնժամ ձայն եղև ի չաստուածոցն առ իս, զի ասէր. Ով Խիկար, ոչ է հրամայեալ քեզ զաւակ, բայց թէ առցես զՆադան քուեր որդին քո և սնուցես զնա և նա եղիցի քեզ որդի և հատուցանիցէ քեզ զսնունդսն քո։*

*Եւ յորժամ լուայ զայս ի չաստուածոցն, առի զՆադան, զքուեր որդին իմ միամեա և սնուցի զնա (297բ)։*

B₁₄ *(ձեռ. № 697)*

*Եւ զմտաւ ածեալ անկայ առաջի աստըծոյ և արկի խունկս և մատուցի զոհս և ընծաս բազումս և աղաչեցի այսպէս ասելով. Ով տէր իմ և աստուած իմ, տուր ինձ զաւակ արու, զի մի առանց ժառանգ մնացից և թէ լինի ինձ զաւակ արու, որ թէ յաւուրն Ժ քանքար բաշխեսցէ, զինչս իմ ոչ կարէ սպառել։*

*Յայնժամ ձայն եղև ի չաստուածոցն. Ով Խիկար գպրապետ և իմաստուն, չէ հրամեալ քեզ զաւակ լինել, բայց թէ առցես զՆաթան քըւեր որդի քո և սնուցես զնայ և նայ եղիցի քեզ որդի և հատուցանէ քեզ զսնունդսն քո։*

*Եւ յորժամ լուայ զայս ձայնս, առի զՆաթան զքըւեր որդին իմ միամեայ և սնուցի զնայ (78բ—79ա)։*

*Բոլոր այն տեղերում, երբ հարկ է լինում գործածել* **աստվածներ** *ձևը B₁₄-ը սղում է, կամ արտահայտում եզակի թվով։*

*Բայց ուշադրություն դարձնենք անունների վրա։*

*Բանասերներին ծանոթ էին* CE *խմբի անունները՝ Բելշիմ, Շիմել, Շահմին։ Բացի Բելշիմից, որ բաբելոնյան հայտնի աստվածություն է, մյուսները չեն գտնվում ասորաբաբելական և որևէ այլ պանթեոնում*[6]*։ Դա առաջ է բերում որոշ տարակուսանք։*

G *հնագույն բնագրում անունները հնչում են բոլորովին այլ կերպ, որ անծանոթ է բանասերներին. Բելշիմ, Միրշահմին, Էշարիշէ և Իշեմիշահ։*

*Այդպես, մենք ունենք անունների երկու հիմնական շարք.*

| | |
|---|---|
| ***Բելշիմ*** | ***Բելշիմ*** |
| ***Միրշահմին*** | ***Շիմել*** |

[6] *Դրոզդովը գրում է. «Այդ հավանաբար ասորաբաբելական աստվածությունների աղավաղված անուններ են, թերևս Բելի, Շամաշի և Սինի» (տե՛ս Н. Дроздов,* Сказания об Ахикаре или Акире Премудром и отношение их к Библии, „Труды Киевской духовной академии", год XII, кн. V, Киев, 1901, *էջ 74)։*

| | |
|---|---|
| *Էշարիշե Իշեմիշահ* | *Ծահմին* |

*Երկու խումբն էլ հետամուտ չեն, չնայած միևնույն խմբագրության մեջ տալիս են այնպիսի հեռացող ընթերցումներ, որ ենթադրում է նրանց հնարովի բնույթը։ Սակայն քրիստոնյա պահանջկոտ մատենագրության մեջ չի կարելի մտածել, որ երկու անգամ թույլ կտրվեր բռնի հեթանոսացում։*

*Հետևենք շարքերին։* G *և* CE *տարբերակներում առաջին աստվածությունը նույնն է՝ Բելշիմ։ Համընկնում է և երկրորդ աստվածությունը* CE*-ի երրորդի հետ՝ Միրշահմին-Ծահմին։ Սկզբից պարզապես սղվել է* միր *կապակցությունը։ Մյուսները համեմատության եզրեր չունեն։*

CE *տարբերակի անունները ծագում են* G*-ից, բայց չեն պահպանել իրենց նախնական տեսքը, որովհետև ընդօրինակողները գործ են ունեցել անհարգի և անծանոթ ձևերի հետ և փոխել անփութորեն։ Ահա մի քանի ընթերցում. Բեշիմ, Զրիմիլ* (C1)*, Ծիմել* (C1)*, Ջահմին* (C2)*, Ծամին* (C3)*, Ծահմիմ* (E6)*, Ծահիմ* (E7) *և այլն։ Իսկ* G*-ից մինչև* CE *գրչագրական վիթխարի ճանապարհ կա, որի ընթացքում հնարավոր էր այդպիսի հեռացում և անուններից մեկի* (C *խումբ), ապա մյուսի* (E *խումբ) կորուստը։*

*Անունները պահպանվել են* G *և* CE *տարբերակներում, այսինքն՝ խմբեր, որոնք կապված են ուղիղ ազգակցությամբ։ Մենք նկատել ենք, որ* E*-ն ամենից ավելի հարազատ է* G*-ին և եկել է նույն գծով, իսկ* C*-ի մուտքը լիակատար ծածկում է* E*-ին։ Միայն մուտքը։*

*Ինչպես մյուս դեպքերում, այս անգամ ևս* G*-ն ընթերցումը պահպանել է հարազատորեն, և անունները չեն սղվել նախապաշարումից զերծ «պարզ և անգիտակ գրիչների ձեռքով»։ Դա փոխանցվել է դարձյալ ամենից ավելի ժողովրդական տարբերակի մեջ* (E)*, որը սերում է* G*-ից։*

*Որ անունները ինքնահնար չեն, ցույց է տալիս առաջին աստվածության հիշատակությունը՝* Բելշիմ: *Դա առկա է նաև ասորական բնագրում* (S2)*, այլ պարագաների մեջ։*

*Հայ մատենագրությանն այդ աստվածությունն անծանոթ չէ, բայց գործածվել է* Բարշամին *(Ագաթանգեղոս, Խորենացի),* Բել *(Խորենացի, Սեբեոս) և* Բարշամ *(Խորենացի) ձևերով, և ոչ երբեք՝* Բելշիմ: *Եթե դա մուծված լիներ, կարող էր նմանվել հայտնի ձևերից մեկին։*

Աստվածությունները հնագույն օրինակի մեջ (G) թվարկված են զույգերով. Բելշիմ-Միրշահմին, Էշարիշէ-Իշեմիշահ։ Դա հատուկ է դիցաբանական պանթեոններին՝ Իզիս և Օզիրիս, Էնլիլ և Նանլիլ, Ահրիման և Ահրումազդա, Վահագն և Աստղիկ, Աշեմբետել և Անատբետել։ Քառյակը նույնպես անսովոր չէ։ Շումերական պանթեոնի չորս աստվածություններ շատ հաճախ միասին են հիշատակվում. Ան, Էնլիլ, Էնկի և Նինխուրսագ, որոնք անձնավորում են բնության չորս տարրերը։

G տարբերակի անունները չենք գտնում ասորաբաբելական պանթեոնի մեջ, բայց դրա համար պետք է հավաստիանալ, արդյոք գործ ունենք ճիշտ, թե գրչությամբ աղավաղ ձևերի հետ և ապա՝ մեզ լրիվ հայտնի չէ ասորաբաբելական պանթեոնը, որ անշուշտ եղել է մեր պատկերացումից ավելի հարուստ[7]։

Եվ վերջապես հայ խմբագրության մեջ անունների առկայությունը անսպասելի չէ։ Բնագիրը հագեցված է հեթանոսական շրնչով։ Զնայած գրիչներն ամեն կերպ փորձել են մեղմել, բայց հետքերը մնում են պարզ։

ա) Երբ Սենեքերիմ թագավորը լսում է Խիկարի կարծեցյալ դավաճանության մասին, խիստ դառնացած դիմում է աստվածներին. «Զինչ մեղայ ես Խիկարայ, ով աստուածք, զի այսպէս կամեցաւ առնել ընդ իս չարիս, փոխանակ բարոյ իմոյ»։

Այդպիսի ընթերցում ունի միայն G-ն։ A տարբերակում արդեն փոխված է, դիմում է ոչ թե աստվածներին, այլ ցհաւատարիմսն.

«Եւ տրտմեալ արքայն ասէ ցհաւատարիմսն. Արդ, զինչ չար արարի ես Խիկարայ, զի այսպիսի որոգայթս խորհեցաւ ինձ։ Ընդէ՞ր հատոյց չար փոխանակ բարոյ», փոխված է նաև B,C,D-ի մեջ իսկ E-ն պարզապես չունի։

բ) Երբ Խիկարը հաջողությամբ է լուծում փարավոնի առաջադրած ավազից պարան մանելու խնդիրը, փարավոնն հրճվանքով ասում է. «Օրս այս յաւուրս օրհնեալ եղիցի, զի տեսի զԽիկար կենդանի առաջի դից իմոց և զիմաստութիւն մտաց սորա տեսի և փառաւորեցայ» (A)։

D,C տարբերակների բոլոր ձեռագրերում այսպես է. «Ով Խիկար, օրհնեալ ես դու առաջի դիցն»:

Առաջի դից իմոց,— այս ընթերցումն ունեն $B_{4-9\ \ 14,\ 15}$ ձե-

[7] Էշարիշե, Իշեմիշա անուններին մոտ չե՞ն հնչում արդյոք բաբելոնյան աստված Իշումը, խամատական աստվածուհի Աշիման, փյունիկյան աստված Էշմունը: Չի՞ կարելի նրանց մեջ տեսնել ծագմաբանական կապակցություններ։

*ռագրերը։* B₁-*ը տալիս է* առաջի իմ *փխ.* դից իմոց, B₇,₁₇-*ը՝* դիմաց իմոց, A₂-*ը՝* աչաց իմոց:

*Հասկանալի է, որ պետք է լինի* առաջի դից իմոց: Օրճնեալ ես առաջի իմ, առաջի դիմաց, *կամ* առաջի աչաց *անիմաստ է։*

*Դրանք պարզապես հետքերը վերացնելու ջղաձգումներ են։*

*գ) Խիկարը ի պատասխան փարավոնի բռնում է մի աքիս և տանջում. «Եւ ես՝ Խիկարս, ելի ի նմանէ և կալայ աքիս մի և յանդիմանեալ տանջէի զնա։ Յայնժամ պատմեցին Թագաւորին, եթէ Խիկար զդիսն մեր անարգէ»* (C,D)*։*

Զդիսճ մեր աճարգէ,— *այդ ընթերցման դիմաց* C₂—₅-*ն ունի* զդիճսճ մեր աճցաճէ, *որ բացահայտ աղավաղում է։*

*Իսկ* AB *բնագրում շերտն ավելի է խտացած. «Եւ ես՝ Խիկար, ելի ի նմանէ և հրամայեցի բերել ինձ աքիս մի և կապեալ տանջէի զնա, մինչև գիտացին ամենայն քաղաքացիքն և երթեալ ծանուցին փարաւոնի, եթէ անարգեաց Խիկար զդիսս մեր, քանզի կալեալ աքիս մի և տանջէ յանդիման շաստուածոցն մեր* (AB)*»։*

*Այս տարբերակի միայն* B₉ *ձեռագրում է պահպանված* շաստուածոցճ մեր, *այլուր՝* յաճդիմաճ մեր, *իսկ* CD-*ն բոլորովին չունի։*

*դ) Սեննեքերիմ Թագավորը նախարարների խորհրդով առաջարկում է Նաթանին լուծելու Փարավոնի խնդիրը. «Արքայ, յաւիտեան կաց,— պատասխանում է շփոթված Նաթանը,— այդպիսի գործոյդ* աստուածճ *ոչ կարեն առնել պատասխանի, թող թէ մարդիկ»* (AB)*։*

Աստուածճ *ընթերցումը վերցված է* B₄,₅-*ից, այլուր՝* շաստուածճ: *Մի օրինակով նկատեցինք, որ նույնիսկ* B₅-*ը անհետևողական է։ Բնագրի սկզբում այն ևս ունի* շաստուածճ:

*Այդ ընթերցման փոխարեն հնագույն բնագիրը* (G) *տալիս է դիք («Զայդ իրս* դիճճ *ոչ կարեն վճարել»)։* C-*ն ևս այդպես է.* Զայդ բաճդ դիճ և ոչ կարեճ վճարել: *Դարձյալ* C₂,₃,₅-*ը ջանացել է ազատվել անհաճո բառից, բայց շատ միամիտ ձևով՝* իճճճ *փոխանակ* դիճ, *իսկ* D-*ի մեջ՝* դեճ *(«Զայդ բանքդ* դեճճ *ոչ կարեն վճարել»)։*

*Այդպես, անվերջ նկատում ենք ուղղումներ, բայց խիստ անհետևողական։ Վրիպումներ են տալիս, նույնիսկ, շարադասական կապակցությունների մեջ։ Բերենք մի բնորոշ օրինակ. Խիկարը պատժում է Նաթանին, Նաթանը թողություն է խնդրում. «Տէր իմ Խիկար և հայր բազմերախտ, արա ինձ ըստ ողորմութեան քում,*

*աստուծոյ մեղանչեն մարդիկ, և թողուն նոցա»։ Կա անհամաձայ-նություն,—* աստուծոյ և թողուն: Պետք է լինի աստուածոց կամ դից: *Բայց թերևս ենթադրել, որ* թողուն *նկատի ունի դարձյալ մարդկանց՝* աստուծոյ մեղանչեն մարդիկ և (մարդիկ) թողուն նո-ցա: *Այդպես չէ, որովհետև C բնագրի ընթերցումը պարզապես ցույց է տալիս, որ խոսքը աստուծո թողության մասին է. «Հայր իմ Խիկար, աստուծոյ մեղանչեն և նոցա թողու, յորժամ մեղայ ասեն»։*

*Բազմաստվածության հետքերը ամենից ավելի ջնջված են խրատների մեջ։ Գրեթե ամենուր խոսքը միակ աստծո մասին է. «Որդիք և ստացուածք յաստուծոյ շնորհին» (30), «եւ բարի լիցի քեզ յաստուծոյ և ի մարդկանէ» (34), «բարկասցի աստուած ի վե-րայ քո» (35), «զաստուած մի հայհոյեր» (38), «և մի ողորմութիւն յաստուծոյ» (45), «ատիս յաստուծոյ» (47), «զուցէ բարկասցի աստուած» (58), «չարութիւն են առաջի աստուծոյ» (58), «եթէ կամիցիս յաստուծոյ խնդրել ինչ» (60), «յաւուր պատարագի աս-տուծոյ մի հեռանար» (78), «պատուհասի յաստուծոյ» (84), «զի ոչ հանի աստուած» (86), «աոցես յաստուծոյ հազարապատիկ» (92), «թէ պաշտոնեայ ես աստուծոյ» (95), «զի աստուծոյ հաճոյ գործք բարիք են» (98), «յամօթոյ իբրև յաստուծոյ» (98b), «յաս-տուծոյ դատաստանացն երկիր» (104a), «պատուիրանն աստուծոյ պարտաւ է մարդկան» (105)։*

*Եվ դա հասկանալի է, խրատներն անմիջապես ուսուցում են և չէին կարող հեռանալ միակ աստծո գաղափարից։ Բայց առա-կավոր խրատների մեջ բավական անսպասելի կարդում ենք. «Որ-դեակ, զերեսս դիցն և զարքունեացն ցուցի քեզ և մեծ փառաց հա-սուցի, և դու ի փառաց ընկեցեր զիս»։ B4,5-ը փորձել է աղավաղել՝* դիցեն *փոխանակ* դիցն:

*Այս է պատկերը։ Չնայած գրիչների կողմից բավական պար-զորոշ արտահայտվում է ինչ-որ խորշանք, որի պատճառով ջնջել մաքրել են բազմաթիվ ընթերցումներ, բայց շատ տեղերում պարզ և որոշակի հետքեր են թողել։*

*Այդպես, նախնաբար բնագիրն ազատ էր քրիստոնեական վերախմբագրումից և ունեցել է ասորաբաբելական պանթեոն, իսկ հրեական շերտի մասին դեռևս խոսք լինել չէր կարող։*

*Հասկանալի է, որ դա հավասարապես վերաբերում է և ասո-րական խմբագրությանը, քանի որ ասորական S2-ը և հայկականը գալիս են մեկ նախամորից։*

Բայց բնագրերն հետո հայ և ասորական հողի վրա ունեցել են այլ ճակատագիր։

Հայ թարգմանիչը 5-րդ դարում զրույցն հաղորդել է նույնությամբ, պահպանելով նրա հեթանոսական բնույթը։ Դա թույլ էր տալիս 5-րդ դարի ոգին։ Խիկարը դիտվել է իբրև արտաքին իմաստուն, որի երկը թարգմանվել է անփոփոխ։ Դա հայ մատենագրության սկիզբն էր, և ավելի էր արտահայտվում լայնախոհությունը։ Այդ շրջանից են մեզ փոխանցվել ժողովրդական ավանդություններ և դիցաբանական զրույցներ։

Բացի այդ։ Բնագիրը նույնությամբ իր աստվածներով և հեթանոսական միջավայրով թարգմանիչը կարող էր հայերենի փոխադրել հենց դուրս գալով քրիստոնեական դավանաբանության շահերից։

Հին աստվածները զրույցի մեջ քրիստոնյայի համար վատ և թույլ կողմերով են հանդես գալիս։ Նրանք հուսախաբ են անում Խիկարին, մերժում են նրան, որ զավակ ունենա և խորհուրդ տալիս որդեգրելու իր քեռորդուն. «Ահա Նադան քեռորդին քո, զի եթէ առցես և սնուցես և արասցես զնայ քեզ յորդեգիրս, և նայ հատուսցէ զսնունդ քո և կարող է ամենայն ինչ առնել»։

Խիկարը հրճվանքով է ընդունում աստվածների առաջարկը. «Ով աստուածք իմ և տեարք իմ, ես ննջեցուցանեմ զնայ ի վերայ բարձուց իմոց և ի ծոց կրեմ զնա, զի արկցէ հող ձեռօք իւրօք ի վերայ իմ»։

Բայց այստեղ ևս Խիկարը հուսախաբ է լինում։ Աստվածների կանխատեսումը ճիշտ չէր։ Նաթանը ապերախտ է վճարում մորեղբոր երախտիքը։

Հետագայում, երբ Խիկարը դադարեց լինել **ումն յարտաքին իմաստնոց**, սկսվում է բնագրի քրիստոնեացումը, բայց հնարավոր չէր հեթանոսական շերտը լրիվ ջնջել։

Խիկարը լիովին ազգայնանում է բանավոր ուղիներով, իսկ մատենագրության մեջ միշտ էլ որոշ չափով մնում է խորթ և արտաքին։ Ահա թե ինչու բնագիրը հետևողականորեն չի խմբագրըվել։ Սկզբում, երբ արդեն քրիստոնեական ոգին ավելի անհանդուրժող էր, խմբագրության մեջ արտահայտվում է ժխտող վերաբերմունքը։ Դուրս են նետվում աստվածների անունները (A,B,D) և աստվածները դառնում են չաստվածներ, իսկ հետո սկսում են հնարավոր չափով առհասարակ մաքրել բնագիրը։

Մի փոքր այլ ուղիով է ընթացել ասորական բնագիրը։ Ասո-

րական մատենագրության մեջ զրույցը դիտվել է իբրև ազգային նրկ և ոչ՝ թարգմանություն։ Այլեւ ազգայնացնելու հարկ չկար, մնում էր միայն վերամկրտել քրիստոնեական ավազանում։ Եթե հայ մատենագրության մեջ կաշկանդում էր օտար, արտաքին երկի զգացումը, ապա ասորի խմբագիրը ազատ էր դրանից։ Այդ պատճառով ավելի քիչ են բազմաստվածության հետքերը։

Երկրորդ խումբը այդպիսի վերախմբագրման լավագույն օրինակ է (Sa, Sm, $S_3$, Gr)։ Աստվածների մերժումից հետո Խիկարը դիմում է միակ աստծուն, որը դարձյալ մերժում է։

Եթե պետք է նորից մերժվեր, ապա երկրորդ դիմումը անտեղի է։ Խմբագիրը միակ աստծուն դիմելու մեջ նկատի է ունեցել գերադասություն տալ նրան, բայց չէր կարող հետևողական լինել, որովհետև այդ դեպքում կփոխվեր զրույցի ամբողջ սյուժեն։ Եվ այդպես, ընդմիջարկումը մնացել է կիսակատար ու անիմաստ։

Սակայն այս խմբի ընթերցումը ցույց է տալիս, որ Խիկարը ասորական խմբագրության մեջ նախնաբար նույնպես դիմել է աստվածներին։ $S_2$-ը պարզապես խմբագրել է աստված, իսկ $S_3$-ը հորինել է ավելորդ մի պատմություն։ Երկու բնագրերն էլ գալիս են մեկ աղբյուրից։

Որ հայ և ասորի խմբագրությունները ունեցել են նույն դիցաբանական ատաղձը, ցույց է տալիս մի շատ հետաքրքիր օրինակ։

Եգիպտոսի փարավոնը խնդիրներ է առաջադրում Խիկարին։ Նա իր նախարարներին հրամայում է կարմիր զգեստ հագնել, իսկ ինքը հագնում է կտավ և հարցնում. «Ասա, Աբիկամ, ինչի կարելի է նմանեցնել ինձ և ինչի կարելի է նմանեցնել իմ նախարարներին»։

Խիկարը պատասխանում է. «Նման ես դու Բել աստծուն, իսկ նախարարներդ նրա քրմերին»։

Մի քանի այդպիսի խնդիրներ հաջողությամբ լուծելուց հետո, փարավոնը հարցնում է. «Այժմ ասա ինձ, Աբիկամ, ում կարելի է նմանեցնել քո թագավորին ու տիրոջը»։

Խիկարը պատասխանում է. «Հեռի ինձնից, տէր իմ արքա, որ ես հիշեմ իմ տիրոջը, երբ դու նստած ես»։ Եվ անմիջապես շարունակում (բնագրում չկա, արդյոք փարավոնը կանգնում է թե ոչ). «Իմ տէր Սենեքերիմը նման է Երկնքի աստծուն, իսկ նրա նախարարները՝ ամպերում պահված կայծակների։ Եթե նա ուզենա, հողը կծածկի ցողով, երկրի վրա անձրև կտեղա, իսկ եթե ուզենա, կտեղա կարկուտ։ Երբ նա ննջում է, արևը դադարում է փայլելուց, իսկ նրա ճառագայթները դադարում են լուսավորելուց։ Բել աստ-

վածը իր քրմերի հետ փակվում է խավար զնդանում, լուսինը չի երևում երկնակամարում, իսկ աստղերը դադարում են առկայծել»։

Ամեն ինչ պարզ է և հետևողական։ Խիկարը փարավոնին նմանեցնում է Բելին։ Իսկ Սենեքերիմ թագավորին՝ Երկնքի տիրոջը, որ ամենազոր է և կարող է Բելին փակել խավարում։

Բելն այստեղ թշնամի աստվածություն է, և Խիկարը տոնում է քրիստոնյա աստծո հաղթանակը։

Բայց տեսնենք հայերենը։

GEF-ի մեջ այդ հատվածներն առհասարակ բացակայում են։ AB-ն միայն ունի փարավոնի համեմատությունը.

«Եւ հրամայեաց զօրաց իւրոց, զի զգեցցին հանդերձս քրքումս կարմիր և ինքն ազաւ բեհեզս ծիրանիս և հրամայեաց կոչել զիս և ասէ. Ում նման եմ ես և զօրքդ իմ։ Եւ ասեմ. Նման ես դու դիցն և զօրքդ քո նման է նորա»։

Իսկ նրա հարցին՝ Տէրն իմ Սենեքարիմ ում նման է, Խիկարը պատասխանում է. «Քաւ լիցի յիշել զարքայն իմ զՍենեքերիմ։ Արի յոտն կաց դու և ամենայն նախարարք քո, և ես ասացից զարքայէն իմմէ, թէ որպէս իցէ»։ Այստեղ ընդհատվում է, հետո փարավոնը պարզապես հարցնում է, թե ինչ է նրա իսկական անունը։

Բայց երկու հատվածներն էլ լրիվ պահպանվել են CD խմբում։

Այստեղ ևս փարավոնին նմանեցնում է դից, իսկ նախարարներին՝ իրմանց նոցա։ Վերջին արտահայտությունը AB-ի հետ տարընթերցված է տալիս՝ եւ նախարարք իո իրմանց նոցա (CD) փխ. և զօրքդ քո նման է նորա (AB)։ Հասկանալի է, որ AB-ում աղավաղված է։

Բերենք Սենեքերիմի հատվածը լրիվ. «Յայնժամ արքայն ուրախ եղև յոյժ և ասէ. Ասա ինձ զճշմարիտն, Սենեքարիմ արքայն ում նման է։ Ասեմ. Թագաւոր քաւ լիցի քեզ յիշել զարքայն Սենեքարիմ, քանզի նստեալ կաս, այլ յոտն կաց, և ես ասեմ։ Իբրև յարեաւ, ասեմ. Սենեքարիմ արքայն նման է Բելշիմի և նախարարք նորա փայլատականց նորա։ Յորժամ կամի նիւթէ զամպս և հարկանէ զցօղն, ի բարձունս ելանէ թագաւորիւք, որոտայ և կալնու զճառագայթս արեգականն և յորժամ կամի կարկուտ ածէ և մանրէ զփայտ դալար և չոր, ծակէ և հարկանէ զբոյսս դալարոյ»։

Ինչպես տեսնում ենք, հայերեն բնագիրն ավելի հետևողական է։ Խիկարը բնութագրում է իր թագավորին փարավոնի կանգնելուց հետո։ Բայց դա չէ կարևորը։ Այստեղ Բելշիմը բարեկամ աստվածություն է։ Խիկարը Սենեքերիմին նմանեցնում է Բելշիմին,

*իսկ փարավոնին՝ դից։ Ասորականում փարավոնին էր նմանեցնում Բելշիմին, իսկ Սենեքերիմին՝ Երկնքի տիրոջը։*

*Ասորական բնագրում Բելշիմը օտարացվել է և ենթարկվել Երկնքի տիրոջը («Բել-աստվածն իր քրմերի հետ փակվում է խավար զնդանում»)։*

*Իսկ դից («նման ես դու դիցն») և Բելշիմի («Սենեքերիմ արքայն նման է Բելշիմի») մեջ ուրիշ ի՞նչ համեմատություններ են ընկած։*

*Երկրորդ անգամ փարավոնը* զգեցոյց կտաւ զօրաց իւրոց և ինքն զգեցաւ կարմիր (A սպիտակ *փխ.* կտաւ, կարմիր յորդան *փխ.* կարմիր):

*Երրորդ անգամ* հրամայեաց նախարարաց. զի զգեցան զգեստ ներկուածոյ և ինքն՝ թագաւորն զգեցաւ զգեստ փետրուածոյ (AB փետրատս փխ. փետրուածոյ, D գոյնզգոյնս փխ. ներկուածոյ):

*Խիկարը հաջողությամբ լուծում է խնդիրները։*

*Երկրորդ դեպքում փարավոնը նմանվել է* արեգական, *իսկ զորքն իր՝* ճառագայթից նորա, *երրորդ դեպքում՝* դալար դաշտոյ, *իսկ նախարարները՝* ծաղկանց նորա:

*Բայց շարունակենք.*

*«Եւ հրամայեաց զօրաց իւրոց զգենուլ թուխ և ինքն զգեցաւ շիկագոյն։ Եւ ածին զիս առաջի իւր։ Եւ ասէ. Ո՞ւմ նման եմ ես և զօրքդ իմ։ Եւ ասեմ. Նման ես դու Սինայի և զօրքդ քո մորենոյ նորա»։*

*Այս խնդիրը բացակայում է* CD*-ի մեջ, ունի միայն* AB *տարբերակը։*

*Ինչպես տեսնում ենք, անունները քաղված են Աստվածաշնչից։ Սինան այն լեռն է, ուր* խօսեցաւ աստուած ընդ Մովսիսի, *իսկ մորենու միջից նա առաջին անգամ երևաց Մովսեսին* ի լեառն աստուծոյ ի Քորեբ *և ձայն տվեց, որ առաջնորդի Իսրայելը* յերկիր բարի և յընդարձակ, երկիր որ բխէ զկաթն և զմեղր:

*Թվում է, որ խնդիրն հետամնաց է և դրա համար չկա* CD*-ի մեջ, բայց այդպես չէ։*

*Ասորական խմբագրության մեջ էլ կա մի խնդիր, որի զուգահեռը* CD*-ն չունի։*

*Փարավոնն իր մարդկանց առաջարկում է սև հագնել, իսկ ինքն հագնում է բրբում։ Ախիկարը փարավոնին նմանեցնում է լուսնի, իսկ նրա մարդկանց՝ աստղերի հետ։*

*Դա հենց միևնույն խնդիրն է, նույնն է հանդերձավորումը՝ սև*

և կարմիր, բայց լուծումը հայերենում փոխվել է անճանաչելիորեն: Աղավաղված է նաև ասորերենը:

Սին (Sin) ասորերեն նշանակում է՝ լուսին:

Հայ բնագրի մեջ այդ բառը չի թարգմանվել և հետո նույնացվել է Սինա լեռան հետ:

Դա նախ մի շատ կարևոր վկայություն է, որ հայ խմբագրությունը գալիս է ասորերենից:

Բայց ինչո՞ւ չի թարգմանվել: Բառը պարզ է և հայտնի, և չէր կարող հայ թարգմանիչը չիմանալ և հարկ էլ չկար թողնելու նույնը: Պետք է ընդունել, որ նրա ձեռքի տակ եղած օտար բնագրի մեջ այդ բառը չի գործածվել պարզապես իբրև լուսին հասարակ անուն, որ կարելի էր փոխադրել հայերենի, այլ եղել է հատուկ անուն և արտահայտել է Սին աստվածությունը[8]:

Հետագա ընդօրինակողների համար դա դարձել է անհասկանալի և ստուգաբանվել Աստվածաշնչի օգնությամբ, իսկ CD տարբերակից ուղղակի դուրս նետվել:

Մեր այս ենթադրությունը իր ամենավճռական հաստատումն է գտնում A6 հնագույն պատառիկի ընթերցումով. «Նման ես դու Սինա և նախարարք քո քրմացն»: Ուղղական հոլովը՝ Սին, իսկ մոռենու փոխարեն՝ քրմացն: Հասկանալի է, որ խոսքը ոչ լուսնի և ոչ էլ Սինա լեռան, այլ աստվածության մասին է:

Ասորաբաբելական պանթեոնը գլխավորում էին երեք մեծ աստվածություններ՝ Անու, Բել և Էա, ապա գալիս է մի այլ խումբ, որը պանթեոնի մեջ դարձյալ ամենաբարձր տեղն ունի՝ Շամաշ, Սին և Ռաման (արևի, լուսնի և բնության աստվածություններ):

Կարծում ենք, որ Եգիպտոսի թագավորը իր շքախմբի հետ հենց այդ եռյակն է կերպավորել:

Նախ նա ներկայացնում է աստվածների պանթեոնը («Նման ես դու դից, իսկ նախարարք քո քրմանց նոցա»), ապա՝ արևին (Շամաշ), լուսնին (Սին) և տարերքին կամ բնությանը (Ռաման) ուղղակի նույն հաջորդականությամբ (Սինա լեռան խնդիրը AB բնագրում գալիս է Արևից հետո, այդպես է և ասորականի մեջ): Իսկ ամենից բարձր կանգնած է Բելշիմը:

Եթե մեր դիտողությունը ճիշտ է, ապա դա կարող է լինել ասորաբաբելական պանթեոնի լավագույն վկայություն:

---

[8] Լուսնի աստվածությունը շումերները կոչել են երկու անունով՝ Սին և Նաննա: Սինը վերաբնակեցվել է ասորաբաբելական պանթեոնում:

*Այսպես, և՛ հայ և՛ ասորի խմբագրությունների մեջ հրեական պաշտամունքի հետքեր որոնելն ավելորդ է։ Աստվածների անունները և գրույցի հեթանոսական շերտը թելադրում են ասորաբաբելական պանթեոն։*

*Հետագա աստվածը նույնպես հրեա չէ, այլ ուղղակի քրիստոնյա։ Գրաֆենի ձեռագիրն ունի այսպիսի նախաբան. «Ասորի և Նինվեի թագավոր Սենեքերիմի և Սարհադոմի օրոք կար Ախիկար անունով մի մարդ, մի իմաստուն հրեա, որը գրագիրն ու մոքեղն էր այդ թագավորների։ Նա շարունակ անթերի ծառայում էր նրանց, երբ Ասորի թագավոր Սենեքերիմը մահացավ 679 թվականին նախքան Քրիստոսը»։*

Խիկարը մի իմաստուն հրեա էր,— *կարծես նրա ժամման ուղղակի վկայությունն է, բայց այդ խոսքերը գրված են խմբագրի կամ գրչի կողմից իբրև ծանոթություն և բնագրի հետ չեն առնչվում։*

*Ակնբախ է, որ բնագիրն անցել է գրագետ խմբագրի ձեռքով, որ լավատեղյակ է պատմությանը և նույնիսկ մոտավորապես ճիշտ որոշում է Սենեքերիմի մահվան թվականը։ Հասկանալի է, նա գիտեր Աստվածաշունչը և ելնելով Տովբիթի գրքից, որոշում է Խիկարի (Աքաիքարոսի) ծագումը։*

*Այսպես, այն խմբագրությունը, որ գրավոր ուղիներով հասել է մեզ տարբեր լեզուներով (հայերեն, ասորերեն, արաբերեն և այլն) ծագել և սկիզբ է առել ասորաբաբելական միջավայրում և հետագայում քրիստոնեացվել, պահպանելով բավական պարզ վերապրուկներ, հատկապես հայ խմբագրության մեջ։*

## 6. ՆԱԽԱՄԱՅՐԸ ԵՎ ԹԵՄԱՆ

*Խիկարի զրույցը մեզ ծանոթ է նաև հնագույն այլ աղբյուրներից (էլեֆանտինյան պապիրուսներ, Տովբիթի գիրք, Եզովպոսի կենսագրության երկրորդ մաս)։*

*Ի՞նչ առնչություն ունեն դրանք ասորաբաբելական խմբագրության հետ։ Այդ հարցի լուծումը մեզ կարող է հանգեցնել նախնականի գաղափարին։*

*Այստեղ ևս բանասիրության մեջ չափազանց շատ և տարամետ կարծիքներ կան, բայց մենք կընթանանք դեռ չանցած ուղիով։*

*Երբ 1907 թվականին հայտնագործվեցին էլեֆանտինյան պապիրուսները, անմիջապես դիտվեց, որ վաղուց հայտնի զրույցը և էլեֆանտինյան օրինակը ունեն մեծ տարբերություն։*

*Պապիրուսներում չկա Ախիկարի որդի չունենալու, 60 կին առնելու, զոհ մատուցելու, աստվածներին աղոթելու և այլ մանրամասնություններ, ինչպես նաև՝ երբ Նաթանի հանցանքը պարզ էր, չկա անուղղելիի մասին խրատներ և կարելի է կարծել, որ Նաթանին ոչ թե ոչնչացրել, պատժել է Խիկարը, այլ ներել։*

*Պապիրուսները վերծանելիս գիտնականները կարծում են, որ թերթերի մեջ բացթողումներ կան, իսկ Նյոլդեքեն համոզում է, որ առաջին թերթերը հաջորդում են իրար։ Այդ նշանակում է մանրամասնությունները չեն եղել բնագրում։*

*Ջէին էլ կարող լինել, և դա գալիս է երկի թեմայից։*

*Պապիրուսների և ասորաբաբելական խմբագրության մեջ զրույցը բոլորովին տարբեր զարգացում ունի և տարբեր բնույթ։*

*Պապիրուսների հիմնական գաղափարը որդու դավաճանությունն է, որդու ապերախտությունը։ Նաթանը Խիկարի հարազատ որդին է։*

*Ասորաբաբելական խմբագրության մեջ կա մի այլ խնդիր, այստեղ Նաթանը Խիկարի քեռորդին է։*

*Խիկարը՝ Ասորեստանի և Նինվեի տիրակալ Սենեքերիմ արքայի դպիրը, իր իմաստությամբ և հանճարով մեծ փառքի և հարըստության է հասել, բայց ժառանգ չունի. «Ես՝ Խիկար, դպիր Սենեքերիմ արքայի, ստացայ ինձ ծառայս և աղախնեայս և ստացուածս բազումս, շինեցի ինձ ապարանս վաթսուն և ոչ էի կարօտ ընչից,— պատմում է նա,—բայց զաւակ ոչ ունէի, որ ժառանգէր զինչս իմ».*

*Եվ նա դիմում է աստվածներին. «Ով տեարք իմ չաստուածք, տուք ինձ զաւակ արու, զի մի անժառանգ մնացից»։*

*Աստվածները մերժում են նրա խնդիրը և խորհուրդ տալիս որդեգրել իր քեռորդուն. «Ով Խիկար, դպրապետ և իմաստուն, չէ հրամայեալ քեզ զաւակ, բայց թէ առցես զՆաթան քուեր որդին քո և սնուսցես զնա, և նա եղիցի քեզ որդի և հատուցանիցէ քեզ զըսնունդսն քո»։*

*Հետագա ամբողջ ընթացքը ցույց է տալիս, որ դա ճիշտ չէր։*

*«Եւ յորժամ լուայ զայս ի չաստուածոցն, առի զՆադան՝ զքուեր որդին իմ միամեայ, և սնուցի զնա, և ագուցի նմա բեհեզս և ծիրանիս, և արկի մանեակ ոսկի ի պարանոց նորա, և որպէս զորդի թագաւորի շքեղաշուք զարդարեցի զնա և ձեռօք իմովք արբուցանէի նմա կոգի և կաթն, և ննջեցուցանէի զնա ի վերայ ամղանաց իմոց, մինչև եղև է ամեայ»։*

*Այնուհետև Նաթանին տալիս է արքայի մոտ ծառայություն և ինքն հեռանում պալատից,* զի ի ճանզստեան եղիցի:

*Բայց ապերախտ էր Նաթանը։ Նա մորեղբոր ունեցվածքը վատնում է անխղճորեն.*

*«Եւ սկսաւ Նաթան վատնել զինչս իմ և զամենայն ստացուածս իմ և ոչ խնայէր ի ծառայս իմ և յաղախնեայս և ոչ՝ ի սիրելիս և ոչ՝ ի բարեկամս։ Եւ կապեալ չարչարէր զնոսա ի հարուածս սաստիկս, կոտորէր սատակէր զերիվարս իմ յարաժամ»։*

*Խիկարը զրկում է նրան ժառանգությունից.*

*«Յորժամ տեսի, թէ այլափոխեաց Նաթան զգործս իւր, ապա խնայեցի յինչս իմ, զի մի կորիցէ և ասեմ ցՆաթան. Մի մերձենար յինչս իմ»։*

*Նաթանը դրանից կատաղած դավում է Խիկարին, և նա մահից խուսափելու համար թաքնվում է մութ գետնափորի մեջ, մեծ հնարամտությամբ նորից ձեռք է բերում թագավորի վստահությունը և խստորեն պատժում իր քեռորդուն.*

*«Յայնժամ առի զՆաթան, զքուեր որդին իմ և տարայ ի տուն իմ և կապեցի ընդ սիւն մի երկաթի, որ էր կշիռ նորա էՃ լիտր և*

եղի առասան ի պարանոց նորա և հարի Ռ փայտ զլանջս նորա և Ռ զթիկունսն։ Եւ կայր ի դրան սրահի խմոյ, և տայի նմա հաց կշռով և ջուր չափով։ Եւ ... չարախոհ որդին կորստեան ուռեալ պատառեցաւ»։

«Ապերախտ որդու պատիժը,—ահա թե ինչն է այդ պատմության հիմնական թեման»[1],— գրում է նշանավոր արևելագետ Դյուպոն Սոմմերը։ Այդպես են մտածում և մյուսները, իսկ Դրոզդովը գտնում է, որ այդ պայքարի հիմքում ընկած է բաբելոնյան արևային մի անհայտ առասպել.

«Ախիկարը արևն է, իսկ Նաթանը՝ լուսինը։ Արևը հալածվում է լուսնի կողմից և խորասուզվում խավարի մեջ, բայց, լինելով ինչ-որ կենդանի թաղված, նա նորից երևան է գալիս իբրև հաղթող, հալածում է լուսնին և նետում խավարի մեջ»[2]։

Բեզսոնովը այլ կարծիքի է։ Նա գտնում է, որ դա հին ու նոր աստվածների պայքար է. «Ակիրը իսկ և իսկ հին աստված է,— գրում է նա,—որը շատ բան է կորցրել։ Իբրև Արևելքի ժողովուրդ, ասորեստանցիները ավելի շատ են կապված հնի հետ և այդ պատճառով, երբ նա նրանց համար հանդես է գալիս իբրև տառապող աստված, նրա վրա ծանրանում է այդ, ավելի ցավակցում են նրան, քան երիտասարդին։ Հենց նա էլ վերջում հաղթում է։ Կործանվում է երիտասարդը»[3]։

Սակայն այստեղ ո՛չ ապերախտ որդու պատիժ կա, ո՛չ արևային առասպել և ո՛չ հին ու նոր աստվածների պայքար, այլ դրված է շատ կարևոր մի խնդիր՝ մայրական գծով ժառանգության հարցը։

Մենամուսնությունից առաջ ազգակցությունը ճանաչվում էր մոր կողմից։ Հայրը չգիտեր թե ով է իր որդին, որովհետև կինը կարող էր ազատ հարաբերության մեջ լինել և մեկ ուրիշի հետ, բայց եղբայրը գիտեր, թե ով է իր քույրը, նա կարող էր ճանաչել նաև եղբորը, որովհետև միևնույն մորից են, բայց եղբոր որդուն՝ ոչ։

Այդպես, առաջին սերնդի մեջ կարելի է հավաստել քույրերի և եղբայրների ազգակցությունը, իսկ հաջորդ սերնդի մեջ՝ միայն քեռորդու, բայց ոչ՝ որդու կամ եղբորորդու։

---

1 Encyclopédie de la pleiade, Histoire des Litteratures. I. Litteratures anciennes orientales et orales, Tirage à part, էջ 641։

2 *Н. Дроздов*, Сказания об Ахикаре или Акире Премудром и отношение их к Библии, „Труды Киевской духовной академии“, год XII, кн. V, էջ 69։

3 „Песни, собранныя П. Н. Рыбниковым“, часть II, М., 1862, էջ CCVI:

*Եվ ահա այն ժամանակ, երբ արդեն համայնքից անկախ մեկ մարդու ձեռքին կարող էր կուտակվել նյութական միջոցներ, և դեռ անհայտ էր սեփական որդին, այդ միջոցները իբրև ժառանգություն բնականաբար փոխանցվում էին քեռորդուն։ Քեռորդին էր միակ ժառանգության կրողը։*

*Մորեղբոր և քեռորդու արենակցության այդ վաղեմի ճանաչումը ներքին մեծ կապ է ստեղծել։ Տակիտոսը Գերմանիայի մասին իր ազգագրական դիտողությունների մեջ գրում է. «Աղջիկների որդիները մորեղբոր կողմից հարգվում են նույնքան որքան հոր, իսկ մի քանիսը գտնում են, որ այդ ազգակցական հարաբերությունը իրենից ներկայացնում է ավելի սրբազան և ամուր կապ։ Երբ պատանդ են պահանջում, գերադասում են այդ կապը, կարծես դա խղճի հետ ավելի վստահ ապահովություն է ներկայացնում, և միասին ընդարձակում են ընտանիքի շրջանակը»*[4]*։*

*Դրա արձագանքները պահպանվել են բանահյուսության մեջ։ Բարի քեռի արտահայտությունը գալիս է նրա վերաբերմունքից իր քեռորդու նկատմամբ։ «Թէ որ մորքուրդ պույախ (բեղ) ունենար, քեռիդ կըլլար», այսինքն՝ առավելություն կունենար, «Ճին հորը, տղան քեռուն կնմանի», «տղան քեռուն կքաշե, աղջիկը հորքուրին», «քուռակը այղրին կքաշե, տղեն քեռուն» և այլն*[5]*։*

*Տղան քեռուն կքաշե,— դա մշտապես դիտված և վաղեմի արենակցություն է, որ տպավորել է մարդկանց։*

*Մորեղբոր մեծ դերի լավագույն օրինակ է քեռի Թորոսը «Սասնա ծռերի» մեջ։ Նա միշտ պատրաստ կանգնած է իր քեռորդիների թիկունքին։ Հետաքրքիր է և բնորոշ, որ նա հարատևում է էպոսի բոլոր ճյուղերում, բոլոր սերունդների հետ։ Քեռու անմահության գաղափարը կա և հայ հեքիաթներում։*

*Եվ վերջապես Առածանիում կարելի է կարդալ չափազանց բնորոշ մի արտահայտություն. «Քեռուն մալը եգյանինն ա»։*

*Դա մայրական գծով ժառանգության փոխանցման հարատևած հիշողություն է։*

*Երբ արդեն ճանաչվեց հայրը, քեռորդին իր տեղը պետք է որ զիջեր, սակայն ինչ մատծ է կենցաղում և հոգեբանության մեջ չի կարող այդքան հեշտ մոռացվել, և դեռ երկար պայքար էր գնում հին ու նոր ժառանգորդների միջև, և հաստատվում էր որդու իրա-*

---

4 „Корнелия Тацита о положении, обычаях и народах Германии", § 20 ("Сочинения П. Корнелия Тацита", часть первая, М., 1870), էջ *239*։

5 Ա. Ղանալանյան, *Առածանի, Երևան, 1960*։

վունքը։ Այդ պայքարը միաժամանակ տանում էր մայրական իրավունքի դանդաղ մահացման[6]։

Այդ մեծ դրամայից մի արարված արձանագրվել է մեր թվագրությունից առաջ 17-րդ դարում։

Խեթերի արքա Խատտուսիլիս I-ը, որ գահ է բարձրացել շուրջ 1650 թվականին, հիվանդ վերադառնում է արշավանքից և գրում իր կտակը։

Կտակը պահպանվել է հին խեթերեն բնագրով և բաբելոնյան թարգմանությամբ։

«Այսպես ասաց մեծ արքան՝ լաբարնան, ժողովին, աստիճանավորներին և բանակին։

Նայեցեք, ես հիվանդացա։ Եվ այդ ժամանակ ես պատանուն ձեզ համար լաբարնա կոչեցի, ասելով՝ Թող նա նստի գահին։ Ես՝ թագավորս, նրան իմ որդին հայտարարեցի, գրկեցի նրան և բարձրացրի։ Ես մշտապես շրջապատեցի նրան հոգատարությամբ։ Բայց նա անարժան դուրս եկավ, որ մեծարեիք նրան։ Նա արցունք չթափեց և ցավակցություն չհայտնեց։ Նա սառն է և անուշադիր։

Այդ ժամանակ ես՝ թագավորս, բռնեցի նրան և բերի իմ մահճի մոտ։ Եվ ինչ։ Թող այսուհետ ոչ ոք չբարձրացնի իր քրոջ որդուն»[7]։

Խիկարի զրույցը կարծես այդ մեծ դրամայի կրկնօրինակն է։ Այստեղ լուծվում է միևնույն խնդիրը. քեռորդին պետք է ժառանգորդ լինի թե ոչ։ Չնայած Խիկարի ամեն ջանքերին, Նաթանը որդի չի դառնում։ Չի իրականանում աստվածների կանխատեսումը։ «Ես այսպէս կարծէի թէ ժառանգես զինչս իմ, բայց ըստ անօրէնութեան քում ոչ հաճեցաւ քեզ աստուած»,— ասում է Խիկարը։

Բայց նմանությունը զարմանալի է։ Թվում է զրույցի հեղինակը ծանոթ է լաբարնայի կտակին, որից և հղացել է իր թեման։

«Նրան իմ որդին հայտարարեցի, գրկեցի նրան և բարձրացրի

---

6 Այս պայքարի հիշողություն է հայ ժողովրդական շատ տարածված Նռանհատի հեքիաթը։ Քույրը իր ամուսնու՝ դևի հետ ուզում է սպանել եղբորը, բայց նրանց որդին՝ Նռանհատը փրկում է քեռուն և սպանում իր ծնողներին (տե՛ս «Հայ ժողովրդական հեքիաթներ», Երևան, հտ. X, 1967, էջ 83—88)։

7 *В. Замаровский*, Тайны хеттов, 1968, էջ 267—268։ Նույնիսկ նոր խեթերեն արձանագրություններում սովորաբար հիշատակվում է նախ՝ մայրը կամ տատը, ապա հայրը կամ պապը։ Խեթական օրենսդիր արքա Տելեպինուսը սահմանում է ժառանգության կարգ, որ ելնում է հայրական իրավունքից (տե՛ս *А. М. Кондратов, В. В. Шеворошкин*, Когда молчат письмена, М., 1970, էջ 125)։

Ես մշտապես շրջապատեցի նրան հոգատարությամբ»,— ասում է Խատուսիլասը։

«Եվ սնուցի զնա, և ագուցի նմա բեհեզս և ծիրանիս, և արկի մանեակ ոսկի ի պարանոց նորա և որպէս զորդի թագաւորի շքեղաշուք զարդարեցի զնա»,— ասում է Խիկարը։

Երբ Խատուսիլասը հիվանդ է, նրա քեռորդին չի ցավակցում նրան և արցունք չի թափում, սառն է ու անտարբեր։

Նաթանը անհոգ է իր մորեղբոր դժբախտության առթիվ. «Ոչ եղև նմա փոյթ լալոյ, այլ ժողովեաց զամենայն սիրելիս իւր ըմպել ղգինի և արար ուրախութիւն մեծ փոխանակ լալոյն»։ Նա նույնպես սառն է ու անտարբեր։

Խատուսիլասը արշավանքից վերադառնալով՝ պատժում է իր քեռորդուն։ Խիկարը եգիպտական ճամփորդությունից վերադառնալով՝ պատժում է իր քեռորդուն։

Ասորական բնագրի վերջին խրատը հնչում է չափազանց դաժան. «Վերցրու քո քրոջ որդուն և խփիր նրան ապառաժ քարին»։

Խատուսիլասի պատգամն ավելի մեղմ է, արտահայտում է օրենսդրի կշռույթ և արքայական վեհություն. «Թող այսուհետ ոչ ոք չբարձրացնի իր քրոջ որդուն»։

Հայ բնագրի վերջին խրատներից մեկն այսպես է. «Որդեակ, հաստատեա յառակսն, որ ասեն՝ Ծնիր և կոչեա որդի, գնեա և կոչեա ծառա»[8]։

Քեռորդու շուրջը ստեղծվել են և ուրիշ երկեր, որոնց օրինակները մենք գտնում ենք հայ միջնադարյան զրույցների և հեքիաթների մեջ.

«Այր ոմն ագնուական այնչափ էր իրաւասէր և արդարադատ, մինչ զի ի դատաստանի յերեսս մարդոյ ոչ ակնարկէր։ Սա երբեմն հիւանդացեալ ի մահիճս անկեալ դնիւր, ի մերձակայ սենեկի ղաղաղակ և զողբումն կնոջ լուաւ, և հարցեալ զպատճառն ոչ ոք իշխեաց զստոյգն պատմել։ Ապա զոմն ի սպասաւորաց իւրոց առաքեաց և սաստիւ պատուիրեաց նմա, զի ստուգութիւն իրին ասասցէ իւրեան։ Եւ նա ծանուցեալ ահիւ սյատասխանեաց, եթէ, քեռորդին քո կամէր բռնադատել զկին ոմն, և այս է պատճառ աղաղակին։ Ընդ որ յոյժ զայրացեալ իշխանն, հրամայեաց զօրականացն, զի կախեսցեն զքեռորդին։

Իսկ նոքա կեղծաւորեալ զքեռորդին, ասեն ցմիմեանս. Եթէ

[8] Սլավոնական բնագրում խրատն այսպես է. „Сыну, иже рекли суть въ повестяхъ оже родивше то сыном звать, а еже скотъ доявше, то холопом звать"։ Կա նաև առած. Не куплен—не слуга, а не рожден—не дитя.

սպանիցեմք զայս երիտասարդս մեծազգի և տէրն մեր, որպէս հաւատալի է, մեռանիցի, կամ զմեզ սպանցեն, կամ աքսորս առաքեսցեն։ Ապա ծանուցին երիտասարդին և խրատ ետուն, զի յերեսաց քեռոյն ուրեք թաքչիցէ։

Յետ քանի ժամուց մտին առ տէրն զօրականքն և ասացին, թէ զհրամանքդ կատարեցաք։

Հինգերորդ աւուր երիտասարդն կարծելով թէ քեռին զվնաս իւր անտես արարեալ, բացեալ զդուռն հայեցաւ, զոր իբրև հիւանդն ետես, մեղմաբար զնա առ ինքն կոչեաց, մեկ ձեռամբ զպարանոցէ նորա կալաւ և միւսովն զսուսերն ծածկաբար հանեալ, ի կոկորդն եհար։ Եւ այնպէս մեծաւ ողբով և հառաչմամբ սրտի զմեռեալն յարտաքս հանին։

Գործն այն յամենայն գաւառի յոյժ զարշելի թուեցաւ, նաև իշխանին ցաւ ի վերայ ցաւոցն առաւելեալ։ Իբրև հիւանդութիւնն զօրացաւ, առաքեաց առ եպիսկոպոսն, հայցելով զսուրբ խորհուրդըն։ Որ իբրև եկն, մեծաւ զղջմամբ խոստովանեցաւ զամենայն մեղս իւր, բայց զսպանումն երիտասարդին լռեաց։ Ընդ որ բարկացեալ եպիսկոպոսն ասէ. Վասն էր զմարդասպանութիւնդ թաքուցեր և զքեռորդին քո սպաներ։

Եւ նա ասէ, Միթէ այն մեղք էին։

Ասէ եպիսկոպոսն. Կարի յոյժ։

Պատասխանի ետ իշխանն. Ես զայն ոչ համարեմ ի մեղս, և ոչ վասն այնորիկ խնդրեցից թողութիւն ի տեառնէ։

Ապա եպիսկոպոսն ասէ. Եւ ես ոչ տաց քեզ զհաղորդութիւնն, մինչև խոստովանեսցիս զայն մեղս։

Յայնժամ իշխանն ասէ. Գիտես, հայր սուրբ, զի ես ոչ եթէ ոխակալութեամբ զնա սպանի և կամ ի պայրացմանէ սրտիս, այլ միայն վասն երկիւղի աստուծոյ և ի ցանկութենէ արդարութեան։ Ոչ երբէք ոք այնչափ սիրեաց զքեռորդի իւր, որպէս ես զնա սիրեցի։ Եթէ ոչ տացես ինձ զմարմին տէրունական, ես զհոգի և զմարմին իմ ի նա յանձն առնեմ։

Զայս արար սակս օրինակի, մի գուցէ ընդդէմ արդարութեան և դատաստանի երևեսցի ինչ պակաս գործել։

Զև ևս եպիսկոպոսն ընդդէմ սեմ դրանն անցեալ էր, հիւանդն ձայնեաց առ նա, ասելով. Դարձիր, հայր սուրբ, դարձիր, տես, թէ իցէ մարմին տէրունական ի մաննատուփին։

Զոր իբրև եբաց և ոչինչ եգիտ, ասէ ցնա իշխանն. Ահա, զոր դու հրաժարէիր տալ ինձ, նոյն ինքն ոչ հրաժարեցաւ յինէն։

Եւ երևեցաւ սուրբ խորհուրդն ի բերան նորա։ Եւ կատարեցաւ

*առ նա, զոր ինչ աստուածային գիրք ասեն. Սիրեցէք զարդարութիւն ոյք դատէք զերկիր»*[9]։

*Զրույցը խիստ քրիստոնեական բնույթ ունի, ժառանգության հարցը մթագնվել է, սակայն այստեղ ևս խաբված մորեղբայրն է («Ոչ երբեք ոք այնչափ սիրեաց զքեռորդի իւր որպէս ես զնա սիրեցի»), որ Խիկարի պես դաժանորեն է վարվում իր քեռորդու հետ և արդարացվում*[10]։

*Զրույցը նույնքան կատաղի թշնամանք է հարուցում քեռորդու դեմ։*

*Հայ Առածանիի մեջ մեր հիշած արտահայտությունների կողքին կարելի է և կարդալ. «Եղբոր տղա՝ ջան տղա, քրոջ տղա՝ շան տղա»։*

*Բայց ահա և դրա հակառակը.*

*«Էր թագաւոր մի և ոչ ունէր ժառանգ աթոռոյ իւրոյ, ոչ աղջիկ և ոչ՝ կորիւն, բայց քուրոջորդի մի միայն ունէր, և զնա կամեցաւ առնել ժառայ ի թագաւորութեան իւրոյ, զի թագաւորն ըզնա յոյժ սիրէր։*

*Եւ էր իմաստուն մանուկն այն և կարի աղօթասէր։ Եւ զայրացաւ ընդ բարութիւնն նորա և ընդ թագաւոր լինելոյ նորա մեծ այր մի։ Հնարս իմացաւ, թէ որպէս չարախօսեսցէ զքուրոջորդին առ թագաւորն, զինք կալցէ յետ թագաւորին զթագաւորութիւնն։ Եւ օր մի ասէ ընդ քուրոջորդին թագաւորին թէ. Ով մանուկ, բերանդ քո հոտեալ է, և դու չգիտես, և նստիս դու առ թագաւորն, և նա բարկանայ քեզ։*

*Եւ մանուկն, որ ազգական էր թագաւորին, ասաց. Ես այլ ոչ նստիմ առ թագաւորն՝ քեռին իմ, և թէ նստիմ, զերեսս դարձուցանեմ ի նմանէ, որ ոչ առնու ըզհոտ բերանոյս։*

*Եւ յորժամ զայս ասաց մանուկն, երթայ նայլիպն չարախօսեսցէ առ թագաւորն և ասէ թագաւորին, թէ. Քո քուրոջ որդին չար խորհի*

---

[9] *«Էջեր հայ միջնադարյան գեղարվեստական արձակից»*, էջ 72—74։

[10] *Ժառանգության հարցը ավելի հստակ է պահպանվել միջնադարյան մի այլ զրույցում. «Էր ոմն փարթամ և յոյժ մեծատուն, ամենայն բարութեամբ լցեալ եւ ունէր ժառանգ կենաց իւրոց զորդի քուրն իւրոյ»։ Նա հիվանդանում է և կանչում ժառանգին խորհուրդներ տալու։ «Եւ նա եկեալ նստաւ առաջի նորա, և ըզգլուխն իւր էած ի ծոցին խրում»։ Բայց քեռորդին նրա խրատները չի լսում և խոսում է բոլորովին այլ բաների մասին։ Մորեղբայրը խիստ վրդովվում է և զրկում նրան ժառանգությունից. «Ահա, որդեակ, յայսմ հետէ ստար ես դու յինէն և ելցես ի ժառանգութենէ իմմէ վասն անմտութեան քո» (Ձեռ. 8356, էջ 73ա, Մառ, Բ ,էջ 39, Գ, էջ 81,* **Ա. Սրապյան** *Հայ միջնադարյան զրույցներ, Երևան, 1969, էջ 267—268)։*

*քեզ վասն թագաւորութեանն քո, զի առցէ զքո թագաւորութիւնդ, մինչ կենդանի ես դու։ Եւ սաէ թագաւորն. Որով գիտացից։ Եւ նա ասաց, թէ. Յորժամ առ քեզ գայ, մօտ քեզ ոչ նստի և թէ նստի՝ ի յերեսս քո ոչ հայի, այլ դարձուցանէ ի քէն զերեսն իւր ի յայլ դին։*

*Եւ թագաւորն ըստ սովորութեանն իւր կոչեաց զքուրոջորդին առ ինքն, և նա ոչ գնաց։ Եւ յորժամ նա ոչ գնաց, կրկին կոչեաց թագաւորն և ստիպեաց նստիլ մօտ առ ինքն, զի ստուգէ զբանն նայիպին։ Եւ նա նստաւ մօտ թագաւորին, և նա դարձոյց զերեսն ի թագաւորէն վասն հոտոյ բերանոյ իւրոյ։*

*Յայնժամ թագաւորն երկմիտ եղև և կամէր սպանանել զքուրոջորդին և յայտնի ոչ կամէր, զի քուրոջորդի էր, այլ գիր ուղարկեաց առ այն վերակացուն, որ յերկաթիքան էր։ Եւ գիրն այն գրեալ էր թէ. Առաջին մարդն, որ գայ առ քեզ, ի կրակն ձգեցէք, որ այրի։ Եւ թէ սաէ, թէ. Ես թագաւորի քուրոջ որդին եմ, կամ նայիպն եմ, մի լսէք, ի հուրն արկէք։*

*Եւ յուղարկեաց զքուրոջորդին ի յերկաթիքանն և ի քուրայն։*

*Եւ յորժամ երթայր քուրոջորդին թագաւորին, եհաս յերեկոյին ժամն ի մէջ յերէզին միոյ յանմարդաբնակ տեղի մի և լսեց զձայն ժամահարի և ասաց ի միտս իւր, թէ. Աստուած է թագաւոր թագաւորաց, զաստուծոյ հրամանն պարտ է կատարել և ապա զիմ թագաւոր քեռոյն։ Եւ գնաց եկաց աղօթս և եկաց զգիշերն անդ և աղօթեաց առ աստուած։*

*Եւ ելեալ չարախօս նայիպն այն և ձիովն ի վաղ գնաց ի յերկաթիքանն, թէ ոչ է ձգած զթագաւորի քուրոջորդին ի կրակն, նա ինքն տայ ձգել։ Յայնժամ առին զինքն ձգեցին ի մէջ կրակին, որ այրեցաւ»*[11]։

*Բավական մեծ նմանություն կա Խիկարի սյուժեի հետ։ Թագավորը ժառանգ չունի և վերցնում է քեռորդուն, բայց դավում են նրա դեմ։* Եւ անմեղութիւնն իմ ապրեցոյց զիս,— *այս խոսքերը, որ Խիկարինն են, այստեղ կարող է ասել Նաթանը՝ քեռորդին։*

*Երկուսն էլ՝ ինչպես տեսնում ենք, միջնադարյան զրույցներ են, բայց շատ ավելի հին թեմաներով։ Մերժվում կամ պաշտպանվում է քեռորդու դատը։*

*Պապիրուսներում սակայն հիմնական գաղափարը ասվեց որ որդու դավաճանությունն է, որդու ապերախտությունը։ Նաթանը Խիկարի հարազատ որդին է։ Այս դեպքում արդեն սյուժեի զարգացման համար բոլորովին էլ անհրաժեշտ չեն այնպիսի մանրամաս-*

[11] *«Էջեր հայ միջնադարյան դեղարվեստական արձակից», էջ 58—60։*

նություններ, ինչպես արու զավակ չունենալը, աստվածներին դիմելը, բագին կառուցելը և այլն։

Առաջին խմբագրության մեջ դրանք պետք էին, որպեսզի ցույց տրվեր, որ Խիկարը որդի չունենալու պատճառով ստիպված էր Նաթանին որդեգրել, բայց նա չի կարող փոխարինել որդուն։

Այստեղ Խիկարը նույնիսկ երկու տղա ունի։ Նաթանը ավագն է, ուրեմն ժառանգորդը, որին նա զրկում է իրավունքից։ Վրդովված Նաթանը խարդավում է հոր դեմ, բայց չի հաջողում։ Խիկարը հայրաբար ներում է նրան, տալով իմաստուն խրատներ։

Այսպիսի տեսք ունի զրույցն էլեֆանտինյան պապիրուսների մեջ դեռևս մեր թվագրությունից առաջ 5-րդ դարում։

Նյոլդեքեն առավելություն է տալիս պապիրուսների ընթերցմանը, ուր Նաթանը հարազատ որդին է։ Դուրնովոն համաձայնվում է նրան.

«Որդու փոխարինումը քեռորդիով հասկանալի է,— գրում է նա,— այնքան որքան ավելի հարմար է պատկերել ապերախտ քեռորդուն քան որդուն»[12]։

Դա ճիշտ չէ։ Ընդհակառակը, ավելի հարմար է պատկերել ապերախտ որդուն, քան քեռորդուն, որովհետև հարազատ որդու ապերախտությունը ավելի ծանր է և ավելի արտահայտիչ, քան օտարի և ապա՝ դա կարող էր գալ հին աշխարհում կառավարող մարդկանց շատ ծանոթ և հաճախ պատահող օրինակից։ Հենց Ասորեստանի ահեղ տիրակալը՝ Սենեքերիմը մեռնում է իր որդիների դաղտնաբար մերկացրած դաշույնով։ Բացի այդ, սյուժեն հարմարության համար չի փոխված, այլ զարգանում են տարբեր թեմաներ։

«Հակառակ փոխարինումը,— շարունակում է Դուրնովոն,— ավելի դժվար կլիներ, այնքան որքան Ախիկարի գրքի հետագա խմբագրություններում Նաթանի ապերախտությունը ամուր կապված է այն բանի հետ, որ նա քեռորդի է և ոչ՝ հարազատ որդի և ապա՝ այդ մանրամասնության հետ կապված են և ուրիշները. Ախիկարի անզավակությունը, նրա դիմումը աստվածներին և այլն»[13]։

Բայց դա խոսում է վարկածի դեմ։ Միթե ավելի դժվար չէր հենց այդ փոփոխությունը (որդու փոխարինումը քեռորդիով), քանի որ իր հետևից պետք է քարշ տար այդքան մանրամասնություններ։

---

12 *Н. Дурново*, К истории повести об Акире, էջ 70։

13 Նույն տեղում։

Այո, տեղի է ունեցել հակառակը, այսինքն քեռորդին զիջել է որդուն, և պապիրուսների ընթերցումը հետամուտ է[14]։

Ինչպես տեսանք, երկու խմբագրություններում զարգանում են տրամագծորեն տարբեր թեմաներ։

Մորեղբոր և քեռորդու թեման ավելի հին է, որովհետև կապված է մայրական իրավունքի հետ։ Խիկարը պահանջում է արու զավակ, որ ժառանգէր զինչս իմ, նշանակում է զրույցի ծագումից առաջ, թերևս վաղուց արդեն ժառանգում էր որդին, բայց դեռ մեծ էր քեռորդու իրավունքը և նրան փոխարինելու սովորույթ կամ հնարավորություն կար։ Զրույցը ծագել է հենց դա մերժելու անհրաժեշտությունից։ Իսկ որդու դավաճանությունը միշտ էլ եղել է, բայց երբ իբրև ժառանգորդ արմատավորվում էին նրա իրավունքները, որդու ապերախտության թեման առաջ մղվել չէր կարող։

Բայց քեռորդու դեմ կիրքը չէր կարող տևական լինել։ Նա, միևնույն է, վտանգ չէր սպառնում։ Բանահյուսության մեջ քեռորդու և մորեղբոր լավագույն հարաբերությունների պատկերացումը ցույց է տալիս, որ թշնամանքը քիչ է հետք թողել։ Ահա թե ինչու զրույցի թեման կարող էր փոխվել կամ մթագնվել։ Այդպես, Սմիթի արաբական խմբագրության մեջ քեռորդու և մորեղբոր հարաբերությունը շփոթվել է հին և նոր սերունդների պայքարով. «Օ, որդյակ իմ, արծվի ծերությունը լավ է, քան ագռավի երիտասարդությունը», Եզովպոսի օրինակում Ենոսը ազնվականի որդի է, իսկ ղփչաղերեն խմբագրության մեջ՝ հորեղբոր տղա։

Իսկ հայրերի և որդիների հարաբերությունը հայրական իրավունքի շրջանում միշտ էլ կարևոր և ուշադրություն պահանջող խնդիր է։ Այն կապված է սերնդակցության գաղափարի հետ և բանահյուսության մեջ արտահայտվել է հետաքրքիր ու բարդ դրսևորումներով։ Մհերը կարող է որդի ունենալ, եթե նույն օրը մեռնեն նա և իր կինը, կարծես սերնդի հարատևությունը պայմանավորվում է սեփական ոչնչացմամբ։ Դավիթը անպարտ է, բայց նրան գուշակել են, որ պետք է սպանի իրենից ծնվածը, Ռոստամը գտնում է Զոհրաբին, Արտավազդը հոր իրավունքը թյուրելու համար կրում է խստագույն պատիժ։

---

14 Որոշ բանասերների թարգմանությամբ Նաթանը Ախիկարի քրոջ որդին է։ Ցրանսուա Նոն 9-րդ տողը կարդում է այսպես. «[Դրա փոխարեն որդին] քրոջս, որին ես մեծացրել էի, ինձ [վատություն] արեց» («Documents», էջ 95)։ Այդ դեպքում, պարզ է, որ համառոտված են պապիրուսները, որովհետև քրոջ որդու հանգամանքի հետ սյուժեի մեջ անհրաժեշտ են դառնում որոշ գործողություններ։

Այո, հոր և որդու հարաբերության խնդիրը շատ ավելի կենտական է, և եթե նախապես գրույցի թեման դա լիներ, չէր կարող փոխվել։ Մինչև պապիրուսները (մեր թվագրությունից առաջ 5-րդ դար) գրույցն հյուսվել է քեռորդու շուրջը։

Բայց շարունակենք։

Պապիրուսների նախնական բնույթը ենթադրվում է նաև նրանով, որ այդտեղ գրույցը համառոտ է և պարզ, խրատները կուտակված են մի տեղում, լեզուն ավելի հնաբույր է և արձանագրային, Սարհադոնի և Սեննեքերիմի տեղերը չեն շփոթված։

Իհարկե, ճիշտ է, պապիրուսները գալիս են մեր թվագրությունից առաջ 5-րդ դարից, առանց հետագա միջամտության և հենց իբրև 5-րդ դարի երկ, պետք է որ ավելի հին լիներ և պահպաներ նախնական ընթերցումներ, քան մեր խմբագրությունը, որ շուրջ երկու և կես հազարամյակ ճամփորդել է, թողնելով գրչական ընդօրինակությունների մի անծայր հետագիծ։

Սակայն բնագիրը կամ աղբյուրը կարող է ավելի ուշ շրջանի լինել, բայց որևէ հին բնագրի նկատմամբ պահպանել լավագույն և նախնական ընթերցումներ։ Մենք այդ հաճախ էինք տեսնում, երբ համեմատում էինք մեր տարբերակները։ E-ն ուշ շրջանի է, ամենից ավելի բարբառայնացված և աղավաղ, բայց այնտեղ պահպանվել են հնագույն ընթերցումներ, որոնք չկան մյուս խմբերում և հաստատվում են G-ով։ G-ն $A_1$-ից քառորդ դարով ուշ է և դարձյալ խաթարված, բայց ունի ընթերցումներ, որ նախնական են բոլոր խմբագրությունների համեմատ (ասորական, արաբական և այլն)։ $A_1$ բնագիրն ամենահինն է, բայց այն բաց է թողնում գրույցի մուտքը, իսկ պատմությունն արտահայտում միայն մի քանի բառով, բայց խրատների շարքը և այլ շատ գծեր մնացել են անվթար։

Այդպես և էլեֆանտինյան պապիրուսները կարող էին արդեն խմբագրված լինել և հեռացած նախօրինակից, իսկ մեզ հասած խմբագրությունը հետամուտ թանձր շերտի տակ պահպաներ հնագույն և ավելի ճիշտ ընթերցումներ։

Պապիրուսների մուտքն ավելի համառոտ է, չունի որոշ մանրամասնություններ, որ պայմանավորված է թեմայով։

Բայց գրույցի երկրորդ մասը, հատկապես եգիպտական արկածների բաժինը, որ նույնպես չկա պապիրուսներում, թեմայի հետ կապ չունի։ Միևնույն է, գրույցի հերոսը որդին է թե քեռորդին, այդ դրվագները կարող էին լինել և չլինել։

Դրա լավագույն օրինակն է $A_3$, $A_4$ ձեռագրերի ընթերցումը։

Այստեղ մեծ հաջողությամբ համառոտվել է և շատ արագ կամուրջ է ստեղծվել ուսուցող և առակավոր խրատների միջև. չխաթարելով սյուժեն.

«Զայս ամենայն ուսուցանէի Նաթանայ քեռորդւոյ իմոյ ես՝ Խիկար դպիր, այսպէս կարծելով, թէ զուսումս զայս, զոր ուսուցի Նաթանայ, պահեսցէ ի սրտի և կացցէ ի դրան արքունի, և ոչ գիտացի, թէ զբանս իմ անտես առնէ: Եւ նա հոսեաց զբանս իմ որպէս փոշի ընդ հողմոյ:

Զայս եղեալ ի մտի, թէ հայրն իմ Խիկար ծերացեալ է և հասեալ է յափն գերեզմանին, զառանցեալ են միտքն իւր և դողացեալ են ամենայն մարմինն: Եւ սկսաւ Նաթան վատնել զինչս իմ և կորուսանել: Ոչ խնայէր ի ծառայս և յաղախնեայս իմ և կապեալ չարչարէր զնոսա, ի հարուածս սաստիկս կոտորեալ սատակէր զերիվարըս իմ, զձիս և զջորիս:

Յայնժամ ես՝ Խիկար, յորժամ տեսի զայս ամենայն, թէ Նաթան զգործս իմ այլայլեաց, խնայեցի զինչս իմ, զի մի կորայց, և սկսայ խաւսել Նաթանայ և ասեմ. Յինչս իմ մի մերձենար, վասն զի ասացեալ է յիմաստնոց, թէ ձեռք որ ոչ են վաստակել՝ ակն մի խնայեսցէ:

Եւ երթեալ պատմեցի Սենեքարիմ արքային: Եւ հրամայեաց Նաթանայ և ասէ. Որչափ հայր քո Խիկար կենդանի է, յինչս նորա մի մերձենար: Եւ նա ոխացեալ, մահու սպասէր անձին իմոյ:

Եւ իմ գիտացեալ, զեկուցի արքային, և նա ետ զՆաթան ի ձեռս իմ, թէ արա որպէս և կամիս և մի ոք իշխեսցէ հանել ի ձեռաց քոց:

Եւ իմ առեալ զՆաթան, արկի ի բանդ և եդի զմի ի ծառայիցն իմոց պահապան, զի զոր ինչ ասեմ գիտիցէ»:

Ահա ամբողջը:

Այդպես կարող էր լինել և նախնականում, որտեղ թեման հյուսված է եղբորորդու շուրջը և փոխանցվեր պապիրուսներին, կամ նույն ձևով կրճատվեր պապիրուսների մեջ:

Ինչպես տեսնում ենք, պապիրուսների պատմողական մասի համառոտ բնույթը ևս, եթե ընդունենք որ նախնական է, որդու թեմային առաջնություն չի ապահովում:

Բայց արդյո՞ք նախնական է:

Զրույցի մեջ պետք է տեղի ունենային սյուժեի համար պարտադիր որոշ գործողություններ, որոնք չկան պապիրուսներում: Պարզ չէ, թե ինչպես շնորհազրկված Խիկարը նորից շահեց իր արքայի վստահությունը: Ուրեմն բնագիրը մեզ չի հասել լրիվ և չգիտենք մյուս դրվագները եղե՞լ են, թե ոչ:

Ամեն դեպքում որոշ մանրամասներ հաճախ ավելի հին են և մուտք են գործել թերևս պապիրուսների խմբագրությունից ոչ ուշ։

Ընդունված է, որ զրույցի հեքիաթային տարրը պետք է հետագա ընդմիջարկում լինի, ինչպես, օրինակ, երկնքում տաճար կառուցելու խնդիրը։

Նախամայր բնագրի մեջ կարող էր չլինել, բայց զրկել այդ դրվագը վաղեմությունից պետք չէ։

Հին աշխարհը և միջնադարը հղի էին հրաշքներով, և մարդու միամիտ, բայց անհանգիստ երևակայությունը ագահորեն դրանով էր սնվում։ Բուզանդը ապրել է իր պատմած դեպքերից ամենաուշը մեկ դար հետո, իսկ Ագաթանգեղոսը՝ թերևս մի փոքր ավելի, բայց նրանք գրի են առել արդեն վիպականացած պատմություն։ Խորենացին հավատում է, որ իր ուսուցչի համար տառերը գրվեցին աստվածային ձեռքով, իսկ ամբողջ Հին և Նոր Կտակարանի բազմաթիվ էջեր գեղեցիկ հեքիաթ են, որ հավատ էին ներշնչում։ Որևէ ասորեստանցի թերևս 6-րդ կամ 5-րդ դարում կարող էր երևակայել, որ հեռավոր Եգիպտոսում Խիկարի վարժեցրած մանկտիք արծվի մեջքին երկինք են բարձրացել, մանավանդ պատկերն անսովոր չէ։

Ասորական աղյուսների մի շարք պատմում է Էտանի մասին։ Նրա կինը ծանր երկունքի մեջ է։ Արևի աստվածը խորհուրդ է տալիս ինչ-որ տեղից բերելու մի բույս, որ կարող էր ազատել ծննդկանին։

Էտանը նստում է արծվի վրա և թռչում լեռներից այն կողմ, ձեռք բերելու փրկարար բույսը[15]։

Մի այլ պնակիտ պատմում է Էտանի ողբերգական մահը։ Իշտարը թշնամացել է նրան։ Էտանը արծվի մեջքին թռչում է երկինք և հրապուրվելով այնքան է բարձրանում, որ հասնում է Իշտարի իշխանության սահմանները, իսկ այնտեղից վայր ընկնում[16]։

Նկատենք, որ արծիվը բավական դեր ունի և մեր զրույցի մեջ։ Մանուկները թռչում են արծվի վրա։ Խիկարը ճակատամարտ է տալիս Արծվյաց դաշտում։ Դա ևս հատուկ է ասորաբաբելական աշխարհին, որտեղ արծվի պաշտամունք կար[17]։

---

15 *Д. Бойка*, Древняя Ассирия, картины из ее жизни, сказания о богах и героях. С английского перевел М. А. Дьяконов, М.—Л., 1922, էջ 77։

16 Նույն տեղում, էջ 78։

17 *С. Песоцкий*, Гадания у древних Ассиро-вавилонян, էջ 113—114 («Труды Киевской духовной академии», 1901, май, год XII, кн. V).

*Հանդերձավորմամբ փարավոնի առաջադրած հանելուկները նույնպես հնագույն ծագում ունեն։*

*Մարդիկ տարբեր միջոցներով նմանարկում էին բնության երևույթները, վերակրկնում և հաղորդակից լինում նրա հետ, ավելի ճիշտ՝ այդպես ձեռք էին բերում նրա ուժը, ենթադրելով, որ իրենք էլ դառնում են բարձր կամ անհաս հատկության կրողը։ Այդտեղից են գալիս խորհրդավոր միստերիաները, մարմնի բազմաձև կտածումները, գունավորումները, պճրանքը։*

*Փարավոնն ուղղակի ուզում է իմանալ. հասու է արդյոք Խիկարը, թե ինչ խորհուրդ է պահված նրանց տարբեր հանդերձավորման մեջ։*

*Որ արքայական պալատներում հատուկ հանդերձավորմամբ խորհուրդներ էին արտահայտում, ցույց է տալիս շատ հին և հետաքրքիր մի օրինակ.*

*Ֆրանսիական հնագետները պեղումների ժամանակ ոչ շատ վաղուց գտել են մի բևեռագիր նամակ, որ Համմուրաբիի պալատից հղել է Մարիի[18] Ծիմրի Լիմ թագավորին նրա ծառայողը.*

*«Մտանք դահլիճ։ Հագցրին զգեստներ։ Կային ոմանք Յամհրատից... Նրանք ամենքն էլ զգեստավորվեցին։ Եվ որովհետև բոլոր յամհրատցիները զգեստավորվեցին, իսկ իմ տիրոջս ծառաները՝ ոչ, ես նրանց փոխարեն այսպես բողոքեցի... Ինչու ես մեզ նախատում իբրև արհամարհելի անձեր...*

*Իմ տիրոջս ծառաներն էլ զայրացան և դուրս ելան բողոքեցին Համմուրաբիին, որի հետևանքով նրանք էլ հագցվեցին։*

*«Ես նրանց, որ ինձ հաճելի են, կհագցնեմ և հագուստ չեմ տա նրանց, որ հաճելի չեն ինձ։ Ուրիշ անգամ չեմ վերադառնա և կոչունքի պատգամավորներին չեմ հագցնի»։ Այսպես ասաց Համմուրաբին։ Այս բանը իմ տերը թող գիտենա»[19]։*

*Նամակը շուրջ 3700 տարվա վաղեմություն ունի և արտահայտում է միևնույն աշխարհի սովորույթները։*

*Հանդերձավորմամբ որևէ խորհուրդ արտահայտելն այնքան խորն է մտած կենցաղի մեջ, որ Համմուրաբին և փարավոնը իրենք են հագցնում արարողության մասնակիցներին։*

---

*Պետցկին ենթադրում է, որ արծվի թռիչքով և արտաբերած ձայներով ատրաբաբելացիները գուշակություններ էին անում։ Եթե դա ճիշտ է, արդյոք այդպիսի մի վայր չի եղել Արծվյաց դաշտը, որտեղ հրավիրում են Խիկարին նրա դավաճանությունը ստուգելու։*

18 *Քաղաք Միջագետքում, այժմյան Թել-էլ-Հարատի անապատի շրջանում։*

19 *«Բազմավեպ», 1964, էջ 121։ Բերում ենք արևելահայերենով։*

Ս. Ն. Կրամերը իր ընթերցած հնագույն պոեմներից մեկն անվանել է «էնմերկարը և Արատտայի կառավարիչը»։

Բանաստեղծը պատմում է, թե ինչպես Ուրուկի և Կուլաբի տիրակալ էնմերկարը դեսպան է հղում հեռավոր Արատտայի կառավարչին, պահանջելով հնազանդություն։ Նա հրաժարվում է։ էնմերկարը նորից է դեսպան հղում։ Արատտայի կառավարիչը խորհում է, որ Ինաննան՝ սիրո և պատերազմի աստվածուհին, երես է թեքել իրենցից, բայց առաջարկում է խնդիրը լուծել մենամարտի միջոցով։ Պարզ կդառնա ով է ուժեղագույնը։

Մարտահրավերը սակայն արված է չափազանց մշուշոտ արտահայտություններով։ Այնտեղ ասվում է, որ մենամարտի համար ընտրված մարտիկը չպետք է լինի «ոչ սև, ոչ սպիտակ, ոչ դեղին, ոչ շագանակագույն, ոչ բծավոր»։

«Այս ամենի մեջ, եթե խոսքը գնում է իրեն՝ մարտիկի մասին, դժվար է որևէ միտք որսալ»,—նկատում է Կրամերը։

Սակայն էնմերկարի պատասխանից, որ ընդունում է մարտահրավերը, կարծես հասկանալի է դառնում առաջարկության իմաստը։ «Այստեղ մարտիկ բառը փոխարինված է հագուստ բառով։ Ըստ երևույթին խոսքը գնում է զգեստի մասին և ոչ թե զինվորի արտաքինի»[20]։

Այդպես է։ Եվ ահա թե հին աշխարհում որքան մեծ նշանակություն է ունեցել զգեստավորումը և գույնը և ինչ մեծ խորհուրդ է պարունակել իր մեջ։ Իսկ շումերական քաղաքակրթության առաջին և ուղղակի կրողները ասորաբաբելացիներն էին։

Փարավոնի առաջադրած մյուս խնդիրը ևս մեզ հասել է մթագնված ձևով, բայց մեծ վաղեմություն ունի։

Փարավոնը հարցնում է Խիկարին. «Ձի՞ է, երիվարք ձեր խրխնջացին յԱսորիս, լուան կուռք մեր և վրիժեցան» (վիժեցան— Ա. Մ.)»:

Խիկարը դուրս է գալիս, բռնում է մի աքիս և տանջում։ Երբ փարավոնը հարցնում է պատճառը, Խիկարը պատասխանում է, որ աքիսն իրեն մեծ վնաս է հասցրել, այս գիշեր գնացել է Ասորեստան, խեղդել իր աքաղաղին և հետ եկել։ Փարավոնն ասում է. «Ինձ այնպէս թուի, թէ որչափ ծերացար, իմաստութիւն քո անհամացաւ։ յԵգիպտոսէ մինչև յԱսորիս 3 և 4 խրախս է, զիա՞րդ գնաց աքիսդ յայսմ գիշերի և խեղդեաւ զաքաղաղն, եկ այսր»:

[20] С. Н. Крамер, История начинается в Шумере, М., 1965, էջ 34—35։

«Եթէ գիտես, որ յԵգիպտոսէ յԱսորիս այսչափ ճանապարհ է,— պատասխանում է Խիկարը,— ապա գիա՞րդ լուան կուռք ձեր գխրխնջիւն երիվարաց մերոց և վրիժեցան»։

Պետք է ուղղակի մտածել, որ խնդիրը նախնաբար այդպես չէր, որովհետև եթե Խիկարի արարքը փարավոնին թվում է անմտություն, ապա ինքը ևս այդպիսի հարց չէր առաջադրի։

«Առասպելի հնագույն նշանակությունը ձեռագրում մոռացվել է,— գրում է Բեզսոնովը,— ուստի փարավոնի խնդիրը թվում է անբնական, և Ակիրը մերժում է մի ուրիշ անբնական խնդրով»։

Այդ նշանակությունը փորձում է պարզել Բեզսոնովը, բացահայտել նրա բնույթը, և դա մեր կարծիքով հիանալի հաջողվել է նրան։ Բեզսոնովը ցույց է տալիս, որ առասպելը վերաբերում է արևի մայր մտնելուն, արևային օրվա կամ տարվա տևողությանը և անցմանը.

«Խնդրի իմաստն այն է,— գրում է նա,— թե ինչով է կապվում Արևմուտքը Արևելքի հետ և դա ինչ արագությամբ է կատարվում»[21]։

Արևմուտքը Արևելքի հետ...

Հօգուտ այս գեղեցիկ վարկածի մենք կարող ենք բերել արտահայտիչ մի փաստ վրացական հեքիաթից.

«Արևելյան թագավորը դեսպանների միջոցով հայտնեց Արևմըտյան թագավորին հետևյալը. Այստեղ իմ ձին վրնջաց, իսկ այդտեղ քոնը հղիացավ»։

Արևմտյան թագավորը չի կարողանում այդ խոսքերի իմաստն ըմբռնել։ Նա իր թագավորության կեսը խոստանում է այն մարդուն, ով կլուծի հանելուկը։ Հանձն է առնում մի երիտասարդ։ Նա ձիավորների խմբով մոտենում է Արևելյան թագավորի քաղաքին։ Երկու կիլոմետր հեռու նրանք նապաստակ են տեսնում և կանչում որսի շան, բայց ոչ մի շուն չի երևում։ Երբ մտնում են քաղաք, տղան հրամայում է բոլոր հանդիպած շներին սպանել։ Մարդիկ բողոքում են թագավորին.

«Քաղաքից երկու կիլոմետր հեռու,— արդարանում է տղան,— մենք շատ որսի հանդիպեցինք, իսկ շուն չկար։ Մենք բղավեցինք և կանչեցինք, բայց ոչ մի շուն չհայտնվեց»։

Թագավորը խիստ վրդովվում է և նրան անմիտ կոչում. «Միթե երկու կիլոմետրի վրա շունը կարող է քո կանչը լսել»։

---

21 „Песни, собранныя П. Н. Рыбниковым", часть II, М., 1862, էջ CCXVI:

«Տեր,— պատասխանում է տղան,— եթե այստեղ քո ձին վրնջում է, իսկ այնտեղ Արևմուտքի թագավորի ձին հղիանում, ապա միթե ձեր շները չէին կարող երկու կիլոմետրի վրա լսել մեզ»[22]։

Ինչպես տեսնում ենք, խնդիրը նույնն է, և նույն լուծումը։ Խնդիրը դիտվել է անբնական և թելադրվել անբնական լուծում։ Բայց ոչ թե վիճում են Ասորեստանի և Եգիպտոսի թագավորները, այլ Արևելքի և Արևմուտքի, որ ուղղակի ցույց է տալիս, թե հիրավի դա նախնաբար եղել է աստղաբաշխական առասպել։

Վիճող կողմերը հեքիաթի մեջ ավելի հին են (Արևելքի թագավոր և Արևմուտքի թագավոր), քան Խիկարի զրույցում (Սենեքերիմ և փարավոն), բայց առասպելի բովանդակությունը ճիշտ է պահպանված զրույցի մեջ։

Այս հեքիաթի օրինակը ցույց է տալիս, որ առասպելը գոյություն է ունեցել անկախ, իբրև վեճ Արևելյան և Արևմտյան թագավորների, թերևս աստվածությունների միջև, բայց հետո համակրցվել զրույցին և ոչ շատ ուշ, որովհետև առասպելի բովանդակությունը պահպանվել է գրեթե անաղարտ։

Ռուս բանահյուսության մեջ կա Ակիրի (Խիկար) զրույցի մի տարբերակ։ Ակիրը որդեգրի խարդավանքով բանտ է նետվում։ Մի թագավոր նրանց թագավորությանը հղում է հանելուկ. «У нас жеребцы ржут а у вас кобылы жеребятся» և սպառնում, որ եթե չլուծեն հանելուկը, կգա և բոլորին կայրի (Ежели они не разгадают загадку, грозил всех прибить и огнем сжечь):

Մարդիկ չեն կարողանում լուծել և խուճապի են մատնվում։ Մի դահիճ անցնում է բանտի մոտով։ Ակիրը հուշում է նրան. «Пойди, скажи царю, что какой-то старичонко ихней старушонкой женился и плод дали»[23].

Ինչպես տեսնում ենք, հարցը համարվել է այլաբանություն և ոչ թե անբնական։ Այլաբանություն է եղել և նախնականում, բայց այստեղ, իհարկե, վերաիմաստավորված է։

Այդպես, շատ դրվագներ, որ չկան պապիրուսների մեջ, հեշտությամբ չի կարելի հետամուտ համարել։

[22] „Сборник материалов для описания местностей и племен Кавказа", вып. 21, отд. II, էջ 88—90։

[23] „Сборник великорусских сказок архива Русского географического общества", вып. II, издал А. М. Смирнов, Петроград, 1917, էջ 757-758 („Записки Русского географического общества по отделению этнографии", т. XIУ, 2)։

Իսկ այն բոլոր ճիշտ ընթերցումները, որ պահպանվել են էլեֆանտինյան պապիրուսներում, նախնաբար եղել են, երբ Նաթանը Խիկարի քեռորդին էր։

Փորձենք հավաստել։

Ասորական S2 բնագիրն սկսվում է այսպես. «Սարհադոմի որդի-Սենեքերիմի, Ասորեստանի և Նինվեի թագավորի, 20-րդ տարում....»։

Ինչպես տեսնում ենք, հոր և որդու տեղերը շփոթված են։ Այդպես են նաև մյուս տարբերակները, Բոնիոնի ձեռագրի հետագա գրչությամբ օրինակը և այլն։

Շփոթում են և արաբական ձեռագրերը. «Սարհադոնի որդի Սենեքերիմ թագավորի օրերին կար մի իմաստուն»,—սկսվում է Ագնես Սմիթի բնագիրը, իսկ Սալհանիի բնագրում երբ Խիկարն իր որդուն ներկայացնում է Սենեքերիմ թագավորին, նա ասում է գոհությամբ. «Աղոթում եմ աստծուն, Խիկար, որպեսզի նա պահպանի քո որդուն, որ կարողանա ծառայել այնպես, ինչպես դու ես ծառայել ինձ և իմ հորը՝ Սարհադոմին»։

Սակայն Բեռլինի Զախաուի № 336 ձեռագիրը (ըստ Հարրիսի՝ S3) ունի ճիշտ ընթերցում։ Խիկարը որդեգրում է Նաթանին Սենեքերիմի թագավորության ժամանակ, բայց երբ Նաթանը դավադրում է մորեղբորը, Եգիպտոսի փարավոնին նամակ է գրում Սարհադոնի անունից։ Գրաֆենի օրինակի մեջ ավելի որոշակի է. «Ես՝ Ախիկարս շատ եմ աշխատել, ծառայել եմ նաև Սենեքերիմ թագավորի որդուն՝ Սարհադոնին»։ Բոնիոնի ձեռագրի հին գրչությամբ հատվածը համապատասխանում է Գրաֆենի օրինակին։

Այս բոլոր ընդօրինակությունները ազգակցական կապ ունեն մյուսների հետ և կարծում ենք նույն սխալը եղել է ընդհանուր նախագաղափարի մեջ, բայց որոշ ձեռագրերում ուղղվել գրչի կողմից։ Ինչպես տեսանք Gr-ի խմբագիրը նույնիսկ գիտեր Սենեքերիմի մահվան թվականը։ Հասկանալի է, նա կիմանար նաև, որ Սարհադոնը Սենեքերիմի որդին էր։

Այդպես, մի որոշ շրջանում սխալը եղել է տիրական։

Դա հեշտ բացատրելի երևույթ է և սովորական հատկապես բանահյուսության մեջ։ Երբ պատմական կամ վիպական մի դեմք մխրճվում է ժողովրդի հիշողություն, նույնիսկ դարերով հեռու մի ուրիշ գործչի արարքները հաճախ վերագրվում են նրան։ Այդպես է լինում և պատմագրության մեջ, երբ չկա ստույգ ժամանակագրություն։ Խորենացին Տիգրան Մեծի գործողությունները կա-

*պում է Տիգրան թագավորի հետ, որ ապրել է շատ ավելի վաղ, Կյուրոսի ժամանակներում*[24]*։*

*Սակայն այդ շփոթումը տեղի է ունեցել բավական ուշ, 2-րդ դարից հետո, մինչ մեր թվագրությունը, որովհետև Տովբիթի գրքի կազմողը (մ. թ. ա. 2-րդ դար) օգտվել է մի աղբյուրից, որ պատկանում է քեռորդու խմբագրությանը, իսկ Սեննեքերիմն ու Սարհադոնը իրենց դերերը չեն փոխել։*

*Այդպիսով պապիրուսների ընթերցումը բնագրին առավելություն չի տալիս։*

*Շարունակենք։ Նախնականում հավանաբար խրատները պետք է խմբված լինեին մի տեղում, ինչպես էլեֆանտինյան պապիրուսների մեջ։ Այդ դեպքում պետք է ենթադրել, որ ավելի հին է պապիրուսների սյուժեն, երբ ապերախտը որդին է և ոչ՝ քեռորդին և դրանից էլ կարող է հեռանել Խիկարի վճիռը։ Նա որդուն ներում է։*

*Սակայն սյուժեի այսպիսի զարգացումը, եթե նույնիսկ ընդունենք, որ ավելի հին է, դարձյալ չի ժխտում քեռորդու վարկածը։*

*Ինչպես հայտնի է Եզովպոսի կենսագրության երկրորդ մասը նույնն է Խիկարի զրույցի հետ։ Այստեղ Խիկարը Եզովպոսն է, Նաթանը՝ Եննոսը։ Եզովպոսը զավակ չունի և որդեգրում է մի ազնըվականի որդու։ Խրատները խմբված են մի տեղում, Եզովպոսը ներում է Եննոսին։ Ամբողջ հատվածը կրկնակի համառոտ է զրույցի համեմատ։*

*Ինչպես տեսնում ենք, հունական խմբագրությունը ևս, որ ավանդվել է Պլանուդեսի կողմից, ծագել է մի խմբագրությունից, որ ասորաբաբելականի հետ ուներ միևնույն թեման, բայց նաև՝ սյուժետային զարգացմամբ հիշեցնում է պապիրուսները։*

*Այդպես, եթե այդ հատկանիշները ևս դիտենք իբրև նախնական, դարձյալ զրույցի թեման չեն խախտում։*

*Սակայն Նաթանի ճակատագրի հարցն անմիջապես կապվում է թեմայի հետ։ Եթե նա Խիկարի քեռորդին է, պետք է որ անպատճառ պատժվեր, որովհետև Նաթանը մերժվում է իբրև ժառանգորդ. ընդհատվում է կապը։*

*Դա այնքան բնական էր թեմայի տրամաբանությամբ, որ հետագա ոչ մի խմբագրություն չի փոխել, չնայած անցել են քրիստոնեական միջնադարով.*

*«Խաւսել սկսաւ որդին ապերախտ և անհնազանդ և ասէ. Տէր իմ Խիկար և հայր բազմերախտ, արա ինձ ըստ ողորմութեան քում։ Աստուծոյ մեղանչեն մարդիկ, և թողու նոցա։ Եւ մի մեղանչեր*

[24] **Մ. Աբեղյան,** *Երկեր, հտ. Ա, Երևան, 1967, էջ 46։*

անձին իմոյ, և ես եղեց քեզ չար ծառայ, որպէս զմի յանցաւորաց քոց»։

Աղաչանքը չափազանց ազդու է, բայց մնում է անարձագանք։ Իսկ եթե որդին է, ներումը հասկանալի է դառնում, որովհետև խոսքը միայն ապերախտության մասին է, և Խիկարը կարող էր մեծահոգի լինել իր ժառանգորդի նկատմամբ։

Տովբիթի գրքի մեջ Նաթանը պատիժ է կրում. «Որդեակ իմ, տես դու որպէս արար Ադամ Աքիաքարայ, որ սնոյց զնա, որպէս ի լուսոյ տարաւ զնա ի խաւար, որչափ չար անցոյց ընդ նա, այլ Աքիաքարոս ապրեցաւ և նմա հատուցումն անդրէն հատուցաւ, և էջ նա փոխանակ նորա ի խաւարն»[25]։

Բայց Պլանուդեսի բնագիրը մի փոքր այլ է։ Եզովպոսը խրատներ է տալիս Եննոսին, և նա մեռնում է խղճի խայթից. «Այս խրատներս անանկ դիպան Եննոսին, որ նետի օդի պես սիրտը խոցեցին, մինչև խիղճմտանքի խայթելովը և Եզոբոսին սուր խրատները մտմտալով՝ շատ չանցավ մեռավ»։

Միևնույն է, Նաթանը դարձյալ պատիժ է կրում, և մեղմել է խմբագիրը։ Թերևս դա արված է Պլանուդեսի կողմից, որը Եզովպոսի կենսագրության առաջին կազմողն է, թերևս արդեն այդպես էր Պլանուդեսի ձեռքի տակ եղած աղբյուրում, բայց պետք է նկատել, որ այդ փոփոխությունը տեղի է ունեցել այն ժամանակ, երբ մթագնված էր մորեղբոր ու քեռորդու հարաբերությունը։ Եննոսը Եզովպոսի քեռորդին չէ, բայց և ոչ հարազատ որդին։

Պապիրուսներում, սակայն, երբ թեման փոխված է, հայրը ներողամիտ է հարազատ որդու նկատմամբ, որովհետև նա ոչ թե կանգնած է առհասարակ որդու, այլ վատ և ապերախտ որդու դեմ։

Այդ բոլորից մենք կարող ենք որոշ եզրակացությունների գալ։

Երկու ամենահին տարբերակները, որ հասել են մեզ. Տովբիթի գրքում, ակնարկների ձևով, և իբրև Եզովպոսի կենսագրություն, սերում են ասորաբաբելական խմբագրությունից։

Պլանուդեսն անշուշտ քաղել է ամենահայտնի աղբյուրներից, իսկ Տովբիթի գրքում այնպես ազատ է ակնարկներ արվում Խիկարի շուրջ, որ թվում է, թե խոսքը շատ տարածված և հայտնի երկի մասին է։

Այդ նշանակում է, որ և՛ հույն և՛ հրեա գրականություններում զրույցը ծանոթ է եղել ասորաբաբելական խմբագրության ձևով։

Էլեֆանտինյան բնագիրը մնում է միայնակ։ Եթե այն տարածված լիներ, ապա Տովբիթի հրեա հեղինակն անշուշտ այդ-

[25] **Տովբ.**, *ԺԴ—12*։

*տեղից կքաղեր իր օրինակները, որովհետև պապիրուսները գտնվել են հրեական համայնքում և ավելի կարող էին մատչելի լինել։*

*Բայց ինչ ծագում ունեն արամեական պապիրուսները։*

*Ֆրանսուա Նոն տեսնելով արամեական (A) և արևելյան (O) խմբագրությունների միջև մեծ տարբերություն, գրում է.*

*«Մենք առանց կասկածի կարող ենք եզրակացնել, որ O-ն և A-ն իրարից անկախ երկու խմբագրություններ են։ O-ն չի բխում A-ից և, նույնիսկ, O-ն և A-ն չեն գալիս նույն մի ընդհանուր գրավոր աղբյուրից»[26]։*

*Նոն կարծում է, որ երկու խմբագրությունների համար ընդհանուր է եղել բանավոր աղբյուրը. «Դրանք ենթադրում են միայն մի ընդհանուր բանավոր նախօրինակ,—գրում է նա մի երկու պարբերություն հետո,— և եթե նույնիսկ նրանք օգտագործել են ավելի վաղ շրջանի վավերագրեր, այդ վավերագրերը ընդհանրություն չեն ունեցել»[27]։*

*Դա իհարկե ծայրահեղ է։*

*Համեմատության ժամանակ ոչ մի հիմք չի կարելի գտնել, որպեսզի բնագրերն այդքան օտարացվեին միմյանցից։ Մենք կարծում ենք, սակայն, ընդհակառակը, Նոյի համառոտումներից օգտվելով՝ A-ն ծագել է O-ից, իսկ ամբողջ տարբերությունը պայմանավորված է թեմայի փոփոխմամբ։ A-ի մեջ Նաթանը դարձել է որդին, որը և իր հետ ձգել է սյուժետային նոր գիծ։ Բայց շարունակենք։*

*Նոն գտնում է, որ պապիրուսների հեղինակը 6-րդ դարի արամեախոս է. «Նրա հայրենիքը Ասորեստանն է, որովհետև նա շատ լավ է օգտագործում ասորական անունները։ Պահպանված պապիրուսները բացարձակապես ոչնչով չեն կապվում Եգիպտոսի հետ»[28]։*

*Այո, եբրայական տարրը, անշուշտ, նկատելի է պապիրուսների մեջ, չնայած որոշ ուսումնասիրողներ փորձում են այն չտեսնել, սակայն բնագիրը ենթարկված է սոսկ խմբագրական փոփոխությունների։ Պապիրուսներում ոչ մի խոսք չկա Յահվեի մասին, նրա անունը չի տրվում, այն ժամանակ, երբ հարակից թերթերի մեջ հանդիպում է 15 անգամ[29], իսկ աստված հիշվում է (զրույցի պապիրուսներում) բազմաթիվ դեպքերում, որ կարելի է հասկանալ և՛ եզակի և՛ հոգնակի։*

---

[26] "Revue biblique internationale", *էջ 76։*

[27] *Նույն տեղում, էջ 77։*

[28] *Նույն տեղում, էջ 76։*

[29] *Նույն տեղում, էջ 77։*

Դա նույնպիսի խմբագրական աշխատանք է եբրայական գրականության մեջ, ինչ մեզ մոտ քրիստոնեության շրջանում։ Ջնջվել են աստվածների անունները, բայց պահպանվել աստվածները, իսկ միակ աստված, քրիստոնյա թե հրեա (Յահվե), դեռ մուտք չի գործել։ Իսկ որ հեթանոսական աստվածները նախապես եղել են իրենց անուններով, ցույց է տալիս մի քանի անգամ կրկնվող Շամաշի անունը, որը պահպանվել է, որովհետև չի խանգարել հրեական մոնոթեիստական պատկերացումներին։ Յահվեի ժամանակ էլ դեռ երկար հարատևում էր այլ աստվածների պաշտամունքը հրեից մեջ[30]։

Այդպես, բնագիրը ոչ թե գրված է, այլ խմբագրված հրեական ձեռքով։

Անպայման չէ, որ խմբագրի հայրենիքը կարող էր Ասորեստանը լինել, ինչպես կարծում է Նոն։ Անունների շատ լավ վերարտադրությունը ցույց է տալիս, որ բնագիրը սկզբնապես ասորաբաբելական է և ոչինչ այլ բան, որովհետև կարելի է երկրի սահմաններից հեռու էլ լավ վերարտադրել անունները, մանավանդ արամերենը մ. թ. ա. 5-րդ դարում ընդհանուր լեզու էր։

Նոն հենվում է նաև այն փաստի վրա, որ պապիրուսներում ոչ մի հիշատակություն չկա Եգիպտոսի մասին. «Պահպանված պապիրուսները բացարձակապես ոչնչով չեն կապվում Եգիպտոսի հետ»։

Բայց դա հակառակ բանի է տանում։

Զրույցի մեջ Եգիպտոսը և նրա փարավոնը հանդես են գալիս իբրև թշնամի կողմ։ Փարավոնը պարտվում է Խիկարի իմաստության առաջ և հարկ վճարում Ասորեստանին։ Տեսանք, որ այդ ամբողջ հատվածը բավական հին է և կարող էր հարակցվել զրույցին ավելի վաղ, քան հինգերորդ դարը։

Եգիպտական տիրապետության մեջ, Ասուանում, Էլեֆանտինում ապրող որևէ հրեա, հասկանալի է, որ անհրաժեշտաբար դուրս կնետեր դա։ Եվ եթե Եգիպտոսի մասին պապիրուսներում ոչ մի հիշատակություն չկա, կարող է հենց ենթադրել տալ, որ զրույցը խմբագրվել է Եգիպտոսում։

---

[30] Տե՛ս *И. М. Волков*, Арамейские документы иудейской колонии на Элефантине II века до Р. Х., М., 1915, էջ 50—54։ Սակայն եթե գրույցը թարգմանված կամ փոխադրված չլիներ, դժվար թե Շամաշի անունը առաջ մղվեր Յահվեի տիրապետության շրջանում։ Շամաշը հրեական պայմաններում մնացել է այնպես, ինչպես քրիստոնեության ժամանակ Բելշիմը ասորական բնագրի մեջ։

Այդպես, մեր կարծիքով պապիրուսները ծագել են ասորաբաբելական ընդհանուր գրույցից (ըստ Նոի՝ O), փոխված են և խմբագրված Եգիպտոսում, հրեական ձեռքով։

Այժմ կարող ենք ասել, որ ոչ միայն գրավոր ուղիներով մեզ հասած խմբագրությունը, այլև գրույցի բոլոր տարբերակները. պապիրուսները, Եզովպոսի կենսագրության երկրորդ մասը, Տովբիթի գրքում հիշատակությունների օրինակը ենթադրում են մեկ նախամայր, որի ծնողը ասորաբաբելական մշակույթն է։

Հայ խմբագրության մեջ պահպանված դիցաբանական շերտը արտահայտում է այն միջավայրը, որտեղ ծագել և կազմավորվել է գրույցի բուն թեման։

Փորձենք կազմել բնագրերի ճյուղագրությունը.




Արաբական և եթովպական խմբագրությունների տեղը որոշելիս հենվում ենք նախորդ ուսումնասիրողների վրա։

Ճյուղագրությունից դուրս են մնում սլավոնական, հունական, ղփչաղական, թուրքական և վրացական խմբագրությունները։

Քննենք նրանց ազգաբանությունը։

## 7. ՍԼԱՎՈՆԱԿԱՆ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Զրույցի սլավոնական խմբագրության մասին առաջին անգամ հպանցիկ հիշատակվում է 1800 թվականին «Ироическая песнь о походе на половцев» գրքում։ «Սաք Իգորի գնդի մասին» վիպերգը պարունակող ձեռագրի նկարագրության մեջ թվարկվում է նաև Խիկարի բնագիրը, սաքից անմիջապես առաջ[1]։

Կարամզինը 1816 թվականին, նկատի ունենալով նույն ձեռագիրը, գրում է, որ այնտեղ կան ևս երկու պատմվածք, որոնցից մեկը Խիկարի զրույցն է։ «Դրանք անկասկած ռուսական ստեղծագործություններ չեն,— ավելացնում է նա,— բայց իրենց հնությամբ արժանի են ուշադրության»[2]։

Նա բերում է զրույցի մուտքից մի փոքր հատված։

1825 թվականին Ն. Պոլևոյը «Արաբական հեքիաթի հին ռուսական թարգմանությունը» խորագրի տակ ներկայացնում է ռուսական խմբագրության մի այլ օրինակ։ Նա այն համեմատում է Կարամզինի բերած հատվածի և Շավի-Կոզոտի բնագրի ռուսերեն թարգմանության հետ։ Պոլևոյն իր փոքրիկ հոդվածի մեջ յուրովի բնորոշելով ռուս հին գրականությունը, աշխատում է ցույց տալ Խիկարի արժեքը ռուսական կյանքի ու հարաբերությունների ուսումնասիրության գործում։

«Մեր հին մատենագրության գրեթե ամբողջ արտադրանքը,— գրում է նա,— բաղկացած է հոգևոր և պատմական ստեղծագործություններից և թարգմանություններից։ Դրանցից բացի, ինչպես երևում է, մեր նախնիների մատենադարաններում չափազանց քիչ

---

1 „Ироическая песнь о походе на половцев удельного князя Новогородского-Северного Игоря Святославича, писанная старинным русским языком в исходе XII столетия", М., 1800, էջ VII։

2 *Н. М. Карамзин*, История государства Российского, СПб., 1842, V издание, Примечания к III тому Истории государства Российского.

են եղել այնպիսի երկեր, որոնք պատկանեին գրականության բնագավառին»։

«Պատմությունը,— շարունակում է Պոլևոյը,— մեզ ցույց է տալիս նրանց գործը, բայց միայն գրական ստեղծագործություններն են, որ կարող են ցույց տալ նրանց մտածողության եղանակը, կարծիքները, նախապաշարումները և այն ամենը, ինչ կա նրանց պատկերացումներում»[3]։

Ահա այս տեսակետից հազվագյուտ օրինակ է Խիկարի զրույցը։

«Նման հուշարձանների հայտնագործումը հետաքրքիր կլիներ պատմաբանի, լուրջ ընթերցողի և բանասերի համար»— եզրափակում է նա[4]։

Այսպես ծայր առավ զրույցի մասին հետաքրքրությունը ռուս իրականության մեջ։

Փորձենք քննել այն ուղիները, որոնցով ընթացել է ռուսական բանասիրությունը Խիկարի սլավոնական խմբագրության շուրջը։ Դա ընդգրկում է զրույցի թարգմանական ուղիների և ժամանակի, ռուսական և սերբական կամ հարավսլավոնական գրական փոխհարաբերությունների, սլավոնական գրականության վրա Արևելքի ազդեցության խնդիրները։

Ա. Պիպինը լիովին մերժում է Արևելքի ազդեցությունը ռուս ժողովրդական բանահյուսության և գրավոր գրականության վրա. «Մինչ այժմ նրա ուսումնասիրությունը (ժողովրդական բանահյուսության — Ա. Մ.) արևելյան ազդեցության հարցի վերաբերյալ չբերեց ոչ մի հետևություն, այդպես և դրա լուծման համար քիչ, կամ, նույնիսկ, ոչինչ չի քաղվել հին գրավոր գրականությունից»։

Սակայն նա բացառում է Խիկարի զրույցը.

«Միակ ստեղծագործությունը,— գրում է Պիպինը,— որը կարող է մի փոքր հուշել Արևելքի գրականության հետ նրա կապի մասին մնում է Հազար ու մեկ գիշերների հեքիաթը հին ռուսական թարգմանությամբ։ Դա, իբրև միակը իր տեսակի մեջ, շատ հետաքրքիր հուշարձան է»[5]։

---

[3] „Московский телеграф", № II, 1825, էջ 227։

[4] Նույն տեղում, էջ 235։ Պոլևոյն իր բնագիրն հրատարակում է 1842 թվականին «Древнерусские повести» ընդհանուր խորագրի տակ, անշուշտ ցույց տալու համար բնագրի հարազատությունը ռուս հին գրականությանը։ Այստեղ նա նորից նշում է բնագրի արևելյան ծագումը և, նույնիսկ, կապը Եզովպոսի հետ (տես «Русский вестник», V том, СПб., 1842, էջ 54—65)։

[5] А. Пыпин, Очерки из старинной русской литературы, „Отечествен ные записки", том XCVIII, вторая книжка, СПб., 1855, էջ 116։

Պիպինը նշում է, որ զրույցը մուտք է գործել Բյուզանդիայից, հարավսլավոնական ինչ-որ թարգմանության միջնորդությամբ։

Ա. Վեսելովսկին 1871 թվականին Խիկարի անցման ուղիների մասին միևնույն տեսակետն է հայտնում, բայց նրա համար Խիկարի զրույցը ոչ թե բացառություն է, այլ Արևելքի ազդեցությունը հաստատող օրինակ։

Նշելով, որ անմիջապես արաբական Հաղար ու մեկ գիշերներից եղել է հունական թարգմանություն, որը չի պահպանվել, բայց որի գոյությունը մեզ թույլ է տալիս ենթադրելու Ակիր (Խիկար) իմաստունի մասին հարավսլավոնական բնագիրը, Վեսելովսկին գրում է.

«Դա որոշում է Արևմուտքի վրա Արևելքի ազդեցության պատմության մեջ Բյուզանդիայի դերը հեքիաթների բնագավառում։ Եթե մոնղոլները կարողանում էին գործել բացառապես բանավոր փոխանցումներով, ապա Բյուզանդիայի ազդեցությունն ավելի գրական բնույթ ուներ»[6]։

Նույն դիրքերից Խալանսկին առարկում է Միլլերին, Արևելքի ազդեցություն տեսնելով նաև բիլինաների վրա[7]։

Այսպես, Խիկարը թարգմանվել է սլավոներեն հույն որևէ բնագրից։ Այդ կարծիքը բաժանում են և մյուս բանասերները՝ Իրեչեկը, Վլադիմիրովը, Լոպարևը և ուրիշներ[8]։

---

*Խիկարի բնագիրը ռուս իրականության առաջին անգամ ծանոթացվեց 1795 թվականին Ազուրի ֆրանսերեն հրատարակության թարգմանությամբ, իբրև Հազար ու մեկ գիշերների շարունակություն։ Բնագրի ծանոթությունն ավելի վաղ էր, քան նրա շուրջ եղած բանասիրական հետազոտությունները։ Այդ պատճառով զրույցն անվերապահորեն ընդունվեց որպես Հազար ու մեկ գիշերների արաբական հեքիաթ։*

[6] *А. Н. Веселовский*, Новые отношения Муромской легенды о Петре и Февронии и сага о Рагнаре Лодброне. „Журнал Министерства народного просвещения", часть CLIV, 1871, էջ 120։

[7] *М. Халанский*, Южно-славянское сказание о Кралевиче Марке в связи с произведениями русского былевого эпоса, сравнительные наблюдения в области героического эпоса южных славян и русского народа, III (оттиск из „Русского филологического Вестника"), Варшава, 1895, էջ 520։

[8] *К. И. Иречек*, История болгар. Одесса, 1878, էջ 563; *П. В. Владимиров*, Древняя русская литература Киевского периода XI—XIII веков, Киев, 1901, էջ 97—98։ *Х. Лопарев*, Слово о святом „Патриархе Феостирикте", к вопросу о 29-ом февраля в древней литературе "Памятники древней письменности", XCIV, 1893, էջ 3-14, 17-31։

1822 թվականին Յագիչը հրատարակում է երկու ձեռագրերից կազմված սերբական բնագիրը գերմաներեն թարգմանությամբ[9], որի առաջաբանում հայտնում է նույն միտքը: Այդպես էլ ընդունվում է եվրոպական բանասիրության կողմից: 1898 թվականին Հարրիսի, Կոնիբերի և Սմիթի նշանավոր գրքում Յագիչի բնագիրը հրատարակվում է անգլերեն[10]: Այդ հրատարակությամբ սլավոնական խմբագրությունը հայտնի է դառնում իբրև հույն կորած բնագրի փոխօրինակ:

1890 թվականին Ա. Վեսելովսկին, դարձյալ գտնելով, որ բնագիրը թարգմանվել է հունարենից, հպանցիկ դիտում է. «Սլավոնական պատմվածքը, ճիշտ է, տարբեր ձևերով աղավաղված, հատուկ անունների մեջ արևելյան ծագման հետքեր է պահպանել»[11]:

1898 թվականին Ց. Ե. Կորշը նայում է զրույցի հատուկ անունների կազմը և նկատում, որ նրանց մեջ զգացվում է հայկական տարր[12]:

Ա. Դ. Գրիգորևը Կորշի խորհրդով դիմում է Լազարյան ճեմարանի պրոֆեսոր Գ. Խալաթյանցին և միասին արված հետևությունները հրատարակում Մոսկվայի Հնագիտական ընկերության տեղեկագրում, 1896 թվականին[13]:

Որոշ անուններ բնագրում արտահայտված են այնպես, որ հունարենից արված թարգմանության դեպքում չեն համապատասխանում սլավոնական տառադարձության օրենքներին. Адоров (Адорски), Анадан, Анабугил (Набугил), Абекам (Обека), Арапар:

«Առաջին երկու անունները,— գրում է Գրիգորևը,— իրենց մեջ d-ի առկայության պատճառով կասկած են հարուցում: Եթե ասենք Анадан-ը համապատասխանում է ասորա-արաբական Nadan-ին, ապա Адоров չի կարելի արտածել ուղղակի ասորա-արաբականից: Հունարենի փոխանցման ժամանակ Athur, Athor սպասվում է τ և

---

[9] „Byzantinische Zeitschrift“, 1892, էջ 107—126:

[10] „The story of Ahikar“, էջ 1—23:

[11] *А. Н. Веселовский*, Сказки „Тысячи одной ночи“ в переводе Галлана (предисловие)—Тысяча одна ночь, арабские сказки, новый полный перевод Ю. В. Доппельмайер, т. II, М., 1890, էջ XVII:

[12] *А. Д. Григорьев*, Происхождение славянских текстов повести об Акире Премудром. „Археологические известия и заметки, издаваемые Имп. Москв. Арх. обществом, под редакцией Д. Н. Анчука и А. И. Кирпичникова“, год VI, № 11—12, М., 1898, էջ 357:

[13] Նույն տեղում, էջ 77:

*ոչ թե ծ։ Հետևյալ երկու անունները զարմացնում են իրենց մեջ ճ-ի առկայությամբ։* Анабугил *անունը համապատասխանում է ասորա-աքքադական* Nabusmik-*ին, իսկ* Абекам-*ը* Abikam-*ին։ Փոխանցման ժամանակ հույները* ճ-*ն կտառադարձեին* ξ-*ով, իսկ այդ վերջին հնչյունը սլավոնները կարտահայտեին* в-*ի միջոցով։ Համեմատիր* Навуходоносор, Вавилон *և այլն։ Եթե սլավոնները թարգմանեին ուղղակի հունարենից, ապա վերևում բերված երկու անունները կհնչեին* Анавугил, Авекам։

*Բայց, ինչ-որ շատ ավելի կարևոր է,* O *ձեռագրում գտնվող Առապար անունը* (R *և* Соф-*ի հետ համեմատած ավելի հին) դուրս է գալիս, որ հայկական բառ է։*

*Հայկական առապար* = τραχύς, asper, ἀκρότομος, praeruptus rupes։ *Հայերի մոտ կա նաև* b, *որով նրանք փոխանցում են և, հունական* β (Babylon, Habuhodonosor), *իսկ* Adorov *բառը, այն է՝* t-*ի անցումը* d-*ին ցույց է տալիս, որ մենք գործ ունենք Արևմտյան Հայաստանի բարբառի հետ, որտեղ գոյություն ունի այդպիսի փոխարինում*[14]։

*Այսպես։ Գրիգորևը գտնում է, որ զրույցի սլավոնական թարգմանության մեջ կա հայկական միջամտություն. «Դա հնարավոր է, որովհետև սլավոնները մեկ անգամ չէ, որ շփվել են հայերի հետ», բայց «հատկապես ինչո՞ւմ է արտահայտվել այդ միջնորդների դերը, արդյո՞ք հունարենից ուղղակի սլավոներենի թարգմանության մեջ, թե՞ այն բանում, որ հունարենից հայկական թարգմանությունը սկզբնաղբյուր է ծառայել սլավոնական բնագրի համար»*[15]։

*Գրիգորևը հավանական է համարում երկրորդ ենթադրությունը. եկեղեցա-սլավոնական թարգմանությունը կատարվել է հունարենից ոչ ուղղակի, այլ հայ բնագրի միջնորդությամբ։*

*Այդ վարկածով Ա. Դ. Գրիգորևը 1898 թվականին հանդես է գալիս Մոսկվայի Հնագիտական ընկերության սլավոնական հանձնաժողովի առաջ*[16]։

---

[14] *А. Д. Григорьев*, Происхождение славянских текстов повести об Акире Премудром. „Археологические известия и заметки, издаваемые Имп. моск. арх. обществом под редакцией Д. Н. Анчука и А. И. Кирпичникова“, год УI, № 11—12. М., 1898, *էջ 357։*

[15] *Նույն տեղում, էջ 359։*

[16] „Древности. Труды Славянской комиссии имп. моск. арх. общества“, т. III, М., 1902, *էջ 8—11* (Протокол 36-го заседания Славянской комиссии московского археологического общества, 28 ноября, 1898г.)։

Խ. Ե. Եվսեևը կարծիք է հայտնում, որ սլավոնական բնագրում հատուկ անունների, ինչպես նաև՝ Арапар-ի առկայությունն այդպիսի ձևով հնարավոր է նաև առանց հայկական միջամտության, որովհետև սեմական բնագրում արդեն կարող էր լինել իրանական ազդեցություն։

1899 թվականին նույն հանձնաժողովի հաջորդ նիստում Ն. Ն. Դուրնովոն նույնպես գտնում է, որ անունները կարելի է բացատրել առանց հայերենի միջնորդության։ Абекам աղավաղված է, նախնականը եղել է Амбекам, որը համապատասխանում է հունական 'Αμβεχάμ, 'Αββεχάμ ձևերին։ Հունական գրականության մեջ սեմական б-ն փոխանցվել է ձայնավորների մեջ μβ կամ ββ-ի միջոցով։ Анабугил բառի մեջ կարելի է վրիպակ տեսնել, б փխ. в, իսկ Арапар-ը հունական 'Αραπαρ կամ 'Αραφαρ-ի միջնորդությամբ կարող է ծագել ասորական Arafar-ից[17]։

Այս հարցի շուրջն այնուհետև գրականության մեջ որևէ խոսք չենք գտնում։

Տասը տարի անց, 1909 թվականին, դարձյալ Սլավոնական հանձնաժողովի նիստում Ա. Դ. Գրիգորևը վարկածն ուղղակի շրջանցում է[18]։

Բայց արևելյան շերտը, ինչպիսին էլ այն լինի, ակնառու է և անտեսվել չէր կարող։ Նույն նիստում Կորշը գտնում է, որ բնագրերի անհամապատասխանությունները մղում է մեզ չհասած ասորական խմբագրության։ Իմիջիայլոց, նա Акир անունը փորձում է արտածել հին սեմական Хаккар-ից։

Ֆրանսուա Նոն, դարձյալ 1909 թվականին, քննելով Յագիչի բնագիրը, գտնում է, որ սլավոնական խմբագրությունը կարող է թերևս ասորականից գալ[19]։

1913 թվականին հրատարակվում է Ա. Դ. Գրիգորևի ծավալուն ուսումնասիրությունը[20]։ Այստեղ նա անսպասելիորեն մերժում է հայերենով միջնորդված հունական սկզբնաղբյուրի գաղափարը և հետևում Նոյին։

Այդ վարկածի համար նա դարձյալ հիմք է ընդունում անունների տառադարձությունը.

„Հունական բնագրի դեպքում հազիվ թե Абекам (Абикам),

[17] „Древности, Труды Славянской комиссии", էջ 11—12։

[18] Նույն տեղում, т. V, 1911, էջ 41։

[19] „Histoire et sagesse d'Ahikar l'Assyrien", էջ 98—99։

[20] *А. Д. Григорьев*, Повесть об Акире Премудром, М., 1913։

Набугил (Анабугил), Набугинал *անունները ստացվեին б-ով։ Սովորաբար հույները սեմական б-ն արտահայտել են β-ի միջոցով, իսկ սլավոնները այդ β-ն արտահայտել են* в-*ով, համեմատիր* Навузардан —Ναβουζαρδάν, Навуходоносор —Ναβουχοδονόσορ, Навуфей-Ναβουθαί: *Ճիշտ այդպես էլ հունական միջնորդության դեպքում հազիվ թե* d *ստացվեր* Адоров (*և* Анадан) *անունների մեջ, քանի որ արևելյան* At$^{h}$or, At$^{h}$ur *անցման ժամանակ հունարենում սպասվում է* τ *կամ* σσ, *համեմատիր հունարեն՝* 'Ασσυρία, 'Ατουρία, 'Ατυρία։

*Միաժամանակ ուշադրություն է գրավում գրույցի մի քանի հատուկ անունների սլավոնական ձևերի մոտիկությունը այդ անունների սեմական և ոչ թե հունական կամ հայկական ձևերին,—շարունակում է Գրիգորևը,—*Адоров-*ի (*Адор *գոյականից) համար համեմատիր ասորական* At$^{h}$or *և արաբական* At$^{h}$ur (At$^{h}$or *հատկապես ասորական ձև է, համաձայն ակադ. Ֆ. Ե. Կորշի)։ Իր տեղայնացմամբ գրույցի սլավոնական խմբագրության* Синагрип-*ը ավելի նման է, նույնիսկ, բուն ասորեստանյան թագավորի անվանը՝* Sin-aḫé-irib *քան ասորական* Сеннахериб *և արաբական* Санхериб *բնագրերից մեզ հայտնի ձևերին»*[21]։

*Մի երկու պարբերություն հետո Գրիգորևը եզրակացնում է. «Այսպես, Ակիր իմաստունի մասին գրույցը սլավոներեն է թարգմանվել, ամենից ավելի հավանական է, ուղղակի ասորական բնագրից»*[22]։

*Այս հետևությունը չէր կարող լռությամբ ընդունվել։ Վ. Իստրինը գտնում է, որ Գրիգորևը դեռևս չի ապացուցել, իսկ Ն. Դուր-*

---

[21] *А. Д. Григорьев*, Повесть об Акире Премудром, *էջ 532։*

[22] *Նույն տեղում, էջ 535։ Գրիգորևը սակայն այնքան էլ վստահ չէ այս նոր կարծիքի մեջ։ Այն գլուխը, որտեղ նա փորձում է ապացուցել, որ սլավոնական բնագիրն անմիջապես գալիս է ասորերենից, վերջացնում է այսպես. «Ասորական խմբագրության պահպանված ձեռագրերի հետագա ուսումնասիրությունը կօգնի պարզելու սլավոնական խմբագրության* Ador-*ի* (Адоров) *մեջ* d-*ի ծագումը գալիս է արդյոք նույն ասորական ձեռագրից, որտեղ եղել է* Ador *փոխանակ* Athor, *երևան է եկել արդյոք այն անկախ սլավոնական խմբագրության նախօրինակից, թե այստեղ ինչ-որ կերպ արտահայտվել է արևմտահայ բարբառի ազդեցությունը, որ տ-ն խառնում է դ-ի հետ։*

*Այստեղ հայկական ազդեցության անհրաժեշտություն թույլ տալու դեպքում, թերևս հնարավոր կլինի դրա արդյունք համարել և սլավոնական խմբագրության մեջ* Арапар *անվան հանդես գալը» (էջ 539)։*

նովոն իր գրախոսության մեջ նորից մերժում է նրա փաստարկները[23]։

1915 թվականին Դուրնովոն անդրադառնում է հարցին ավելի հանգամանորեն[24], դարձյալ հենվելով անունների տառադարձության վրա։

«Ինչպես Գրիգորևը,— գրում է նա,— ես նույնպես հնարավոր եմ համարում սլավոնական թարգմանության լեզվի մասին դատելու միայն հատուկ անունների հիման վրա»[25]։

Այնուհետև բերելով անունների բազմաթիվ հնարավոր փոխանցումներ, նա մերժում է ասորական նախօրինակը. «Ակիրի մասին զրույցի սլավոնական թարգմանության համար ուղղակի սեմական բնագրի ենթադրությունը,— շարունակում է Դուրնովոն, —մեզ կանգնեցնում է և այլ դժվարության առաջ։ Քիչ է հավանական, որ 11—12-րդ դարերում սլավոնների մեջ լինեին ասորական և արաբական լեզուներին հավասարաչափ լավ ծանոթ մարդիկ, որպեսզի այդ լեզուներից գրական հուշարձանների թարգմանություն անեին... Մնում է թարգմանության հունական կամ այլ (պարսկական, հայկական և այլն) միջնորդության հնարավորությունը»[26]։

Պարսկական կամ հայկական նախօրինակին նա չի անդրադառնում և քննում է հունականը։ Դուրնովոն միաժամանակ նկատում է, որ մի քանի անունների տառադարձություններն ավելի մոտ են արաբականին։ Առհասարակ գրեթե բոլոր փաստարկների մեջ նա տեղ է տալիս երկրորդ հնարավորության։ Վերջապես իր միտքն ավարտում է բավական զգուշավոր.

«Ես կարծում եմ, որ Ակիրի մասին զրույցի հատուկ անունների տառադարձության առանձնահատկությունները չեն բացառում այն բանի հնարավորությունը, որ սլավոնական թարգմանու-

---

[23] *В. М. Истрин*, Ал. Дм. Григорьев. Повесть об Акире Премудром, исследование и тексты, 1913, Журнал Министерства народного просвещения, новая серия, часть LI, СПб., 1914, *էջ 333—365*; *Н. Н. Дурново*, Ал., Дм. Григорьев, Повесть об Акире Премудром (отдельный оттиск из Известий Отделения русского языка и словесности Императорской академии наук, т. XX, кн. 4, 1915)։

[24] *Н. Н. Дурново*, К истории Повести об Акире, М., 1915 (Отдельный оттиск из 2-го выпуска IУ тома Трудов Славянской комиссии имп. московского археологического общества).

[25] *Նույն տեղում, էջ 100*։

[26] *Նույն տեղում, էջ 101*։

*թյունն արվել է հունարենից, չնայած և ըստ երևույթին չի վկայում ընդդեմ սլավոներենի ուղղակի թարգմանության որևէ սեմական լեզվից։*

*Ինչ վերաբերում է սլավոնական կամ ենթադրվող հունական բնագրի սեմական օրիգինալին, ապա մի քանի առանձնահատկությունների հիման վրա* (Акир, Амбекам *կամ* Абекам, Анабугил) *հնարավոր է մտածել, որ այդ օրիգինալը եղել է ոչ թե ասորական, այլ արաբական։ Եթե դա իսկապես այդպես է, ապա հարկ կլիներ ընդունել, որ եղել է Ախիկարի գրքի մի քանի արաբական թարգմանություն և որ սլավոնականը վերաբերում է արաբական հատուկ թարգմանության, որը տարբերվում է մեզ հայտնի արաբական խմբագրությունների նախօրինակներից»*[27]*։*

*Դա միևնույն շրջապտույտն է։ Այսպես հավասար հաջողությամբ կարելի է ընդունել արաբական, ասորական, հայկական, հունական, պարսկական, թերևս հնդկական բնագիր։*

*Այդ կարծիքները մնացին անհետ, և շարունակեց հարատևել հունական սկզբնաղբյուրների ենթադրությունը։ 1953 թվականին Գուդզիի «Ռուս հին գրականության պատմության» հինգերորդ հրատարակության մեջ կարդում ենք. «Այս պատմվածքը, որ մեզ է հասել 15—16-րդ դարի սկզբի ռուսական ձեռագրերից, ակներևաբար թարգմանվել է ուղղակի հունարենից»*[28]*։*

*Բանասիրության ընթացքից պարզ է, որ Գուդզիի այդ պընդումը սոսկ վերակրկնություն է և ակներևաբար ոչ մի հիմք չունի։*

*Այսպես, սլավոնական խմբագրության սկզբնաղբյուրի հարցում բանասերները որոշակի արդյունքի չհասան, որովհետև հենվում էին միայն հատուկ անունների տառադարձության վրա։*

*Իհարկե, հատուկ անունները բնագրի աղբյուրը որոշելու գործում կարող են դեր խաղալ, բայց ոչ միշտ։*

*Եթե լիովին պարզ չեն մի լեզվից մյուսին փոխանցման օրենքները, անունների տառադարձությունից չի կարելի որևէ խնդիր ճշգրիտ սահմանել։ Հենց ինքը՝ Դուրնովոն նշում է, որ համեմատության համար չունենալով հին շրջանում (11—13-րդ դար) արաբական կամ ասորական լեզուներից արված ոչ մի սլավոնական*

---

[27] *Н. Н. Дурново,* К истории Повести об Акире, М., 1915 (отдельный оттиск из 2-го выпуска IV тома Трудов Славянской комиссии имп. московского археологического общества), *էջ 103։*

[28] *Н. К. Гудзий,* История древнерусской литературы, издание пятое, М., 1953, *էջ 159։*

թարգմանություն, չենք կարող ասել սեմական անունների այդպիսի փոխանցումը, ինչպիսին մենք ունենք Խիկարի մասին գրույցում, հնարավո՞ր է արդյոք ասորական կամ արաբական լեզվից ուղղակի թարգմանության դեպքում։

Ընդունված է, որ գրույցը թարգմանվել է սլավոներեն 11—13-րդ դարերում, բայց ձեռագրական ամենահին ընդօրինակությունները գալիս են 16-րդ դարից։ Թարգմանական օրինակից մեզ բաժանում է երեքից հինգ դար։ Այդ ընթացքում հատուկ անունները կարող էին բավական հեռանալ նախասկզբնական ձևերից։ Հետագա խմբագրություններում նույնիսկ մուտք են գործել անուններ, որոնք առհասարակ խորթ են բնագրին (Ելտեգի, Թեոդուլիա, Սուտիր), բացի այդ, բուն իսկ սլավոնական բնագրի սահմաններում պետք է որոշակի լինեն անունների նախասկզբնական ընթերցումները (Абекам թե Амбекам և այլն), որպեսզի համեմատվեն ճիշտ ձևեր։

Մի այլ հանգամանք պարզորոշ թելադրում է, որ խնդիրը չի կարելի լուծել տառադարձության որևէ նոր և հակամետ տարբերակով։

Սլավոնական խմբագրության մեջ անունները հնչում են բավականաչափ տարբեր և կարծես չեն ենթարկվում սլավոներենի հատուկ թարգմանական տառադարձության օրենքներին։ Իրենց ձևով անունները մերթ հուշում են հունական սկզբնաղբյուր, մերթ հեռանում և դժվար է հունարենով բացատրել, նույնքան և դժվար է արտածել սեմական կամ այլ աղբյուրից։

Անունները հենց բուն սլավոներենում եզակի են և չեն կրկնվում նույնիսկ սլավոնական մատենագրության մեջ։ Դա ինքնին մեծ տարակույսի առիթ է տալիս[29]։

---

[29] Զրույցի սլավոնական խմբագրության մեջ անունները կրում են ինչ-որ անհատական թարգմանության կնիք։ Կարելի է ենթադրել, որ թարգմանիչը ծանոթ չէ, կամ հաշվի չի առել սլավոներենում արդեն ընդունված ձևերը։ Թարգմանիչը թերևս սլավոն չէ։ Ահա բնորոշ մի օրինակ։ Սենեքերիմը հայտնի դեմք է Աստվածաշնչում, նրա անունը տրվում է Տովբիթի գրքի մեջ և այլուր։ Սլավոներեն այն արտահայտվում է Сеннахирим ձևով։ Թարգմանիչն անպատճառ կիմանար, թե ինչպես է տառադարձված սլավոնական մատենագրության մեջ և կհետևեր Սուրբ գրքին, որը բոլոր քրիստոնյա մատենագրություններում եղել է ընդօրինակման աղբյուր (ինչպես, օրինակ, հայերենի թարգմանիչը լրիվ հետևել է հայ Աստվածաշնչին), բայց նա սլավոնական Աստվածաշնչի հետ ծանոթ չէ։ Դա միջնադարում անհավատալի է մատենագրի համար։ Թարգմանիչը այդ անունը տառադարձում է բոլորովին այլ կերպ, որ իբրև ընթերցված ամբողջ սլավոնական մատենագրության մեջ մնում է եզակի, բացի Թեկտիրիատի լեգենդից, որտեղ այն փոխառվել է բա-

Փոխանցման ուղիների հարցը դրանով չի սպառվում։ Արդյոք թարգմանությունը եղել է ուղղակի ռուսների կողմից, թե հարավսլավոնական որևէ ժողովրդի (բուլղարներ, սերբեր, հարավային սլավոններ)։

Իրեչեկը նշելով, որ բազմաթիվ հունա-արևելյան պատմվածքներ սերբերին և ռուսներին է անցել բուլղարների միջոցով, գրում է. «Ճիշտ այդպես Ռուսաստանում շատ սիրելի Սինոգրիպ թագավորի, կամ մինիստր Ակիրի մասին զրույցը, որը վերաձևված է Հազար ու մեկ գիշերներից, սլավոններին հայտնի դարձավ բուլղարական թարգմանիչների միջոցով»[30]։

Պիպինը զրույցն համարում է սերբական թարգմանություն[31]։

Ե. Բարսովը նույնպես ընդունելով, որ զրույցը գալիս է հունարենից, գտնում է, որ նրա առաջին փոխանցողը սերբերն են[32]։

1897 թվականին Ա. Ի. Սոբոլևսկին սահմանում է այն օրինաչափությունները, որոնցով հնարավոր է տարորոշել հարավսլավոնական և ռուսական թարգմանությունները։

Ն՛վ հարավային սլավոնների և՛ ռուսների մատենագրության լեզուն եկեղեցական սլավոներենն է։ Բայց որքան էլ ռուս թարգ-

---

ցառապես զրույցից։ Այդպես և Նաթանը։ Աստվածաշնչում Թ-ն արտահայտելով Ֆ-ով՝ գրվում է Нафан կամ Нафанаил, իսկ Տովբիթում՝ Аман։ Այդ ամենից անհաղորդ է Ակիրի թարգմանիչը և փոխադրում է Анадан։

Թարգմանիչը անծանոթ անուններին տվել է այնպիսի ձևեր, որոնք իր կարծիքով պետք է որ սլավոներենի համար ավելի հարազատ հնչեն։ Այդ նպատակով նա հաճախ դիմել է հունարենի միջնորդության, և թարգմանական նախօրինակի անունները սլավոներեն բնագրում ստացել են խորթ և անօրինակ ձևեր։

[30] *К. И. Иречек*, История болгар, *էջ 563։ Տողատակում Իրեչեկն ավելացնում է. «Պիպինի ենթադրությունը ռուսական Սինոգրիպի բուլղարական ծագման մասին հաստատվում է Բելկովեցկյան ժողովածուով»։*

*Պիպինի մոտ սակայն այդ ենթադրությունը շատ հպանցիկ է։ 1857 թվականին նա գրում է. «Ակիրի մասին զրույցը իր ծագմամբ պարտական է բյուզանդական գրականությանը, որից մեզ է անցել մի որևէ հարավ-սլավոնական թարգմանության միջոցով»* („Отечественные записки“, том XCVIII, вторая книжка, СПб., *1855, էջ 149—150), իսկ 1898 թվականին, 41 տարի անց, արտահայտվում է ավելի որոշակի. «Որովհետև գտնված է բավական հին սերբական ձեռագիր, որը համընկնում է զրույցի հին ռուսական խմբագրությանը, ապա մյուս հուշարձանների օրինակը ստիպում է ենթադրել, որ և այստեղ թարգմանությունը եղել է ոչ թե ռուսերեն, այլ հարավսլավոներեն»* („История русской литературы“, том II, СПб., 1893, *էջ 40)։*

[31] *Տե՛ս ծանոթագրություն № 30։*

[32] *Е. В. Барсов*, Слово о полку Игореве как художественный памятник Киевской Дружинной Руси, том I, М., 1887, *էջ 66։*

մանիչը հիանալի տիրապետեր եկեղեցա-սլավոնական լեզվին, որոշ անծանոթ արտահայտությունների դեպքում չէր կարող չդիմել ռուսերենի օգնության։

Ելնելով դրանից Սոբոլևսկին Խիկարի զրույցը դասում է ուղղակի ռուսական թարգմանությունների շարքը[33]։

Այդ տեսակետն իր համար հող գտավ։ 1901 թվականին Պ. Վ. Վլադիմիրովը որդեգրում է, հենվելով միևնույն բառային կազմի վրա[34]։ Հետագայում դա ընդունում են Գրիգորևը[35], Իստրինը[36], Դուրնովոն[37] և ուրիշներ։

Բայց հարցը դրանով չի փակվում։ Մինչ այդ Խիկարի զրույցը ծանոթ էր միայն սերբական և ռուսական ընդօրինակություններով։ Մ. Ն. Սպերանսկին պաշտպանելով նույն կարծիքը, գրում է. «Վստահ ասել, որ թարգմանությունը նախ եղել է բուլղարերեն, ապա անցել սերբերին, դժվար է, որովհետև կա մեզ մատչելի միայն սերբական ձեռագիր»[38]։

Սակայն այդ պայմաններում դժվար է նաև ասել, որ թարգմանությունը նախ եղել է ռուսերեն։

Իրեչեկի նշած Բելկովեցկյան ձեռագիրը մնում է անծանոթ, գոնե ռուսական բանասիրությանը, բայց 1935 թվականին Իորդան

---

33 *А. И. Соболевский*, О древних русских переводах в домонгольский период, М., 1897, էջ 7։

34 *П. В. Владимиров*, Древняя русская литература Киевского периода XI—XIII веков, Киев, 1901, էջ 101։

35 *А. Д. Григорьев*, Повесть об Акире Премудром, М, 1913, էջ 498—526։ *Ինչպես գիտենք Գրիգորևը թարգմանության հայրենիքը մինչ այդ ընդունում էր Բուլղարիան։ Այստեղ ևս նա փոխում է իր կարծիքը։*

36 *В. М. Истрин*, Очерк истории древнерусской литературы домосковского периода, Пет., 1922, էջ 96—98։ *Իստրինը նշելով որ հին սլավոնական գրականության մեջ շատ թույլ էր հետաքրքրությունը աշխարհիկ թեմաների նկատմամբ, այդ փաստի հիման վրա ռուս գրականության համար վերապահություն է անում. «Բայց, այնուամենայնիվ, ռուս գրականությունը սլավոնական գրականությունների մեջ ունի առանձնահատուկ դրություն։ Այնքան որքան և այս հնագույն պատմվածքները երևան են եկել ոչ թե հարավային սլավոնների մոտ, որոնք վիպական գրականության նկատմամբ ոչ մի հետաքրքրություն չեն ցուցաբերել, այլ ռուսների մոտ։ Խիկարի զրույցը, ճիշտ է, հայտնի է սերբական ընդօրինակություններով, բայց դրանք իրենց ծագմամբ գալիս են ռուս ձեռագրերից» (25)։*

37 *Н. Н. Дурново*, К истории Повести об Акире.

38 *М. Н. Сперанский*, К истории взаимоотношений русской и югославянских литератур. „Известия отделения русского языка и словесности Российской Академии наук", том XXVI, 1921, էջ 195—196։

Իվանովը քաղվածաբար հրատարակում է բուլղարական մի այլ օրինակ Լովչանական ժողովածուից[39]։ Այդպիսով գոյություն ունի նաև բուլղարական բնագիր։

Ինչպես տեսնում ենք, չնայած բանասիրության մեծագույն ջանքերին, դեռ շատ խնդիրներ մնում են առկախ։

«Իմիջիայլոց,— գրում է Մինդալևը 1914 թվականին,— հենց խրատների կազմը, մինչև նրանց անցումը սլավոնա-ռուսական հողի վրա, դեռևս ոչ բավարար է որոշված, բոլոր մեզ հասած բնագրերի, ինչպես սլավոնական. ռուսական և սերբական, այնպես էլ արևելյան. ասորական, արաբական, հայկական խմբագրությունների մանրամասն հետազոտության բացակայության պատճառով։ Գտնել հունական բնագիրը մինչև այսօր չի հաջողված, նույնպես՝ որոշել սլավոնական խմբագրության նախօրինակի ծագումը, ո՞ր լեզվից է կատարվել թարգմանությունը և ո՞ր լեզվով, ուղղակի ռուսերե՞ն, թե հարավ-սլավոնական որևէ լեզվով, եղել է մեկ, թե՞ երկու թարգմանություն, առայժմ դեռևս չլուծված հարցեր են»[40]։

Դրանք չլուծված հարցեր են և այսօր։

* *
*

Ինչպես է հայտնվել զրույցը ռուս հին գրականության մեջ։ Մենք կփորձենք վերադառնալ այդ խնդրին։ Դա հնարավոր է, որովհետև այժմ հայտնի են ավելի շատ աղբյուրներ։

Հույն նախօրինակի հարցը ծագել է ինքնաբերաբար։ Քանի որ գրական փոխառությունները հիմնականում Բյուզանդիայից են գալիս, ապա այդպես ենթադրվեց նաև զրույցի ուղին։ Բայց դրա համար հավաստող հիմքեր չկան։

Հունական բնագիրը մեզ ծանոթ է միայն Եզովպոսի անունով, որտեղ վերապատմվում են միևնույն դեպքերը։ Զրույցը ներկայացնում է խիստ օտարացած խմբագրություն։

Սլավոնականը նրա հետ ոչ մի առնչություն չունի։ Դա պարզ է հենց առաջին հայացքից, ուստի բանասիրության մեջ առաջ է քաշվել մի այլ, կորած հույն խմբագրության վարկածը։

---

[39] *И. Иванов*, Староболгарски раскази, София, 1935, էջ 237—245։

[40] *П. Миндалев*, Моления Даниила Заточника и связанные с ним памятники. „Ученые записки Императорского Казанского университета“, год XXXI, книга IV, апрель, Казань, 1914, էջ 303։

Այդ ենթադրության համար Պիպինին հիմք է ծառայում Թեոստիրիկտի լեգենդը, որտեղ հիշատակված են Սենեքերիմի և Խիկարի անունները. «Լեգենդը անկասկած հունական է,— գրում է Պիպինը,— որը պարզ է նրա լեզվից և բնույթից և հետևաբար ենթադրում է Սենեքերիմի հունարեն թարգմանություն, որովհետև միայն այս հեքիաթի հայտնի լինելու դեպքում հնարավոր էր առիթ տալ նման պարականոնի»[41]։

Ծանոթանանք սակայն պարականոնի հետ․

Սենեքերիմը նավով պատերազմ է գնում (Поеде царь Синагрипъ на брань), նրան ուղեկցում է Խիկարը (В то время бысть у него рядеца именем Акиръ)։ Փոթորիկը սպառնում է նրանց։ Խիկարի խորհրդով Սենեքերիմը դիմում է սուրբ Նիկոլայից։ Փոթորիկը դադարում է։ Սենեքերիմն ուզում է սրբին տեսնել։ Խիկարն ասում է, որ դա կարող է անել միայն մետրոպոլիտ Թեոստիրիկտը։ Մետրոպոլիտն համաձայնվում է։ Նրանք պատրաստվում են սրբին ընդունելու, բայց նա ուշանում է, որովհետև փրկում էր ծովում խեղդվողներին, որոնք նվիրաբերում են մի հավ։ Հետո երբ սուրբը դա պատմում է Թեոստիրիկտին, նա ասում է, որ այդ դատարկ բանի համար ինքը երեք քայլ անգամ չէր անի։ Իբրև պատիժ սուրբ հայրերը որոշում են նրա հիշատակը տոնել միայն չորս տարին մեկ[42]։

Տիխոնրավովը և նրա հետքերով Գրիգորևը ցույց են տալիս, որ լեգենդը սլավոնական ծագում ունի և ամենևին էլ թարգմանա-

---

[41] *А. Пыпин*, Очерк, էջ 84։

[42] *Х. Лопарев*, Слово о святом „Патриархе Феостирикте", к вопросу о 23-м февраля в древней литературе, Памятники древней письменности, XCIV, 1893, էջ 3—14, 17—31։

Բնագրի բանասիրական քննությունը կապված Ախիքի գրույցի հետ տե՛ս *А. Пыпин*, Очерк литературной истории старинных повестей и сказок русских. СПб., 1857, էջ 84, *А. Веселовский*, Малорусские народные предания и поверья, Свод Михайлова Драгоманова, Изд. Юго-западного отдела И. Р. Г. О, Древняя и новая Россия, год третий, том I, Киев, 1876, էջ 207—8, *А. Веселовский*, M. Gaster, Ilchester lectures on greco-slavonic literature, „Журнал Министерства народного просвещения", шестое десятилетие, часть CCLVI, 1888, էջ 225—228, *Е. Аничков*, Микола угодник и св. Николай, „Записки Неофилологического общества", вып. 2, № 2, 1892, էջ 43—45, *Г. Потанин*, Акир повести и Акир легенды, „Этнографическое обозрение", № 2, М., 1895, էջ 105—125, *П. Владимиров*, Древняя русская литература Киевского периода XI—XIII веков, Киев, 1901, էջ 101 և այլն։

կան չէ։ Նախ՝ նրա բնագիրը չկա հույն մատենագրության մեջ և ապա՝ հույները չունեն սուրբ Թեոստիրիկտի տոնը[43]։

Բայց եթե ընդունենք, որ թարգմանական է, դարձյալ մեզ հիմք չի տալիս ասելու, որ եղել է Խիկարի հունական բնագիր։

Սենեքերիմի և Խիկարի անունները լեգենդի մեջ պատահական են[44]։ Բնագիրը ծագումնաբանական ավանդություն է։ Նրա նպատակն է բացատրել, թե ինչու չորս տարին մեկ է տոնվում Թեոստիրիկտը։ Սուրբ Նիկոլայը խեղդվողներին փրկելու մասին կարող էր պատմել և այլ առիթով։ Բովանդակության մեջ ոչինչ չէր փոխվի։

Որ դա այդպես է, ցույց է տալիս սրբի տոնը ուշ կատարելու ստուգաբանական մի այլ ժողովրդական տարբերակ, որ գրի է առել Ա. Աֆանասևը.

«Մի անգամ աշնանը գյուղացին ճանապարհով բեռ էր տանում, գալիս է Կասյան սատծո ծառան (УГОДНИК) և հրաժարվում նրան օգնելու, որ իր դրախտի զգեստները չփչանան. օգնում է Նիկոլան։ Երբ նրանք դրախտ են գալիս և տերն իմանում է, թե գործն ինչպես է եղել, նա ասում է Կասյանին. «Դու չօգնեցիր գյուղացուն, դրա համար քեզ երեք տարին մեկ կտոնեն, իսկ քեզ, Նիկոլա ծառա, նրա համար, որ օգնեցիր գյուղացուն բեռը տանելու, տարին երկու անգամ տոն կլինի»[45]։

Այստեղ Կասյանը Թեոստիրիկտն է, իսկ Սենեքերիմին և Խիկարին փոխարինել է բեռ տանող գյուղացին։

Բնագրում այդ անունները կարող էին մտնել հետո, ռուսական հողի վրա։ Դա խոսում է միայն ռուս իրականության մեջ զրույցի շատ տարածված լինելու մասին։

Այդպիսով լեգենդը չի կարող վկայել զրույցի առկայությունը հույն մատենագրության մեջ, և կարծում ենք այն չի եղել։

13-րդ դարում Մաքսիմոս Պլանուդեսը կազմում է Եզովպոսի կենսագրությունը, որը մեծ տարածում է ստանում բյուզանդական աշխարհում։ Եզովպոսը դիտվում է իբրև հույն իմաստուն, ձեռք բերելով ամենամեծ ժողովրդականություն։ Պլանուդեսի կազմած կենսագրության մեջ պատմվում են միևնույն դրվագները, ինչ Խի-

---

43 А. *Григорьев*, Повесть об Акире Премудром, էջ 466—471։

44 Ա. Վեսելովսկին գրում է. «Հին Ռուսիայում հանրահայտ Մինոգրաֆի (Սինագրիպ-Սենհարիբի) և Ակիրի (Հայկարի) անունները վերցված են հին արաբական հեքիաթից, բայց առնչվել են լեգենդին բոլորովին պատահական» (Տե՛ս „Малорусские народные предания и поверья", էջ 208)։

45 А. *Афанасьев*, Народные русские легенды, № 11.

կարի մասին։ Թե որն է փոխառված, սոսկ բանասիրական հարց է, բայց գրույցը ճանաչվել է Եզովպոսի անունով։ Դա լիովին բավարարում է և հարկ չկար անհայտ իմաստունի մի նոր թարգմանություն։

Տիրական է դառնում միայն հեղինակություններից մեկը։ Եզովպոսի անունով կան երկու տարբերակներ, բայց նրանից հետո Խիկարը չի հիշվում հույների մոտ։

Իսկ հայ գրականության մեջ տեղի է ունեցել հակառակը. Խիկարն է կանխում Եզովպոսին։ Խիկարը հայերեն է թարգմանվել 5-րդ դարում, ասորերենից, բայց չնայած հայ և հույն մատենագրության ամենամեծ առնչություններին, Եզովպոսի թարգմանության փորձ չի եղել, թարգմանվել է, բայց ոչ կենսագրությունը, որ կարող էր հիշեցնել հայ իմաստունին, այլ միայն առակները («Առակք Ողիմպիանու»)։ Այդպես և Լոխմանը, որ արաբական աշխարհի խորհրդատուն է, հայ բանահյուսության մեջ ստանձնել է բժշկի դեր՝ Լոխման հեքիմ, իսկ արաբների մոտ նա կանգնած է Խիկարի և Եզովպոսի կողքին։

Արաբական գրականության մեջ պահպանվել է նաև Խիկարի գրույցը, բայց որպես Հազար ու մեկ գիշերների հեքիաթ։ Որոշ տարբերակներում գլխավոր հերոսը ոչ թե Խիկարն է՝ Հայկարը, այլ նրա կինը՝ Ջեֆագնան։

Հին սլավոնների մոտ նույնպես մեծ ժողովրդականություն է վայելում Խիկարը, իբրև ազգային իմաստուն՝ Акир Премудрый, նա դարձել է «հայտնիներից հայտնի հին Ռուսաստանում» (Կարամզին)։ Զրույցի ազդեցությունը նկատվում է բազմաթիվ ժողովրդական և գրավոր ստեղծագործությունների վրա[46], «Ինչպես երևում է, Ակիրը ընդհանրացվել է մինչև քրիստոնեական խորհրդատուի աստիճան»,— նկատում է Վեսելովսկին[47]։

---

46 Զրույցի ազդեցությունը բացահայտ է „Чудо св. Николая", „Моления Даниила Заточника", „Поучение от святых книг о чядех" հնագույն բնագրերի վրա, ինչպես նաև՝ հետագա շրջանի շատ ստեղծագործություններում։ Զրույցը ներթափանցել է նաև ռուս ժողովրդական բանահյուսության և խոսքի մեջ։ Բազմաթիվ առածներ, արտահայտություններ և հանելուկներ ծագում են նրանից։

47 *А. Веселовский*, M. Gaster, Ilchester lectures on grecoslavonic literature and its relation to the folklore of Europe during the Middle Ages, Журнал Мин-ва Народ. Просв., VI десятилетие, часть CCLVI, март, 1888.

Այստեղ ևս Խիկարը կանխում է Եզովպոսին, և ռուս գրականության մեջ չենք գտնում Եզովպոսի հնագույն օրինակ։

Այդպես ուրեմն, երկու խմաստունների համատեղ գոյությունը միևնույն դերով, անհարիր է, ուստի և հույն մատենագրության մեջ ապարդյուն է Եզովպոսից դուրս որոնել զրույցի մի այլ խմբագրություն[48]։

Սլավոնական բնագրի համար հունական սկզբնաղբյուրի որևէ վկայություն չկա։ Յագիչի գերմաներեն թարգմանության մեջ Аки-рос անունը ինքնահնար է, որովհետև այդպիսի ձև չունեն նրա օգտագործած բնագրերը, իսկ պատահող որոշ հունաբանությունները ընդհանուր տեղի են, որ կարող էին Աստվածաշնչից գալ։ Նույնիսկ հայ բնագրի մեջ, որ անառարկելիորեն ասորական թարգմանություն է, Հարրիսը և Տաշյանը հունաբանություններ են նկատում։

Բայց որտե՞ղ պետք է փնտրել սլավոնական բնագրի ակունքը։ Եզովպոսի և արաբական խմբագրությունները բացառվում են, որովհետև հեռու են նրանից։ Մնում է հայկականը և ասորականը։ Տեսնենք, թե ինչ հարաբերություն կա նրանց միջև։

Մենք արդեն ցույց ենք տվել, որ հայ բնագիրը գալիս է անմիջապես ասորականից, սակայն մի աղբյուրից որ այժմ չկա, բայց մայրն է եղել Քեմբրիջի № 2020 ձեռագրի[49] (ըստ Հարրիսի՝ S2, ըստ նոի՝ C) բնական է, որ S3-ով ներկայացող ասորական խմբագրությունը պետք է նմանության և զուգահեռության եզրեր ունենա հայկական խմբագրության հետ։

Սլավոնական բնագիրն հիշեցնում է այս երկու խմբագրությունները։ Զրույցի բավական ուժեղ տեղայնացումը մթագնել է ուղղակի կապը, սակայն փորձենք քննել մի քանի բնորոշ ընթերցումներ։

---

[48] Վերջերս մենք ծանոթացանք մի հոդվածի հետ, ուր հեղինակը հենվելով այլ փաստի վրա նույնպես գտնում է, որ Խիկարի հունական բնագիր չի եղել։

«Անհրաժեշտ է նշել, որ Խիկարի պատմությունը չկա Արևմտյան գրականության մեջ, այն դեպքում, երբ այնտեղ ներթափանցել են Արևելյան գրեթե բոլոր ժողովրդական սիրված երկերը։

Խիկարի զրույցի տարածումը սահմանափակվում է միայն Փոքր Ասիայով և Եվրոպայի հարավ-արևելքով։ Դա հավանաբար հուշում է, որ վեպը չի թարգմանվել հունարեն։ Հունական կուլտուրան հաճախ կամուրջ է հանդիսացել արևելյան ժողովուրդների տարրերը Արևմուտք թափանցելու համար» (տե՛ս L'Histoire du Sage Ahikar, dans les littératures slaves et la littérature roumaine et ses rapports avec le folklore, I. C. Chiţimia, Romuneslavica, IX, Bucuresti, 1963, էջ 416)։

[49] «Բանբեր Մատենադարանի», № 5, Երևան, 1960, էջ 77—92։

Ասորական S₂ բնագիրն սկսվում է այսպես. «Ասորեստանի և Նինվեի թագավոր Սարհադոնի որդի Սենեքերիմի 20-րդ տարում»։ Ջնջած սխալ, բայց հիշատակում է Սարհադոնի անունը որպես Սենեքերիմի հայր (իրականում Սենեքերիմն է Սարհադոնի հայրը)։ Այդպես նաև մյուս տարբերակները, Բոնիոնի ձեռագրի հետագա գրչությամբ օրինակը և այլն։

Բեռլինի Զախաուի № 336 ձեռագիրը (ըստ Հարրիսի S₃, ըստ Նոհ՝ B) ունի ճիշտ ընթերցում։ Խիկարը որդեգրում է Նաթանին Սենեքերիմի թագավորության օրերին, բայց երբ Նաթանը դավում է մորեղբորը, Եգիպտոսի փարավոնին նամակ է գրում Սարհադոնի անունից։ Գրաֆենի օրինակի մեջ շատ ավելի որոշակի է. «Ասուրի և Նինվեի թագավորներ Սենեքերիմի և Սարհադոնի օրոք կար Ախիկար անունով մի մարդ, մի իմաստուն հրեա, որը գրագիրն ու մոբեդն էր վերոհիշյալ թագավորների։ Նա շարունակ անթերի ծառայում էր նրանց, երբ Ասուրի թագավորը՝ Սենեքերիմը մահացավ 679 թվականին, նախքան Քրիստոսը»։ Այս տողերն անշուշտ պատկանում են գրչին կամ խմբագրին, որը բավական լավատեղյակ է պատմությանը, բայց բնագիրն սկսվում է այսպես. «Ես՝ Ախիկարս, շատ եմ աշխատել, ծառայել եմ նաև Սենեքերիմ թագավորի որդուն՝ Սարհադոմին։ Այն ժամանակ գուշակները բոլոր աստղագետների հետ միասին ասացին ինձ. Դու մի արու զավակ ես ունենալու»։ Բոնիոնի ձեռագրի հին գրչությամբ հատվածը համապատասխանում է Գրաֆենի օրինակին։

Սարհադոնի անունն հիշատակվում է նաև արաբական բնագրերում. «Սարհադոնի որդի Սենեքերիմ թագավորի օրերին կար մի իմաստուն»,— սկսվում է Ագնես Սմիթի հրատարակած բնագիրը։ Սալհանիի մոտ՝ երբ Խիկարն իր որդուն ներկայացնում է Սենեքերիմ թագավորին, նա ասում է գոհունակությամբ. «Աղաթում եմ աստծուն, Խիկար, որպեսզի նա պահպանի քո որդուն, որ կարողանա ծառայել այնպես, ինչպես դու ես ծառայել ինձ և իմ հորը՝ Սարհադոնին»։

Մեզ այստեղ չի հետաքրքրում, թե ինչպես է այդ սխալը տիրական դարձել երկու խմբագրությունների մեջ։ Մենք արդեն ասացինք, որ նույնիսկ S₃-ը, Գրաֆենի և Բոնիոնի օրինակները տալիս են հետագա ուղղված ընթերցումներ։ Կարևոր է նկատել, սակայն, որ ասորական և արաբական խմբագրությունների բոլոր տարբերակները, ճիշտ թե սխալ, պահպանել են Սարհադոնի անունը, այն կա, նույնիսկ, զրույցի էլեֆանտինյան պապիրուսներում (մեր թվ.

առաջ 5-րդ դար), ուր նրանց տեղերը դեռ չեն շփոթվել և Տովբիթի գրքում։

Չնայած Սարհադոնը գրույցի հետագա խմբագրություններում որևէ դեր չունի, բայց շարունակում է հիշատակվել Սենեքերիմի անվան հետ։ Դա ընդունված ձև է Արևելքում և ապա՝ գրիչները, որոնք մեծ մասամբ լավ ծանոթ էին Սուրբ գրքին, Սարհադոնի անունը չէին սղի հենց միայն որպեսզի գրույցը կապվեր Սուրբ գրքի հետ։ Աստվածաշնչի յուրաքանչյուր անունում կամ հարասում հավաստի և արժեքավոր էր դարձնում երկը։ Հաճախ, նույնիսկ, ինքնահնար կապեր էին ստեղծվում Աստվածաշնչի անունների հետ։

Հայկական խմբագրության մեջ, սակայն, որը գալիս է ասորերենից, Սարհադոնի անվան ոչ մի հիշատակություն չկա։ «Յամս Սենեքերիմայ՝ արքայի Ասորեստանի, ես՝ Խիկար, դպրապետ էի նմա»։ Այսպես է սկսվում բնագիրը։ Ինչպես տեսանք, այդ անունը աներկբա եղել է նախօրինակի մեջ։ Հետագայում գրիչները տեղայնացման միտումով, որպեսզի գրույցը կապվի հայոց թագավոր Սենեքերիմ Արծրունու հետ, սղել են, կամ բաց թողել։ Նույն առնմանությամբ բնագրում հիշատակվող Արծվյաց դաշտը դարձել է Արծրունյաց դաշտ։

Սարհադոնի անունը չկա նաև սլավոնական խմբագրության մեջ[50]։ Դա հայ և սլավոնական բնագրերի անընդմիջարկված կապ է արտահայտում։ Եթե հայ բնագիրը սղել է տեղայնացման միտումով, ապա սլավոնականը չուներ այդպիսի մտահոգություն։ Ընդհակառակը, սլավոնական թարգմանիչն անաղարտ կպահեր գրույցի պատմականության համար։ Սարհադոնի անունը ուղղակի չի եղել սլավոներենի նախօրինակում։

---

[50] Այնտեղ, ուր Խիկարը Նաբուսեմաքին հիշեցնում է, որ ինքը նրան փրկել է, երբ Սենեքերիմի հայրը մահվան է դատապարտել, Խլուդովյան ձեռագրում հիշվում է նրա անունը՝ Авдан։ Գրիգորևը այդ առթիվ գրում է. «Ըստ երևույթին այն չի կարելի արտածել ասորա-արաբական Սարհադոնից և միայն Խլուդովյան ձեռագրի լրացումն է» (Повесть.., էջ 401), իսկ Դուրնովոն գրում է. «X ձեռագրում, որտեղ այն պահպանվել է, աղավաղված է, և անհայտ է այդ ձեռագրի անունը ծագում է ասորական Սարհադոնից թե այլ անունից» (К истории, էջ 72)։

Սարհադոնից չի կարող ծագել, որովհետև նմանության ոչ մի հետք չունի։ Авдан համաձայն Կորշի չուվաշերեն նշանակում է աքաղաղ։ Եթե նման մի անուն պատահաբար չի ընկել բնագրի մեջ, ապա, մեր կարծիքով, դա հայկական բնագրում հիշված Նաթանի եղբոր անունն է՝ Բաւդան (տես Bod ձեռագրի ընթերցումը)-բ-ն սղվել է և մյուս անունների առնմանությամբ (Արիկամ, Ամրուգիլ, Ակիր) ստացվել Աւդան։

Շարունակենք։ Բնագրերի առնչակցության բնորոշ կռվաններ կարելի է տեսնել զրույցի խրատականքում, խրատների դասակարգման և բնույթի մեջ, ուր կարող են պահպանված լինել նախնական գծեր, իսկ պատմողական մասում հայկական և ասորական բնագրերի փոխադարձ նմանությունները և հեռացումները ծածկում են իրար և ոչինչ չեն կարող հուշել։

Բերենք թվային արտահայտությամբ սլավոնական և հայ խրատականքի զուգահեռ՝ շարքերը։

| O | A | B | C | D | E | G | Fb | $C_4$ |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | 1a | 1 | 1a | 1 | | 1 | | 1a |
| 2a | 1c | | 1c | | | 2 | | 1c |
| 2b | 1b | 2 | 1b | 2 | 2a | 3 | 2 | 1b |
| 3 | 2 | 3 | 2 | 3 | 2b | 4 | 24 | 2 |
| 4 | 3 | | 4 | 26 | 111 | 5 | | 3 |
| 5 | 4 | $\frac{4}{5}$ | | $\frac{6}{7}$ | 51 | 6 | | |
| 6a | 5 | 6 | 3 | 8 | 3 | 7 | 3 | 4 |
| 6b | 7a | | 5a | 16a | | | | 5a |
| 6c | | | 5b | | | | | 5b |
| 7 | 8 | 8 | 7 | 29 | 12 | 43 | 11 | 8 |
| 8 | 9 | 9 | 8 | 30 | 78 | | 58 | 9 |
| 9 | 10 | 10 | 9a | 32 | 58 | 51 | | 10a |
| 10a | | 11 | 9b | 19 | | 18 | | 10b |
| 10b | 11a | | 9c | 33a | | | | 10c |
| 10c | 11b | | 9d | 33b | | | | 10d |
| 11 | 12 | | 11 | 34<br>132 | | | | 11 |
| 12 | | | | | | | | |
| 13a | 14 | | 12 | 36 | | | | |
| 13b | 15 | | | 38 | | | | |
| 14 | 16 | 12 | | 39 | | | | |
| 15 | 17 | 13 | 10 | 40 | 112 | | 92 | 12 |
| 16a | 18 | 14 | 13 | 41 | | | | 14 |
| 16b | 18 | 14 | 13 | 41 | | | | 14 |
| 16c | 18 | 15 | 13 | 41 | | | | 14 |
| 16d | 18 | 15 | 13 | 41 | | | | 14 |
| 17 | 19 | 16 | | 42 | | | | |
| 18 | 20 | 17 | | 43 | 80 | | 81 | |
| 19 | 21 | | 14b | | | | | 16 |
| 20 | | | | | | | | |
| 21a | 22 | 18 | | 45 | | | | 17a |
| 21b | 23 | 19 | | 46 | | 77 | | 17b |
| 22 | 24 | 20 | 64a | 47 | | | | $\frac{18a}{78a}$ |
| 23 | 24 | 20 | 64b | 47 | | 99 | | $\frac{18b}{78b}$ |
| 24 | 25 | 21 | 41 | 48 | | 102 | | 48a |
| 25 | 26 | 22 | 15 | 50 | | | | 19 |

| O | A | B | C | D | E | G | Fb | $C_4$ |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 26 | 27 | 23 | 16/17 | 52 | | | | 20 |
| 27a | 28a | 24 | | 53 | | | | 22 |
| 27b | 28a | 24 | | 53 | | | | 22 |
| 27c | 28b | 25a | | 54 | | | | 22 |
| 27d | 28a | 24 | | 53 | | | | 22 |
| 27e | 28c | | 18 | 55 | | 11 | | 23a |
| 28 | 28d | 25b | 18 | 57 | | 12 | | 23b |
| 29 | | | | | 4 | | 4 | |
| 30a | | | | | 5 | | | |
| 30b | | | | | 5 | | | |
| 31 | 86 | 77 | 19 | 148 | 57 | 13 | | 24 |
| 32 | 87 | 78 | 20 | | | 14 | | 25 |
| 33a | 88a | 79a | 21c | 149a | 59a | 16 | | 26c |
| 33b | 88b | 79b | 22 | 149b | 59b | | | 27 |
| 33c | 55 | 48 | 23 | 21a/49 | 30 | 19/56 | 27 | 28 |
| 34 | 57 | | 25 | 119 | 31 | 21 | 28 | 30 |
| 35 | 109 | 100 | | 186 | | 20 | | 29 |
| 36 | 58 | 49 | 26 | 120 | | 22 | | 31 |
| 37 | 59 | 50 | 27 | 121 | 33 | 23 | 30 | 32 |
| 38 | 60 | 51 | 43 | 123 | 34 | 24/25 | 31 | |
| 39 | 30 | 27 | 29/30 | 59 | | 26 | | 42 |
| 40a | 30 | 27 | 29/30 | 59 | | 26 | | 34 |
| 40b | 30 | 27 | 29/30 | 59 | | 26 | | 35 |
| 41 | 31 | 28 | 31 | 60 | 7 | 28 | 6 | 36 |
| 42 | 32 | 29 | 32a | 62 | | | | 37a |
| 43 | 33 | | 32b | 63 | 8 | 29 | 7 | 37b |
| 44a | 34a | 30a | 33a | 61a | | 30a | 43 | 38a |
| 44b | 34b | 30b | 33b | 61b | | 30b | | 38c |
| 44c | 34c | 30c | 33c | 61c | | 30c | | 38c |
| 45 | 35 | | 34 | | 9 | 31 | 8 | 39 |
| 46 | 36 | | | | | 33 | | 6a |
| 47 | 37a | 31a | 21a | | | 17a | | 26a |
| 48 | 38 | 32 | 36c | 168 | | 34 | | 41 |
| 49 | 46 | | | 84 | | 39 | | 44 |
| 50 | 47 | | | 85/86 | | | | |
| 51 | 50 | | 42 | 107 | 11 | 42 | 10 | 47 |
| 52 | 51 | | | 108 | | 44 | | 64 |
| 53a | 52 | | | 109 | | 53 | | 65a |
| 53b | 52 | | | 109 | | 53 | | 65b |
| 54 | 53 | 46 | 55 | 112 | 28 | 54b | 26 | 66 |
| 55 | 54 | 47 | 56 | 114 | 29 | 55 | | 67 |
| 56 | 84 | | | 145 | | 47 | | |
| 57 | 85a | 75a | 57a | 146 | | 48 | | 69a |
| 58 | 85b | 75b | 57b | 147 | 56 | 49 | | 69bc |

| O | A | B | C | D | E | G | Fb | $C_4$ |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 59 | | | | | | | | 69de |
| 60 | 62 | 53 | 58 | 126 | 37 | 52 | 34 | 70 |
| 61 | 63 | 54/55 | 59a | 110 | 38 | 58 | 35 | 71 |
| 62 | 65 | 56b | 59b/14a | 111 | 40 | 54a | 37 | 15 |
| 63 | | | | | | | | |
| 64 | 42a | | | 65 | | 61 | | 73a |
| 65 | 42e | 36 | | 74 | | 69 | 14 | 51 |
| 66 | | | | | 16 | 64 | 13 | |
| 67 | 41 | | | 64 | 14 | 36 | 9 | 73b |
| 68 | 42g | 38 | 44 | 77 | | 66 | 59 | 73c |
| 69 | 42F | 37 | 45 | 68 | 79 | 63 | 12 | 50 |
| 70 | 67 | 58 | | 129 | 13 | 67 | 38 | |
| 71a | 42d | | | 73 | 42 | 68 | | 52a |
| 71b | 42h | 39 | | 69d | 15 | 65b | 14 | 52c |
| 71c | 42c | 35 | | 72 | | 70 | | 52b |
| 71d | | | | | | | | |
| 72a | 69 | 60 | | 131 | 44 | 10 | 41 | |
| 72b | | | | | | | 73 | |
| 73 | | | | | | | | 54 |
| 74a | 43 | 41 | | 79 | | 71 | | |
| 74b | 70 | 61 | 60 | 133 | 45 | 32 | 40 | 74 |
| 75a | 72 | 63/64 | 47 | 134/5 | 47 | | 41 | 55 |
| 76 | 75 | 67 | 49 | 216/13b | 49 | | | 57 |
| 77 | 76 | 68 | 61 | 139 | 50 | 74 | 43 | |
| 78 | 77 | 69 | | 140 | | | | |
| 79 | | | | | | | | |
| 80 | 79 | 71 | 62 | 143 | 53 | 73 | | 76 |
| 81 | 101 | 91 | 75 | 167 | | 96 | | |
| 82 | 80 | 71 | 63 | 142 | | 75 | | 77 |
| 83 | | | | | | | | |
| 84 | 81 | 72 | | | 54 | 76 | | |
| 85 | | | | | | 78 | | |
| 86 | | | 50 | | | | 75 | 58 |
| 87 | 89 | 80 | 51 | 150 | 60 | | 46 | 59 |
| 88 | 90 | 81 | 65 | 164 | 61 | 79 | | 79 |
| 89 | 44 | 44 | 52 | 81 | 27b | | | 60 |
| 90 | | | | | | | | |
| 91a | 91 | 82 | | 165 | 62 | | 47 | |
| 91b | | | | | | | | 61 |
| 92a | 93 | 84 | 66b | 157 | 63 | 80 | 48 | 80b |
| 92b | | | | | | | 18 | 80c |
| 93 | | | | | | | | |
| 94 | 94 | 85 | 68 | 159 | 64 | 72 | 49 | 83 |
| 95 | | | | | | | | |
| 96 | | | 66a | | | 81 | | 80a |
| 97 | | | | | 23 | 103 | 21 | |
| 98 | | | | | 18 | 83 | 16 | 81b |
| 99 | | 159 | | | 105 | | 87 | |
| 100 | | | | | | | | |

| O | A | B | C | D | E | G | Fb | $C_4$ |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 101 | | | 67 | 106 | 19 | 84 | 17 | 82 |
| 102 | | | | | 6 | 15 | 5 | |
| 103 | 96 | 86 | | 166 | 65 | 85 | 50 | 84 |
| 104a | | | | | | | | |
| 104b | | | | | | | | |
| 105 | 30 | 27 | $\frac{29}{30}$ | 59 | | 26 | | |
| 106 | 97 | 87 | 70 | 162 | | 86 | | 85 |
| 107 | | | | | | | | |
| 108 | 101 | 91 | 75 | 167 | | 96 | | 90 |
| 109 | | | | 188 | 22 | 101 | 20 | |
| 110 | | 117 | | | 84 | | 62 | |

*Ցանկի մեջ արտահայտված են հայկական վեց տարբերակ՝* A,B,C,D,E,G, *որոնցից* C *և* E *տարբերակների* $C_4$ *(բնագիր հրատարակված Կոնիբերի կողմից 1898 թվականին),* Fb *(Պղնձե քաղաքի պատմությանն ուղեկցող երկրորդ բնագրախումբը) միավորները ծանոթ են նախորդ քանասերներին, ուստի տալիս ենք նաև նրանց շարքերը։*

A *և* C *տարբերակների մեջ մտնում են 14-րդ դարի ձեռագրեր (*$A_1$*, ձեռագիր № 2961, 1321 թ. և* G*, ձեռագիր № 5599, 1347 թ.)։*

*Իսկ սլավոնական խմբագրությունը ներկայացված է լավագույն համարվող Մոսկվայի համալսարանին կից Ռուսաստանի պատմական և հնագիտական ընկերության № 189 ձեռագրով (O), որը հրատարակել է Ա. Դ. Գրիգորևը Մոսկվայի պատմական թանգարանի № 427 (պատկանել է Ի. Ա. Վախրեմևին) և Մոսկվայի Խլուդովի գրադարանի № 246 ձեռագրերի համեմատությամբ։*

*Այժմ բերենք սլավոնական և ասորի խրատականքի զուգահեռ շարքերը։*

| O | $S_2$ | $S_3$ |
|---|---|---|
| 1 | 1 | 1 |
| 2a | 2 | 2 |
| 2b | 3 | 3 |
| 3 | 4 | 7 |
| 4 | 6 | |
| 5 | 7 | 11ad |
| 6a | 8 | |
| 6b | 10 | |
| 6c | 10 | 17b |

| O | $S_2$ | $S_3$ |
|---|---|---|
| 7 | | |
| 8 | 12 | 18 |
| 9 | 13 | 21 |
| 10a | 14 | 22 |
| 10b | | 17a |
| 10c | 15 | 23b |
| 11 | 17k | |
| 12 | 16 | 24 |
| 13a | 17 | 25a |
| 13b | 18 | 25bc |

| O | $S_2$ | $S_3$ |
|---|---|---|
| 14 | 19 | 27 |
| 15 | 20 | 28 |
| 16a | 21a | 31a |
| 16b | 21b | 31b |
| 16c | 21c | |
| 16d | 21d | |
| 17 | 22 | |
| 18 | 23b | |
| 19 | | |
| 20 | | |

| O | $S_2$ | $S_3$ |
|---|---|---|
| 21a | | |
| 21b | 24 | 35 |
| 22 | | |
| 23 | 25 | 36b |
| 24 | | |
| 25 | 26 | 37 |
| 26 | 27 | 38 |
| 27a | 28a | 39a |
| 27b | 28b | 39b |
| 27c | 28c | 39c |
| 27d | 28d | 39d |
| 27e | 28e | |
| 28 | 30a | 40 |
| 29 | | |
| 30a | 30b | 41a |
| 30b | 31 | 41b |
| 31 | | |
| 32 | | |
| 33a | | |
| 33b | | |
| 33c | | 51b |
| 34 | | |
| 35 | | |
| 36 | | |
| 37 | | |
| 38 | | |
| 39 | | |
| 40a | | |
| 40b | | |
| 41 | | |
| 42 | | |
| 43 | | |
| 44a | 66ab | |
| 44b | 66c | |
| 44c | | |
| 45 | 5 | |
| 46 | | |

| O | $S_2$ | $S_3$ |
|---|---|---|
| 47 | 74a | |
| 48 | 32 | 42 |
| 49 | 36 | 46 |
| 50 | 37a | 47a |
| 51 | 38 | 48 |
| 52 | 39 | 49 |
| 53a | 40a | 50a |
| 53b | 40b | 50b |
| 54 | 41 | 52 |
| 55 | 42 | 53 |
| 56 | | |
| 57 | | 55 |
| 58 | 44 | 56 |
| 59 | 45 | 57 |
| 60 | | 60 |
| 61 | | |
| 62 | 46 | 58 |
| 63 | | |
| 64 | | |
| 65 | 47 | 61 |
| 66 | | |
| 67 | | |
| 68 | 48a | 63a |
| 69 | 48b | 63b / 64 |
| 70 | 49a | 65 |
| 71a | 50a | 67a |
| 71b | 50b | 67b |
| 71c | 50d | 67c |
| 71d | 50e | 68a |
| 72a | | |
| 72b | | |
| 73 | | |
| 74a | | |
| 74b | | |
| 75 | 52 | 70 |
| 76 | 54 | 72ab |

| O | $S_2$ | $S_3$ |
|---|---|---|
| 77 | | |
| 78 | 55 | |
| 79 | | |
| 80 | | |
| 81 | | |
| 82 | 56 | |
| 83 | | |
| 84 | | |
| 85 | 57 | |
| 86 | | |
| 87 | | |
| 88 | | |
| 89 | 58 | 77 |
| 90 | | |
| 91a | 59 | 78 |
| 91b | | |
| 92a | 60 | 72 |
| 92b | | |
| 93 | | |
| 94 | 61 | 79 |
| 95 | | |
| 96 | 63 | 81 |
| 97 | | |
| 98 | | |
| 99 | 65 | 83 |
| 100 | | |
| 101 | | |
| 102 | | |
| 103 | | |
| 104a | | |
| 104b | | |
| 105 | | |
| 106 | 34 | 44 |
| 107 | | |
| 108 | | |
| 109 | | |
| 110 | 73 | |

*Ասորական խմբագրությունը ներկայացվում է $S_2$ և $S_3$ բնագրերով։ $S_2$-ը Հարրիսի հրատարակած Քեմբրիջի № 2020 ձեռագիրն է (ըստ Նոյի՝ C), որի հետ հայկական խմբագրությունը գալիս է միևնույն աղբյուրից, իսկ $S_3$-ը Բեռլինի Զախաուի № 336 ձեռագիրն է (ըստ Նոյի՝ B), որը Նոն համարում է լավագույնը։*

*Համեմատության համար այստեղ ևս հիմք ենք վերցրել սլավոնական O բնագիրը։*

*Տեսնենք, թե ինչ են հուշում աղյուսակները.*

*1. Հայերենում չունեն իրենց զուգահեռները սլավոներենի 13 խրատներ, իսկ ասորերենում՝ 61 ($S_2$ և $S_3$-ը միասին), $S_2$-ը՝ 65, $S_3$-ը՝ 77։*

*Հայերենին չհամընկնող խրատներից ինը (63, 79, 83, 90, 93, 95, 104*a*, 104*b*, 107) հատուկ են միայն սլավոներենին։ Բացակայում են և՛ ասորերեն և՛ արաբերեն խմբագրություններից, ուրեմն կարող են ոչ թե բնագրային լինել, այլ մուծված սլավոնական հողի վրա։ Հետաքրքիր է, որ բացի 63 և 90-րդ խրատներից դրանք չեն հանդիպում և այլ աղբյուրներում։ Մյուս չորս խրատները առկա են ասորերենի մեջ, բայց իրենց կրկնօրինակներն ունեն նաև արաբերենում, ուրեմն նախնական են և հայերենից կարող էին սղվել հետագայում։*

*Ինչպես տեսնում ենք հայկական խրատաշարը գրեթե լրիվ ծածկում է սլավոներենին։*

*2. Ասորականում բացակա խրատներից 42-ը (7, 19, 21*a *22, 24, 31, 32, 33*a*, 33*b*, 34, 35, 36, 37, 38, 39, 40*a*, 40*b*, 41, 42, 43, 44*c*, 56, 61, 64, 66, 67, 72*a*, 72*b*, 73, 74*a*, 80, 81, 84, 86, 87, 88, 92*b*, 97, 102, 103, 108, 109) գտնում ենք միայն հայերենի մեջ։ Չունի նաև արաբերենը։ Դա շատ կարևոր է։ Եթե սլավոնական խրատաշարի բավական մեծ թվով միավորներ ունի միայն հայկական խմբագրությունը, ապա, թերևս, հայերենից է գալիս, այլապես կլիներ նաև մյուս խմբագրություններում։ Ուրեմն, այն ինչով ասորերենից և արաբերենից տարբերակվել է հայերենը, արտացոլված է սլավոներենի մեջ։ Դա բացառում է նաև սլավոնական և հայկական բնագրերի համար մեկ սկզբնաղբյուր ենթադրելու գաղափարը։*

*Դիտենք, որ խրատների մեծ մասն ունի կանոնավոր հերթաշար՝ 31—34, 72—74, 86—88, և նրանց զուգորդումը հայերենի հետ պատահական չէ։*

*Շարքում չկա և ոչ մի խրատ, որ միտվեր միայն ասորական խմբագրությանը։*

*Բայց շարունակենք։ Իսկ ինչ է թելադրում խրատների բնույթը։*

*Ասորական $S_1$, $S_2$, Զախաուի № 162 և Սալհանիի ու Սմիթի արաբական տարբերակների առաջին խրատն այսպես է. «Որդյակ, եթե մի խոսք լսես, թող այն մեռնի քո սրտում և մի հայտնիր ոչ ոքի (մարդու)» $S_3$-ը, Բոնիոնի և Գրաֆենի ձեռագրերը՝ «Որդյակ, եթե դու լսում ես իմ խոսքերը, փակիր դրանք քո սրտում և մի հայտնիր ուրիշի», իսկ եթովպական խմբագրությունը՝ «Որդյակ,*

եթե դու լսես որևէ խոսակցություն, պահիր այն քո սրտում և մի ասա հարևանին»։

Հայկական խմբագրությունը, սակայն, տալիս է բոլորովին այլ ընթերցում. «Որդեակ, եթէ լսես բան ինչ ի դրան արքունի, մեռո զնա և թագո ի սրտի քում, զի մի ումեք ասիցես» (A)։

Այստեղ Խիկարը իր քեռորդի Նաթանին խրատում է թագավորի դռանը որևէ բան լսելիս ոչինչ չհայտնել, իսկ ասորական և մյուս խմբագրություններում՝ ոչ թե թագավորի դռանը, այլ առհասարակ։

Հայերենի G տարբերակն ավելի որոշակի է. «Որդեակ, եթէ լսես բան ինչ ի դրան արքայի, մեռո և թագո զնա ի սրտի քում և մի՛ մոռասցիս և կամ ի վեր հանիցես։ Գուցէ հանդիպեսցէ ի թագաւորէն քեզ տանջանք և բանտ»։

Բոլոր խմբագրություններից հայերենին համաձայն է միայն սլավոներենը։ Սլավոնական առաջին խմբագրության ձեռագրերում կարդում ենք.

«Аще что слышиши от царя или видиши в дому его, да сгинет в сердце твоем и не известивши его человеком...».

Պարզ է, որ այս ընթերցվածն է հին և ճիշտ, որովհետև Խիկարը Նաթանին դաստիարակում է իբրև պալատական արքայադպիր։

Դիմենք պատժիչ խրատներին, որոնք ավելի առարկայական են, ուստի և կարող են պահպանել քիչ խաթարված կամ հեռացած տարրեր։ Դրանք պարզապես առակներ են, իսկ առակի սյուժեն հաստատուն է։ Քանի որ այստեղ գործ ունենք ավելի կայուն ձևերի հետ, հնարավոր է գնահատել փոփոխումը կամ տարբերակումը։ Փոխվում են ընդհանրապես «գործող անձինք», որովհետև ամեն մի ժողովուրդ առակի մեջ դեր է տալիս իր պատկերացումով ավելի հարմար «հերոսի»։

Կազմենք չորս խմբագրություններում առակների «գործող անձանց» համեմատական աղյուսակ.

| №№ | Սլավոներեն (0) | Հայերեն (A—G) | Ասորերեն ($S_2$) | Արաբերեն (Sm) |
|---|---|---|---|---|
| 3 | *օձ* | *կարիճ* | *կարիճ* | *կարիճ* |
| 4 | *այծ* | *այծ* | *վիթ (գազել)* | *վիթ (գազել)* |
| 5 | *նետ* | *նետ* | *քար* | *քար* |
| 7 | *խոզ-ձի* | *խոզ-ձի* | *խոզ-ձի* | *շուն կամ խոզ-ձի* |
| 9 | *գայլ-էշ* | *գայլ-էշ* | *առյուծ-էշ* | *առյուծ-էշ* |
| 10 | *որոգայթ-նապաստակ* | *որոգայթ-ճնճղուկ* | *որոգայթ-ճնճղուկ* | *որոգայթ-ճնճղուկ* |
| 11 | *եղջերու* | — | — | — |
| | *շուն-բրուտ* | *շուն-բրուտ* | *շուն-բրուտ* | *շուն-բրուտ* |
| 14 | *խոզ-նախարարներ* | *խոզ-նախարարներ* | *խոզ* | *խոզ-նախարարներ* |
| 16 | *ծառ-կացին* | *ծառ-կացին* | *ծառ-փայտահատ* | *ծառ-փայտահատ* |
| 17 | *ձագ ծիծառն-աքիս* | *ձագ ծիծառն-աքիս* | *ձագ ծիծառն-կատու* | — |
| 18 | *աքիս* | *աքիս* | *կատու* | *կատու* |
| 19 | *ոչխար* | *ոչխար* | *այծ* | — |
| 20 | *քուռակ-մայր ձի* | — | *քուռակ-մայր ձի* | — |
| 26 | *խլուրդ-արծիվ* | *խլուրդ-արծիվ* | *խլուրդ-արծիվ* | — |
| 27 | *թզկի-տերը* | *արմավենի-տերը* | *արմավենի-տերը* | *անպտուղ ծառ-տերը* |
| 28 | *գայլ-գին* | *գայլ-գին* | *գայլ-գին* | *գայլ-գին* |
| 29 | *գայլի ճուտ-գառ, ուլ* | *գայլի ճուտ-այծ, բոյծ, գառն* | *գայլ-ուսուցիչ, այծ, ոչխար* | *գայլ-գառն, ուլ* |
| 31 | *էշի գլուխ* | — | *էշի գլուխ* | *էշի գլուխ* |

*Ի՞նչ է հուշում աղյուսակը։*

*Երեք առակների մեջ (3, 10, 27) փոփոխությունը կատարվել է հետագայում.* օձ-կարիճ, թզկի-արմավենի, նապաստակ-ճրնճղուկ: *Դրանք ունեն տեղայնացման բնույթ։ Օձը և թզկին շատ ավելի ծանոթ են ռուս մարդուն, քան կարիճը և արմավենին, և հաճախ թակարդ է դրվում նապաստակ և ոչ թե ճնճղուկ որսալու համար։ Որ փոփոխությունը կատարվել է հետագայում, տեղական հողի վրա, ցույց է տալիս նրանց անզուգահեռ բնույթը։ Առաջին և երկրորդ դեպքերում համերաշխ են հայկական, ասորական և արաբական խմբագրությունները, իսկ երրորդ դեպքում՝ հայկականը և ասորականը, արաբականը՝* անպտուղ ծառ: *Սլավոնականը մնում է մենակ։ Մի առակ (11) հետամուտ է։ Բնորոշ է, որ այն առեղծվել է ռուսական աշխարհին հարազատ կենդանու՝ եղջերվի մասին և չունի զուգահեռ այլ խմբագրություններում։ 20 և 31-րդ առակները*

չունի հայերենը, որոնք, անշուշտ, եղել են նախնականի մեջ, բայց հետագայում աղվել։ Նկատենք, որ այդ առակներից մեկը բավական ուժեղ տարբերակվում է ասորականից, այսպես.

| Սլավոնական | Ասորական |
|---|---|
| Էշի գլուխը դրեցին ոսկի սկուտեղի վրա, և սահելով ընկավ մոխրի մեջ։ Եվ այսպես ասացին. Իր գլխի բարին չգիտի, այլապես պատվից չէր ընկնի մոխրի մեջ։ | Էշի գլուխը դրին սեղանի մոտ և դունչը մտցրին ափսեի մեջ։ Բայց էշը շուռ եկավ և ընկավ գետին։ Եվ մարդիկ ասացին. Նա, ինչպես երևում է, վիրավորվում է, որ իրեն անհրաժեշտ հարգանք չեն մատուցում։ |

Դա ինքնին թելադրում է, որ նախօրինակը ասորերենը չի եղել։

Այդ առակի հետքերը, սակայն, պահպանվել են հայ առածանիում, իր տարբերակներով. «Խոզի գլուխը սեղանին են դրե, գլորեր աղբն է ընկե», «Կոզնին (ոզնին) դրին խալիչին, գլորեց ընկավ գետին», «Խոզի գլուխը խալիչի վրա չի կենալ»։

Ինչպես տեսնում ենք՝ նույնն է։ Կրճատված է միայն երկրորդ՝ բարոյական մասը, հենց որի համար այն հայերենում դարձել է առած։

Մյուս խրատն այսպես է. «Որդյակ, ես տեսել եմ քուռակ, որ սպանել է իր մորը»։ Դա ոչ խրատ է ոչ առակ, այլ պարզապես արտահայտություն, որ սյուժե չունի և հեշտությամբ կարող էր սղվել։

Մյուս առակները եթե շեղվում են, շեղվում են միայն հայերենի հետ։

Անջատենք աղյուսակից այդ օրինակները.

| Սլավոնական | Հայկական | Ասորական | Արաբական |
|---|---|---|---|
| այծ | այծ | վիթ | վիթ |
| նետ | նետ | քար | քար |
| գայլ | գայլ | առյուծ | առյուծ |
| կացին | կացին | փայտահատ | փայտահատ |
| աքիս | աքիս | կատու | — |
| աքիս | աքիս | կատու | կատու |
| ոչխար | ոչխար | այծ | — |

Հակառակ երևույթը չկա։ Ոչ մի դեպքում սլավոնականը չի շեղվում հայերենից։

Երրորդ առակում, որտեղ գործող անձը գայլն է, ռուսական տարբերակի O և X ձեռագրերը տալիս են лютый зверь ընթեր-

ցումը (Подобен еси сыну оному лютому звери (X зверю), ինչպես նաև՝ սերբական С-ն, իսկ սերբական Ч և Ф ձեռագրերը вылкъ (Сыне был ми еси яко вылкъ)։ Գայլ է նաև Յագիչի գերմաներեն թարգմանության մեջ և նրա համեմատած բնագրում (вукъ), եթե դրանք նույնը չեն[51]։

Այսպես, եթե բնագիրը սերբական գրականությանն է անցել ռուսերենից, ապա, անշուշտ, կպահպանվեր օրինակի ձևը՝ лютый зверь, բայց երբ չի պահպանվել, պետք է թարգմանվեր հոմանիշով և այդ հոմանիշը вълкъ-ն է, իսկ եթե ընդհակառակը, ապա ռուսական բնագիրը вълкъ թարգմանել է лютый зверь։

Ամեն դեպքում թարգմանական նախօրինակի մեջ գործող անձը գայլն է։

Այժմ բերենք մի քանի խրատներ չորս խմբագրություններով.

| Հայկական | Սլավոնական | Ասորական | Արաբական |
| --- | --- | --- | --- |
| Որդեակ, եղեր որպէս զայն, որ ձգեր նետս յերկինս և ոչ կարաց հասուցանել ի վեր, բայց զանօրէնութիւն շահեցաւ։ Եւ դարձաւ նետն ի գլուխ իւր։ | Որդյակ, եղար ինձ այն մարդու նման, որ նետահարեց երկինքը, բայց նետը այդպես էլ երկինք չհասավ և աստծու իրեն մեղք շահեց։ | Որդյակ, դու նմանվեցիր այն մարդուն, որ քար է նետում երկինք։ Քարը երկինք չըհասավ, բայց մարդուն տրվեց իր ծառայության համաձայն։ | Որդյակ իմ, դու ինձ համար եղար այն մարդու նման, որ վերցրեց քարը և նետեց երկինք, որպեսզի խփի իր տիրոջը, բայց քարը չկպավ և չհասավ երկինք և միայն հանցանքի և մեղքի պատճառ եղավ։ |

[51] «Հայտնի չէ այս փոփոխության պատճառը»,—նկատում է Գրիգորևը (Повесть об Акире Премудром, էջ 389), իսկ Դուրնովոն դա ոչ թե համարում է փոփոխություն, որ գայլը դարձել է лютый зверь, այլ առյուծի սովորական անվանումը (*Н. Дурново*, Ал. Дм. Григорьев, Повесть... (рецензия))։ Նա հենվում է Միլլերի «Ժողովրդական երգեր лютый зверь-ի մասին», Իստրինի «Զրույց հնդկական թագավորության մասին» և իր՝ «Կենդանիների մասին զրույցների պատմությունից» աշխատանքների վրա (*В. Ф. Миллер*, О лютом звере народных песен, „Древности. Труды Московского археологического общества", том. VII, вып. I, М., 1877, էջ 1—17; *В. Истрин*, Сказание об Индийском царстве. „Древности. Труды Славянской комиссии Имп. моск. арх. общества", том. I, М.)։ Բայց հենց այդ ուսումնասիրությունները բերում են հակառակ եզրակացության։ Զրույցի մեջ лютый зверь ընթերցումն անպատճառ փոխարինել է գայլին։ 11—12-րդ դարերում, այսինքն „Сказание"-ի և „Девгенево деяние"-ի թարգմանություններից դեռ մեկ-երկու դար առաջ лютый зверь հասկացվել է գայլ։ Հետաքրքիր է, որ ազբուկովնիկներում лев բացատրվում է царь зверей և ոչ՝ лютый зверь։

| | | | |
|---|---|---|---|
| Որդեակ, եղեր ինձ որպէս գայլն, որ պատահեաց իշոյն և ասէ. Ողջոյն քեզ, յովանակ։ Ասէ էշն. Այդ ողջոյնդ տեառն իմոյ, որ արձակեաց զպարանն յոտից իմոց և ետ տեսանել զդէմս քո չար և արեանարբու։ | Որդյակ, նմանվեցիր այն գայլին, որ տեսավ ավանակին և ասաց նրան այսպես. Դու բարի եկար։ Եվ ասաց ավանակը. Թող նրան լինի ողջույնդ, ով իմ ոտքերը ամուր չկապեց, որ քեզ չըտեսնեի։ | Որդյակ, դու եղար ինձ համար այն առյուծը, որ առավոտյան հանդիպեց ավանակին և ասաց նրան. Ողջույն տեր իմ։ Բայց ավանակն ասաց նրան. Այդ ողջույնը, որ տվեցիր ինձ, թող բաժին լինի նրան, ով կապեց ինձ անցյալ գիշեր և ամուր չարեց իմ կապը, այլապես ես չէի տեսնի քո դեմքը։ | Օ, որդյակ իմ, դու ինձ համար եղար այն առյուծի նման, որ ընկերացավ էշին։ Որոշ ժամանակ էշը քայլեց առյուծի հետ։ Բայց մի օր ցատկեց առյուծը էշի վրա և կերավ նրան։ |

| | | | |
|---|---|---|---|
| Որդեակ, եղեր ինձ որպէս խոզն, որ երթայր ի բաղանիսն։ Յայնժամ ետես զընախարարսն, անկեալ ի տիղմն թաւալէր, ասելով թէ. Դուք ի ձերդ լուացէք և ես՝ ի յիմս։ | Որդյակ, եղար դու ինձ ինչպես խոզը։ Բոյարների հետ գնաց բաղնիք և երբ հասան տիղմի, պառկեց նրա մեջ և բոյարներին ասաց. Դուք գնացեք բաղնիք լողանալու, իսկ ես ուզում եմ այստեղ լողանալ։ | Որդյակ, դու նմանվեցիր խոզին, որ բաղնիք էր գնում և տեսավ կեղտաջրով փոսը։ Իրեն նետեց այնտեղ և լողացավ նրա մեջ և կանչեց իր ընկերներին. Եկեք լողանանք։ | Օ, որդյակ իմ, դու ինձ համար եղար այն խոզի նըման, որը նախարարների հետ բաղնիք գնաց, իսկ հետո, դուրս գալով բաղնիքից, տեսավ կեղտոտ առու և ըսկսեց թավալվել նրա մեջ։ |

Պարզ համեմատությունից նկատելի է, որ միայն «գործող անձինք» չէ, որ համանուն են, այլ սյուժեի մանրամասներով ևս սլավոներենը միտվում է հայերենին։

Այդպիսի ընդհանրություններ կարելի է նշել նաև առակավոր խրատներից դուրս։

Խիկարը խնդրում է Նաբուսեմաքին, որպեսզի իր փոխարեն նրա ծառային գլխատեն.

| Ասորերեն (S2) | Ասորերեն (S3) | Արաբերեն (Sm) |
| --- | --- | --- |
| *Ահա ես բանտում ունեմ ստրուկ Մարցիֆան անունով (ըստ Նոփ՝ Մանգիֆար), և նա պետք է մեռնի։* | *Ահա ես մահապարտ ստրուկ ունեմ։ Նա բանտում է և կոչվում է Մեղիֆար։ Նա մահվան է դատապարտված չար գործերի պատճառով։* | *Բանտում ես ունեմ մի ստրուկ, որը մահվան է արժանի։* |

| Հայերեն (G) | Սլավոներեն (O) |
| --- | --- |
| *Է իմ ծառայ մի, որում անունն է Սեփար և յոյժ նման է ինձ, է ի բանտի, զի մահապարտ է։* | *Ինձ մոտ բանտում կա՝ մի մարդ, որի անունն Առապար է, դեմքով նման է ինձ և մահապարտ է*[52]*։* |

*Այստեղ սլավոներենը ուղղակի կախման մեջ է հայերենից։ Հայերենում ասված է, որ մահապարտ ծառան նման է իրեն։ Այդպես է նաև սլավոներենը, իսկ ասորերենը և արաբերենը այդ մանրամասնությունը, որ անպայման բնագրային է, չունեն։*

*Նկատենք, որ հենց այս պարբերության մեջ է հանդես գալիս Առապար անունը, որ դիտվել է իբրև հայկական բառ*[53]*։*

---

52 „Се бо есть муж у мене в темнице, ему же имя Арапар, образем слицено (X сличено) мне и повинен есть смерти".

53 *Ինչպես տեսանք, Ն. Դուրնովոն, գտնում է, որ Առապարը հունական* Арапар *կամ* Арафар*-ի միջնորդությամբ կարող է ծագած լինել ասորական* Arafar*-ից։ Դուրնովոն հավաստում է, որ սեմական լեզուներում այդպիսի անուն կա։ Ընդունենք, չնայած նա աղբյուրը չի նշում։ Իսկ ի՞նչ կերպ է առնչվել Խիկարի հետ։*

*Արաբական խմբագրությունը մահապարտ ծառայի անունը չունի, ասորական* S2*-ը տալիս է Մանգիֆար, Գրաֆենի օրինակը՝ Մեղիֆար, հայերեն հնագույն բնագրի օրինակը՝ Սեփար (Սիփար), սլավոներենը՝ Առապար։ Առաջին երեք անունները, չնայած բավական աղավաղ, անշուշտ գալիս են մեկ նախօրինակից։ Հայերեն Սիփարը Մանգիֆարն է, առաջին վանկի սղումով, ֆ-ն հայերենում տալիս է փ։ Բայց ոչ մի կերպ չի կարելի չորրորդ անունը՝ Առապար, արտածել նույն խմբից։ Այն որևէ բանով չի հիշեցնում մյուսներին։ Ընդհանուր է միայն ոչինչ չհուշող վերջին երկու հնչյունը՝* ար*։ Այդպիսով* **Առապարը** *նախնականի մեջ եղած մահապարտ ստրուկի անվան հետ որևէ կապ չունի։*

*Իբրև անուն* **Առապարը** *չէր կարող նաև ասորերենից գալ, թեկուզ հունարենի միջնորդությամբ, եթե նույնիսկ, ընդունենք, որ գոյություն ունի սեմական ձև, որովհետև միևնույն ասորական խմբագրության մեջ դժվար է ենթադրել նույն մարդու երկու խիստ տարահունչ անուններ.*

*Այն դժվար է բացատրել նաև հայերենի միջնորդությամբ, եթե ընդունենք, որ Առապար հայերեն բառ է, գոյական և ոչ անձնանուն, ապա, անհասկանալի է. ինչ ճանապարհով այն կարող էր ներթափանցել բնագիր իբրև անձնանուն, դուրս մղելով հենց հայերենից եկող ձևը՝ Սիփար։*

Մեր օրինակները թույլ չեն տալիս ենթադրելու սլավոներենի և հայերենի համար մեկ ընդհանուր աղբյուր, քանի որ նրանք բնորոշ են միայն հայերենին։ Հայկական և ասորական $S_2$-ը գալիս են նույն աղբյուրից։ Դրանով պետք է բացատրել նրանց ընդհանրությունները, բայց, ինչպես տեսանք, սլավոներենը բոլոր այն դեպքերում, երբ մոտ է հայերենին, հեռանում է $S_2$-ից։ Ամենից ավելի բնորոշ են առակների «գործող անձինք»։ Եթե[1] հայերենը և սլավոներենը իրարից անկախ ծագեին մեկ նախամորից, ապա սլավոներենում «գործող անձինք» այդպես մաքուր չէին զուգահեռ գնա հայերենին և տարբերակվի $S_2$-ից, քանի որ $S_2$-ն էլ նույն նախամորից է գալիս, ինչ հայերենը։

Փոփոխությունները նախ կատարվել են հայերենում, ապա անցել սլավոներենին։

Բերենք այդպիսի մի օրինակ ևս.

Հայկական D տարբերակը, Բանք իմաստասիրականքը և Սոլովեցկյան բնագիրը (Sol) ունեն զուգահեռ խրատ.

| Բանք | D | Sol |
|---|---|---|
| Որ զքարինս զգուէ, տամնաթափ լինի (ձեռ. № 464, էջ 1 բ)։ | Որդեակ, որ զքարինս զգուէ, տամնաթափ լինի։ | Որդեակ, ով որ քարը կծի, տամնաթափ կլինի։ |

Այս խրատը հետամուտ է գրույցի և՛ հայկական և՛ սլավոնական բնագրերում, Բանքից գալիս է նախ՝ հայ բնագիր, ապա՝ սլավոնական։ Դժվար է ենթադրել, որ Բանքը առանձին-առանձին չմիջնորդված աղբյուր է եղել և՛ D-ի և՛ Sol-ի համար։ Դա կլիներ հնարավոր, բայց բացառիկ զուգադիպություն։ Այդպես, մի խրատ, որ հայ մատենագրության պայմաններում մուտք է գործել գրույց,

---

[1] Թերևս ենթադրել, որ Առապարը ծագել է Սիփարից։ Սլավոնական բնագրում անունների ամեն կերպ սկսվում են ա-ով, օր Նադան-Анадан, Նաբուգեմաք-Набугил-Ампугил, Նինվեի-Ниневийский-Наливский-Алевитский, Բադան-Авдан և այլն։ Այդպես և Սիփարը կարող էր դառնալ Асипар, որից և՝ Арапар։ Բայց այս ենթադրությունը կարող է նկատառվել միայն այն դեպքում, եթե բացատրվի ինչպես է սի (զի, զե, սե) կապակցությունը դարձել ra, եթե դեր չունի որևէ աննմանություն կամ վրիպակ։ Նկատենք, որ հայերեն գրչագրերում ս-ն հնարավոր է շփոթելով կարդալ n:

Այստեղ ևս մենք գործ ունենք անվան խորթ ու անօրինակ ձևի հետ։

*ունի և սլավոնական թարգմանությունը։ Դա շատ արտահայտիչ վկայություն է հայերենը իբրև սլավոնականի թարգմանական սկզբնաղբյուր ընդունելու համար։*

*Նկատենք, որ սլավոներենը* D*-ի հետ ունի այլ եզակի համընկնումներ ևս։ Քեռորդու պատժիչ խրատը, որ բնագրային է՝* Сыну, иже ркли 'суть въ повестехъ оже родивше то сыном звать, а еже скоть даявше: то холопомъ звать *առկա է հայկական վեց տարբերակներից միայն* D*-ում (*D*—170)։*

D*-ի մեջ պահպանվել են գծեր, որ նախապես կային սլավոնական բնագրի թարգմանական օրինակում։*

*Մի հետաքրքիր զուգահեռ ևս, բայց որը դուրս է գալիս զրույցի սահմաններից։ Սլավոներենում Ալեքսանդրի դրվագներից մեկը զարմանալիորեն նման է* $D_4$*-ի ընթերցմանը։ Ալեքսանդրը ցանկանում է երկինքը մոտիկից տեսնել։ Հրամայում է թռչունի վրա սնդուկ դնել և սնդուկի մեջ բարձրանում է երկինք։*

*Ահա այդ հատվածը* $D_4$*-ի համեմատ.*

$Д_4$

***Եւ կապեալ էի պինդ պարանօք զսընտուկն և զշուանն լուծի ի մէջն անկըղոյ հաւուցն, որ և առեալ վերանային։ Եւ կայր ի ձեռս մանկանց մի մի շամփուր միս, որ թէ բարձրացուցանէին շամփուրն մսով և հաւքն վերանային ընդ սնդկովն ի բարձր ելանէին և կամէին առնուլ միսն, և որքան ոչ կարենային առնուլ միսն, նա այլ աւելի բարձրանային սընտուկովն, և տղայքն ի մէջն բարձր ձայնիւ աղաղակէին և ասէին, թէ բերէք քար և կիր, զի գործեցաք զապարանն թագաւորին, մինչև վերուստ ի վայր գայր ձայն տղայոցն։ Եւ թէ զմիսն աստ և անդ շրջեցուցանէին, նա հաւքն ի միսն փաղէին, զսնտուկ աստ և անդ վերացեալ շրջեցուցանէին։ Եւ յորժամ կամենային իջանել ընդ երեսս յերկրի, նոյնժամայն խոնարհեցուցանէին տղայքն զշամփուրն ի վայր և հաւքն ի միասին գային խոնարհութեամբ ընդ երեսս երկրի, նոյնժամայն առնէին զմիսն և կերակրէին։***

***Ալեքսանդր***

Самъ же царь Александръ селъ въ той клетце и велелъ повязать ужами ея крепко и твердо, понеже бо ветромъ не разрушило. И зверей повеле отъ земли взогнати: зверіе же съ горы полетеша вси в купе клетки же со Александромъ посреде ихъ носящеся на воздусе. Нравъ же бе у зверей таковъ: аще где зазрятъ мясо сырое, туда и летятъ. Александръ же умысли такъ во оконце на копіе восторгнулъ мяса и показуя, вверхъ державъ. Зверіе же гледяху на мясо то, и усердно горе леташе: лондеже видятъ мясо, тако и летятъ чающе постигнути мясо и возномахуся высоко необычно на воздухъ. Кулы Александръ восхоте летети, туда и мясо зверемъ показоваше-звери туда и летаху; яко уздою мясомъ зверей повадитъ.

*Մենք դժվարանում ենք բացատրել նրանց առնչության ուղին, բայց որ այն կա՝ անժխտելի է։ Միևնույն է, թե երբ է Ալեքսանդրը*

Խիկարից դասեր քաղել և ինչ լեզվով, ամեն դեպքում հայ և ռուս գրական կապերն ավելին են, քան մենք կարող ենք պատկերացնել։

Խիկարի բնագիրը սլավոներեն է թարգմանվել 11—13-րդ դարերում։ Դա մի շրջան է, երբ արդեն գոյություն ուներ լայն շփում հայերի և սլավոնական ժողովուրդների միջև։

Դեռ շատ վաղուց հայերը Բուլղարիայում ունեցել են բնակեցման մեծ շրջագիծ[54]։

Խիկարի զրույցը կարող էին իրենց հետ տանել հայ Պավլիկյանները, և այդ փոխանցման օրինակը բացառիկ չէ։ Հայտնի է, որ Դիգենիսի մասին բյուզանդական նշանավոր վեպի մեջ խիստ նկատելի է հայկական տարրը և այն, ինչպես նկատում է հայ բյուզանդագիտության հայրը՝ Նիկողայոս Ադոնցը, նույնպես փոխանցվել է սլավոններին բուլղարահայերի կողմից[55]։

Թարգմանությունը հնարավոր էր նաև Կիևյան Ռուսիայում։ Կիևյան Ռուսիայի հետ հայերի հարաբերության մասին կան հնագույն վկայություններ։

Դեռ վաղուց Կիևում բավական թվով հայեր էին ապրում։ Անհասկանալի է ինչ ճանապարհով Ս. Սոֆիայում Յարոսլավ Իմաստունի սարկոֆագի վրա փորագրված են հայկական տառեր, որոնք հուշում են 11—12-րդ դար։ Ագապիտի վարքի մեջ հիշվում է. «Врач некто родом и верою армянин, хитр зело во врачевании якоже прежде того не быти такому» և այլն[56]։

Այդպիսով լիովին հնարավոր էր գրական փոխանցումը, ինչ

---

[54] *И. Иванов*, Богомилски книги и легенды, София, 1925, էջ 18—19 և այլն։ Բուլղարիայի հայ գաղութի մասին հպանցիկ ակնարկ և մատենագիտական տեղեկություններ տե՛ս Ա. Գ. Աբրահամյան, Համառոտ ուրվագիծ հայ գաղթավայրերի պատմության, գիրք Ա, Երևան, 1964, էջ 305—327։

[55] *Nicolas Adontz*, Etudes Armeno-Byzantines, Lisbonne, 1965, էջ 36։ Ադոնցը գրում է. «Հենց նույն տարագիր հայերն էին, որ Դիգենիսի պոեմը փոխանցեցին Կիպրոս և Բալկանյան երկրներ»։ Հայերի կողմից ստեղծված կամ փոխանցված սլավոնական մի ուրիշ բնագիր ևս պահպանվել է հին բուլղարական ձեռագրում՝ «Խոսք Հովհաննեսի Ոսկեբերանի, թե ինչպես են առաջացել Պավլիկյանները» (Տե՛ս Հ. Բարթիկյան, Պավլիկյանների առասպելական ծագումը ըստ հին բուլղարական մի ձեռագրի, «Տեղեկագիր», հաս. գիտ., 1957, № 1, էջ 83—92։

[56] „Киевопечерский патерик по древним рукописям“, Киев, 1870, էջ 88—89, 93. „Переводы и статьи Н. О. Эмина по духовной армянской литературе“, М., 1897, էջ 154; *Л С. Хачикян*. Новые материалы о древней армянской колонии Киева. „Исторические связи и дружба украинского и армянского народов“ (сборник материалов науч. сессии), Ереван, 1961, էջ 110—119։

ճանապարհով ուզում է լինի. բուլղարների միջոցով, թե, ուղղակի, Կիևյան Ռուսիայում։

Նկատենք, որ դա համապատասխան է ռուս հին գրականության զարգացման միտումներին։

Ա. Պիպինը և Դ. Լիխաչովը գտնում են, որ ռուս գրականությունը Ասիայի հետ ոչ մի կապ չունի։ «Ասիայի հետ կապերի բացակայությունը համարվում է ռուս գրականության ապշեցուցիչ առանձնահատկությունը»[57],— գրում է Լիխաչովը։ Եթե որևէ ազդեցություն կամ ներթափանցում կարելի է նկատել, ապա միայն բանավոր ուղիներով և շատ չնչին։ Այդ հանգամանքը Լիխաչովը բացատրում է դիմադրողականությամբ. «Այդ անկասկած կապվում է հին Ռուսիայի մշակույթի Ասիայի նկատմամբ տածած դիմադրողականության հետ»[58]։

Բայց ինչ է նշանակում Ասիա. «Հին Ռուսաստանը գիտեր թարգմանություններ հունարենից, լատիներենից, եբրայերենից, գիտեր երկեր, որոնք ստեղծվել են Բուլղարիայում, Սերբիայում, գիտեր թարգմանություններ չեխերենից, գերմաներենից, լեհերենից, բայց չգիտեր և ոչ մի թարգմանություն թուրքերենից, թաթարերենից, միջինասիական կամ կովկասյան լեզուներից»[59]։

Այդպես, նա նկատի ունի մահմեդական ժողովուրդներ ընդգրկող երկրներ, երկրներ, որոնց հետ և դիմադրության մեջ էր հին Ռուսաստանը։

Որ դա այդպես է, երևում է հաջորդ տողերից։ Տեսնելով ժողովրդի քաղաքական կյանքում նույն դիմադրողականությունը, Լիխաչովը նկատում է. «Ի տարբերություն արևելյան և հարավային Եվրոպայի, Ռուսաստանում չեն եղել «պոտուրչենեցներ», «պոմակներ»՝ բնակչության ամբողջ խմբեր կամ շրջաններ, որոնք անցել են մահմեդականության»[60]։

Այստեղից պարզ է,— եզրակացնում է Լիխաչովը,— որ խոսել ռուս հին գրականության դրության մասին «Արևելքի և Արևմուտքի միջև» բոլորովին անկարելի է։ Այդ նշանակում է ռուս հին գրականության ճշմարիտ իմացության բացակայությունը ծածկել աշխար-

---

57 *Д. С. Лихачев*, В чем суть различий между древней и новой русской литературой. „Вопросы литературы", № 5, 1965, էջ 176։

58 Նույն տեղում, էջ 177։

59 Նույն տեղում, էջ 176։

60 Նույն տեղում, էջ 177։

*հագրական պատկերացումով։ Ռուս հին գրականության դրության մասին կարելի է խոսել միայն իբրև արևելյան Եվրոպայի նկատմամբ ասիական ազդեցության դեմ դիմադրության վերջին և շատ ավելի ամուր կետի մասին»*[61]։

*Լիխաչովը այդ երևույթից իբրև ենթադրաբար շեղվող օրինակ բերում է Խիկարի զրույցը. «Միայն մի ստեղծագործության՝ «Ակիր իմաստունի մասին» պատմվածքի, շուրջ կարող է կասկած լինել, արդյո՞ք այն չի թարգմանվել ասորերենից»*[62]։

*Քանի որ Ակիր իմաստունի մասին պատմվածքը գալիս է հայերենից, ապա վերանում է այդ բացառումը ևս։ Հայ գրականությունը չի մտնում «ասիականության» շրջանակների մեջ, և հին Ռուսաստանը հարկ չուներ նրա նկատմամբ դիմադրողականություն տածելու*[63]։

*«Իրանա-ռուսական էպիկական ճանապարհը ձգվել է ոչ թե Կովկասի և Պոլովցյան տափաստանների վրայով,— գրում է Մ. Խալանսկին,— այլ մի ուղղությամբ, որ որոշվում է մշակութապատմական միջանցիկ կայաններով. արաբներ, Բյուզանդիա, հարավային սլավոններ»*[64]։

*Այստեղ պետք է ավելացնել մի կայան ևս՝ հայեր։*

---

61 „Вопросы литературы“, № 5, 1965, էջ *177*։

62 *Նույն տեղում, էջ 176։ Նկատենք, սակայն, որ այստեղ, Դ. Լիխաչովի մոտ ինչ-որ հակասություն կա։ Ասորերենը նա մտցնում է «ասիականության» մեջ, եբրայեցերենը՝ ոչ, ընդունում է եբրայեցերենից թարգմանելու հնարավորությունը, իսկ ասորերենից՝ համարում բացառություն։*

63 *Երբ ընդունում ենք,որ սլավոներենի նախօրինակը հայերենն է, այդ հետևությունը դառնում է նախադրյալ, որով արդեն հնարավոր է նույնիսկ որոշ դեպքերում հեշտությամբ բացատրել սլավոներենում առկա անունների ծագումը։*

64 *М. Халанский*, Южно-славянские сказания о Кралевиче Марке в связи с произведениями русского былевого эпоса (оттиск из „Русского филологического Вестника“), Варшава, 1895, էջ *520*։

## 8. ԴԻՑԱՅԱԿԱՆ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

*Այս բնագրի մասին առաջին խոսքն ասում է Հ. Տաշյանը իր կազմած Վիեննայի Մխիթարյան մատենադարանի ձեռագրացուցակում[1] և ապա՝ 1899 թվականին երեք գիտնականների* «The Story of Ahikar» *գրքի առթիվ գրված ուսումնասիրության մեջ «Հանդէս ամսօրէա» ամսագրում, որ առանձին գրքով հրատարակվում է 1901 թվականին։ Դիցաբերեն խմբագրությանը նվիրված է վերջին գլուխը, մի քանի էջ[2]։*

*Ֆրանսուա Նոն այս խմբագրության մասին բավարարվում է փոքրիկ ծանոթությամբ. «Հայերենից ծագում է մի այլ վերսիա, թաթարերեն, որը դեռ չի հրատարակված»։*

*Բնագիրն առաջին անգամ տպագրվել է 1913 թվականին* «The Story of Ahikar» *ծանոթ գրքի երկրորդ հրատարակության մեջ, Կոնիբերի կողմից[3]։ Այնուհետև լատիներեն տառադարձությամբ, լուսապատճենը և ֆրանսերեն թարգմանությունը հրատարակում են Ժան Դընին և Էդուարդ Տրիյարսկին* «Rocznik Orientalistyczny» *ամսագրի 27-րդ հատորում, 1964 թվականին[4]։ Նրանց ծանոթ չէ Կոնիբերի աշխատանքը և հենվելով Ֆ. Նոի վրա, կարծում են, թե*

---

[1] *«Ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա», կազմեց Հ. Յակովբոս Վ. Տաշեան, Վիեննա, 1895, էջ 943—945։*

[2] *«Հանդէս ամսօրեայ», 1899, էջ 372—377, «Մատ. մանր. ուսումն.», մասն Բ, Վիեննա, 1901, էջ 143—152։*

[3] „The story of Ahikar from the Aramaic", Syriac, Arabic, Armenian, Ethiopic, Old turkish, Greek and Slavonik versions by F. C. Conybeare, J. Rendel Harris and Agnes Smith Lewis, second edition enlarged and corrected, Cambridge, 1913, *էջ 86—98 և 185—197։*

[4] „Rocznik orientalistyczny", tom XXVII, Warszawa, 1964, *էջ 7—61։*

հրապարակ են բերում առաջին անգամ[5]։ Բնագիրը տեղ է գտել և մեր ժողովածուի մեջ, հայերեն տառադարձությամբ, որ արված է Դընիի և Տրիյարսկու հրատարակությունից[6]։

Երեք հրատարակությունների հիմքում էլ ընկած է միևնույն և միակ ձեռագիրը, որ գտնվում է Վիեննայի Մխիթարյանների մոտ և կրում է 468 համարը։

Ձեռագիրը ժողովածու է, պարունակում է Գոշի և լեհահայոց դատաստանագրքերը, Ոսկեբերանի մի ճառը և հայատառ ղփչաղերեն այլ նյութեր, ընդօրինակված է 1575 թվականին, Կամենիցում։ Գրիչն է Խաչերես Տեր-Օգսենտյանը[7]։

Խիկարի բնագիրը բռնում է ժողովածուի 54—62 էջերը։

Դընին և Տրիյարսկին իրենց փոքրիկ առաջաբանի մեջ գրում են. «Թվում է առավել հավանական, որ մեր բնագիրը հայկականից է գալիս»[8]։

Քիչ է ասված։ Ոչ թե առավել հավանական, այլ հենց այդպես է։ Բնագիրը թարգմանված է հայերենից և ղփչաղախոս հայերի համար։ Այդ մասին արդեն որոշակի դիտողություններ ունի մեծ բանասեր Հ. Տաշյանը։ Մենք չենք ուզում կրկնել[9]։

Ջրույցը թարգմանված է C տարբերակի մի որևէ ընդօրինակությունից։ Ասուվածների անունները նույնն են ինչ C-ի մոտ և ապա՝ ղփչաղերեն բնագրի խրատականքը վերջանում է չորս բանքով, իսկ դա հատուկ է միայն C-ին։

Բերենք խրատների զուգահեռ շարքերը C-ի համեմատ։ Ղփչաղերեն բնագիրն համառոտագրում ենք հայերեն Ղ տառով։

---

[5] Նույն տեղում, էջ 8։ Հեղինակները նշում են «The Story of Ahikar» գրքի երկրորդ հրատարակությունը (էջ 7), բայց ղփչաղական բնագրի մասին մնում անտեղյակ։ Դա հիշեցնում է հունգարացի գիտնական է. Շուտցը իր գրախոսության մեջ (տե՛ս «Acta Orient. Hung.», t. XIX, 1966, էջ 265—368)։

[6] «Պատմութիւն և խրատք Խիկարայ իմաստնոյ», գիրք Ա, էջ 321—335։

[7] Տե՛ս Տաշյանի Ցուցակը, էջ 943—945։ Ձեռագրի նկարագրությունը տե՛ս նաև «Rocznik», էջ 8։ Այստեղ նշված է, որ թարգմանչի և ընդօրինակողների անունները բացակայում են։ Թարգմանչինը՝ այո, բայց ընդօրինակողինը կա և ուղղակի հրատարակիչները չեն նկատել։

[8] „Rocznik", էջ 9։

[9] Հայերենից թարգմանվելու լավագույն վկայություն են բնագրում պահպանված բազմաթիվ հայերեն բառերը՝ **ճարտար, ճիշտակ, գերեզմանկայ, անզգամլարկայ, անզգամ, լեղի, բամբասել, փորձանք, արդար, փորձություն, փառք, ազան, քաջ** և այլն։

| C | Դ |
|---|---|
| 1a | 1a |
| 1b | 1b |
| 1c | 1c |
| 2 | 2 |
| 3 | 4 |
| 4 | 3 |
| 5 | 5 |
| 6 | 6 |
| 7 | 8 |
| 8 | 9 |
| 9a | 10a |
| 9b | 10b |
| 9c | 10c |
| 10 | |
| 11 | 11 |
| 12 | 14 |
| 13 | 15 |
| 14a | 16a |
| 14b | 16b |
| 15 | 17 |
| 16 | |
| 17 | |
| 18 | 19 |
| 19 | 20 |
| 20 | 21 |
| 21a | 22a |
| 21b | 22b |
| 21c | 22c |
| 22 | 23 |
| 23 | 24 |
| 24 | 25 |
| 25 | 26 |
| 26 | 27 |
| 27 | 28 |
| 28 | 29 |

| C | Դ |
|---|---|
| 29 | 30 |
| 30 | 31 |
| 31 | 32 |
| 32a | 33a |
| 32b | 33b |
| 33 | 34 |
| 34 | 35 |
| 35 | 36 |
| 36 | 37 |
| 37 | 38 |
| 38 | |
| 39 | 39 |
| 40 | 40 |
| 41 | 42 |
| 42 | 41 |
| 43 | 43 |
| 44 | 44 |
| 45 | 45 |
| 46 | 46 |
| 47 | 47 |
| 48 | 48 |
| 49 | 49 |
| 50 | 50 |
| 51 | 51 |
| 52 | 52 |
| 53 | 53 |
| 54a | 54a |
| 54b | 54b |
| 55 | 55 |
| 56 | 56 |
| 57a | |
| 57b | |
| 57c | |
| 58 | 57 |
| 59a | |
| 59b | |

| C | Դ |
|---|---|
| 60 | 58 |
| 61 | 59 |
| 62 | 60 |
| 63 | 61 |
| 64 | |
| 65 | 62 |
| 66a | 63a |
| 66b | 63b |
| 67 | 65 |
| 68 | |
| 69 | 66 |
| 70 | 67 |
| 71a | 68a |
| 71b | 68b |
| 72 | 69 |
| 73a | |
| 73b | |
| 74a | 70a |
| 74b | 70b |
| 75 | 74 |
| 76 | 72 |
| 77 | 73 |
| 78 | 74 |
| 79 | 75 |
| 80 | 76 |
| 81 | 78 |
| 82 | 79 |
| 83 | 80 |
| 84 | 81 |
| 85 | 82 |
| | 7 |
| | 12 |
| | 13 |
| | 18 |
| | 64 |
| | 77 |

*Աղյուսակը բացորոշ արտահայտում է երկու բնագրերի ազգակցությունը։*

*Բանասերները ղփչաղերեն խմբագրությունն համեմատել են Կոնիբերի հրատարակության հետ, որը որոշ առումով համահավաք բնագիր է*[10]*։ Կոնիբերն օգտագործել է տարբեր խմբի ութ ձեռագիր։*

---

10 *Դընին և Տրիյարսկին գրում են. «Քանի որ չգիտենք որն է թարգմանչի նախօրինակը, մենք կսահմանափակվենք նշելով մի քանի տարբերություններ մեր բնագրի և հայկականի միջև, որի քննական հրատարակությունը տրված է Կոնիբերի կողմից» («*Rocznik*», էջ 9)։*

*Այդ համեմատությունները այժմ կորցնում են իրենց գիտական արժեքը։*

Նրա մոտ ընդգրկված են 100 խրատ, իսկ C խմբին բնորոշ է միայն 85-ը։ Ինչպես տեսնում ենք, ղփչաղերենը խրատների քանակով գրեթե ծածկում է C-ին, ունի 82 խրատ, իսկ Կոնիբերի հավելյալ խրատները նրա համար անհարազատ են։

Հետաքրքիր է, որ C₁ բնագիրը (№ 1978) ընդօրինակված է Իլովում (Լվովում)։ Լեհահայ գաղութին ծանոթ էր C խմբագրությունը, որը և ղփչաղերեն թարգմանչի ձեռքն է անցել։

Ղփչաղերենից, սակայն, ոչ թե պակասում են երեք խրատ, այլ ինը՝ C-ի 10, 17, 57, 59, 64, 68 և 73-ը։ Բայց C-ի համեմատ ունի հավելյալ վեց խրատներ՝ 7, 12, 13, 18, 64, 77։ Այդ խրատները հետամուտ չեն, այլ բնագրային և առկա են հայերեն մյուս տարբերակներում[11]։ Նշանակում է ղփչաղերեն թարգմանչի մոտ եղել է մի աղբյուր, որ դեռևս ավելի շատ խրատներ ուներ և որոշ չափով կարող է արտահայտել C-ի կազմավորումը։

Փորձենք որոշել թարգմանության ժամանակը։

Տաշյանը ենթադրում է գրչի ընդօրինակության տարեթվից (1575) շատ առաջ.

«Անհնար է մտածել,— գրում է նա,— որ բուն թարգմանիչը վերջին կեսեն ավելի բառաբառ թարգմանելեն ետքը՝ մնացյալ մասն և առակներու վերջին շարքն մեկդի թողուր, և միայն քանի մը խոսքով ամփոփեր, այն ալ այնպես, որ վերջին էական կետերն անգամ դուրս մնան։ Հայտնապես գրչի մը համառոտությունն է այն, և այսպիսի օրինակ մը գտած էր Խաչերես։ Ասով հիշյալ օրինակն իբր ԺԶ դարուն ըլլալու է, իսկ թարգմանությունն ավելի ալ կանուխ»[12]։

Այո, անհնար է։ Բայց հնարավոր է մտածել, որ հենց բուն թարգմանչի ձեռքի տակ եղած հայերեն օրինակն էր արդեն համառոտված և ոչ թե ղփչաղերեն բնագրի որևէ ընդօրինակություն։ Այդպիսի բնագրեր հայ տարբերակներում շատ կան, թեկուզ հենց A խմբի մեջ, և սեղմվում է ընդհանրապես պատմողական մասը։ Առհասարակ հայ մատենագրությունն առավելություն է տվել խրատներին։ Մեզ ծանոթ ամենահին ձեռագրերում բնագրի պատմության և զրույցների բաժինը կրճատված է. C₁-ում՝ կիսով չափ, իսկ A₁-ում՝ լրիվ, թողնելով պատմողական և առակավոր խրատների մեջ մի փոքրիկ անցում, այսպես.

---

[11] A-ի միավորներին համընկնում են այսպես՝ 7/6, 12/24, 13/17, 18/21։ Երկու խրատ (64 և 77) A-ն չունի, բայց կան մյուս տարբերակներում։

[12] «Մատենագրական մանր ուսումն.», մասն Բ, էջ 145։

«Արդ, որ լսէ զխրատս զայս և առնէ, սիրելի առնէ զանձն աստուծոյ և մարդկան և երանեմ կենաց նոցա։ Եւ որ լսէ և ոչ առնէ, մանաւանդ թէ հակառակ ևս լինի և փոխանակ բարոյ չար ևս խորհի, եթէ որդի է, թէ եղբար, թէ աշկերտ, թէ սիրելի կամ օտար, նա զառաջիկայ գրեալդ ընդունի։ Եւ թէ ոչ՝ հազար եղուկ է նոցա»[13]։

Կրճատված է նաև E տարբերակը և մյուս տարբերակներից շատ ընդօրինակություններ, հաճախ պահպանելով միայն խրատները։

Նկատենք, որ սլավոնական խմբագրությունը ազգային մատենագրության մեջ ընթացել է այլ ուղիով։ Ավելի կրճատվել են խրատները և պահպանվել պատմության ու զրույցների բաժինը։

Ղփչաղերեն թարգմանությունը շատ վաղ չէր կարող լինել, որովհետև այն գալիս է հայկական C տարբերակից, որը ինքնին մեծ վաղեմություն չունի։ C-ի խմբին պատկանող որևէ ձեռագիր ընդօրինակություն մեզ հայտնի չէ, որը անցներ 17-րդ դարից այն կողմ։ Նրա չորս բանքի հավելումը հետագա շրջանի է և դեռևս 15-րդ դարում չէր միակցվել բնագրին։ Եվ ապա՝ ինչպես աղյուսակից տեսնում ենք, հայկական C-ից դուրս հետամուտ և ոչ մի խրատ հատուկ չէ ղփչաղերեն խմբագրությանը։ Նշանակում է թարգմանությունը երկար ճանապարհ չի անցել և չի տեղայնացել։

Տաշյանն ինքը քիչ հետո նկատում է. «Մյուս կողմանե հայտնապես շատ հին ալ ըլլալու չէ թարգմանությունը։ Գոնե այն ձեռագիրն, որ թարգմանչին առջևն էր, արդեն ճշգիվ մեր արդի ծանոթ ձեռագրաց կարգեն էր, ոչ նվազ աղավաղ»[14]։

Շատ հին չէր կարող լինել և ոչ էլ՝ ԺԵ դարից ավելի կանուխ։

Վաղ ժամանակներում է կազմավորվել լեհահայոց գաղութը։ Այն դեռ երկար պահպանում էր ազգային լեզուն, բայց հատկապես 16-րդ դարի երկրորդ կեսից սկսեց շատ արագ կորցնել։ Գրագրությունների մեջ մուտք են գործում լեհերենը և ղփչաղերենը։ Ղփչաղախոս տարրը ուժեղանում է Ղրիմից գաղթած հայերի հավելումով։ Գրավոր աղբյուրներից ճիշտ որոշել, թե երբ հայ համայնքը սկսեց ղփչաղախոս դառնալ, անհնար է։ Կենցաղում, առանձին խոսակցության մեջ, նրանք թերևս ավելի շուտ էին անցել ղփչաղերենի, բայց գրավոր խոսքը ավանդույթի ուժով մնում էր հայերենը։ Գիրն ավելի պահպանողական է։ Մեզ հասած առաջին հայագիր

[13] Ձեռագիր № 2961, էջ 51բ։

[14] «Մատ. մանր ուսումն.», մասն Բ, էջ 147։

ղփչաղերեն երկից էլ դեռևս չի կարելի սահմանել հայերենից ղփչաղերենի անցման ժամանակը, որովհետև այդ անցումը ուղղագիծ չէ։ Հայ գրավոր լեզուն դեռ շարունակում էր երկար, իսկ ղփչաղերենը ուղեկցում էր նրան։ Կրոնական բնույթի երկերը և այն ամենը ինչ ուներ «ազնիվ» թեմա, գրվում էր հայերեն, դա գրականության լեզուն էր, իսկ հասարակ գրությունները՝ ղփչաղերեն։ Այդ երևույթը տեսնում ենք նաև 17-րդ դարում թուրքախոս հայերի մոտ[15]։

Միայն 16-րդ դարի վերջից են երևան գալիս լուրջ երկեր ղփչաղերենով։ Ստեղծվում է հայատառ ղփչաղերեն գրականություն իր լիարժեք նշանակությամբ։ Հետաքրքիր օրինակ է Կամենիցի նշանավոր տարեգրությունը։ Տեր Հովհաննեսը սկսում է 1540 թվականից և հասցնում մինչև 1610 թվականը՝ հայերեն։ Նրա որդին և թոռները արդեն շարունակում են ղփչաղերեն[16]։ 16-րդ դարի 70-ական թվականներից հիմնականում ղփչաղերենով են վարում և դատական նիստերը[17]։

Խիկարի բնագրի ղփչաղերեն միայն մի օրինակ է ծանոթ Տաշյանին, Վիեննայի Մխիթարյանների ձեռագիր № 468-ը։ «Ասկե դուրս ալ օրինակներ անշուշտ կը գտնվին, բայց առայժմ մեզի անծանոթ և անմատչելի են»[18]։

Ուրիշ օրինակներ անծանոթ են և այսօր։ Դա թերևս թույլ է տալիս ենթադրելու, որ չկան կամ քիչ են եղել և դարձյալ վկայում է բնագրի վաղեմության դեմ։

Բացի այդ։ Խաչերեսը ընդօրինակել է մի ձեռագրից, որ պարունակում էր լեհահայոց դատաստանագիրքը, իսկ ինչպես հայտ-

---

15 Տե՛ս Ա. Մարտիրոսյան, *Մարտիրոս Ղրիմեցի*, Երևան, 1958, էջ 79—80։

16 Տե՛ս Ղ. Ալիշան, *Կամենից*, Վենետիկ, 1896, էջ 3։ Ալիշանը գրում է. «Տարեգրոցս հեղինակք են ւսագերէցք. նախ, Տէր Յովհաննէս, 1560-էն մինչև ի 1610, յորում վախճաներ է... Գրուածն ցուցընէ, որ ոչ միայն լեզուին բաւական հմուտ է, այլև նախնեաց գրուածոց և ազգին պատմութեան։ Կենաց եաքի տարիներուն (1605—1610) յիշատակներն՝ երևի գրած իր որդին և յաջորդն՝ Տէր Գրիգոր ւսագերէց։ Բայց սա յետ մահուան հօրն՝ (մեզ ոչ հաճելի) թաթար կամ թանձր թուրք լեզուաւ շարունակէ զտարէգիրսն՝ մինչեւ ի 1616, նոյնպէս այլ իր որդիքն Տէր Օքսենտ և Տէր Յակովբ (1629) մինչև ի 1624։ Այսպէս ըրած են այդ Լեհահայքդ իրենց դատաստանական գրուածոց եւս, որոց 30 մեծ հատորէն աւելի՝ հիմայ պահուին Քիեւի դիւանաց մէջ։ Առաջին քիչ տարիներու գործերն՝ հայերէն, վերջի մեծ մասն՝ թաթարերէն»։

17 Տե՛ս «Կամենեց-Պոդոլսկ քաղաքի դատարանի արձանագրությունները», աշխատասիրությամբ Վ. Ռ. Գրիգորյանի, Երևան, 1963, էջ 47։

18 «Մատ. մանր ուսումն.», մասն Բ, էջ 144։

նի է Գոշի լեհահայոց օրինակը ստեղծվել է 1518 թվականին, լատիներեն, Սիգիզմունդ Ա-ի հրամանով և հաստատվել 1519 թվականին։ Այդ մասին պարզ հիշատակվում է Բիշոֆին ծանոթ լատիներեն մի օրինակի սկզբում. «Դատաստանագիրք հայ իրաւանց, քննեալ և հաստատեալ Սիգիզմունտ Ա. բարեպաշտ թագաւորէն Լեհաց և նորին թագաւորական մեծավայելչութեան հրամանաւն և կամօք իրենց լեզուէն ի լատին թարգմանեալ և հաւատարմութեամբ օրինակէն ընդօրինակեալ»[19]։

Բնագիրն այնուհետև թարգմանվել է ղփչաղերեն և լեհերեն։ Մեզ այս դեպքում կարևոր չէ ինչ աղբյուրից[20], բայց, անշուշտ, 1518 թվականից հետո և մինչև 1575 թվականը, մինչև Խաչերեսի ընդօրինակությունը։ Խոսքը վերաբերում է ղփչաղերենին։

Ինչպես տեսնում ենք, Խաչերեսը, եթե ձեռագրի ընդօրինակողն է և ոչ՝ թարգմանիչը, իր ձեռքի տակ ունեցել է նույն դարում կազմըված մի ժողովածու։ Հնարավոր էր սակայն, որ կազմողը գրույցը վերցներ մի այլ հնագույն օրինակից, բայց այդպիսի ենթադրության համար հիմքեր չկան։

Կարծում ենք Խիկարի բնագիրը ևս թարգմանվել է ղփչաղերեն 16-րդ դարում, C տարբերակից և Խաչերեսի ընդօրինակությունից (1575 թ.) ոչ շատ առաջ։

Ղփչաղերեն խմբագրությունը իր հերթին վկայում է, որ C տարբերակը ձևավորվել է 17-րդ դարից վաղ, հավանաբար 16-րդ դարում, չնայած այդ շրջանից մեզ C խմբին պատկանող ձեռագիր չի հասել։

---

[19] Բիշոֆ, Լեհահայոց հին իրավունքը, թարգմանեց Հ. Գրիգորիս Վ. Գալեմքյարյան, Վիեննա, 1890, էջ 25։

[20] «Կամենից-Պոդոլսկ քաղաքի հայկական դատարանի արձանագրությունները» ժողովածուի առաջաբանում նշված է, որ լեհերենը թարգմանվել է լատիներենից, իսկ ղփչաղերենը՝ լեհերենից (էջ 54)։ Անշուշտ դրա համար Գրիգորյանը որևէ հիմք ունի, բայց մեզ անծանոթ է։ Հայտնի է, որ լեհերենը թարգմանվել է «1601 թվին, հայ ավագանու հրամանով» (Բիշոֆ, էջ 27), ուրեմն չէր կարող ղփչաղերենը լեհերենից թարգմանվել, քանի որ 1575 թվականին արդեն կա ղփչաղական բնագրի ընդօրինակություն։ 1601 թիվն ընդունում է վերջին հետազոտողներից մեկը ևս՝ Վ. Ս. Կուչինսկին (տե՛ս „Армянский судебник Гоша и его применение во Львове", „Ист. связи. и дружба украинского и армянского народов", Киев, 1965, էջ 148), բայց նա նշում է, որ այդ հարցը պահանջում է լրացուցիչ ուսումնասիրություն։

Որոշ գիտնականներ նշում են թարգմանության մի այլ տարեթիվ՝ 1528 (տե՛ս *W. Hejnosz*, Spraw niewoli w lwowski statucie ormianskim, Lwow, 1932, էջ 5)։

## 9. ԹՈՒՐՔԱԿԱՆ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

*Այս բնագրի միակ օրինակը պահպանվում է Զմմառի վանքի ձեռագրատանը 413 համարի տակ։ Ձեռագիրը ժողովածու է, հայատառ թուրքերեն, որը պարունակում է Պղնձե քաղաքի, Փահլուլ թագավորի, Նուշիրվանի, Խիկարի և Աղջկան ու մանկան զրույցները։*

*Ձեռագիրը նկարագրված է Մ. Քեշիշյանի կողմից, Զմմառի ցուցակում*[1]*։ Ժամանակը և գրիչն անհայտ են։ Ենթադրվում է ԺԷ—ԺԸ դար։*

*Մեծ ջանքեր պետք չեն որոշելու թարգմանության սկզբնաղբյուրը։ Դա հայերենն է։*

*Զրույցը թարգմանվել է թուրքախոս հայերի համար և հայատառ թուրքերեն ծավալուն գրականության երկերից մեկն է, գրականություն, որ միայն նկատված է, բայց դեռ կարոտ է ուսումնասիրության։*

*Թարգմանիչը որոշ բառեր թողել է հայերեն։ Այսպես.*

| E | Թ. |
|---|---|
| *Որդեակ, թէ աղքատ ես, յաւուր* պատարագաց *աստուծոյ մի՛ հեռանար։* | *Օղուլ, էյէր քի ֆուքէրէյիսէն* պատարաֆ *կեօր հէր կիմ։* |
| *Որդեակ,* խոնարհութիւն *մայր է խաղաղութեան, բնակարան է ողջունի և զաւուրս մարդոյն խաղաղութեամբ առնէ։* | *Օղուլ, տիրլիք տիւզէնլիք խաւէրսէն* խօնարութիւն *անաար տըր։* |

*Դա մատնում է սկզբնաղբյուրը։*

*Հպանցիկ համեմատությունից պարզ է, որ նրա ձեռքի տակ եղել է* E *տարբերակի որևէ օրինակ։ Մյուս բնագրերից* E*-ի շեղումները տեսնում ենք նաև այստեղ։*

---

[1] *«Ցուցակ հայերէն ձեռագրաց Զմմառի վանքի մատենադարանին», կազմեց Մեսրոպ վրդ. Քեշիշեան, Վիեննա, 1964, էջ 742։*

*Բայց բերենք խրատների համադրական աղյուսակը* E1 Fa *և* Fb *բնագրական օրինակների հետ։ Թուրքերենը համառոտագրում ենք Թ տառով.*

| $E_1$ | Fa | Fb | Թ |
|---|---|---|---|
| 1 | 1 | 1 | 1 |
| 2 | 2 | 2 | 2 |
| 3 | 3 | 3 | 3 |
| 4 | 4 | 4 | 4 |
| 5 | | | |
| 6 | 5 | 5 | 5 |
| 7 | 6 | 6 | 6 |
| 8 | 7 | 7 | 7 |
| 9 | 8 | 8 | 8 |
| 10 | 9 | 9 | 9 |
| 11 | 10 | 10 | 10 |
| 12 | 11 | 11 | 11 |
| 13 | 12 | 12 | 12 |
| 14 | 13 | 13 | 13 |
| 15 | 14 | | |
| 16 | 15 | 14 | 14 |
| 17 | 16 | 15 | 15 |
| 18 | 17 | 16 | 16 |
| 19 | 18 | 17 | 17 |
| 20 | 19 | 18 | 18 |
| 21 | 20 | 19 | 19 |
| 22 | 21 | 20 | 20 |
| 23 | 22 | 21 | 21 |
| 24 | 23 | 22 | 22 |
| 25 | 24 | 23 | 23 |
| 26 | 25 | 24 | 24 |
| 27 | 26 | 25 | 25 |
| 28 | 27 | 26 | 26 |
| 29 | 28 | | |
| 30 | 29 | 27 | 27 |
| 31 | 30 | 28 | 28 |
| 32 | 31 | 29 | 29 |
| 33 | 32 | 30 | 30 |
| 34 | 33 | 31 | 31 |
| 35 | 34a | 32 | 32 |
| 36 | 34b | 33 | |
| 37 | 35 | 34 | 33 |
| 38 | 36 | 35 | 34 |
| 39 | 37 | 36 | 35 |
| 40 | 38 | 37 | 36 |
| 41 | | | |
| 42 | 39 | 38 | 37 |
| 43 | 40 | | 38 |
| 44 | 41 | 39 | 39 |
| 45 | 42 | 40 | 40 |
| 46 | 43 | | 41 |
| 47 | 44 | 41 | 42 |
| 48 | 45 | 42 | 43 |
| 49 | 46 | | 44 |
| 50 | 47 | 43 | 45 |
| 51 | 48 | | 46 |
| 52 | 49 | | 47 |
| 53 | 50 | | 48 |
| 54 | | | |
| 55 | 51 | 45 | 49 |
| 56 | 52 | | 50 |
| 57 | 87 | | 81 |
| 58 | 53 | | 51 |
| 59a | 88a | | |
| 59b | 88b | | |
| 60 | 89 | 75 | 82 |
| 61 | 54 | 47 | |
| 62 | 55 | 47 | |
| 63 | 56 | 48 | 53 |
| 64 | 57 | 49 | |
| 65 | 58 | 50 | 54 |
| 66 | 90 | 76 | 83 |
| 67 | 91 | 77 | 84 |
| 68 | 59 | 51 | 55 |
| 69 | 92 | 78 | 85 |
| 70 | 60 | 52 | 56 |
| 71 | 61 | 53 | 56 |
| 72 | 86 | 74 | 80 |
| 73a | 62 | 54 | 57 |
| 73b | 93 | 79 | 86 |
| 74 | 63 | 55 | 58 |
| 75 | 64 | 56 | 59 |
| 76 | 94 | 80 | 87 |
| 77 | 65 | 57 | 60 |
| 78 | 66 | 58 | |
| 79 | 67 | 59 | 61 |
| 80 | 95 | 81 | 88 |
| 81 | 96 | 82 | 89 |
| 82 | 68 | 60 | 62 |
| 83 | 69 | 61 | 63 |
| 84 | 70 | 62 | 64 |
| 85 | 71 | 63 | 65 |
| 86 | 72 | 64 | 66 |

| $E_1$ | Fa | Fb | Թ |
|---|---|---|---|
| 87 | | | |
| 88 | 73 | 65 | 67 |
| 89 | 74 | 66 | 68 |
| 90 | 75 | 67 | 69 |
| 91 | 76 | 67 | 70 |
| 92 | 77 | 68 | 71 |
| 93 | 97 | 83 | 90 |
| 94 | 78 | 69 | 72 |
| 95 | 79 | 70 | 73 |
| 96 | 80 | 70 | 74 |
| 97 | 81 | 71 | 75 |
| 98 | 82 | 72 | 76 |
| 99 | 83 | | 77 |
| 100 | 85 | 73 | 79 |

| $E_1$ | Fa | Fb | Թ |
|---|---|---|---|
| 101 | 98 | 84 | |
| 102 | 84 | | 78 |
| 103 | 99 | 85 | 91 |
| 104 | 100 | 86 | |
| 105 | 101 | 87 | |
| 106 | 102 | 88 | 92 |
| 107 | | | |
| 108 | 103 | 89 | 93 |
| 109 | 104 | 90 | 94 |
| 110 | 105 | 91 | 95 |
| 111 | 106 | | |
| 112 | 107 | 92 | 96 |
| | | 44 | |
| | | | 97 |

*Աներկբա է, որ Թուրքերենը գալիս է նույն աղբյուրից, բայց ավելի հարազատություն է միտում* Fab-*ին՝ տպագրերին։*

*Առանձնացնենք խմբերը համապատասխանությունն ավելի արտահայտիչ դարձնելու համար։ Տալիս ենք Թ-ն* Fab-*ի համեմատ։*

| Fa | Fb | Թ |
|---|---|---|
| 1 | 1 | 1 |
| 2 | 2 | 2 |
| 3 | 3 | 3 |
| 4 | 4 | 4 |
| 5 | 5 | 5 |
| 6 | 6 | 6 |
| 7 | 7 | 7 |
| 8 | 8 | 8 |
| 9 | 9 | 9 |
| 10 | 10 | 10 |
| 11 | 11 | 11 |
| 12 | 12 | 12 |
| 13 | 13 | 13 |
| 14 | | |
| 15 | 14 | 14 |
| 16 | 15 | 15 |
| 17 | 16 | 16 |
| 18 | 17 | 17 |
| 19 | 18 | 18 |
| 20 | 19 | 19 |
| 21 | 20 | 20 |
| 22 | 21 | 21 |
| 23 | 22 | 22 |
| 24 | 23 | 23 |
| 25 | 24 | 24 |
| 26 | 25 | 25 |

| Fa | Fb | Թ |
|---|---|---|
| 27 | 26 | 26 |
| 28 | | |
| 29 | 27 | 27 |
| 30 | 28 | 28 |
| 31 | 29 | 29 |
| 32 | 30 | 30 |
| 33 | 31 | 31 |
| 34a | 32 | 32a |
| 34b | 33 | 32b |
| 35 | 34 | 33 |
| 36 | 35 | 34 |
| 37 | 36 | 35 |
| 38 | 37 | 36 |
| 39 | 38 | 37 |
| 40 | | 38 |
| 41 | 39 | 39 |
| 42 | 40 | 40 |
| 43 | | 41 |
| 44 | 41 | 42 |
| 45 | 42 | 43 |
| 46 | | 44 |
| 47 | 43 | 45 |
| 48 | | 46 |
| 49 | | 47 |
| 50 | | 48 |
| 51 | 45 | 49 |

| Fa | Fb | Թ |
|---|---|---|
| 52 | | 50 |
| 53 | | 51 |
| 54 | 46 | 52 |
| 55 | 47 | |
| 56 | 48 | 53 |
| 57 | 49 | |
| 58 | 50 | 54 |
| 59 | 51 | 55 |
| 60 | 52 | 56 |
| 61 | 53 | 56 |
| 62 | 54 | 57 |
| 63 | 55 | 58 |
| 64 | 56 | 59 |
| 65 | 57 | 60 |
| 66 | 58 | |
| 67 | 59 | 61 |
| 68 | 60 | 62 |
| 69 | 61 | 63 |
| 70 | 62 | 64 |
| 71 | 63 | 65 |
| 72 | 64 | 66 |
| 73 | 65 | 67 |
| 74 | 66 | 68 |
| 75 | 67 | 69 |
| 76 | 67 | 70 |
| 77 | 68 | 71 |
| 78 | 69 | 72 |
| 79 | 70 | 73 |
| 80 | 70 | 74 |
| 81 | 71 | 75 |
| 82 | 72 | 76 |
| 83 | | 77 |
| 84 | | 78 |
| 85 | 73 | 79 |
| 86 | 74 | 80 |
| 87 | | 81 |
| 88 | | |
| 89 | 75 | 82 |
| 90 | 76 | 83 |
| 91 | 77 | 84 |
| 92 | 78 | 85 |
| 93 | 79 | 86 |
| 94 | 80 | 87 |
| 95 | 81 | 88 |
| 96 | 82 | 89 |
| 97 | 83 | 90 |
| 98 | 84 | |
| 99 | 85 | 91 |
| 100 | | |
| 101 | | |
| 102 | 88 | 92 |
| 103 | 89 | 93 |
| 104 | 90 | 94 |
| 105 | 91 | 95 |
| 106 | | |
| 107 | 92 | 96 |

*Խրատներից երեքը չկան միայն Թուրքերենում (57, 66, 98), վեցը բացակայում են* Fb-*ի հետ միասին (14, 28, 88, 100, 101, 106), իսկ 10-ը համապատասխանում են միայն* Fa-*ին և չկան* Fb-*ի մեջ։ Հենց դա ցույց է տալիս Թ-ի և* Fa-*ի ավելի սերտ կապը։*

Fb-*ի հետ միասին շեղումը կարող է լինել ուղղակի պատահական, որովհետև Թ-ն ցուցաբերում է խրատները կրճատելու միտում։ Բայց դա, համենայն դեպս, առաջացնում է որոշ տարակույս։ Արդյոք չկա մի երրորդ բնագիր, որ ընկած լիներ երկու տպագրերի միջև և արտահայտեր անցումը* Fa-*ից* Fb*։ Սակայն մինչև 1857 թվականը* Fa-*ն հրատարակվել է հինգ անգամ՝ 1708, 1749, 1792, 1814 և 1820 թվականներին, 1857-ից ուղղակի սկսվում է* Fb-*ն։ Այդ հինգ հրատարակությունների մեջ կան մասնակի շեղումներ (օր.* լուծքն *փոխանակ՝* կուռքն*), բայց նրանց խրատաշարերը լիովին համընկնում են։ Իսկ այլ տպագրություն մեզ ծանոթ չէ։*

*Թերևս մտածել, որ* F *բնագրախումբը ծայր է առնում 1708*

թվականից ավելի վաղ և Fa-ից Fb անցումը ձեռագրական բնույթ ունի, իսկ 1857 թվականի տպագրությունը նկատի է ունեցել դարձյալ ձեռագիր ընդօրինակություն։ Բայց դրա համար հիմքեր չունենք։

Խիկարի զրույցն ընդօրինակվել է անկախ, առանց պայմանականության և չի կազմել որևէ ժողովածուի միավոր, իհարկե մեծ մասամբ միաբնույթ նյութերի հետ (Խոսք իմաստասիրաց, Ձորս բանք, Սողոմոն, Սիրաք, Մովսեսի օրենքները և այլն), երբեմն, նույնիսկ Աստվածաշնչի կազմում։ Իսկ F բնագիրը միշտ հանդես է գալիս իբրև Պղնձե քաղաքի պատմության զրույցներից մեկը։ F-ի ընդօրինակություն այդ ժողովածուից դուրս չունենք։

Ժողովածուի հնագույն օրինակը տպագիրն է, նշանակում է այն կապված է տպագրի հետ։ Ժողովածուն պատրաստվել է հրատարակության առթիվ։ Այնուհետև հանդիպում ենք նույն ժողովածուի ձեռագրական ընդօրինակությունների, որոնք բոլորն էլ գալիս են տպագրից[2]։

Պետք չէ, ուրեմն, տարակուսել, որ Fa-ին հակառակ Fb և Թ բնագրերի համապատասխանությունները (համատեղ չունեն վեց խրատ) պատահական են։ Նկատենք, որ խրատները դուրս են նետված և ոչ թե հավելագրված և չկա ոչ մի խրատ, որ բացակայեր Fa-ի մեջ, բայց ունենային Fb և Թ բնագրերը։

Թ-ն միտվում է Fa-ին ոչ միայն խրատների կազմով, այլև ընթերցումներով։ Բերենք մի երկու օրինակ.

| Fa | Թ. | Fb |
| --- | --- | --- |
| Որդեակ, քեզ զինչ բան որ չար թուի, ընկերին քում մի՛ առնէր և զոր ինչ բարին է՝ կատարէ և արասցես քեզ բարեկամ և դու յամենեցունց բարի գտցես։ | Օղուլ, պիր շէյ քի սանայ ֆենա կեօրիւնիւր, օնու քայըլըրնայ էթմէ պիր էլլիկին վարըլայ օնու էյլէքի տօստ էտինէսին քէնտինէ, վէ հէրքիսինտէն էյլիք կեօրէսին։ | Որդեակ, զինչ բան չար թուի քեզ, ընկերին քում մի՛ կամենար։ |
| Որդեակ, ած զգինի վասն ուրախութեան, բայց տես, մի լինի թէ ըմպէ գինին զքեզ։ | Օղուլ, ազանըը շարապ իչ շօղ օլմաք իչին, լաքին շարապ սէնի իչմէսին։ | Որդեակ, ած զգինի վասն ուրախութեան, բայց տես թէ մի գուցէ ըմպէ գինին զքեզ, զի փառաւոր առնէ երբեմն զմարդն և երբեմն ամօթալից և ծաղր։ |

---

2 Տպագրից են ընդօրինակված Մաշտոցի անվան մատենադարանի № № 8963, 9428, 9265, 10166 (Fa) և 8724, 10107 (Fb) ձեռագրերը։

| | | |
|---|---|---|
| *Որդեակ, մեծատան որդին թէ օձ ուտէ, կասեն թէ վասն բժշկութեան կերաւ և թէ աղքատն ուտէ՝ կասեն թէ սովալլուկ մեռանելոյ կերաւ։* | *Օղուլ, պիր զենկին էվլատն երլան եէսէ, տէրլէր քի իլաճ եէրինէ եէտի, էյէր ֆուքարէ եէսէ աճըլքտան եէտի եօլմէսին տէյի տէրլէր։* | *չունի* |

*Երկրորդ խրատը* E-*ի մեջ շատ ավելի տարբեր ընթերցում է տալիս՝* Որդեակ, արար աստուած զկինն վասն ուրախութեան, բայց տես մի լի ըմպեր ճան զգինի: *Երրորդ խրատը* Fb-*ն չունի, իսկ* E-*ի մոտ դարձյալ տարբեր է։* Fa-*ի մեջ և՛ մեծատան որդին և՛ աղքատը* թէ օձ ուտեն, *իսկ* E-*ում՝* մեծատան որդին օձ կերաւ... աղքատին որդին ձուկ կերավ: *Բոլոր դեպքերում Թուրքերենը համեբաշխ է* Fa-*ին։*

*Իսկ ե՞րբ է թարգմանվել բնագիրը։ Ինչպես գիտենք* Fa-*ն սկիզբ է առնում 1708 թվականից և ձգվում մինչև 1850 թվականը, այնուհետև շարունակվում է* Fb-*ն։*

*Թարգմանությունը, հավանալի է, պետք է ընդունել 1708 թվականից հետո, տպագրից, կամ* Fa *որևէ տպագրից ընդօրինակված ձեռագրից, իսկ վերջին սահմանը հնարավոր է որոշել թերևս միայն ձեռագրական տվյալներով, բայց պետք է համարել ոչ շուտ, քան 18-րդ դարի վերջը։*

## 10. ՎՐԱՑԱԿԱՆ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

*Խիկարի վրացերեն բնագիրը հայտնաբերում և հրատարակում է Ա. Խախանովը, 1901 թվականին և գտնում, որ թարգմանված է հայերենից*[1]*: Դա որևէ տարակույս չի առաջացրել բանասիրության մեջ*[2]*:*

*Բայց հայկական ո՞ր տարբերակից է գալիս վրացերենը:*

*Խախանովին ծանոթ է երկու բնագիր. Կոնիբերի հրատարակությունը* (C4) *և Բունիաթյանի գրառումը:*

*«Հայկական և արաբական խմբագրությունների հետ այն (վրացական բնագիրը*—Ա. Մ.) *համեմատելիս՝ երևան է գալիս նրա մեծ համաձայնությունը հայկական խմբագրության լոնդոնյան հրատարակության հետ և մոտիկությունը այն տարբերակին, որ զետեղված է* «Кавк. учеб. окр». (вып. XIX) *մեջ: Մի խոս-*

---

1 *Александр С. Хаханов*. Очерки по истории грузинской словесности, вып. 3, М., 1901, էջ 169—180 և 422—426.

2 **Տես** კორნელი კეკელიძე, ქართული ლიტერატურის ისტორია ტომი II, თბილისი, 1941, էջ 441—443, **გივი მიქაძე**, ალ. ხახანაშვილისეული ზოგიერთი ხელნაწერის შესახებ, „Вопросы истории народов Кавказа“ ***(ժողովածու նվիրված Ն.Ա. Բերձենիշվիլու ծննդյան 70 և գիտական-հասարակական գործունեության 50 ամյակին)***, Тбилиси, ***1966, էջ 377—384***, *П. М. Мурадян*, Армяно-грузинские литературные взаимоотношения в XVIII веке, Ереван, 1966, ***էջ 69—76:*** *Կ. Կեկելիձեն գրում է. «Մի շարք ոճաբանական ձևեր ցույց են տալիս, որ թարգմանությունը հին չէ, 18-րդ դարից այն կողմ չի անցնում և պատկանում է 18-րդ դարի այն շրջանին, երբ առանձնապես ուժեղացան վիրա-հայկական գրական կապերը, երբ հայերենից թարգմանվում էին բազմաթիվ տարասեռ երկեր» (էջ 443): Կեկելիձեն բնագրին ծանոթ չէ: Նա օգտվում է Խախանովի թարգմանությունից: Առհասարակ այդ ձեռագիրը երկար ժամանակ համարվում էր կորած: Առաջին անգամ նրա մասին ծանուցում է Գիվի Միքաձեն (տե՛ս* «Вопросы истории народов Кавказа», *էջ 381): Ձեռագրին իր ծանոթությամբ Միքաձեին է պարտական և Պ. Մուրադյանը: Սակայն նրա մոտ ձեռագրի հասցեն շփոթված է՝ Վրաստանի կենտրոնական արխիվ, ֆոնդ 1446, ձեռ. № 114, պետք է լինի՝ Վրաստանի կենտրոնական արխիվ, վրացական ձեռագրերի ժողովածու, № 114: Իսկ 1446 ֆոնդի գործ № 198-ում պահվում է գրույցի մի այլ օրինակ, որ արտագրված է Խախանովի ձեռքով, 1901 թվականի մարտի 12-ին:*

քով,—շարունակում է Խախանովը,—վերջինում որոշ խրատներ ավելի կարճ են, քան հայկական լոնդոնյան տարբերակում և վրացական պատմվածքում։ Այլ տեղերում նկատվում են դրափոխություններ, երկու պարբերությունների միացում և հակառակը՝ մեկի բաժանում երկուսի»[3]։

Բոնիաթյանի օրինակը իբրև աղբյուր վստահելի չէ և արժեք չի ներկայացնում։ Իսկ եթե համադրենք լոնդոնյան օրինակի (Կոնիբերի բնագիր—$C_4$) և վրացական գրույցի խրատները, կստացվի այնքան մեծ տարբերություն, որ համեմատելի եզրեր չեն մնա։

Խախանովը վրացական բնագրի սկզբնաղբյուրը որոշելիս հենվել է հիմնականում գրույցի մուտքի թելադրած տվյալների վրա, իսկ C խմբի մուտքը (որի մեջ է մտնում լոնդոնյան հրատարակությունը ($C_4$), ծածկում է E-ին։

Համադրենք վրացական խրատաշար E-ից ծագած տպագիր խմբերի՝ Fa և Fb-ի հետ.

| Fa | Fb | Վ. |
|---|---|---|
| 1 | 1 | 1 |
| 2 | 2 | 2 |
| 3 | 3 | 3 |
| 4 | 4 | 4 |
| 5 | 5 | 5 |
| 6 | 6 | 6 |
| 7 | 7 | 7 |
| 8 | 8 | 8 |
| 9 | 9 | 9 |
| 10 | 10 | 10 |
| 11 | 11 | 11 |
| 12 | 12 | 12 |
| 13 | 13 | 13 |
| 14 | | 14 |
| 15 | 14 | 15 |
| 16 | 15 | 16 |
| 17 | 16 | 17 |
| 18 | 17 | 18 |
| 19 | 18 | 19 |
| 20 | 19 | 20 |
| 21 | 20 | 21 |
| 22 | 21 | 22 |
| 23 | 22 | 23 |
| 24 | 23 | 24 |
| 25 | 24 | 25 |
| 26 | 25 | 26 |
| 27 | 26 | 27 |
| 28 | | 28 |
| 29 | 27 | 29 |
| 30 | 28 | 30 |
| 31 | 29 | 31 |
| 32 | 30 | 32 |
| 33 | 31 | 33 |
| 34a | 32 | 34a |
| 34b | 33 | 34b |
| 35 | 34 | 35 |
| 36 | 35 | 36 |
| 37 | 36 | 37 |
| 38 | 37 | 38 |
| 39 | 38 | 39 |
| 40 | | 40 |
| 41 | 39 | 41 |
| 42 | 40 | 42 |
| 43 | | 43 |
| 44 | 41 | 44 |
| 45 | 42 | 45 |
| 46 | | 46 |
| 47 | 43 | |
| 48 | | 47 |
| 49 | | 48 |
| 50 | | 49 |
| 51 | 45 | 50 |
| 52 | | 51 |
| 53 | | 52 |
| 54 | 46 | 53 |
| 55 | 47 | 54 |
| 56 | 48 | 55 |
| 57 | 49 | 56 |
| 58 | 50 | 57 |
| 59 | 51 | 58 |
| 60 | 52 | 59 |
| 61 | 53 | 60 |
| 62 | 54 | 61 |
| 63 | 55 | 62 |
| 64 | 56 | 63 |
| 65 | 57 | 64 |
| 66 | 58 | 65 |
| 67 | 59 | 66 |
| 68 | 60 | 67 |
| 69 | 61 | 68 |
| 70 | 62 | 69 |
| 71 | 63 | 70 |
| 72 | 64 | 71 |
| 73 | 65 | 72 |
| 74 | 66 | 73 |
| 75 | 67 | 74 |
| 76 | 67 | 75 |
| 77 | 68 | 76 |
| 78 | 69 | 77 |
| 79 | 70 | 78 |
| 80 | 71 | 79 / 80 |
| 81 | 71 | 81 |
| 82 | 72 | 82 |
| 83 | | 83 |
| 84 | | 84 |

[3] „Очерки по истории грузинской словесности“, էջ 169։

| Fa | Fb | Վ |
|---|---|---|
| 85 | 73 | 85 |
| 86 | 74 | 86 |
| 87 | | 87 |
| 88 | | 88 |
| 89 | 75 | 89 |
| | | 90 |
| 90 | 76 | 91 |
| 91 | 77 | 92 |

| Fa | Fb | Վ |
|---|---|---|
| 92 | 78 | 93 |
| 93 | 79 | 94 |
| 94 | 80 | 95 |
| 95 | 81 | 96 |
| 96 | 82 | 97 |
| 97 | 83 | 98 |
| 98 | 84 | 99 |
| 99 | 85 | 100 |

| Fa | Fb | Վ |
|---|---|---|
| 100 | 86 | 101 |
| 101 | 87 | 102 |
| 102 | 88 | 103 |
| 103 | 89 | 104 |
| 104 | 90 | 105 |
| 105 | 91 | 106 |
| 106 | | 107 |
| 107 | 92 | 108 |

*Համապատասխանությունը, ինչպես տեսնում ենք, կատարյալ է, և վրացերենը ծագում է* Fa *տպագրից։ Ավելին սպասել չէր կարելի։ Վրացերենում բաց է թողնված, ուղղակի վրիպած է* Fa-*ի 47-րդ խրատը և տրոհվել են 80, 89 խրատները, ուրեմն ընդհանուր թիվը կազմել է 107, ինչպես* Fa-*ի մեջ, և ունեն կատարելապես նույն հաջորդականությունը։*

*Երբ արդեն պարզ է, թե վրացերենը որ աղբյուրից է գալիս, բանասերների կողմից արված որոշ դիտողություններ և համեմատություններ կորցնում են իրենց թարմությունը*[4] *և տեղ է մնում խոսելու սոսկ թարգմանության բնույթի, թարգմանչի աշխատանքի մասին, որը սակայն մեզ չի հետաքրքրում*[5]*։*

*Խախանովը բնագիրն հրատարակելուց մեկ տարի հետո 1902 թվականին, զեկույցով հանդես է գալիս Մոսկվայի հնագիտական ընկերության Սլավոնական հանձնաժողովի առաջ, որտեղ հայտնում է, որ իր ձեռքի տակ ունի մի նոր բնագիր, ավելի լրիվ և ավելի ամբողջական։*

*Դա հետագա բանասերների կողմից մնացել է աննկատ և վրիպել ուշադրությունից։ Բերում ենք արձանագրությունը.*

*«Ա. Ս. Խախանովը կարդաց զեկուցում. «Նոր վրացական բնա-*

---

[4] *Ա. Խախանովը հենվում է Ն. Դուրնովոյի վրա. «Խիկարի մասին արված դիտողություններով ես պարտական եմ Ն. Ն. Դուրնովոյին... Խիկարի մասին շարադրանքի համար ֆակուլտետը նրան շնորհել է ոսկե մեդալ»* («Очерки», *էջ 423)։ Վրացերենը հայերենից թարգմանված լինելու ենթադրության համար Դուրնովոյին բավական հիմքեր են տվել Բունիաթյանի բնագրի հետ արված համեմատությունները ևս, քանի որ, չնայած անհարազատ բնույթին, այն գալիս է տպագրից։*

[5] *Բնագիրն ընդօրինակված է 1834 թվականին, անփույթ և կրճատումներով։ Գրիչ՝ Անդրեաս Տեր-Գրիգորով։ Թարգմանության լեզվի մեջ նկատելի են թիֆլիսահայոց խոսակցությանը բնորոշ վրացերենի պարզ հետքեր։ Այս դիտողությունը պատկանում է Ս. Տ. Երեմյանին։*

գիր Խիկարի մասին»։ Ռեֆերենտը հայտարարեց, որ նրա հաղորդումը համարվում է Խիկարի մասին տպագրված իր աշխատանքի լրացումը։ Այս պատմվածքի նոր բնագիրը նույնպես թարգմանված է հայերենից 1855 թվականին, բայց իր բովանդակության ամբողջականությամբ և ուրական կազմով տարբերվում է առաջինից։ Երկրորդ բնագրի լեզուն ավելի մաքուր է և զատորոշված։ Բառերը ավելի հասկանալի են և կառուցվածքը ճիշտ վրացական բնույթ ունի։ Բացի դրանից, ռեֆերենտը նշեց բովանդակության մեջ A և B բնագրերի տարբերությունը։ A բնագրում Խիկարի խրատները 109, իսկ B-ում՝ 105 են։ Զրույցի վերնագիրը B-ի մոտ մի փոքր այլ է. «Խրատք պիտանիք և օգտակարք, զոր ասացեալ է Խիկարայ իմաստնոյ»։ Այնուհետև B բնագիրն ավելի լրիվ է A-ից, քանի որ A-ն վերջանում է Խիկարի տված խրատներով, իսկ B-ն պատմվածքը հասցնում է մինչև վերջ։ B-ի այս լրացուցիչ մասը տարբերվում է հայկական խմբագրությունից, որ տպագրված է Կովկասի ուսումնական օկրուգի ժողովածուում, նրանով, որ Խիկարին և Սենեքերիմին ուղղված Նաթանի նամակը բերվում է նամականիի ձևով և ոչ թե կարճ վերապատումով, ինչպես Կովկասի ուսումնական օկրուգի ժողովածուում։ Ընդ որում, Նաթանի հասցեին Խիկարի արված վերջին դիտողությունները չորսից ավելի չեն, իսկ վրացական բնագրում՝ 11 են։ Այդ տարբերությունները հիմք են տալիս ենթադրելու, որ B բնագիրը ոչ A-ի պատճենն է և ոչ էլ թարգմանված է Կովկասի ուսումնական օկրուգի ժողովածուում տպագրված խմբագրությունից, այլ ներկայացնում է ինքնուրույն, հատուկ թարգմանություն։ Զեկուցման քննարկմանը մասնակցեցին Ս. Դ. Գրիգորևը և Ն. Ն. Դուրնովոն»[6]։

A բնագիրը խախանովը հրատարակել է մի ձեռագրից, որ ընդօրինակված է 1834 թվականին, իսկ B-ի թարգմանության թվականը արձանագրության մեջ նշված է 1855։ Հասկանալի է, որ B-ն չէր կարող A-ից գալ, և նրանք տարբեր թարգմանություններ են, եթե իհարկե 1855-ը թարգմանության և ոչ թե ձեռագրի ընդօրինակման տարեթիվն է[7]։

---

[6] Протокол 59-го заседания Славянской комиссии Императорского московского археологического общества, 18 января, 1902, в доме общества, 51 („Древности. Труды Славянской комиссии Имп. моск. арх. общества“, том III, издан под редакцией М. И. Соколова, М., 1902).

[1] Ձեռագիր աղբյուրը մեզ հայտնի չէ, բայց հավանաբար Վրաստանի կենտրոնական արխիվի ֆ. 1446, № 198 գործում պահվող բնագիրը ընդօրինակված է այդ ձեռագրից։ Գ. Միքաձեի նկարագրությունը համընկնում է արձանագրության տվյալներին։

Սակայն A-ն և B-ն մեկ թե առանձին թարգմանություններ են, միևնույն է, գալիս են նույն բնագրից՝ Fa։ Նշված տարբերությունները այլ բան ենթադրելու հիմքեր չեն տալիս։ A բնագրում, ինչպես տեսանք, Խիկարի խրատները ոչ թե 109 են, այլ 106, և մեկ խրատի սղումով լիակատար համընկնում են Fa-ի կազմին։ B բնագրինը՝ 105։ Այստեղ էլ սղվել են կամ ձուլվել երկու խրատ։ Նման տատանումները շարքի համար ոչ մի արժեք չունեն։

B-ն, ինչպես նաև՝ A-ն (Վ) չէին կարող թարգմանված լինել Կովկասի ուսումնական օկրուգի ժողովածուում տպագրված խմբագրությունից, այսինքն՝ Բունիաթյանի բնագրից։ Դա նրա կողմից տպագիրը կամայաբար փոխած մի օրինակ է, որ 1894 թվականին ներկայացվել է իբրև ժողովրդական տարբերակ։

B-ում Խիկարի պատժիչ խրատները 11-ն են։ Դա ուղղակի համընկնում է Fab-ի պատժիչ խրատներին, դարձյալ 11։

A-ի պատմողական մասերի որոշ կրճատված բնույթը ոչ թե թելադրում է նրա համար այլ աղբյուր որոնել, կամ կապել Բունիաթյանի օրինակի հետ, այլ գալիս է թարգմանչի, կամ որևէ գրչի կողմից։

Այդպես, եթե ընդունենք, որ վրացական Խիկարը հայերենից երկու անգամ է թարգմանվել, ապա երկու դեպքում էլ իբրև թարգմանության սկզբնաղբյուր է ծառայել միևնույն Fa-ն[8]։

* *
*

Երբ արդեն պարզ է սլավոնական, ղփչաղական, վրացական, թուրքական թարգմանությունների ազգաբանությունը, արտահայտենք այն գրույցի ճյուղագրության մեջ։

Սլավոնական խմբագրության ռուսական, բուլղարական, սերբական, հարավսլավոնական տարբերակների, ինչպես նաև՝ սլավոնական և ռումինական խմբագրությունների հարաբերությունը կա-

[8] Վրացական խմբագրության ընդօրինակությունների ի մի բերված և հրատարակված չեն, որպեսզի կարելի լիներ տարբեր թարգմանությունների մասին ճշգրիտ խոսք ասել։

Կ. Կեկելիձեին ծանոթ է «Խրատք Պիլատնի իմաստնի, որ ուսուց Նաթանելիին» բնագիր, որ ինչպես ինքն է նշում, Խիկարի թարգմանության հետ կապ չունի (էջ 441), բայց վկայում է այդ թեմայի տարածված լինելու մասին։ Դա հավանաբար Պլատոնն է, ինչպես հայերեն մի բնագրում՝ Հերմեսը, որ ուսուցում է Նաթանին։

րելի է որոշել նրանց գիտա-համեմատական հրատարակությունից հետո[9]։

Մենք արդեն անդրադարձել ենք բանասիրության մեջ եղած տարակարծություններին։ Հարցը հետաքրքիր է ռուսական և հարավսլավոնական գրական հարաբերությունների տեսակետից։

Վերջին անգամ, 1931 թվականին, Ն. Դուրնովոն պրոֆ. Ռեշետարի կողմից հրատարակված գրույցի մի այլ ընդօրինակության առթիվ (պատկանում է Յագիչի սերբա-խորվաթական բնագրերի խմբին) հայտնեց այն կարծիքը, որ գրույցը սլավոնական գրականության մեջ հանդես է եկել «13-րդ դարի սկզբից ոչ ուշ, թերևս նշանակալիորեն վաղ, ընդորում կատարվել է հարավային կամ հարավ արևմտյան Ռուսիայում (Գալիչե) և արդեն այստեղից հազիվ թե ուշ քան 13-րդ դարը թափանցել Բալկանյան թերակղզի»։

Դուրնովոն այդ եզրակացությանն է գալիս ձեռագրերի լուրջ և բարեխիղճ համեմատությունից հետո, սակայն նա ծանոթ չէր

---

[9] Խիկարը ռումինական բանասիրության և գրականության մեջ տես Archirie și Anadam. *Istoria literaturii române*, I, Buc., 1964, էջ 721—724, *N Cartojan*, Cărțile populare în literatura românească, vol. I—II, Buc. 1929—1938. (Editura Casei Școalelor). t. I, էջ 251 260, bibliografie, էջ 260—262, *N. Cartojan*, Istoria literaturii române vechi. vol. I—III, Buc., 1940—1945. (Fundația pentru literatură și artă), Archirie și Anadam, vol. 1, էջ 80—81, *I. C. Chițimia*, Povestea lui Archirie filosoful: Cărțile, populare în literatura românească, Editată de *I. C. Chițimia*, și Dan Simionescu. vol. III, Buc., 1963, էջ 309, և այլն։ *I. C. Chițimia*, „L'Histoire du sage Ahikar“ dans les littératures slaves et la littérature roumaine et ses rapports avec le folklore: Romanoslavica, Buc., IX (1963), էջ 413—426, *M. Gaster*, Archir și Anadam Literatura populară română. Buc., Ig. Haiman, 1883, էջ 104—113, *M. Gaster*, Ilchester lectures on greeko-slavonic literature and its relation to the folklore of Europe during the Middle-ages, London, 1887, XI+229. The wise Arkir and Syntipas, էջ 109—114, *M. Gaster*, Isprăvile lui Archir: Chrestomație română. Leipzig, Buc., 1891, vol. II, էջ 134—135, *M. Gaster*, Isprăvile lui Archir în Egipt. Chrestomație română, Leipzig, Buc., 1891, vol. II, էջ 135—136, *M. Gaster* Contributions to the History of Ahikar and Nadan: Journal of the Royal Asiatic Society, 1900, էջ 301—319. Reprod: Studies and texts in folklore, London, 1925, vol. I, էջ 239—259, *Gh. Moian*, Valiantă orală din „Istoria lui Archirie“: Muza, VII (1878—1879), nr. 4—6, 9, 11, 12, 14, *Anton Pann*, Înțeleptul Archir cu nepotul său Anadam, Buc., 1850, էջ 46, վերահրատարակված՝ 1854, էջ 67, 1872 էջ 67, 1880, էջ 67։

բուլղարական խմբագրության հետ, որ հետագայում, 1935 թվականին որոշ կրճատումներով հրատարակեց Իորդան Իվանովը։

Իսկ Ա. Գրիգորևը ենթադրելով, որ ռումինական խմբագրությունը թերևս ծագել է սլավոնականից, որը ռումինականի վրա սլավոնական գրականության ազդեցության մի հավելյալ վկայություն է, համեմատում է ռումինական խմբագրությունը։

Ահա այդ հիման վրա տալիս ենք նաև սլավոնական խմբագրության ներքին ճյուղագրությունը։



## 11. ԽԻԿԱՐԻ ԶՐՈՒՅՑԸ ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Խիկարի զրույցը վաղեմի ժամանակներից եկող Արևելքի գրականության տարածուն և կենսական թեմաներից մեկն է։ Այն ճանաչված էր հին աշխարհի մատենագրության մեջ։ Հեռավոր էլեֆանտինում հայտնաբերված պապիրուսները շատ բան են ասում։ Մ. թ. ա. 5-րդ դարում նրան ծանոթ են հույն հեղինակները։ Դեմոկրիտը հավանաբար քաղվածքներ է արել Խիկարից։ Նրանից են ծագում Եզովպոսի կենսագրության երկրորդ մասը, Տովբիթի գրքի հիշատակությունները։ Նկատվում են բազմաթիվ զուգահեռներ Մենանդրոսի, Սողոմոնի, Սիրաքի խրատների և Նոր կտակարանի առակների միջև, սյուժետային ընդհանրություններ արևելյան թեմաների հետ և այլն։

Եգիպտոսում ստեղծվում էր մի գրականություն, որ վերագրում էին Թոթ աստծուն, իսկ Թոթը նույնացվում էր Հերմեսի հետ։ Հետագայում հույների մոտ Հերմեսը գիտակցվեց եգիպտական Թոթից անկախ, և նրա շուրջը ստեղծվեց առանձին գրականություն, մինչև մեր թվագրության երրորդ դար։ Հերմեսյան գրականությունը մեծ մասամբ կրոնա-փիլիսոփայական բնույթի է և օգտվում է խրատաբանական, ուսուցողական ձևից։ Հիմնականում Հերմեսը դիմում է իր որդուն և Ասկղեպիոս աշակերտին։

Հայ մատենագրության մեջ պահպանվել է հերմեսյան երկերի մի օրինակ. «Հերմեայ եռամեծի առ Ասկղեպիոս Սահմանք», որի գիտական բնագիրը հրատարակել է Հ. Մանանդյանը[1]։ Մատենադարանի № 2543 ձեռագրի 172ա թերթից սկսվում է մի բնագիր, որը նույնպես հերմեսյան երկերի թվին է պատկանում. «Դարձեալ

[1] «Բանբեր Մատենադարանի», № 3, 1956, էջ 287—314։

այլ բանք Հերմեսի իմաստնոյ, ասացեալ յաղագս տնօրէնութեան բանին աստուծոյ»[2]։

Այստեղ սակայն Հերմեսը դիմում է ոչ թե, ինչպես սովորաբար, որդուն կամ Ասկղեպիոսին, այլ, բավական անսպասելի՝ Նաթանին. «Խօսեցաւ Հերմես իմաստասէրն ընդ որդոյ իւրում Նաթանայ։ Ծանիր որդեակ իմ Նաթան, զի անպատմառ իջանելոց է Հուրն աՀեղատես», կամ՝ «Որդեակ իմ Նաթան, ես յայտնեցի զքեզ զամենայն ծածուկ խորհուրդս, որ առ իմաստասէրս։ Այս է գիրք, որ ասի Գիրք կենաց։ Եւ արդ, դու, որդեակ, բաց զաչս մտաց քոց և գանձեա ի գանձարանի սրտի քում, զոր այժմ աւանդեմ քեզ և պատճառն պատճառից պարունակեսցէ զքեզ...»։

Այս բնագիրը թարգմանել է Կիպրոսի Դավիթ եպիսկոպոսը, արաբերենից. «Թարգմանեալ յարաբացի գրոց ի ձեռն նուաստ և ողէտ եպիսկոպոսիս Դաւթի, ի խնդրոյ տէր Աւետիք նուիրակիս»[3]։

Բնագրի առնչությունը Խիկարի Հետ ակնբախ է ոչ միայն արտաՀայտչական ձևով («Որդեակ իմ», «Լուր որդեակ»), որ ընդՀանուր և տարածված էր արևելյան Հնագույն գրականության մեջ,

---

[2] Մատենադարան, ձեռագիր № 2543, էջ 172ա։

[3] Ձեռ. № 2543, էջ 172ա։ Այդպես է խորագիրը, բայց բնագրի վերջում նույն Դավիթ եպիսկոպոսը գրում է, որ թարգմանվել է Հունարենից.

«Ոմն բժիշկ, խպտի ազգաւ, յոյժ աստուածասէր և բարեկամ և սիրելի մեր, յեկեալ առ իս յեպիսկոպոսարանն, որ ի Կիպրոս և եբեր առ իս զգրեալ բանքս յիմաստնոց յունարէն լեզվով և խնդրեաց յինէն թարգմանել զսոսա յարաբացի լեզու, որ և թարքմանեցի վասն խնդրոյ նորա։ Եւ ապա դարձեալ թարքմանեցի զնայ ի յունարէն լեզվէ ի Հայ լեզու։ Յորում ժամու պատաՀեցաւ սա մեզ պատուականն և առաքինասէր և աստուածասէր նուիրակն տէր Աւետիք աբեղայն, որ և ընթերցաւ զթարքմանեալն ի մենջ զաակաւ իմաստասիրաց խօսս զոր ի վերոյ ասացաք և յոյժ փափաքանաւք խնդրեաց ի մենջ, վասն որոյ գրեցի զսայ ի խընդրոյ տէր Աւետիքին»։

Պետք է Համենայն դեպս խորագրին Հավատալ։ Հիշատակարանը վերաբերում է նախորդ բնագրին, որը աստվածության մասին Հույն և այլ մտածողների ասույթների փոքրիկ Հավաքածու է։

Առաջին բնագիրը նա թարգմանել է ղպտի բժշկի խնդրով, որը բերել է նրան «զգրեալ բանքս յիմաստնոց յունարէն լեզվով», իսկ Հետո թարգմանված երկը տեսնելով Ավետիք նվիրակը պատվիրել է իր Համար էլ գրել, որի մեջ նա ավելացրել է և Հերմեսի բնագիրը՝ «ի խնդրոյ տէր Աւետիք նուիրակիս»։

Որ իմաստասիրաց բանքերը և Հերմեսի մարգարեությունը թարգմանված են տարբեր աղբյուրներից, վկայում է Դավթի կրկնակ Հիշատակարանը.

Զայս յիմաստնոց բանս որ ի կարգ,
Զոր յունաց թարքմանեցաք.
Զսա գրեցի շարադասակ,
Եւ զՀերմեսինն յաւելաք։

այլև, որ գիմում է Նաթանին, Խիկարի քեռորդուն («Որդեակ իմ Նաթան»), ինչպես Խիկարը։

Այստեղ Հերմեսի աշակերտը չի շփոթված, այլ Նաթանի ուսուցիչը, Հերմեսը փոխարինել է Խիկարին։ Դա ոչ ուղղակի վկայությունն է այն բանի, որ հերմեսյան գրականությունը տարածված էր նաև Խիկարի անվամբ, ավելի ճիշտ՝ ինչպես Թոթի, այնպես էլ Խիկարի շուրջը ստեղծվել են երկեր, որոնք հետո մտել են հերմեսյան հեղինակությունների մեջ։

Որ խոսքը նույն Հերմեսի մասին է, և այստեղ ևս նա պատմական անձ չէ, այլ ընդհանրացված կերպար, հայտնի է հենց բնագրից։ Նախ նա դիմում է Նաթանին, որը ոչ մի առնչություն չէր կարող ունենալ որևէ Հերմեսի հետ և ապա՝ նույն բնագրի մեջ փորձ է արվում Հերմեսի համար մարգարեների շարքում տեղ որոշել.

«Շ (500) տարով յառաջ քան զԴաւիթ, իմաստունս այս Հերմես և Շ (500) տարով յետոյ քան զՄովսէս»։

Այդպիսի փորձ արված է արաբական Լոխմանի և հունական Եզովպոսի համար, իսկ Խիկարի մասին ինքը Սուրբ գիրքն է հոգ տանում։ Մարգարեացված իմաստունների այս անվավեր շարքի մեջ պետք է մտնի նաև Հերմեսը։

Հնագույն ժամանակների իմաստուններն անվերջ կերպավորել են իրար։

Խիկարի հետ Հերմեսի առնչումը թերևս գալիս է հետքրիստոնեական շրջանից, մինչև 3-րդ դար, երբ Հերմեսը ըմբռնվել է Թոթից անկախ։ Այդ է թույլ տալիս մեզ մտածելու բնագրի բովանդակությունը, բայց գուցե և ենթադրել ավելի վաղ շրջան։ Հետաքրքիր է, որ այնտեղ հիշատակություն կա Եգիպտոսի մասին. «Եւ մտանէ յԵգիպտոս լոյսն ծածկեալ»։ Դա իհարկե սոսկ վարկածային բնույթ ունի, բայց որ 5-րդ դարում, մեր թվագրությունից առաջ Եգիպտոս է տարվել Խիկարի բնագիրը, անվիճելի է։ Այդ են վկայում էլեֆանտինյան պապիրուսները։

Այսպես։ Մենք հպանցիկ հիշատակեցինք Խիկարի ազդեցությունը ընդհանուր գրականության վրա, որն ունի բավական լայն շրջագիծ՝ պապիրուսներից Սուրբ գիրք և Հազար ու մեկ գիշերներ։ Բայց և մեծ է ու խորը նրա ազդեցությունը բանավոր գրականության, տարբեր ժողովուրդների առածների, հեքիաթների, զրույցների, առակների վրա։

Տեսնենք թե ինչ ճանապարհ է անցել զրույցը մեր մատենագրության մեջ։

Հարրիսը՝ Կոնիբերի հետ միասին Պղնձե քաղաքի ժողովածուից դուրս խիկարի բնագրի առաջին հրատարակողը, գրում է.

«Ինչ-որ տարօրինակ է, չնայած գրքի հայերի մոտ շատ տարածված բնույթին, հայ գրականության մեջ ուրիշ հետք չի նկատվում»[4]։

Բայց մենք այդ հետքերով գնացինք մինչև 11-րդ դար («Այրըն, զոր գեղջուկք խիկար անուանեն և էր խոկայր»)։

Ինչպես տեսանք, հայկական խմբագրությունը, հակառակ օտար մյուս բնագրերի, չի հիշատակում Սենեքերիմի հոր անունը՝ Սարհադոն[5]։ Այդ շեղումը կարևոր է։ Բնագրում կա Արծվաց դաշտ, որտեղ պետք է Նաթանի խարդավանքով ներկայանար խիկարը։ Հայ տարբերակներում այն դարձել է Արծրունյաց դաշտ։ Սենեքերիմ, Արծրունյաց դաշտ։

Զուգադիպությունները ավելի հեռուն են գնում։ Խորենացին հայտնում է, որ Արծրունիները Ասորեստանի Սենեքերիմ թագավորից են սերել. «Եւ են այս երկու տունքս ի զաւակէ Սենեքերիմայ՝ Արծրունիք և Գնունիք»։ Իսկ նրանց տոհմական խորհրդանշանը եղել է Արծիվը. «Եւ զԱրծրունիդ գիտեմ՝ ոչ Արծրունիս, այլ արծուի ունիս, որք արծուիս առաջի նորա կրէին։ Թողում զառասպելեացն բաջաղանս, որ ի Հադամակերտին պատմին, մանկան նիրհելոյ անձրև և արև հակառակեալ և հովանի թռչնոյ՝ պատանւոյն թալկացելոյ»[6]։

Այս ամենից հետո ոչինչ չէր մնում զրույցը կապելու Արծրունիների տան հետ, իսկ Սարհադոնի անունը դուրս է նետվել իբրև խորթ և անհարիր, ավելորդ մանրամասնություն։

Որոշ բնագրերում հայացվել են և այլ անուններ։ Խիկարի կինը՝ Աշփեգանին դարձել է Արփեստան, որը գալիս է արփի բառից, Սենեքարը՝ Սնաքար, Աբիկամը՝ Ապիկար։

Անունների այդպիսի տեղայնացումը բնորոշ է և խիկարի այլ խմբագրությունների համար։ Սլավոնական հետագա խմբագրության մեջ իբրև փարավոնի դեսպան հանդես է գալիս այնքան մեծ սարսափ տարածած մի պատմական դեմք՝ Բաթու խանի իշխան Ելտեգին, իսկ իբրև խիկարի կին՝ Թեոդուլիան։

---

[4] „The story of Ahikar", էջ LXXXI:

[5] Հիշեցնենք, որ իրականում Սենեքերիմն է Սարհադոնի հայրը, բայց այստեղ նկատի ունենք բնագրի ընթերցումը։

[6] «Մովսեսի Խորենացւոյ Պատմութիւն հայոց», աշխատութեամբ Մ. Աբեղեան և Ս. Յարութիւնեան, Թիֆլիս, 1913, էջ 111, (Բ—է)։

*Զրույցի գլխավոր հերոսը հայերենում երկար և հետաքրքիր ճանապարհ է անցել։*

*11-րդ դարում նա արդեն հայ իմաստուն էր, որ «համապազ խոկմամբ ամենեցուն տայր խրատս և առակօք կրթէր», իսկ 12-րդ դարում գործածվել է իբրև հատուկ անուն, հոմանշելով իմաստուն բառին*[7]*։*

*14—15-րդ դարերում, հավանաբար Սաբայի պարականոնի ազդեցությամբ, ժողովրդական գիտակցության մեջ լիովին միացվում է Խիկարի ինքնությունը։*

*Հայտնի է Իսրայելի թագավոր Սողոմոնի և Սաբայի վեճը, որը լսելով Սողոմոնի իմաստության հռչակը գալիս է Հաբեշստանից նրան փորձելու. «Եւ տիկինն Սաբայ լուաւ զանուն Սողոմոնի և զանուն Տեառն և զիմաստութիւն Սողոմոնի և եկն փորձել զնա առակօք»*[8]*։*

*Զրույցը պարականոն է և վերցված ոչ թե Աստվածաշնչից, որտեղ շատ համառոտ է հիշատակվում այդ մասին, այլ Թալմուդից։ Ե՛վ Թալմուդում և՛ Սուրբ գրքում հաղթում է Սողոմոնը. «Եւ ետես զամենայն իմաստութիւն Սողոմոնի և ... յիմարեցաւ»*[9]*։*

*Հայկական օրինակում սակայն, որը վերագրվել է Խիկարին, վեճը շարունակում և հաղթում է ոչ թե Սողոմոնը, այլ Սաբան՝ Խիկարը։ Սողոմոնն իր առջև դրված խնդիրը լուծելուց հետո հարցնում է. Ո՞րն է աստծո արարածների մեջ գեղեցկագույնը։ Գեղեցկագույնը ես եմ, կինը,— պատասխանում է նա։ Այդպես Խիկարը անձնավորել է Սաբային և նույնացվել նրա հետ։*

---

*[7] Խիկար—բառ ռամկական, իմաստուն կամ իմաստակ,— բացատրում է Հայկազյան բառարանը։*

*Բառը այդ կիրառմամբ ողողված է մեր մատենագրության մեջ. «Խելօք Խիկար հեզահոգի (Քյուրդյանի հավաքածուի մի ձեռագիր, հիշատակարան, 1481 թիվ), «Մի հաւատալ ամէն մարդոյ, թէ զիրենք ցուցնեն քեզ Խիկար» (Կոստանդին Երզնկացի, էջ 199), «կամ թէ խելօք ես դու Խիկար» (Կոստանդին Երզնկացի, էջ 207), «Խելօքդ լեր դու այլ Խիկար» (Կոստանդին Երզնկացի, էջ 208), «Եւ իմաստուն մտաւք գերդ Խիկար» («Ցուցակ հայերէն ձեռագրաց Զմմառի վանքի մատենադարանին», էջ 268), «Թարքանչեալ բարձին զխելք Խիկարին, ետուն սպանանել զխր մարուն, հաւր աշից հանին» (Տաղ տէր Ստեփաննոսին Սիւնեաց եպիսկոպոսին, ձեռ. № 3888, էջ 139ա) «Եւ տանուտէր յոյժ մտացի, խելօքն էր շատ նման Խիկարի» (Ստեփանոս Թոխաթեցի, Ողբ), «Պարոն Թադոս հեզ և Հիկար (Փիրղալեմյան, ձեռ. № 6273, 1393 թ., էջ 11), «Իսկ Հասփել այսպէս ըղնա խրատէր, թէ Խաթուն իմ Խիկար քեզ հոգ մի առնէր» («Պատմութիւն Փարէզի և Վեննայի», էջ 97) և այլն։*

*[8] Գ Թագ., Ժ, 1։*

*[9] Գ Թագ., Ժ, 4—6։*

Դրան ավելի է նպաստում թեման, որ քրիստոնյա միջավայրում Հարազատ կարող էր հնչել, քան բուն Խիկարի զրույցը, որտեղ նա որոշակիորեն քրիստոնյա չէ և պաշտում է աստվածներ, կամ կուռքեր։

Փոխակերպվելով Սաքայի, Խիկարը վերանձնավորել է և հենց իրեն։ Բուն զրույցի մեջ Սաքայի պարականոնի ազդեցությամբ, որը դիտվում է իբրև Խիկարյան հեղինակություն, որոշ փոփոխություններ են մտնում։

14—15-րդ դարերի ընդօրինակություններից դուրս են նետված Խիկարի կին առնելու հանգամանքը («վաթսուն կին առի»), բազնում աղոթելը և աստվածների անունները։ Զրույցը այդպիսով համերաշխվում է Սաքայի պարականոնին։

Թերևս դրանով պետք է բացատրել այն տարօրինակ երևույթը, որ Խիկար կիրառվել է որպես կանացի անուն։ Դեռ 13-րդ դարում, 1280 թվականին հիշատակվում է Խիկար քահանա, Մատենադարանի № 2746 ձեռագրի ստացողը, բայց այնուհետև՝ 1347 թվականին՝ տիրուհի Ստեփաննոսի[10], 1348՝ տիրուհի Ստեփաննոսի[11], 1419՝ մայր Յովհանէսի[12], 1455՝ մայր վարդան Խանանայի[13], 1471՝ մայր Անթառամի և այլն։

Կանանց համար այդպիսի անուն գործածելը կենցաղում սովորական էր և ընդունված։ Մենք հանդիպում ենք Նուանա, Խնձոր, Խեյոք անուններին։ Եթե կարող էր Խեյոք լինել, որ հիշատակված է դեռևս 1336 թվականի գրչության մեջ, ապա Խիկար, որը նույնպես խելոք է նշանակում, կամ իմաստուն, բնական է, կարող էր գործածվել։ Բայց այս դեպքում, կրկնում ենք, միայն պետք է ընդունել, որ մթագնված էր բուն Խիկարի անհատականությունը և նրա կապը զրույցի հետ. «Ես՝ Խիկար դպիր Սենեքերիմայ արքայի, վաթսուն կին առի և վաթսուն ապարանս շինեցի և ես՝ Խիկարս, վաթսուն տարու եղայ և ոչ եղև ինձ որդի»։

Հետագայում արդեն, 16—17-րդ դարերում Խիկարը վերադառնում է իրեն։ Գործածվում է նախ՝ իբրև տղամարդու մականուն,

[10] A Catalogue of the Armenian manuscripts in the British Museum by F. C. Conybeare, London, 1913, էջ 9a.

[11] «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», կազմեց Լ. Ս. Խաչիկյան, Երևան, 1950, էջ 368։

[12] «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», կազմեց Լ. Ս. Խաչիկյան, հտ. Ա., Երևան, 1955, էջ 224։

[13] «Ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա», կազմեց Յակովբոս Վ. Տաշեան, Վիեննա, 1895, էջ 425։

*ինչպես* **Մուրատ Խիկար** *(տաղասաց 16-րդ դարու),* **Միրզաջան Խիկար** *(հիշատակված Արցախի մի արձանագրության մեջ)*[14], *իսկ հետո՝ պարզապես իբրև անուն՝* **Խիկար Երեց** *(1691 թիվ)*[15], *«Այս է հանգիստ Խիկարին, Գրիգոր աւագերիցու որդւոյն»*[16], *մինչև մեր օրերը։*

*Այդ շրջանում որոշ գրիչներ, նույնիսկ, ավելի լայն տեղեկություններ ունեն Խիկարի մասին։ 17—18-րդ դարերի երկու ընդօրինակություններ (ձեռագիր № № 3526, 3493) տալիս են հետաքրքիր ընթերցված։ Խոսելով Նաբուսեմաքի մասին, որին Սենեքերիմը հանձնարարում է Խիկարին պատժել, ձեռագրերի մեջ ասված է. «Աբուսմագ, ոռուսի լեզուաւ Անպուհիլ»*[17]*։*

*Այդ նշանակում է նրանք գիտեն, որ ռուսական բնագրում* **Նաբուսմաէ** *տառադարձվել է* **Անպուհիլ** (Анбугил) *և ծանոթ են զրույցի սլավոնական խմբագրության հետ։*

*Սակայն Խիկարն այնքան է հայացված և նրա շուրջը կուտակվում է այնքան մեծ գրականություն, որ նույնիսկ 19-րդ դարի հայ բանասերը նրան համարելով ազգային գրող, բուն երկը՝ զրույցը, մերժում է իբրև անվավեր*[18]*։*

*«Եթե անուն մը կա անգիր դպրության մեջ, անուն ամենուրեք հիշված ու հեղեղված, այս նշանավոր անունն է Խիկար։ Որովհետև առածներ, առակներ ու առասպելներ կավանդվեն ու կզրուցվեն նրա անունով, ուստի միշտ կոչված է Խիկար իմաստուն»,— գրում է Վահան վարդապետ Տեր-Մինասյանը*[19]*։*

*Բայց ինչով է պայմանավորված Խիկարի այդքան մեծ ժողովրդականությունը հայ և ընդհանուր գրականության մեջ։*

*Խիկարն առհասարակ մուտք է գործել հայ մատենագրության*

---

14 **Մակար Բարխուդարյանց**, *Արցախ, Բագու, 1895, էջ 406։ Արձանագրությունն այսպես է. «Քրիստոս աստուած նշանս բարէխաւս Դալաթին։ Աստուծով ես Դալաթս, ամուսին իմ մեծ իշխան Միրզաջան Խիկար, որդիքս իմ Տաւիթ բէկ Մելիք պէկի գանգնեցին գխաչս փրկութիւն հոգոյ ի տանէն Գեղամայ, դոստր Մէլիք Ղուկասին Թ. ՉՂԸ»։*

15 *Տե՛ս* **Թեոդիկ**, *Ամենայն տարեցոյց, 1922, էջ 67—71։*

16 **Ռ. Երզնկեանց**, *Հնախօսական տեղագրութիւն Հաղբատայ, Վաղարշապատ, 1886, էջ 38։*

17 *«Պատմութիւն և խրատք Խիկարայ իմաստնոյ», գիրք Ա, էջ 111 (17-րդ դարի տարընթերցվածը)։*

18 **Գաբրիել Այվազյան**, *Հազար և մի առակավոր բանք ազգայինք և օտարք, Կ. Պոլիս, 1874, էջ Ը—ԺԱ։ Զրույցի Խիկարի պատկանելությունն անհավանական է համարում և Վ. Տեր-Մինասյանը (տե՛ս «Անգիր դպրություն և առակք», էջ 22)։*

19 *«Անգիր դպրություն և առակք», էջ 22։*

*և ժողովրդական բանահյուսություն տարբեր և շատ հաճախ իրար չհատող ճանապարհներով։ Բայց երկու դեպքում էլ նրա մեծ տարածման ակունքը զրույցն է։*

*Դա մոռացումն հաղթահարած մի երկ է, որ երկար դարեր չի կորցրել իր հմայքը։ Մի փոքրիկ խճանկար, որտեղ ամեն ինչ կա. և՛ խրատ, և՛ առակ, և՛ զրույց, և՛ պատմություն, և՛ հանելուկ։* Եղեալք՝ պատմութիւն, ոչ եղեալք՝ առասպել: *Բազմազան տարրեր հավաքվել են մի սյուժեի շուրջը, իսկ գործողությունը ծավալվում է մի ձևով՝ զրուցատրությամբ։*

*Զրույցի մեջ մեծ տեղ են գրավում խրատները։*

*«Ճանաչել զիմաստութիւն և զխրատ»,—ահա մեր դպրության հոր առաջին խոսքը, ուղղված իր ժողովրդին և առաջին գիրը հայերեն։ Այսպես, հայերեն թարգմանված առաջին երկը խրատներ են։ Դա պատահական ընտրություն չէ։ Այդտեղ նախասիրություն կա, դարի նախասիրությունը։ Իսկ խիկարյան զրույցը խիստ համասեռ է Սողոմոնի առակներին և հայտնվել է հայ գրականության մեջ թերևս նույն շրջանում։ Հինգերորդ դարի հայ պատմիչներն արդեն ծանոթ էին Խիկարին թարգմանաբար, բնագրից կամ միջնորդված աղբյուրներից։*

*Խրատները հորից որդուն փոխանցվող կարճ բանաձևումներ են, որտեղ վարվելակերպի և հասարակական կենցաղի կանոններ են հրահանգվում։ Դրանք մեծ մասամբ դրսևորվում են իբրև հորդոր։ Ստեղծվում է առիթ և հայրը սկսում է խրատել որդուն. Որդյակ... իսկ որդին միայն լսում է։ Այս ձևը կիրառվում է նաև հետագայում իմացաբանական երկերի մեջ։ Հերմեսը սովորաբար իր մտքերը հայտնում է որդուն կամ աշակերտին՝ Ասկղեպիոսին։*

*Այսպես, հայրն իր կենսափորձն է հաղորդում կամ թելադրում որդուն։ Դա ուսուցման նախնական ձևն է, որ բարձրացել է գրական աստիճանի։*

*Խրատները նախապես գրեթե առանց բացառության ուղղված էին, կամ վերաբերում էին թագավորական կամ իշխանական տան ժառանգորդներին և եթե ոչ՝ ապա նրանց հետ առնչվող մարդկանց, որպեսզի «որոց իբրև լուիցէ իմաստունն, իմաստնագոյն լիցի, իսկ որ հանճարեղն իցէ՝ զառաջնորդութիւն ստասցի»։ Դրանք սերնդաբար մշակվում էին նույն ոլորտներում, իսկ մյուս խավերը մնում էին դուրս, որովհետև գրավոր մշակույթն ուներ դասային ընդգրկում։*

Հայտնի են Իսրայելի թագավոր Դավթի որդի Սողոմոնի առակները (խրատները), հայ ձեռագրերում հանդիպում են «Հարցումն թագաւորաց որդւոց», «Խրատք թագաւորաց խիստ պիտանի և գեղեցիկ» (ձեռ. № 679, էջ 208բ—209բ), խրատներ են վերագրված Նուշիրվան թագավորին, որը «թագ մի ունէր ոսկի և պատուական ակներով և շինուած էր քսան և երկու անկիւնով և յամէն անկիւն այս խրատս գրած էր»։ Այդպես է շատ նշանավոր Բարեզամի և Հովասափի զրույցը։ Հովասափը հնդկական թագավոր Աբեների որդին է և թագաժառանգը, որին իմաստություն են ուսուցում։ Մահմեդական Արևելքի նշանավոր խրատագիրքը՝ «Կաբուս Նամեն» գրված է էմիր Կաբուսի որդի Քեյ Քաուսի կողմից իր որդուն՝ Գիլանշահին։ Պարսկալեզու ձեռագրերում հանդիպում ենք «Նվեր վեզիրներին», «Նվեր թագավորին», բնագրեր, որոնք նույնպես խրատներ են։ Նույն շարքի մեջ է «Խօսք իմաստասիրաց և խրատք հասարակաց» բնագիրը, որ որոշ ձեռագրերում ունի ավելի բնորոշ խորագրային ընթերցում՝ «Խօսք իմաստասիրական առ ծառայս և մերձաւորս թագաւորաց, զի ուսցին սովաւ և իմաստնասցին», բայց հետագայում հանդես են գալիս ընդհանուր ձևով, ինչպես սլավոնական մատենագրության մեջ «Поучение сыну от отца» ու հազվագյուտ բնագիրը և այլն։

Խիկարը թագավորի ատենադպիրն է և խրատներ է տալիս իր քեռորդուն[20] արքայի մոտ ծառայության մտնելուց առաջ։ Բայց բնագիրն անցել է երկար ճանապարհ և ենթարկվել խմբագրության։ Այժմ այն ոչ թե խրատների ժողովածու է, որ հայրը տալիս է արքայի մոտ ծառայության մտնող որդուն կամ քեռորդուն, այլ խրատներ ու կանոններ ընդհանրապես երիտասարդի վարքի մասին։ Դրանով պետք է բացատրել, որ պապիրուսների մեջ պահպանված խրատները գրեթե առնչություն չունեն մեզ հասած խմբագրությունների հետ։

Այստեղ իհարկե որոշ հետքեր կան, որ բնագիրն սկզբնապես ուղղված էր արքայադպրին. «Որդեակ, եթէ լսես բան ինչ ի դրան

[20] Հավանաբար խրատներն սկզբում մեծ մասամբ հասցեագրված են եղել քեռորդուն։ Մեր ձեռագրերում կան այդպիսի վերապրուկային օրինակներ. «Խրատ խոսր ոմըն մեծատուն քրոջ որդոյ իւրոյ և ասաց. Ով որդեակ, ջանա ի բարի և մի հեշտանար ի սուտ կեանքս այս, զի անցաւոր է, անմոռաց յիշեա զօրն ահագին և զժամ մահուն դատաստանին մի մոռանար, խոնարհ և անոխակալ լեր և ըզմեղըս քո մի պահեր առ քեզ» (Ձեռագիր № 5948, էջ 14ա)։ Մենք արդեն ծանոթացանք մի այլ զրույցի հետ, որտեղ նույնպես մորեղբայրը խրատում է իր քեռորդուն (տես էջ 190, ծանոթ. 2)։

արքունի, մեռո զնա և թագո ի սրտի քում, զի մի ումեք ասիցես» և այլն, բայց մեծ մասամբ նկատի ունի տարբեր խավի և դիրքի մարդկանց։

Լինելով հասարակական վարքի կանոններ, խիկարյան խրատականքը հարուստ է իր բովանդակությամբ։ Այն արտահայտում է մարդու վերաբերմունքն ու փոխհարաբերությունը կյանքի ամենատարբեր բնագավառներում՝ կնոջ, բարեկամի, ընկերոջ, ծնողների, ծերերի, դատավորների և իշխանավորների նկատմամբ, գինու, հաճույքների, հարստության և իշխանության վերաբերյալ, և հաճախ՝ հակասական, որովհետև այնտեղ կան հասարակական գիտակցության առանձին շերտեր, փոփոխված բարոյական ըմբռնումներ։ Այսպես, 45-րդ խրատով դատապարտում է տիրախույս ծառային. «Ծառայ, որ մեզմինչէ տեառն իւրում և երթայ առ այլս, յաշխարհի հանգիստ մի գտցէ և մի՝ ողորմութիւն յաստուծոյ», չնայած Նաթանը մտնում է հզորագույնի՝ արքայի մոտ բարձր ծառայության, բայց խրատներից մեկը զգուշացնում է ոչ մի կապ չունենալ հզորների հետ. «Զքանս հզորաց մի հոգասցես»։ Մի խրատով կարծես թե որդուն առևտրական է պատրաստում. «Մի առնուր կշռով մեծաւ և տալ փոքրով և ասել թէ շահեցայ», մի այլ խրատով՝ դատավոր, «Թէ դատաւոր իցես, ուղիղ դատեսջիր, զի ի մեծ դատաւորէն ոչ պատուհասեսցիս», կամ աստուծո պաշտոնյա, կրոնավոր. «Թէ պաշտոնյա ես աստուծոյ, զգոյշ լեր և սրբութեամբ ծառայեա նմա»։

Արտահայտված են նաև սոցիալական վիճակներ. «Որդեակ, որոյ ձեռն լի է, նա իմաստուն է և առատ, և ամենայն ոք պատուէ զնա։ Եւ որ աղքատ է, անմիտ և անարգ է և ոչ ոք պատուէ զնա», կամ՝ «Յորժամ իցես ի մէջ արանց, թէ աղքատ ես, մի յայտներ զաղքատութիւն քո, զի բանից քոց ոչ լուիցեն և արհամարեսցիս ի նոցանէ»։

Խրատներն ունեն ճանաչողական մեծ արժեք և կենսափորձի խտացում են.

«Որդեակ, մի՛ լիներ կարի քաղցր, զի մի կլանիցեն զքեզ. մի՛ կարի դառն, զի մի թքանիցեն, այլ եղիցիս հեզ և հանդարտ ի գործըս գնացից քոց»։

«Որդեակ, մեծատան որդին օձ կերաւ, ասէին դեղ է նմա, աղքատին որդին կերաւ, ասեն առ սովուն կերաւ»։

Տարբեր ժամանակներում մարդիկ գտել են այնտեղ իրենց հետաքրքրող հարցերի պատասխանները և միշտ վերախմբագրել, արտահայտելով սեփական տրամադրություն։

*Օտար բոլոր խմբագրություններում խրատներից մեկն այսպես է. «Որդեակ, կերա դառնին և լեղի և ոչ էր դառն քան զաղքատութիւն», իսկ հայկական խմբագրության մեջ հնչում է հայերեն՝ և* ոչ էր դառն ճան զաղքատութիւն և զպանդխտութիւն:

*Մի այլ տարբերակում խորանալով տրամադրությանը, ստեղծվել է նոր խրատ. «Որդեակ, կերայ աղբուկ և արբի ջուր հոտեալ և չէր դառն քան զօտարութիւն»։*

*«Որդեակ, եղեր ինձ որպէս այծն, որ ուտէր զոորունն, և ասէ. ոորունն ցայծն. Զի՞ ուտես զիս, ոչ գիտես թէ ինև չիկեն զմորթդ։ Ասէ այծն. Ես ի կենդանութեան իմում ուտեմ զքեզ և ի մահուան իմում ճող խլեն զատակ քո և չիկեն զմորթ իմ»։ Այս առակավոր խրատը գրչի մոտ ինչ-որ մտքեր է արթնացնում, և ձայնարկությամբ իր վերաբերմունքն է արտահայտել՝* Ոհ, ոհ ի դառն ժամանակիս:

*«Որդեակ, ամբարտաւան մարդիք հեռանան ի բարեկամութենէ մարդկան և ի սիրոյ և առնուն անարգանս անձինն և մեկուսանան յընկերաց, նոյնպէս և ագահքն»։*

*Այս խրատի վերջում* D₄*-ը ընթերցում է ավել. «նոյնպէս և քահանայքն»։*

*Խիկարի խրատները եթե անվերջ սնվել են ժողովրդական ակունքներից, ապա իրենք էլ շատ վտակներ են ակնավորել։ Բազմաթիվ առածներ այս բնագրից են ծագում։*

*Ահա փոխադարձ անցումների մի երկու օրինակ.*

| *Խ ի կ ա ր* | *Ա ռ ա ծ ա ն ի* |
|---|---|
| *Որդեակ, յորժամ կոչեն զքեզ ի պատիւ, մի նստիր քան զքո լայեխիդ տեղիքն ի վեր, զի մի ասիցեն թէ ել յայդ տեղացդ և եկ ի վայր, և դու ամօթով լինիս (E—6)։* | *Վարը նստի, որ վերևը քեզ տեղ տան (6)։* <br> *Քրդանա մեծին մհար (համար) պահած տեղում նստիս ոչ (6)։* |
| *Լաւ է կոյր աչօք, քան կոյր մտօք, քանզի կոյրն աչօք արագ ուսանի զերթեւեկ ճանապարհին, իսկ կոյրն մտօք թողու զերթեւեկ ճանապարհին և ընդ կամակորն գնա (A—42f)։* | *Լաւ ա աչքով քոռ ինի մարդ, ինչ մտքով (12)։* |
| *Որդեակ, ակն մարդոյ աղաւ է. ոչ լցցի զանձով, մինչև լցցի հողով (G—83)։* | *Մարդու աչքը մի բուռ հողով կըկըշտանա (27)։* <br> *Աչքածակի աչքը մենակ հողով կըկըշտանա (17)։* |

| | |
|---|---|
| *Որդեակ, մի լինիր կարի քաղցր, զի մի կլանիցեն զքեզ և մի կարի դառն, զի մի թքանիցեն զքեզ, այլ եղիցիս հեզ և հանդարտ ի գործս գնացից քոց* (A—*8*)։ | *Ոչ թքելու ա, ոչ կուլ տալու (37)։* |
| *Որդեակ, թէ տեսանիցես զերիտասարդ մարդն թուցեալ յօդս, մի հաւատար նորա, զի բան ծերոց հաստատ է, քան զտղայոց* (E—*27*)։ | *Երիտասարդը օդը ելլէ մի հավատար (69)։* |
| *Որդեակ, լաւ է իմաստուն մարդոյ հետ քար կրել, քան զհետ յիմար մարդոյ և անզգամի ուտել և ըմպել* (E—*3*)։ | *Խելոք մարդու հետ քար կրելը լավ է, քանց գժի հետ փլավ ուտելը (11)։* |
| *Որդեակ, մեծատան որդին օձ կերաւ, ասէին դեղ է նմա, աղքատին որդին կերաւ, ասէին առ սովուն կերաւ* (A—*10*)։ | *Աղքատին տղան օձ կերաւ, ըսին անօթի էր, հարստին տղան կերավ, ըսին դեղ էր (220)։* |
| *Լաւ է անուն բարի, քան զտեսանկ ցանկալի* (A—*42g*)։ | *Լավ է անուն բարի, քան գանձ աշխարհի (96)։* |

*և այլն։ Կան նաև բազմաթիվ հարակից մտքեր, որոնք կարող են փոխառված լինել և հեռացած բնօրինակից, կամ համընկնել բոլորովին պատահաբար։*

*Խիկարի խրատները նյութ են տվել և կաֆաներին։ «Որդեակ, ակն մարդոյ ագահ է, ոչ լցցի գանձով մինչև լցցի հողով» խրատը տեսնում ենք ոչ միայն Առածանիի մեջ, այլև «Բանք պիտանիք և օգտակարք ասացեալ յառաջնոց»*[21] *բնագրում։*

*Շատ թագաւորաց մեծաց ւ իմաստուն արանց լըսեցի,*
*Թէ անչափ չէչտանայ մարդն յաստընուորէս մինչ որ մեռնի։*
*Տանին զերեզման դընեն և հողով իւր աչքն լըցի,*
*Ապա փոշիմանի ւ ասէ, թէ հերիք է ւ այլ չի պիտի։*

*Ձեռագրում, մինչև Պղնձէ քաղաքի զրուցաշարի մեջ մտնելը, Խիկարը հաճախ ընդօրինակվում էր և հետո էլ ընդօրինակվել է Սողոմոնի, Սիրաքի խրատների և Մովսեսի օրենքների հետ մի ժողովածուում, իբրև համասեռ երկ։ Եվ դա բնական է։ Խրատքը ոչ միայն նպատակ է դնում փոխանցել ավագ սերնդի իմացությունն ու կենսափորձը, այլև սերնդի մշակած վարքագիծը, որ հաճախ ուժ է ստանում վերածվելով օրենքի։*

[21] *«Գիրք պատմութեան որ կոչի Պղնձէ քաղաք», Կ. Պոլիս, 1792, էջ 221։ Այդ քառյակը վերագրվում է նաև Հովհաննես Երզնկացուն (Տե՛ս Ա. Սրապյան, Հովհաննես Երզնկացի, Երևան, 1958, էջ 156)։*

*Այսպես, ձեռագիր № 4726-ում ընդօրինակված են Մովսեսի օրենքները, «Խօսք իմաստասիրացից» անմիջապես հետո՝ «Դատաստանք օրինացն Մովսիսի, զոր ասաց տէր և գրեաց Մովսէս»։*

*Դրանք դատաստանք չեն, այլ պարզապես խրատներ, կամ պատվիրաններ։*

*ա) Զպանդուխտն, որ է ղարիբ և օտարն մի՛ նեղացնէք։*

*բ) Զորբն և զայրին մի՛ յաղթահարէք։*

*գ) Եթէ տացես արծաթ ի փոխ եղբօր քում, որ աղքատ իցէ, մի՝ հեպեսցես զնա և առցես շահ։*

*դ) Եւ թէ գրաւեսցես զբաճկոն ընկերի քո, նախ քան զմտանել արեգականն, դարձոյ անդրէն առ նայ, զի այն է վերարկու նորա։*

*ե) Զառաջնորդս քո մի՛ բամբասեր և զիշխան ժողովրդեան քո մի՛ հայհոյեր։*

*զ) Թէ տեսանես զգրաստ ընկերի քո անկեալ ընդ բեռամբն, մի՛ զանց առներ զնովաւ, այլ յարոյ զնայ և բարձ։*

*է) Մի՛ խոտորեսցես զիրաւունս տնանկին ի դատաստանի իւրում։*

*ը) Մի՛ եփեսցես զգառ ի կաթ մօր իւրոյ։ Ասէ պատճառն, որ քան ոչխարն ի կաթն է, գառն մի զենոյր վասն Բ պատճառի. նախ՝ մի ցամաքեսցի կաթն, և ըստ մտաց այս է. Վասն մեղաց հօր զորդին մի տուժեր*[22]*։*

*Այդպիսի պատվիրաններ բազմաթիվ են Խիկարի և* Խօսքի *մեջ.*

*«Որդեակ, մի՛ հեղուր զարիւն արդար ի տարապարտուց, զի մի հեղցեն զարիւն քո փոխան նորա»* (A—*33)*։

*«Որդեակ, մի՛ ստանար ինչս յանիրաւութենէ, զի մի կորուսանիցէ զամենայն ստացուածս քո»* (A—*100)*։

*«Որդեակ, դատաստան անիրաւութեան մի՛ առներ։ Թէպէտ յաղթես ատեխին, յաստուծոյ դատաստանացն երկիր»* (A—*104*a)։

*Նույնիսկ առնչություններ և փոխանցումներ կարելի է տեսնել դրանց մեջ։ Վերջին խրատը՝* Դատաստան անիրաւութեան մի՛ առ-

---

[22] *Բնագիրը քաղված է* Ելքի *ԻԲ, ԻԳ գլուխներից, բայց նրա հետ տալիս է շատ մեծ տարբերություններ, օր.* Զպանդուխտն, որ է ղարիբ և օտարն մի նեղացնէք *(ձեռագիր),* Զպանդուխտն մի չարչարիցէք եւ մի նեղիցէք զնա, զի եւ դուք պանդուխտք էիք յերկրին եգիպտացւոց (Ելք, *ԻԲ, 21—22),* Զորբն և զայրին մի յաղթահարէք *(ձեռագիր),* Զամենայն զայրի եւ զորբ մի չարչարիցէք: Ապա եթէ չարչարելով չարչարիցէք զնոսա, եւ բողոք բարձեալ աղաղակիցեն առ իս, լսելով լուայց աղաղակի նոցա: Եւ բարկացայց սրտմտութեամբ եւ կոտորեցից զձեզ սրով, եւ եղիցին կանայք ձեր այրիք եւ մանկունք ձեր որբք» (Ելք, ԻԲ, 22—24) *և այլն։*

Մեր *փոքրիկ ընթերցումով հանդիպում ենք մովսիսյան պատվիրաններում՝* Անիրաւութիւն ի դատաստանի մի՛ առնիցես:

*Խրատը դառնում է պատվիրան, պատվիրանը՝ օրենք, ձեռք բերելով պատժիչ ուժ։ Շատ հաճախ նույնը* Ելքի *մեջ պատվիրան է,* Ղևտականում՝ *օրենք։* Մի-*ն դառնում է* որ,— *մի՛ շնացես, ո՛ր շնացէ։*

*Խիկարի մոտ որոշ խրատներ նույնպես* Ղևտականի *մեջ արդեն օրենքի ուժ ունեն.*

| *Խիկար* | *Ղևտ.* |
| --- | --- |
| *Որդեակ, մի՛ մերձենար ի կին ընկերի քո, ապա թէ շնասցիս, բարկասցի աստուած ի վերայ քո և այլք շնասցեն ընդ կնոջ քո և դու տրտմիս յոյժ (*A—*35)։* | *Այր ոք եթէ շնասցի ընդ առնակնոջ կամ շնայցէ ընդ կնոջ ընկերի իւրոյ, մահու մեռցին և շնացողն և շնացեալն (Ղևտ. Ի—10, 11)։* |
| *Որդեակ, սիրեա զկին քո զի մարմին քո է և զհետ կնոջ օտարի մի՛ երթար, զի գործդ մահաբեր է և չար է առաջի աստուծոյ և մարդկան (*A—*63)։* | |
| *Որդեակ, սիրեա զհայր քո, որ ծնաւ զքեզ և զանէծս հօր և մօր քո մի՛ առցես, զի ի բարութիւն որդոց քոց խնդասցես (*A—*24)։* | *Մարդ ոք, որ հայհոյեսցէ զհայր իւր կամ զմայր իւր՝ մահու մեռցի։ Զհայր իւր կամ զմայր իւր թէ բամբասեսցէ՝ մահապարտ է (Ղևտ.—9, 10)։* |

*Օրենքը սովորույթի հաստատումն է, խրատը՝ ուսուցումը։ Խրատը հորդորում է՝* զի գործդ մահաբեր է և չար է առաջի աստուծոյ և մարդկան, զի ի բարութիւն որդոց քոց խնդասցես, *իսկ օրենքը՝ պատժում՝* մահու մեռցին, մահապարտ է:

*Խրատը ևս ձգտում է դրան։ Եվ ծնվում է օրենքը*[23]*։ Հենց թեկուզ խիկարյան խրատները։ «Խօսք իմաստասիրացի» մի խրատ այսպես է. «Որդեակ, մտանութիւն յերկուս դէմս սահմանի։ Եթէ տեսանես զնենգաւորն ի սպանութիւն տեսոն և ոչ յայտնես նմա, մահապարտ ես և դու իբրև զնա»։*

---

[23] *Բոլորովին ոչ պատահաբար խրատը նույնանում է պատժի հետ, խրատել նշանակում է պատժել։ Սովորական են այսպիսի արտահայտությունները. «Ես նրան այնպես խրատեմ, որ երբեք չմոռանա», «ես նրան մի լավ խրատեցի» և այլն։ Նման կիրառում կա նաև Խիկարի մոտ. «Որդեակ, զքո որդին ի գանէ մի խնայեր։ Որպէս պիտոյ է աղբն պարտիզի և կապն քսակի և պարան յոտս իշոյ, այնպէս պիտոյ է ծեծն տղային, զի թէ մի անգամ և երկիցս* խրատես՝ *ոչ մեռանի» (*A—*18)։*

*Դա արդեն օրենք է և ունի իր պատժի սահմանումը։ Ինչպես գիտենք խոսքը ներձուլվել է Խիկարին։ Բայց հենց թեկուզ Խիկարից մի օրինակ. «Որդեակ, ծառայ, որ մեղանչէ տեառն իւրում և երթայ առ այլս, յաշխարհի հանգիստ մի՛ գտցէ և մի՛ ողորմութիւն յաստուծոյ»։ Սա արդեն խրատ չէ, այլ կանոն, որ արտահայտում է ստրկատիրական հարաբերություն, ծառայի կապվածությունը տիրոջը։ Պատիժը դեռևս բարոյական է՝* հանգիստ մի՛ գտցէ և մի՛ ողորմութիւն յաստուծոյ: *Այստեղ անցումը օրենքին մի քայլ է միայն, օրենք, որ արգելում է տիրոջից ծառայի ինքնակամ հեռանալը։*

*Գրչություններում Խիկարի բնագիրն այսպես է ներկայացված.*

*«Խրատք Խիկարայ իմաստասիրի, զոր* պարտ *է իմանալ և ի միտ առնուլ ամենայն մարդոյ, վասն շահի և օգտութեան», «...*պարտ է *ամենայն հարք այսպէս խրատեն զորդիս և վարդապետք զաշակերտեալսն», «...*պարտ է *ամենեցուն ի միտ առնուլ», «...*պարտ է *և արժան ուշիմ ի միտ դնել, զի դուռ է իմաստութեան և շահ է ամենայնի»։*

*Սահմանվում է նույնիսկ պատիժ.*

*«Արդ որ լսէ զխրատս զայս և առնէ, սիրելի առնէ զանձն աստուծոյ և մարդկան և երանեմ կենաց նոցա։ Եւ որ լսէ և ոչ առնէ, մանաւանդ թէ հակառակ ևս լինի և փոխանակ բարո, չար ևս խորհի, եթէ որդի է, թէ եղբայր, թէ աշկերտ, թէ սիրելի կամ օտար, նա զառաջիկա գրեալդ ընդունի։ Եւ թէ ոչ՝ հազար եղուկ է նոցա»:*

Նա զառաջիկա գրեալդ ընդունի,—*սպառնում է Նաթանի ճակատագրով։*

*Խիկարը Նաթանին պատժում է ամենայն դաժանությամբ, որովհետև «անտես արար և հոսեաց զբանս, որպէս հողմ ընդդէմ փոշոյ»։ Չնայած Նաթանի խնդրանքին ու զղջումին, նա չի ներում նրան, այլ «հարկաներ բիր» մինչև որ «ուռեցաւ Նաթան և պատառեցաւ»։ Այդպես է բոլոր խմբագրություններում, բացի Եզովպոսի օրինակից, դա հետագա ուղղում է։*

*«Որդեակ, որ ընդ ականջսն ոչ լսէ ընդ թիկունսն լսեցուցանեն»,—ահա պատժի սահմանումը։*

*Զրույցի վերջում ձգվում է խրատների մի այլ շարք, որ տալիս է Խիկարն իր քեռորդուն եգիպտական ճամփորդությունից հետո։ Դրանք առակավոր բնույթի են, ուղղակի առակներ, ավելի ճիշտ՝* **խրատուց օրինակք.**

*«Որդեակ, եղեր ինձ որպէս կարիճն, որ եհար զասեղն։ Ասէ. Ահա խայթոց, որ չար է քան զքոյդ»։*

«Որդեակ, եղեր որպէս զայն, որ ձգէր նետ յերկինս և ոչ կարաց հասուցանել ի վեր, բայց զանօրէնութիւն շահեցաւ, և դարձաւ նետն ի գլուխն իւր»։

«Եղեր ինձ որպէս շուն, որ եմուտ ի հնոց բրտի, և յորժամ ջեռաւ, սկսաւ հաչել ընդդէմ նորա»։

Երբ առակը բերվում է համեմատության համար, կորցնում է իր ինքնակա նշանակությունը և դառնում խրատուց օրինակ և իբրև առակ պայմանական է, բայց երբ բերվում է մեկնության համար, ստանում է ժանրային ինքնություն և խրատն է դառնում պայմանական։ Առաջին դեպքում՝ խրատը նախադրյալ է, երկրորդ դեպքում՝ հետևություն։

Բայց պետք է ընդունել, որ և՛ իբրև նախադրյալ և՛ իբրև հետևություն, խրատը նախորդում է առակին։ Առակը, եթե այն այլաբանություն է և ոչ թե կենդանական զրույց, կամ կենդանական զրույցի մի հատված, ծագում է խրատի անհրաժեշտությունից։

Այլաբանությունը կամ առակը լուծման պահանջից է ծնվել, իսկ լուծումը հենց ինքը խրատն է, այն, որ այլաբանաբար յինքեանս ունի թագուցեալ։ Առակը այլաբանական խրատ է։

Դրա հիանալի օրինակ են Խիկարի առակավոր խրատները, որոնք ևս, պարզ է, կարող էին և՛ ընդարձակվել և՛ պոկվել զրույցից ու ստանալ անկախ բնույթ։ Աղվեսագրքում ու Վարդանի ժողովածուների մեջ ցրված են այդ առակներից, բայց ոչ այնքան շատ։ Այդ նրանից է, որ Խիկարի առակավոր խրատները պտտվում են մի հարցի շուրջը, ունեն պատժիչ բնույթ, թեմատիկ մեծ կապ իրար հետ, և տրոհելը դժվար է։

Խիկարի խրատները ավելի են տարածված հայկական ձեռագրերում, քան Սիրաքի և Սողոմոնի, որոնք օգտվում են Աստվածաշնչի հեղինակությունից։ Սողոմոնի և Սիրաքի խրատները համեմատաբար միաբնույթ են և հեղինակային, իսկ Խիկարը ունի ժողովրդական կենսալիր ոճ և ուղեկցվում է հետաքրքիր պատմությամբ։ Նրանք ձեռագրերում անհամեմատ քիչ փոփոխություններ են կրել։ Բայց այդպես չէ Խիկարը։ Ընդօրինակողները ազատորեն խրատականքի մեջ կատարել են բազմաթիվ հավելագրումներ ու նորամուծություններ։ Մի ձեռագրում (ձեռ. № 697, $B_{14}$) գրիչը բերում է իր խրատը և ավելացնում՝ Այս անարժանէս է, իսկ որքան գրիչներ են հավելագրել, որ չի նշված։

Այդպիսով դարերի ընթացքում խրատականքը հենքի դեր է կատարել և դարձել մի տեսակ բարքերի ու վարքագծի ուղեցույց։

Զրույցի երկրորդ մասը հարց ու պատասխանիք է, որը նույնպես ուսուցողական բնույթ ունի և ավելի ճանաչողական արժեք։ Հին աշխարհում մարդը քիչ բան գիտեր բնության և աշխարհի մասին և պակասը լրացնում էր յուրովի։ Նա երեխայի պես բաց էր աբել աչքերը և նայում էր շուրջը զարմացած, նա հարցնում էր՝ ինչո՞ւ և պատասխանում կա՛մ ձեռք բերված փորձով, կա՛մ սրամիտ հնարանքով, կա՛մ երևակայությամբ, կա՛մ գերբնական ճանապարհով։ Հեքիաթների մեջ ողողվել է այս թեման, թագավորները իրար հետ մրցում են հանելուկներով, վիշապները բարդ առաջադրանքներ են տալիս հերոսներին, հանելուկներ կամ դժվար խնդիրներ են լուծում, որ հասնեն տենչած գեղեցկուհուն և այլն։

Փարավոնի բոլոր հարցերը Խիկարը լուծում է բացառապես իմացությամբ։ Նա այլ կերպ չի հաղթում թշնամուն։

Փարավոնն առաջադրում է տոմարի, երկնքում տաճար կառուցելու, ավազից պարան մանելու, դեռ չլսված խոսք ասելու և ուրիշ խնդիրներ։

Այդ ամենը ինքնին հետաքրքիր են և հյուսվում են այնպիսի կապակցությամբ, որ շատ հեշտ ամեն մի խնդիր կարող է ինքնակա արժեք ունենալ։ Ոչինչ չի տուժի, եթե ավելացվեն նոր խնդիրներ, կամ որոշ խնդիրներ դուրս ընկնեն, ծավալվեն գեղարվեստական անկախ ձևերի մեջ և այլն։

Այստեղից էլ առաջանում է փոխազդեցության լայն հնարավորություն։ Այդ խնդիրները զուգահեռաբար կան մեր և ուրիշ ժողովուրդների զրույցներում, հեքիաթներում և այլուր։

Այսպես։ Տոմարի խնդիրը Խիկարն ասում է, որ ասորոց հորթարածներն անգամ գիտեն։ Այդ խնդիրը կա և «Պատմութիւն աղջըկանն ու մանկան»[24] զրույցի մեջ։ Երկրորդ խնդիրը կապված է մարդու թռչելու գաղափարի հետ։ Ասորաբաբելական աղյուսների վրա պատմվում է Էտանի մասին, որը թռչում է արծվի հետ։ Այդպես են անում Խիկարը և Եզովպոսը։ Հույն առասպելում թռչում են Դեդալն ու Իկարը։

Մարդու այդ երազանքը հետաքրքիր ճանապարհ է անցել։ Էտանի զրույցը ավելի հին է և շատ անբնական է հնչում։ Նա ինքն է նստում արծվի վրա, որը սովորական արծիվ չէ, այլ գիտի մարդկային լեզուն։ Խիկարի մոտ դրվագը հավանաբար անցել է Էտանից, բայց ստացել իրական գծեր. թռչում են, ոչ թե ինքը, այլ վարժեցված երեխաներ, որոնց դնում է կողովի մեջ։ Դա նույնությամբ

[24] «Պատմութիւն վասն Պղնձէ քաղաքին», էջ 147—148։

անցել է Եզովպոսին, իսկ Իկարը ինքն է թևեր սարքում և փորձում թռչել։ Սա արդեն նոր բան է և մարդու թռիչքի առաջին փորձը, որը նույնպես ծնվել է նախորդ երազներից։ Բայց այստեղ դիտենք մի հարց, արդյո՞ք Խիկարը որևէ առնչություն չի կարող ունենալ Իկարի հետ, թե՞ անունների պատահական զուգահնչունություն է։

Խիստ տարածված են և մյուս խնդիրները. ավազից պարան մանել, այնպիսի բան ասել, որ ոչ ոք չի իմացել։ Հիշենք, որ Հ. Թումանյանը, այս վերջին թեմայի վրա է հյուսել իր հեքիաթներից մեկը և այլն։ Սրանք թեմաներ են, որոնք անվերջ հետաքրքրել են մարդկանց։

Արաբների մոտ Խիկարի հետագա խմբագրությունները դարձել են հեքիաթ և մտել Հազար ու մեկ գիշերների մեջ[25], ենթարկվելով հեքիաթների ընդհանուր ոգուն, իսկ սլավոնական աշխարհում ընթացել են վիպականացման ուղիով։ Այստեղ հերոսների հարաբերությունը, երկախոսությունները, փոխադարձ սպառնալիքները, գործողությունները և այլն էպոսին հատուկ ձևեր են ընդունել։ Եգիպտական թագավորը երբ լսում է, որ Ակիրը գլխատվել է, խորհուրդ է անում իր մեծամեծների հետ.

«И тогда слышав царь египетцкий Фараон, что Акирь погублен бысть, и нача глаголати посадником своим: «Некий муж был, именем Акирь премудры, в земле Аливиетсей, у царя Синографа: а ныне Акирь погублен бысть, уж наше время дан своя многая летная время имать у царя Синографа».

Նրանք ձայնակցում են արքային.

«Тогда же и посадники рекоша: «Воистину, государь царь, время, время твое дань свою имать».

Փարավոնն ուղարկում է իր ահեղ դեսպանին՝ Ելտեգիին.

«И посылает царь египетцкий фараон грозного посла своего Елтегу, а с ним многое множество раб своих в светлых ризах и в златокованных доспехах».

Ելտեգին վարվում է թշնամու երկրի հետ այնպես, ինչպես Մսրա Մելիքի դեսպանները.

«И тогда поиде грозный посол Елтега ко граду Онлевиту, и не дошед до града Аливита и нача станом становиться и нача ясти и пити саморучно и нача к себе силою имати на ложище отеческие дщери».

[25] «Հազար ու մեկ գիշերների» բավական մանրամասն մատենագիտությունը տե՛ս „Юбилейный сборник в честь В. Ф. Миллера“, М., 1900, էջ 231—240։

